АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСТОРИИ

# АРМЯНСКАЯ КНИГА КАНОНОВ

## II

Предисловие, научно-критический текст и примечания
ВАЗГЕНА АКОПЯНА

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1971

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ԿԱՆՈՆԱԳԻՐՔ ՀԱՅՈՑ

## Բ

Աշխատասիրությամբ
ՎԱԶԳԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1971

Printed in the Soviet Union

*Հայրենական Մեծ պատերազմում*
*զոհված եղբորս՝*
ԳԱՐԵԳԻՆ ԱՐՏԱՇԵՍԻ ԳԻՆՈՍՅԱՆԻ
*հիշատակին*

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

## Ա. ԿԱՆՈՆԱԳՐՔԻ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԵՐԿՈՒ ԽՄԲԵՐԸ, ՆՐԱՆՑ ԱՌՆՉՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՄԻՄՅԱՆՑ ԵՎ ՀՈՎՀԱՆՆԵՍ ՕՁՆԵՑՈՒ ԺՈՂՈՎԱԾՈՒԻ ՀԵՏ

«Կանոնագիրք Հայոց»-ի Ա հատորը[1] բովանդակում է Հովհաննես Օձնեցու խմբագրությունը (VIII դար)։ Նույնի ներկա՝ Բ հատորը հանդիսանում է X և XI դարերի խմբագրություններում Հովհ. Օձնեցուց հետո Կանոնագրքին կատարված ավելացումները։ Որպեսզի կարողանանք ցույց տալ վերջին երկու խմբագրությունների ընդգրկած նյութերի սահմանները և ընդհանրապես Կանոնագրքին տարբեր ժամանակներում ավելացված շերտերը, անհրաժեշտ է թեկուզ և համառոտակի հիշեցնել «Կանոնագիրք Հայոց»-ի Ա հատորի Նախաբանում արծարծված որոշ հարցեր։

Այստեղ չենք խոսի այն մասին, թե ի՛նչ ձեռագրեր ենք օգտագործել «Կանոնագիրք Հայոց»-ի Ա հատորի գիտա-քննական բնագիրը կազմելիս, դրանք ի՛նչ խմբերի և ենթախմբերի ենք բաժանել։ Հետաքրքրվողներին հղում ենք նույն հատորի Նախաբանի XXX-XXXIX էջերին։ Առաջադրված խնդիրների պարզաբանման համար մեջ կբերենք օգտագործված ձեռագրերի երկու խմբերից մեկական ձեռագրերի բովանդակած նյութերի ցանկերը, հիշեցնելով հետևյալը. նախ՝ որ մնացած ձեռագրերի բովանդակած նյութերի կառուցվածքը համապատասխանաբար արտահայտված է այդ զույգ ձեռագրերում. երկրորդ՝ որ այդ երկու ձեռագրերում կանոնախմբերի հաջորդականությունն ընթանում է ըստ նույն ձեռագրերի բովանդակության ցանկերի։

Ա խմբի ձեռագրերից վերցնում ենք A, իսկ Բ խմբից՝ i, հնագույն (ծագման իմաստով) ձեռագրերի բովանդակության ցանկերը։

Ա խումբ
A ձեռագիր

«Ա. Կանոնք Առաքելական
գլուխս ԼԴ։
Բ. Կանոնք Առաքելական
ի ձեռն Կղեմայ գլուխ ՁԵ։
Գ. Կանոնք Հարցն հետեւողաց
գլուխ ԻԷ։

Բ խումբ
i ձեռագիր

«Ա. Կանոնք Առաքելականք
գլուխք երեսուն եւ չորս։
Բ. Երկրորդ Առաքելականք
գլուխք Ղ եւ Ե։
Գ. Կանոնք Թադէոսի առաքելոյ
գլուխս ԼԳ։

[1] Կանոնագիրք Հայոց հտ. Ա, աշխատասիրությամբ Վազգեն Հակոբյանի, Երևան, 1964։

Դ. Կանոնք Նիկիայ մեծ ժողովոյն գլուխ Ի։
Ե. Կանոնք Անկիւրիայ գլուխ Ի։
Զ. Կանոնք Կեսարիայ գլուխ Ժ։
Է. Կանոնք Նէոկեսարեայ գլուխ Ի։
Ը. Կանոնք Գանգրայ գլուխ ԻԴ։
Թ. Կանոնք Անտիոքայ գլուխ ԻԵ։
Ժ. Կանոնք Ղաւոդիկեայ գլուխ ԾԵ։
ԺԱ. Կանոնք սրբոյն Գրիգորի գլուխ Լ։
ԺԲ. Կանոնք Սարդիկեայ գլուխ ԻԱ։
ԺԳ. Կանոնք Կոստանդնուպաւլսի գլուխ Գ։
ԺԴ. Կանոնք Եփեսոսի ժողովոյն գլուխ Զ։
ԺԵ. Կանոնք Աթանասի՝ Հարցմունք գլուխ ՂԸ։
ԺԶ. Կանոնք Բասղի Կեսարացւոյ գլուխ ԾԱ։
ԺԷ. Կանոնք սրբոյն Սահակայ գլուխ ԾԵ։
ԺԸ. Կանոնք Շահապիվանի Հայոց գլուխ Ի։
ԺԹ. Կանոնք Սեւանտեայ՝ Թուղթ գլուխ ԺԴ։
Ի. Կանոնք Ներսէսի եւ Ներշապհոյ գլուխ ԼԷ։
ԻԱ. Կանոնք Յովհաննու Մանդակունւոյ գլուխ Թ։
ԻԲ. Կանոնք Աբրահամու Մամիկոնեւոյ գլուխ Գ։
ԻԳ. Կանոնք Սահակայ վերջնոյ գլուխ ԺԵ։
ԻԴ. Կանոնք Յովհաննու Իմաստասիրի գլուխ ԼԲ։
ԻԵ. Կանոնք Սիոնի Հայոց կաթողիկոսի գլուխ ԻԲ։

Դ. Կանոնք Փիլիպոսի առաքելոյ գլուխս Ը։
Ե. Կանոնք Հարանցն հետեւողաց գլուխս ԻԴ։
Զ. Կանոնք Անկիւրեայ գլուխս քսան։
Է. Կանոնք Նիկիայ սուրբ ժողովոյն գլուխս քսան։
Ը. Կանոնք Երկրորդ Նիկիականք գլուխս ՃԺԴ։
Թ. Կանոնք սրբոյն Գրիգորի առաքելոյ Հայոց գլուխս երեսուն։
Ժ. Կանոնք սրբոյն Աթանասի գլուխս Զ եւ Ը։
ԺԱ. Կանոնք երանելոյն Մակարայ Երուսաղէմի գլուխ Թ։
ԺԲ. Կանոնք Կոստանդինուպօլսի ժողովոյն գլուխս Գ։
ԺԳ. Կանոնք երանելոյն Աստուածաբանի գլուխս Լ։
ԺԴ. Կանոնք սրբոյն Բարսղի առ Աքելիքոս գլուխս ԾԱ։
ԺԵ. Կանոնք Բ Բարսղի առ Թէոդորոս գլուխս Ա։
ԺԶ. Կանոնք Գ սրբոյն Բարսղի վասն պէսպէս եւ բիւրապատիկ ախտից գլուխս ՄՀԲ։
ԺԷ. Կանոնք տեառն Եփրեմի գլուխս Ը։
ԺԸ. Կանոնք Ներսէսի կաթողիկոսի եւ Ներշապհոյ եպիսկոպոսի գլուխ Լ եւ Ը։
ԺԹ. Կանոնք Կեսարեայ գլուխք Ժ։
Ի. Կանոնք Նէոյկեսարեայ գլուխ Ի։
ԻԱ. Կանոնք Կանգրեայ գլուխ ԻԴ։
ԻԲ. Կանոնք Անտիոքայ գլուխք ԻԵ։
ԻԳ. Խոստովանութիւն Անտիոքայ գլուխ Ա։
ԻԴ. Կանոնք Լաւոդիկեայ գլուխք ԾԷ։
ԻԵ. Կանոնք Սարդիկեայ գլուխ ԻԱ։

ԻԶ. Կանոնք առաքելոյն Թադէոսի գլուխ ԼԳ։

ԻԷ. Կանոնք առաքելոյն Փիլիպպոսի գլուխ Ը։

ԻԸ. Կանոնք Անտիոքայ Երկրորդ գլուխ Թ։

ԻԹ. Կանոնք Եփրեմի խորին Ասորւոյ գլուխ Ը։

Լ. Կանոնք Կիւրղի Աղեքսանդրացւոյ գլուխ Ե։

[ԼԱ. Կանոնք Եպիփանու Կիպրացւոյ գլուխ Ե]։

ԼԲ (ԼԱ). Կանոնք Եղիշէի վարդապետի գլուխ Ա։

ԼԳ (ԼԲ). Կանոնք Անտիոքայ Երկրորդ գլուխ Ա։

ԼԴ (ԼԳ). Կանոնք Նիկիայ Երկրորդ գլուխ ԾԺԴ։

ԼԵ (ԼԴ). Կանոնք Վաչագանայ Աղուանից գլուխ ԻԱ։

ԼԶ (ԼԵ). Կանոնք Բասղի պէսպէս ախտից գլուխ ՄՀԲ։

ԼԷ (ԼԶ). Կանոնք Աստուածաբանի գլուխ Լ։

ԼԸ (ԼԷ). Կանոնք Դունայ սուրբ ժողովոյն գլուխ ԺԲ։

ԼԹ (ԼԸ). Կանոնք Մակարայ Երուսաղէմի հայրապետի գլուխ Թ։

Խ (ԼԹ). Կանոնք Սահակայ Հայոց կաթողիկոսի գլուխ Ա։

ԽԱ (Խ). Կանոնք Յովհաննու Մանդակունւոյ գլուխ Ա։

ԻԶ. Կանոնք Եպիփանու գլուխ Ե։

ԻԷ. Կանոնք Եփեսոսի ժողովոյն գլուխք Զ։

ԻԸ. Կանոնք Կիւրղի Աղեքսանդրացւոյ գլուխ Ե։

ԻԹ. Կանոնք սրբոյն Սահակայ Հայոց հայրապետի գլուխք Ե։

Լ. Կանոնք միաբան Հայոց գլուխ Ի։

ԼԱ. Թուղթ Սեւանդեայ գլուխ ԺԳ։

ԼԲ. Կանոնք Երկրորդ Անտիոքայն գլուխ Թ։

ԼԳ. Կանոնք Յովհաննու Մանդակունւոյ գլուխս Թ։

ԼԴ. Թուղթ Աբրահամու առ Վաչագան գլուխք Գ ։

ԼԵ. Կանոնք վերջնոյ Սահակայ գլուխք ԺԵ։

ԼԶ. Կանոնք տեառն Յովհաննու Իմաստասիրի գլուխք ԼԲ։

ԼԷ. Կանոնք Սիոնի կաթողիկոսի գլուխք ԻԳ։

ԼԸ. Կանոնք Վաչագանայ Աղուանից արքայի գլուխ ԻԱ։

ԼԹ. Կանոնք Դունայ սուրբ ժողովոյն գլուխք ԺԲ։

Խ. Սրբոյն Եղիշէի կանոնաց գրոց գլուխք Ա»[1]։

---

[1] № 656, էջ 6աբ, տե՛ս նաև «Կանոնագիրք Հայոց», հատ. Ա, էջ XXXIII։ Վիճակն այդպիսին է է ձեռագրում։ Երբ համեմատում ենք այս երկու ցանկերի Ա-Խ համարները կրող կանոնախմբերը, առաջին հայացքից թվում է, թե i ձեռագրում առկա է Բարսեղ Կեսարացու անունով երեք կանոնախումբ՝ ԺԴ, ԺԵ, ԺԶ համարների տակ, իսկ A-ում՝ երկու՝ ԺԶ և ԼԶ, այսինքն՝ մեկով պակաս։ Բանն այն է, որ A ձեռագրում ևս գտնում ենք i-ում նշված երեք կանոնախմբերը, միայն այն տարբերությամբ, որ Բարսեղի մեզ հետաքրքրող բնագիրը՝ ԺԵ-ը A-ում դրված է նույն հեղինակի ԺԶ համարը կրող կանոնախմբում որպես 51 (ԾԱ)-րդ կանոն, մինչդեռ i-ում վերջինս դրված է որպես առանձին կանոնախումբ թե՛ ցանկում և թե՛ բուն ձեռագրում։ Նույնը կարելի է ասել նաև Սահակ Պարթևի կանոնախմբի վերաբերյալ։ A-ում նշված է Սահակ Պարթևի անունով երկու կանոնախումբ՝ ԺԷ և Խ (ԼԹ) համարների ներքո, իսկ i-ում A-ի Խ (ԼԹ) համարի կանոնախումբը դրված է նույն հեղինակի ԻԹ համարի կանոնախմբի հետ։ i ձեռագրի (Բ խմբի գրեթե բոլոր ձեռագրերում) ցանկում թեև այն չի արտահայտված, բայց բուն ձեռագրերում դրված է Սահակ Պարթևի մյուս կանոնախմբերի շարքում։ Այսպիսով առայժմ զանց առնելով A ձեռագրի շարունակությունը՝ 40 կանոնախմբերից հետո և՛ A և՛ i ձեռագրերում էլ գտնում ենք միևնույն կանոնախմբերը՝ թվով 40, միայն տարբեր դասավորությամբ։

ԽԲ (ԽԱ). Կանոնք սուրբ ժողովոյն Կարնոյ գլուխ Թ։
ԽԳ (ԽԲ). Կանոնք սրբոյն Ներսիսի Գ-րդ գլուխ ԻԳ։
ԽԴ (ԽԲ). Կանոնք Յովհաննու Մանդակունւոյ գլուխ Է։
ԽԵ (ԽԳ). Կանոնք սրբոյն Դիոնիսիոսի գլուխ Ա։
ԽԶ (ԽԴ). Կանոնք Եպիփանու Կիպրացւոյ գլուխ Գ։
ԽԷ (ԽԵ). Կանոնք Յովհաննու Երուսաղէմացւոյ գլուխ Ա։
ԽԸ (ԽԶ). Կանոնք Հիպողիտայ սրբոյ գլուխ Ա։
ԽԹ (ԽԷ). Կանոնք Նեկտառեայ Հռոմայ գլուխ Ա։
Ծ (ԽԸ). Կանոնք Մեղիտոնի եպիսկոպոսի գլուխ Ա։
[ԾԱ. Կանոնք Աթանասի գլուխ Ա]։
ԾԲ (ԽԹ). Կանոնք սրբոյն Սեբ[ե]րիանոսի գլուխ Ա։
ԾԳ (Ծ). Կանոնք Սոկրատայ գլուխ Բ։
ԾԴ (ԾԱ). Կանոնք Դիոնիսի Արիսպագացւոյ գլուխ Ա։
ԾԵ (ԾԲ). Կանոնք Մանուէղի գլուխ Ա։
ԾԶ (ԾԳ). Կանոնք Կղեմայ Հռոմայ եպիսկոպոսի գլուխ Ա։
ԾԷ (ԾԴ). Տեառն Յովհաննու Մանդակունւոյ ի կոչումն ապաշխարութեան տունս ԾԽ»[1]։

---

[1] Կանոնագիրք Հայոց հատ. Ա, էջ 3—4։ Բուն ձեռագրում գտնում ենք 57 (ԾԷ) կանոնախմբեր։ Սակայն ձեռագրի՝ ցանկում նշված են 54 (ԾԴ) կանոնախմբերի վերնագրեր։ Այդ տարբերությունը նրանից է, որ ձեռագրի բովանդակության ցանկում, անուշադրության հետևանքով, չի նշված երկու կանոնախմբերի վերնագրերը։ Ըստ բուն ձեռագրի՝ դրանք հետևյալ կանոնախմբերն են. «Կանոնական գիր տեառն Եպիփանու ասացեալ գլուխք Ե› և «Սրբոյ› Աթանասի Մեծի Ա բան»։ Սրանցից առաջինը պետք է լինի Լ և ԼԱ (ձեռագրի համարակալմամբ)՝ «Կանոնք Կիւրղի Աղեքսանդրացւոյ գլուխ Ե» և «Կանոնք Եղիշէի վարդապետի գլուխ Ա» վերնագրերի միջև. իսկ երկրորդը՝ ԽԸ և ԽԹ (ձեռագրի համարակալմամբ)՝ «Կանոնք Մեղիտոնի եպիսկոպոսի գլուխ Ա» և «Կանոնք սրբոյն Սեբ[ե]րիանոսի գլուխ Ա» վերնագրերի միջև։ Այս պակասը ուղղանկյուն փակագծերում լրացրինք մենք։ Բովանդակության ցանկի 42 (ԽԲ)-րդ համարը (ըստ ձեռագրի) սխալմամբ կրկնված է։ Այս ևս ուղղեցինք, կլոր փակագծերում պահելով սխալ նշումը։ Այս սրբագրություններից հետո ստանում ենք 57 կանոնախումբ և դրան էլ համապատասխան վերնագրեր՝ 54+3։ Ճիշտ այդ է վիճակը U ձեռագրում. այս և այլ փաստերը ենթադրել են տալիս, որ այս ձեռագիրն ընդօրինակված է A ձեռագրից, իսկ վերջում ավելացրել են «Յոհաննու Ոսկեբէրանի յաղագս սահմանի կանոնաց կարգաւորաց որք գան ի խոստովանութիւն» կանոնախումբը (էջ 186ա—188բ), վերջից թերի։

Սակայն Ն. Ակինյանի մոտ այս ցանկը ստացվել է 53 (ԾԳ) վերնագիր։ Չի բերված բուն ձեռագրում և բովանդակության ցանկում գտնվող Հովհ. Մանդակունու անունով հայտնի «Ի

*Երբ համեմատում ենք այս երկու ցանկերը, նկատում ենք, որ A ձեռագրի (Ա խմբի բոլոր ձեռագրերի, չհաշված թերիները) թե՛ բովանդակության ցանկի Ա—Խ վերնագրերը և թե՛ բուն ձեռագրերի համապատասխան կանոնախմբերը գտնում ենք i ձեռագրի (Բ խմբի բոլոր ձեռագրերի) թե՛ բովանդակության ցանկում և թե՛ բուն ձեռագրերում, թեպետ և տարբեր հաջորդականությամբ։ Այս հանգամանքը մեզ եզրակացնել է տալիս, որ ձեռագիր կանոնագրքերի այս երկու՝ Ա և Բ խմբերը սկիզբ են առել միևնույն հնագույն ձեռագրի առանձին տարբերակներից, որից հետո ժամանակի ընթացքում ընդօրինակվելով և նոր կանոնախմբեր ընդունելով, միայն շարունակության մեջ են շեղվել միմյանցից։*

*Քանի որ Ա—Խ կանոնախմբերը տարբեր դասավորությամբ կրկնվում են ձեռագրերի այս երկու՝ Ա և Բ խմբերում, մեզ այժմ հետաքրքրում է այն հարցը, թե ո՛ր խումբն է որին նախորդել, այսինքն ձեռագրերի Բ խումբն առաջ է եկել Ա խմբի՞ց, թե ընդհակառակը։ «Կանոնագիրք Հայոց»-ի Ա հատորում հավանական համարել էինք առաջին վարկածը[1]։ Եվ ահա թե ինչո՛ւ։*

*Անկյուրիայի կանոնախմբի առաջաբանում, որը, ինչպես երևում է, Հովհ. Օձնեցու հիշատակարանից, գրել է ինքը[2], կարդում ենք. «Այս կանոնք (իմա՛. Անկյուրիայի —Վ. Հ.) նախ են քան որ կարգեցան ի Նիկիայ, այլ քանզի որ ի Նիկիայն կարգեցան յառաջագոյն գրեցան, վասն սաստիկ եւ մեծ եւ սուրբ ժողովոյն, որ ժողովեցան ի Նիկիայ քաղաք...»[3]։ Ուրեմն, Հովհ. Օձնեցին գիտենալով հանդերձ, որ Անկյուրիայի ժողովը տեղի է ունեցել Նիկիայի ժողովից վաղ, իր Կանոնագրքում Անկյուրիայի ժողովի կանոնախմբից առաջ դնում է Նիկիայի ժողովի կանոնախումբը, որովհետև ժողովը «սաստիկ և մեծ» էր։ Այսպիսով, Հովհ. Օձնեցին իր հավաքածուն կազմելիս առաջնորդվել է ոչ թե ժամանակագրական, այլ նշանակության սկզբունքով։ Այս տեսանկյունով և բացատրությամբ հասկանալի է դառնում, թե ինչու Ա խմբի ձեռագրերում նախ դրված է Նիկիայի, ապա Անկյուրիայի կանոնախումբը։ Մինչդեռ Բ խմբի ձեռագրերում, թեև պահվել է Անկյուրիայի կանոնախմբի Հովհ. Օձնեցու վերևում նշված առաջաբանը, բայց դա չի խանգարել, որ Անկյուրիայի կանոնախումբը դրվի Նիկիայի կանոնախմբից առաջ։ Դրանով իսկ արդեն խանգարվել է առաջաբանում արտահայտված Հովհ. Օձնեցու և՛ սկզբունքը և՛ մոտեցումը։*

*Մի այլ փաստ. Ա խմբի հնագույն ձեռագրերում և նրանցից ընդօրինակ-*

---

*կոչումն ապաշխարութեան» կանոնախմբի վերնագիրը։ Նշում չկա նաև այն մասին, որ վերևում հիշված երկու կանոնախմբերի վերնագրերը բովանդակության ցանկից բացակայում են։ Եվ ստացվում է այն սխալ տպավորությունը, թե A ձեռագրի ցանկը, հետևապես բուն ձեռագիրը ևս, բաղկացած է 53 (+1) կանոնախմբերից և համապատասխան վերնագրերից (տե՛ս կամ հմմտ. «Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի առ Վրթանէս եպիսկոպոսապետ Սիւնեաց յաղագս կարգաց եկեղեցւոյ», Վիեննա, 1930, էջ 94—96)։ Այս թյուրիմացությունն արդյունք է այն բանի, որ Ն. Ակինյանը A ձեռագիրը չի տեսել և ուսումնասիրել։ Իրեն անհրաժեշտ փաստերը նա քաղել է Ս. Վ. Տեր-Ավետիսյանի Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքի մատենադարանի ձեռագրերի նկարագրության Ցուցակից (նույն տեղում, էջ 94)։ Եվ սխալը գալիս է վերջինից (տես և հմմտ. Մաշտոցի անվան Մատենադարանի ձեռագրատան Ձեռագրաց ցուցակների անտիպ հավաքածուում, Ցուցակ, էջ 1342 աբ)։*

[1] *էջ XXXVIII։*

[2] *Նույն տեղում, էջ 536։*

[3] *Նույն տեղում, էջ 152։*

*վածներում՝* ABCDEFHU, *Նիկիայի կանոնախմբի հենց սկզբում՝ նախքան վերնագիրը գրված է «դնի Դ»*[1]*։ Սա նշանակում է, թե Նիկիայի կանոնախումբը Կանոնագրքում դրված պետք է լինի չորրորդ տեղում։ Եվ իսկապես, Ա խմբի ձեռագրերում, անկախ այն բանից, թե «դնի Դ»-ն ձեռագրերը ունեն թե ոչ, Նիկիայի կանոնախումբը դրված է չորրորդ տեղում. այսպես՝ Առաքելական, Կղեմես, Հարանց հետևողաց, Նիկիայի, Անկյուրիայի և այլն։ Բ խմբի ձեռագրերից 16-ը՝* acdefhiklmnoprst *ունեն միայն «դնի»* (d-*ն «դնին»*), *և չունեն «Դ» նշումը, իսկ միայն* i *ձեռագրում նշված է «եւթներորդ»*[2]*։ Այս խմբում մեզ հետաքրքրող կանոնախումբը դրված է յոթերորդ տեղում՝ Առաքելական, Կղեմես, Թադեոս, Փիլիպպոս, Հարանց հետևողաց, Նիկիա հերթականությամբ։ Միթե պարզ չէ, որ նախնական ձևը պետք է լինի Ա խմբի ունեցածը։*

*Այնուհետև, վերևում* i *ձեռագրի օրինակով բերեցինք Բ խմբի ձեռագրերում Ա—Խ կանոնախմբերի համակարգը։ Եթե մի պահ այս կանոնախմբերի հերթականությունից հանենք այն կանոնախմբերը, որոնք չեն մտել «Կանոնագիրք Հայոց»-ի Ա հատորի, այսինքն Հովհ. Օձնեցու հավաքածուի մեջ, բացառությամբ մեկ հատվածի, ուր հերթականությունը խանգարված է, դարձյալ կունենանք կանոնախմբերի Ա խմբի համակարգը։ Բերենք այդ համակարգն ըստ* i *ձեռագրի, ձախ կողմում պահելով կանոնախմբերի տվյալ ձեռագրի համարակալումները, իսկ աջ կողմում՝ կլոր փակագծերում նշելով Ա խմբի ունեցածը.*

| | | | |
|---|---|---|---|
| *Ա. Առաքելական* | *(Ա)* | *ԻԲ. Անտիոք* | *(Թ)* |
| *Բ. Կղեմես* | *(Բ)* | *ԻԴ. Լավոդիկե* | *(Ժ)* |
| *Ե. Հարանց հետևողաց* | *(Գ)* | *ԻԵ. Սարդիկե* | *(ԺԲ)* |
| *Զ. Անկյուրիա* | *(Ե)* | *ԻԷ. Եփեսոս* | *(ԺԴ)* |
| *Է. Նիկիա* | *(Դ)* | *ԻԹ. Սահակ Պարթև* | *(ԺԷ)* |
| *Թ. Գր. Լուսավորիչ* | *(ԺԱ)* | *Լ. Շահապիվան* | *(ԺԸ)* |
| *Ժ. Աթանաս Աղեքսանդրացի* | *(ԺԵ)* | *ԼԱ. Սևանտոս* | *(ԺԹ)* |
| *ԺԲ. Կ. Պոլիս* | *(ԺԳ)* | *ԼԳ. Հովհ. Մանդակունի* | *(ԻԱ)* |
| *ԺԴ և ԺԵ. Բարսեղ Կեսարացի* | *(ԺԶ)* | *ԼԴ. Աբրահամ Մամիկոնեից եպիսկոպոս* | *(ԻԲ)* |
| *ԺԸ. Ներսես և Ներշապուհ* | *(Ի)* | *ԼԵ. Վերջին Սահակ* | *(ԻԳ)* |
| *ԺԹ. Կեսարիա* | *(Զ)* | *ԼԶ. Հովհ. Օձնեցի* | *(ԻԴ)* |
| *Ի. Նեոկեսարիա* | *(Է)* | | |
| *ԻԱ. Գանգրա* | *(Ը)* | | |

*Երբ համեմատում ենք այս համակարգը ձեռագրերի Ա խմբի ունեցածի հետ, ինչպես վերևում նշեցինք, խանգարված ենք տեսնում սկզբի մի հատվածը միայն՝*

*Անկյուրիա*

---

[1] *Նույն տեղում, էջ 114, 1-ին տողատակ։ Հմմտ. նաև № 3562-ի «Դ. Կանոնք Նիկիայ գլուխք Ի» (էջ 277ա) վկայության հետ. թեև բուն ձեռագրում կանոնախումբը նշված է վեցերորդ տեղում այս հաջորդականությամբ՝ Առաքելական, Կղեմես, Թադեոս, Փիլիպպոս, Հարանց հետևողաց, Նիկիա։ Ի դեպ, ձեռագրի մի շարք էջեր կազմելիս դասավորել են ետևառաջ, այդ պատճառով Մակար Ա-ի, Եփրեմ Ասորու և Կյուրեղ Աղեքսանդրացու կանոնախմբերը ընկել են Կղեմեսի և Թադեոսի կանոնախմբերի միջև։ Եվ ստացվում է այն սխալ տպավորությունը, թե Նիկիայի կանոնախումբը այստեղ դրված է իններորդ տեղում։*

[2] *Նույն տեղում։*

*Նիկիա*
*Գր. Լուսավորիչ*
*Աթանաս Աղեքսանդրացի*
*Կ. Պոլիս*
*Բարսեղ Կեսարացի*
*Ներսես և Ներշապուհ։*

*Ուրեմն, դժվար չէ նկատել, որ B խմբի ձեռագրերում կանոնախմբերի հաջորդականության հենքը Ա խմբի ունեցած համակարգն է։*

*Իսկ ապա, երբ ուշադիր ուսումնասիրում ենք Ա—Խ կանոնախմբերի դասավորությունը ձեռագրերի Ա խմբում, նկատում ենք, որ հայ եկեղեցու ավանդական առաջին լուսավորիչ Թադեոս առաքյալի կանոնախումբը դրված է 26 (ԻԶ)-րդ տեղում, Հովհ. Օձնեցու կանոնախմբից հետո։ Ներքևում*[1] *Թադեոս առաքյալի կանոնախումբը ներկա ձևի մեջ համարել ենք ուշ շրջանի, նույնիսկ Հովհ. Օձնեցուց հետո հանդես եկած կեղծ գործ, որի մասին, հասկանալի պատճառով, տեղեկություն նա չուներ, այլապես կմուծեր իր հավաքածուի մեջ, որպես հայ եկեղեցում բարձր հեղինակություն ունեցող անձնավորության կանոնական գործ, մի անձնավորություն, որի անվան հետ է կապվում հայ եկեղեցու առաքելական հորջորջումը։ Այդ պատճառով էլ ճիշտ կերպով այն դրվել է Օձնեցու կանոնախմբից հետո։ Մինչդեռ ձեռագրերի B խմբում այն դրված է 3 (Գ)-րդ տեղում, Օձնեցու կանոնախմբից շատ առաջ։ Բանն այդպես է ընթացել Բարսեղ Կեսարացու անունով հայտնի մի այլ կանոնախմբի հետ*[2]*, որը ուշ շրջանի կեղծիք լինելու պատճառով Ա խմբի ձեռագրերում դրված է Օձնեցու կանոնախմբից բավականին հետո՝ 36 (ԼԶ)-րդ տեղում, իսկ B խմբում՝ Օձնեցու կանոնախմբից առաջ 16 (ԺԶ)-րդ տեղում։ Կան նաև նման այլ փաստեր։*

*Ի վերջո կանոնագիրք-ձեռագրերի սկզբում դրված առարկայական ցանկը B խմբի* it *ձեռագրերում զարմանալի կերպով համապատասխանում է Ա խմբի* A *և սրան հարող այլ ձեռագրերի ցանկերին, երկու դեպքում էլ միևնույն 288 վերնագրերը։* it *ձեռագրերում առարկայական ցանկը համապատասխանում է Ա խմբի* A *ձեռագրին, և ոչ թե իր՝ B խմբի մյուս ձեռագրերի ունեցածին, թեև այստեղ վերնագրերի դիմաց նշված հոդվածների ընդհանուր կարգահամարները տարբեր են, քանի որ տարբեր է նաև կանոնախմբերի հաջորդականությունը։*

*Կարծում ենք բերված փաստերը կհաստատեն այն հետևությունը, թե կանոնագիրք-ձեռագրերի B խումբը (*i*-ին հարող) առաջ է եկել Ա (*A*-ին հարող) խմբից։*

*Կանոնագիրք-ձեռագրերի Ա և B խմբերի լծորդության հարցը պարզելուց հետո մեզ հետաքրքրում է կարևոր այն հարցը, թե Հովհ. Օձնեցու կազմած կանոնական հավաքածուն՝ Կանոնագիրքը, կառուցվածքի իմաստով այս երկու խումբ ձեռագրերից ո՞րի մեջ է անաղարտ պահվել։ Առանց փաստեր բերելու, բայց փաստերը նկատի ունենալով, «Կանոնագիրք Հայոց»-ի Ա հատորում նշել էինք, որ Օձնեցու Կանոնագիրքը անաղարտ է մնացել ձեռագրերի Ա խմբում*[3]*։ Ի՞նչ փաստեր են բերել մեզ նման եզրահանգման։ Հիշենք*

1 *Տե՛ս էջ XLIII—XLIV։*
2 *Տե՛ս Ներքևում, էջ LXV—LXXI։*
3 *էջ XLI։*

Կանոնագրքին առընթեր Հովհ. Օձնեցու հիշատակարանի մի հատվածը. «...Ոմանք առ ոմանս եւ ոչ ամենեքին առ ամենեսեան սոքա սերմանեալք, կամեցայ զբովանդակ զառ ի նոցանէն կանոնական սահմանեալ բան ի միում տեղւոջ գեղեցկագործ մատենիւ ի հայրապետանոցի աստ արմատացուցանել»[1]: Սակայն, Օձնեցին միայն ցաքուցրիվ եղած կանոնախմբերը չէ, որ ի մի է հավաքել և կազմել իր ժողովածուն: Նա կատարել է նաև այլ բնույթի աշխատանք: Դարձյալ լսենք նրան. «Գրեցաք ի սմա ոչ միայն զկանոնական սահմանեալն նոցա շարակարգութիւնս, այլ եւ **զժամանակն եւ զպատճառն ի սոյն այս ի ճերfս ածեալ յաւելաf, ընդ նմին և զգլուխս անցճիւոց ճամառաւտեալ բանիւf ի սկզբան անդ նախակարգեցաf, զի անաշխատաբար անդուստ զբանն յիւրում տեղւոջն գտցէ խնդրողն»**[2] (ընդգծումն մերն է—Վ. Հ.):

Ուրեմն, կանոնական ցաքուցրիվ բնագրերից ժողովածու կազմելուց զատ, Օձնեցին կանոնախմբերի սկզբում դրել է իր հետազոտման արդյունքները՝ առանձին կանոնախմբերի ստեղծման ժամանակի ու պատճառի մասին տեղեկություններ և կանոնախմբերի բովանդակության համառոտ ցանկեր: Ա խմբի ձեռագրերում այս բանը տեսնում ենք հաջորդաբար դրված Ա—ԻԴ կանոնախմբերում, իսկ այնուհետև մյուս կանոնախմբերում, որոնք Կանոնագրքին ավելացվել են Օձնեցուց հետո, նման բան չենք նկատում[3]: Օձնեցու կազմած ժողովածուում, անշուշտ, վերջինը պետք է դրված լիներ իր անունով հայտնի կանոնախումբը: Եվ ձեռագրերի Ա խմբում 24 (ԻԴ)-րդ համարի տակ նշված է այն: Քանի որ կանոնախմբերի Օձնեցու տված բովանդակության համառոտ ցանկերը մասնավորապես, և նրա մեկընդմեջ տված կանոնախմբերի ժամանակի ու պատճառի մասին տեղեկությունները առկա են Ա-ից մինչև ԻԴ կանոնախմբերում, այսինքն 24 կանոնախմբերում, նշանակում է դրանով՝ 24-րդ կանոնախմբով պետք է եզրափակել Օձնեցու ժողովածուի բովանդակությունը:

Այս տեսանկյունով այժմ քննենք Բ խմբի ձեռագրերը: Օձնեցու կանոնախումբը վերջինիս տարբեր ձեռագրերում մի երկու համարի զանազանությամբ դրված է 36—38-րդ համարների տակ, այսպես, efghilqrt-ում՝ 36, kop-ում՝ 37, abcdmsuv-ում՝ 38: Եթե այս համարներից որևէ մեկը ենթադրաբար

---

[1] Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 536:

[2] Նույն տեղում:

[3] Վերևում նշված 24 կանոնախմբերը, որոնցից բաղկացած է Օձնեցու Կանոնագիրքը, ունեն բովանդակության ցանկեր: Բայց այս կանոնախմբերից 10-ը, որոնք, բացառությամբ Սարդիկեի կանոնախմբի, անհատ անձնավորությունների՝ Կղեմեսի, Հարանց հետևողաց, Գրիգոր Լուսավորչի, Բարսեղ Կեսարացու, Սահակ Պարթևի, Սևանտոսի, Հովհ. Մանդակունու, Աբրահամ Մամիկոնեից եպիսկոպոսի և Հովհ. Օձնեցու կանոնախմբերն են, Օձնեցու ասածի նման ժամանակի և պատճառի մասին տեղեկություններ՝ առաջաբաններ չունեն, որոնք կազմել է Օձնեցին: Սրան հակառակ, 14 կանոնախմբեր՝ Առաքելական՝ Նիկիայի, Անկյուրիայի, Կեսարիայի, Նեոկեսարիայի, Գանգրայի, Անտիոքի, Լավոդիկեի, Կ. Պոլսի, Եփեսոսի, Շահապիվանի, որոնց թվում Աթանաս Աղեքսանդրացու, Ներսես Բագրևանդացու և Սահակ Ձորոփորեցու կանոնախմբերն ունեն նման առաջաբաններ: Թե ինչո՞վ կարելի է բացատրել միօրինակության այս խախտումը՝ դժվար է ասել: Մնում է ենթադրել, որ Օձնեցին որոշ կանոնախմբերի վերաբերյալ տվյալներ չի ունեցել (օրինակ, Սարդիկեի ժողովի մասին), իսկ որոշ կանոնախմբեր էլ, հայտնի բան են (օրինակ, Գրիգոր Լուսավորիչ, Սահակ Պարթև և այլն): Նկատի չունենալով նշված բացառությունները, ընդհանուր երևույթն այն է, որ առաջաբաններ տրված են ժողովների կանոնախմբերում, իսկ անհատ անձնավորությունների կանոնախմբերին՝ ոչ:

*ընդունենք Օձնեցու ժողովածուի բովանդակած նյութերի վերջին սահմանը, կնշանակի այն ընդգրկել է 36—38 կանոնախումբ։ Բայց այս ճիշտ լինել չի կարող, որովհետև, ինչպես ցույց ենք տվել ներքևում[1], այստեղ ընդգրկված մի շարք բնագրեր, որոնք կազմվել են կամ ի հայտ են եկել Օձնեցուց հետո (Թադեոս առաքյալի, Բարսեղ Կեսարացուն վերագրված, Վաչագանի և Դվինի կանոնախմբերը), այս խմբում դրվել են Օձնեցու կանոնախմբից առաջ։*

*Մի այլ փաստ. Հովհ. Օձնեցու կատարած աշխատանքները բոլոր՝ 36—38 կանոնախմբերում չենք գտնում։ Օձնեցուց հետո Կանոնագրքին ավելացված կանոնախմբերը՝ Ա խմբի 24 կանոնախմբերից հետո մուծվածները չունեն նրա տեղեկությունները կանոնախմբերի ժամանակի և հանդես գալու պատճառի մասին, ինչպես նաև կանոնախմբերի բովանդակության համառոտ ցանկերը։ Իսկ վերջիններս ունեն միայն այն կանոնախմբերը, որոնք Ա խմբի ձեռագրերում դրված են Ա—ԻԴ համարների տակ։*

*Այնուհետև. երբ ուսումնասիրում ենք 24 կանոնախմբերի հաջորդականությունը Ա խմբի ձեռագրերում, նկատում ենք. որոշ սկզբունք. նախ դրված են թարգմանական՝ ասորական և ապա հունական, այնուհետև ինքնուրույն՝ հայկական կանոնախմբերը։ Այս կարգը խախտված է միայն երկու տեղ, ուր Գրիգոր Լուսավորչի և Սեանտոսի կանոնախմբերն իրենց տեղում չեն։ Առաջինը դրված է Լավոդիկեի և Սարդիկեի կանոնախմբերի միջև 16 (ԺԶ)-րդ համարի տակ, տեղական ժողովների թվարկման շարքում, իսկ երկրորդը՝ Շահապիվանի և Ներսես Բագրևանդացու կանոնախմբերի միջև 19 (ԺԹ)-րդ համարի տակ։ Այս խանգարումը, թերևս, կարող է հետագայում առաջացած լինել[2]։ Ձեռագրերի Ա խմբում աչքի է ընկնում կանոնախմբերի ըստ նշանակության դասավորումը։ Մինչդեռ Բ խմբի ձեռագրերում կանոնախմբերի համակարգը կարծես դրված է ժամանակագրական հաջորդականությամբ, բայց այդ սկզբունքը, մի շարք դեպքերում, խախտված է։*

*Այսպիսով, վերևում բերված փաստերը մեզ բերում են այն հետևության, որ Հովհ. Օձնեցու կազմած Կանոնագրքի կառուցվածքի համակարգը պահպանվել է ձեռագրերի Ա խմբում։*

## Բ. ԿԱՆՈՆԱԳՐՔԻ X ԴԱՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Մինչև այստեղ պարզեցինք երկու հարց. առաջին՝ այն, որ կանոնագիրք-ձեռագրերի Բ խումբը առաջ է եկել Ա խմբից. երկրորդ՝ Հովհ. Օձնեցու Կանոնագիրքը համեմատաբար անաղարտ պահվել է ձեռագրերի Ա խմբում։ Այժմ անցնենք հաջորդ հարցին՝ Օձնեցուց հետո Կանոնագրքին ավելացված շերտերի և սրանց ժամանակի պարզաբանմանը։ Սակայն, մինչ այդ անհրաժեշտ ենք համարում նշել, որ երբ խոսք է լինում Կանոնագրքի ճոխացման, այսինքն նոր շերտերի ավելացման մասին, ապա դա չի նշանակում, թե այդ ավելացումը կատարվել է մեկ անգամից։ Պատահել է, որ Կանոնագրքի որևէ տարբերակին ավելացվել է մեկ կանոնախումբ, ինչպես օրինակ Ա խմբի*

---

[1] *էջ XLIII—CIV։*

[2] *«Կանոնագիրք Հայոց»-ի Ա հատորի Հավելվածում հրատարակված Կանոնագրքի հնագույն և ընդարձակ մի բեկորը հաստատում է մեր այս ենթադրությունը։ Այստեղ Շահապիվանի ժողովի կանոնախմբին հաջորդում է ոչ թե Սեանտոսի կանոնախումբը, ինչպես Ա խմբի ձեռագրերում է, այլ Ներսես Բագրևանդացու և Ներշապուհ եպիսկոպոսի կանոնախումբը (էջ 665)։*

BCDEFGH *կամ* U *ձեռագրերում, որոնք* A-*ի նկատմամբ ունեն մեկով ավելի, թեև տարբեր կանոնախումբ*[1], *իսկ մեկ այլ տարբերակի, ինչպես օրինակ, միևնույն խմբի* IJKLMNOQRSTVXYZWô *ձեռագրերում, միևնույն երեք կանոնախմբերը*[2]: *Այդպիսին է վիճակը նաև կանոնագիրք-ձեռագրերի* Բ *խմբում: Մեր նշած երկու խմբերում Կանոնագիրքն այժմյան ձևի մեջ հանդես է եկել դարերի ընթացքում:*

*Հովհ. Օձնեցուց հետո Կանոնագրքին ավելացված յուրաքանչյուր կանոնախմբի ստույգ կամ մոտավոր ժամանակը որոշել անհնար է փաստեր չլինելու պատճառով, սակայն միանգամայն հնարավոր է որոշել կանոնախմբերի որոշ շերտերի Կանոնագիրք մուծվելու մոտավոր ժամանակը: Այդ հարցի ուսումնասիրությունը դյուրացնելու նպատակով առանձին-առանձին խոսենք կանոնագիրք-ձեռագրերի նախ* Ա, *այնուհետև* Բ *խմբին ավելացված շերտերի մասին:*

*Հայագիտության երախտավոր Ներսես Ակինյանը, կարելի է ասել, առաջիններից մեկն է եղել, որ զբաղվել է Կանոնագրքի կառուցվածքի և սրա կանոնական բնագրերի ավելացման ժամանակի հարցերի քննությամբ: Այդ հարցերին անդրադարձել է իր երկու աշխատություններում*[3]: *Ահա թե ինչպես է պատկերացնում նա Կանոնագրքի կառուցվածքը այժմյան ձևի մեջ:*

*1. «Հովհաննես Օձնեցվո Հավաքումը կը բովանդակեր ԻԴ գլուխ (իմա՛ կանոնախումբ —Վ. Հ.):* **Այսքան գլուխներով ծանոթ կ'երևա Կանոնագիրքս Անանիա Մոկացվո** *(943—967): Անանիա երբ կը գրէր յուր հերքմնագիրը խոսրով Անձևացվո տեսություններուն դեմ (Արարատ, 1897, էջ 277 հհ.) անծանոթ էր դեռ Մակարի Թղթին...: Նաև Անանիա Հաղբատեցի, երբ Պետրոս Գետադարձ կաթողիկոսի (1019—1054) հրամանավ կը գրէր յուր Հակաճառությունը, ուներ աչքի առաջ Մակարի Թղթին ընդարձակ օրինակը և անկե կը բերեր յուր կոչումները, ուստի անծանոթ էր իրեն Թղթին համառոտ խմբագրությունը Կանոնագրքին մեջ:* **Այս նկատառումներով կրնանք ի հառաջագունե ըսել թէ Կանոնագիրքը մինչև 1050 ծանոթ էր հրապարակին միայն Ա—ԻԵ գլուխներով»**[4]**:**

*2. «Ընդարձակված Կանոնագրքին կը պատահինք առաջին անգամ 1098-ին, երբ հին Հավաքումը գտած է ԻԶ—ԾԳ հավելվածական մասեր:...Համենայն դեպս Հովհ. Օձնեցվո կազմած Կանոնագրքին մեջ Ը դարու առաջին քառորդին գոյություն չունեին նույն մատենին այժմեան օրինակներու ԻԶ—ԾԳ—ԿԲ գլուխները, որոնց թվին մեջ են նաև Սիոն կաթողիկոսի (767—775) Կանոններն (գլուխ ԻԶ. այս համարը սխալ է նշված. պետք է լինի ԻԵ* Ա *խմբում, իսկ* Բ *խմբում՝ Լէ —Վ. Հ.) և Մակարի այս Թուղթը (գլ. խ. համարը դարձյալ սխալ է նշված, պետք է լինի ԼԹ* Ա *խմբում, իսկ* Բ *խմբում՝ ԺԱ—Վ. Հ.): Որովհետև Ժ դարու երկրորդ քառորդին Անանիա Մոկացի չէր տեսած Կանոնագրքին մեջ խ գլուխը և ԺԱ դարու առաջին կեսին Անանիա Հաղբատեցի կարդացած*

---

[1] *«Կանոնագիրք Հայոց», հատ. Ա, էջ XXXI:*

[2] *Նույն տեղում, էջ XXXI—XXXII:*

[3] *Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի առ Վրթանէս եպիսկոպոսապետ Սիւնեաց յաղագս կարգաց եկեղեցւոյ, Վիեննա, 1930, էջ 93—110: Նույնի Ազարիա վ. Սասնեցի ատղագէտ, տոմարագէտ և տաղաչափ (Հանդէս Ամսօրեայ, 1936, VII—IX, էջ 315—320, 324—325):*

[4] *Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 108:*

*է Մակարի Թուղթը Կանոնագրքեն դուրս,* **կրնանք Կանոնագրքին ընդարձակված խմբագրության կանխագույն եզր նշանակել 1050, բայց ավելի ճիշտ 1098:**

*Տարակույս չի մնար, թե Կանոնագրքին ԾԴ—ԿԲ գլուխները (ըստ Վիեննայի Թ. 810-ի)[1] ավելի ուշ ժամանակ կցված են, ուստի 1098են ետքը և 1600 են հառաջ»[2] (ամենուր ընդգծումը մերն է—Վ. Հ.):*

*Հիշեցնենք նաև, որ Ակինյանից բերված այս ընդարձակ քաղվածքում խոսվում է Կանոնագրքի մասին ընդհանրապես, առանց նկատի ունենալու կանոնագիրք-ձեռագրերի Ա և Բ խմբերի բովանդակած նյութերի կառուցվածքը։ Այդպիսի մոտեցումը չի կարող լրիվ և ճիշտ պատկերացում տալ։*

*Այժմ* A *ձեռագրի, ասել է թե Ա խմբի, օրինակով քննենք մեզ հետաքրքրող հարցը լծորդված Ակինյանի վերևում բերված վարկածի հետ։*

*VIII դարի առաջին քառորդում, երբ պատրաստ էր Հովհ. Օձնեցու կազմած Կանոնագիրքը, և դրանից էլ բավական հետո՝ մինչև X դարի վերջերը, տակավին գոյություն չունեին վերջինիս ձեռագրերի այժմյան ձևի մեր բաժանման երկու՝ Ա և Բ խմբերը։ Օձնեցու ժամանակ, ինչպես ճիշտ նշում է նաև Ակինյանը, Կանոնագիրքը բաղկացած էր 24 կանոնախմբերից, Ակինյանի արտահայտությամբ՝ գլուխներից[3]։ Օձնեցուց հետո Կանոնագրքում առաջինը մուծվել է Սիոն կաթողիկոսի կամ Պարտավի ժողովի (768 թ.) կանոնախումբը 25 (ԻԵ)-րդ համարի տակ, Օձնեցու կանոնախմբից՝ 24 (ԻԴ)-րդ համարից անմիջապես հետո։ Եվ դա հասկանալի է, որովհետև ժամանակագրական առումով այն ամենամոտն է Օձնեցուն։ Այնուհետև Կանոնագրքում մուծվել են այլ կանոնախմբեր. թե ե՞րբ և քանի՞սը հայտնի չեն։ Միայն Անանիա Մոկացու (X դարի 40—60-ական թթ.) թղթերից իմանում ենք, որ նա օգտվել է Կանոնագրքի մի այնպիսի օրինակից, ուր, արդեն, առկա են հետագա մի շարք կանոնախմբերի ավելացումներ։ Իր երրորդ և մասնավորապես չորրորդ նամակներում Անանիա Մոկացին վկայակոչում է և մեջբերումներ է կատարում Կանոնագրքի Առաքեական, Կղեմեսի, Հարանց հետևողաց, Անկյուրիայի, Նիկիայի, Բարսեղ Կեսարացու, Սահակ Պարթևի, Շահապիվանի և Երկրորդ Նիկիական կանոնախմբերից[4]։ Ուրեմն X դարի կեսերին Կանոնագրքում արդեն մուծված էր Երկրորդ Նիկիական կանոնախումբը։ Իսկ վերջինս Օձնեցու Կանոնագիրքն անաղարտ պահած Ա խմբի ձեռագրերում դրված է 34 (ԼԴ)-րդ համարի տակ[5]։*

---

*[1] Ի դեպ նշենք, որ բացառությամբ* A *հնագույն և Անկյուրիայի Կարմիր վանքի մատենադարանի մի ձեռագրի, արտասահմանի զանազան մատենադարաններում և գրադարաններում պահվող կանոնագիրք—ձեռագրերի մասին չենք խոսում, որովհետև այդպիսինները Կանոնագրքի կառուցվածքի տեսանկյունով ուշադրության արժանի նոր բան չեն կարող տալ մեր Մատենադարանում պահվող շուրջ երկու հարյուր համանման ձեռագրերի համեմատությամբ։ Ուստի մեզ հետաքրքրող հարցերի պարզաբանման համար բավարարվել ենք Կանոնագրքի գիտա-քննական բնագիրը կազմելու համար օգտագործած 50 ձեռագրերով։*

*[2] Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 109—110։*

*[3] Այս ճիշտ տեսակետը 109-րդ էջում (տե՛ս վերևի երկրորդ քաղվածքում) երկիցս ժխտվում է նշելով թե Կանոնագրքին Օձնեցուց հետո ավելացրել են 26 (ԻԶ)-րդ գլխից սկսած։ Քանի որ Օձնեցու Կանոնագիրքը բովանդակում է 24 գլուխ, իսկ սրան կատարված հետագա ավելացումները սկսվել են 26 (ԻԶ)-րդ գլխից, ապա ի՞նչ եղավ 25 (ԻԵ)-րդ գլուխը, որը ոչ Օձնեցու Կանոնագրքում է գտնվում և ոչ էլ հետագայում է ավելացվել, մնաց անհասկանալի։ Այս գուցե, տպագրական վրիպում է։*

*[4] Արարատ, 1897, Հավելված, էջ 278—279, 281—282, 284—285, 287—288։*

*[5] Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 4, հատ. Բ, էջ 73։*

Ճիշտ ենք համարում Ակինյանի այն կարծիքը, թե Անանիա Մոկացին, երբ գրում էր իր հերքմնագիրը[1] Խոսրով Անձևացու դեմ՝ Կանոնագրքում չի գտել Մակար Ա Երուսաղեմի հայրապետի նամակը[2], այնտեղ տակավին մուծված չլինելու պատճառով, այլապես նա իր քննած հարցի վերաբերյալ ճոխ և անհերքելի տվյալներ կգտներ այնտեղ և կօգտագործեր։ Նշանակում է՝ Անանիա Մոկացու ժամանակ՝ X դարի 40—60-ական թվականներին Կանոնագրքում եղել է Երկրորդ Նիկիական կանոնախումբը 34 (ԼԴ)-րդ համարով և այնտեղ չի եղել Երուսաղեմի հայրապետ Մակար Ա-ի կանոնախումբը, որը դրված է 39 (ԼԹ)-րդ համարի տակ։ Կարելի՞ է ասել, թե Կանոնագիրքն Անանիա Մոկացու ժամանակ եզրափակվել է Երկրորդ Նիկիական կանոնախմբով։ Չենք համարձակվում։ Այդ ժամանակ Կանոնագիրքը կարող էր եզրափակված լինել 34—38-րդ կանոնախմբերից որևէ մեկով կամ հենց Երկրորդ Նիկիական և կամ 38-րդ տեղում դրված Դվինի կանոնախմբով։ Եթե ճիշտ է մեր ենթադրությունը թե Աղվանից արքա Վաչագանի կանոնախումբը Կանոնագիրք է մուծվել Մովսես Կաղանկատվացու «Պատմութիւն Աղուանից աշխարհի» աշխատությունից[3], նշանակում է Կանոնագրքում այն մուծվել է և դրվել Երկրորդ Նիկիական կանոնախմբից անմիջապես հետո մինչև Անանիա Մոկացին և կամ վերջինիցս հետո դարձյալ X դարում։ Մյուս կողմից հայտնի է, որ Անանիա Մոկացին օգտվել է Բարսեղ Կեսարացու կանոնախմբի ԺԲ կանոնից[4], բայց նա չգիտե վերջինիս անունով հայտնի երկրորդ կանոնախմբի մասին, որովհետև եթե գիտենար՝ զանազանելու նպատակով անպայման կնշեր կանոնախմբի համարը (ասենք՝ Բարսեղի առաջի՞ն, թե երկրորդ կանոնախումբ), երբ մեջ էր բերում ԺԲ կանոնը, ինչպես նշում է Երկրորդ Նիկիականի համար՝ տարբերելով իսկական Նիկիայի կանոնախմբից։ Ի դեպ՝ այդպես է վարվել Մխիթար Գոշը, երբ օգտագործել է Բարսեղի երկու կանոնախմբերն էլ։ Եվ մեզ այնպես է թվում, որ այս կանոնախումբը, որը Կանոնագրքում դրված է 36 (ԼԶ)-րդ տեղում, Աղվանից Վաչագան արքայի կանոնախմբից անմիջապես հետո, Անանիա Մոկացու ժամանակ Կանոնագրքում տակավին մուծված չէր։ Դժբախտաբար այս վարկածը լոկ մի ենթադրություն է, որը դեռ կարիք ունի ավելի հիմնավոր փաստարկման։

Համենայն դեպս մեզ համար պարզ է դառնում այն, որ Կանոնագրքի VIII դարի խմբագրությունում ընդգրկված Ա—ԻԴ կանոնախմբերին Օձնեցուց հետո մինչև Անանիա Մոկացին ավելացվել են ԻԵ—ԼԴ կամ ԻԵ—ԼԸ կանոնախմբերը հետևյալ հաջորդականությամբ՝ Սիոն կաթողիկոսի կամ Պարտավի, Թադեոս և Փիլիպպոս առաքյալների, Անտիոքի (Բ), Եփրեմ Ասորու, Կյուրեղ Աղեքսանդրացու, Եպիփան Կիպրացու, Եղիշեի, Անտիոքի խոստովանության, Երկրորդ Նիկիական, Վաչագանի, Բարսեղ Կեսարացու, Գրիգոր Աստվածաբանի և Դվինի կանոնախմբերը։ Հետևապես, ճիշտ չենք համարում Ակինյանի երկիցս

---

[1] Իմա՛ երկրորդ նամակը, Արարատ, 1897, Հավելված, էջ 275—277։

[2] Այս նամակի ընդարձակ բնագիրը, որից օգտվել է Անանիա Շիրակացին VII դարում, և ոչ Անանիա Հաղբատեցին XI դարում, ինչպես սխալմամբ կարծում է Ակինյանը, (այս մասին տե՛ս ներքևում, էջ XCII—XCVI), մեզ չի հասել, իսկ համառոտ խմբագրությունը ավելի անագան մուծվել է Կանոնագրքում 39 (ԼԹ)-րդ համարի տակ (տե՛ս Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 4, հատ. Բ, էջ 216։

[3] Տե՛ս ներքևում, էջ 345—346։

[4] Արարատ, 1897, Հավելված, էջ 282։ Հեղինակը ԺԲ-ի փոխարեն նշում է «երեքտասան»։

Հայտնած կարծիքը, թե «Կանոնագիրքը մինչև 1050 (իմա՛ Անանիա Հաղբատեցու ժամանակ —Վ. Հ.) ծանոթ էր հրապարակին միայն Ա—ԻԵ գլուխներով»[1] կամ «Այսքան գլուխներով (իմա՛ 24, որ բովանդակել է Օձնեցու հավաքածուն—Վ. Հ.) ծանոթ կերևա Կանոնագիրքս Անանիա Մոկացվո (943—967)»[2]։ Այլ խոսքով, Օձնեցուց հետո մինչև Անանիա Մոկացին Կանոնագրքում ավելացումներ չեն կատարվել։ Ինչպես նկատեց ընթերցողը, վերևում ցույց տվեցինք հակառակը։

X դարի կեսերից՝ Անանիա Մոկացուց հետո Կանոնագրքում ավելացրել են նոր կանոնախմբեր։ Սակայն դարձյալ դժվար է որոշել դրանց յուրաքանչյուրի ստույգ ժամանակը։

Հայտնի է, որ Մխիթար Գոշը մեծ չափով օգտագործել է Կանոնագիրքը իր Դատաստանագիրքը կազմելիս։ Բայց դա չի նշանակում, թե նա օգտագործել է Կանոնագրքի այժմյան ձևի մի տարբերակը, ընդհակառակը, ինչպես Ս. Տիգրանյանն է ցույց տվել, Մխիթար Գոշը կանոնական կարգը քաղել է Կանոնագրքի մի հին օրինակից[3]։ Ս. Տիգրանյանի այդ կարծիքը թեև ճիշտ է, բայց նա, դժբախտաբար, ընդհանուր դիտողությունից այն կողմ չի անցնում։ Փորձենք մանավորեցնել այս հարցի պատասխանը։ Մխիթար Գոշի մի վկայությունից թերևս կարելի է եզրակացնել, որ նա իր ձեռքի տակ ունեցել է մի այնպիսի Կանոնագիրք,[4] որի վերջին կանոնախումբը եղել են 645 թ. Դվինում տեղի ունեցած ժողովի որոշումները։ Իր Դատաստանագրքի Ա մասի ԾԴ հոդվածում Գոշը Կանոնագրքից գրեթե բառացի մեջբերելով 645 թվի Դվինի ժողովի է կանոնը, վերջում ավելացնում է. «Զայս իսկ առեալ է վերջնոյ կանոնի զհրաման, զոր եւ մեք չափաւորապէս ըստ զանազանութեան եդաք...»[5] (ընդգծումը մերն է —Վ. Հ.)։ Այս հատվածի առիթով Վ. Բաստամյանցը իր ծանոթագրություններից մեկում գրում է. «Ինչպես երևում է մեր Մխիթարի ձեռքին եղել է Կանոնագրքի մի այնպիսի օրինակ, որը վերջանում է եղել Դվինի հինգերորդ ժողովի կանոններով, որովհետև Դատաստանագրքիս սույն Առաջին մասի մեջ, նա բացի այդ ժողովի կանոններից, այլևս քաղվածք չէ անում ուրիշ կանոններից։ Թեպետ Գոշի վերաբերմամբ պետք է վերջին ժողով համարվի Պարտավի Երկրորդ ժողովը, որը եղավ 768 թվին՝ Սիոն կաթողիկոսի ժամանակ, ըստ որում հետևյալ ժողովները, որ եղան մինչև Մխիթարի ժամանակը, չհաստատեցին կանոններ, բայց որովհետև նախ մեր կանոնագրքերի մեջ ժողովները չեն դասավորված ժամանակագրական կարգով, և երկրորդ՝ Դվինի Ե ժողովը, որ եղավ 123 տարի Պարտավի Բ ժողովից առաջ, դրած է կանոնագրքերի մեջ դորանից հետո ուստի մեր հեղինակը դյուրությամբ կարող էր սխալվել և Դվինի Ե ժողովը համարել վերջին ժողով։

[1] Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 108։

[2] Նույն տեղում։

[3] „Судебная книга“ Мхитара и „Книга канонов“, стр. 69—71 (տե՛ս Известия Кавказского историко—археологического Института в Тифлисе, том III, Тифлис, 1925, стр. 61—72).

[4] Մեզ անհիմն ու անտեղի է թվում Ս. Տիգրանյանի քննադատական այն դիտողությունը, որ իբր թե Վ. Բաստամյանցի կարծիքով Մխիթարն իր Դատաստանագիրքը կազմելիս օգտվել է ոչ թե «Կանոնագիրք Հայոց» ամբողջական ժողովածուից, այլ կանոնական տարբեր հուշարձաններից (տե՛ս նշված հոդվածը, էջ 63, 68)։

[5] Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց, էջ 211։

*Ահա, կարծեմ, միայն այսպիսով կարելի է բացատրել կանոնիս խոսքերը՝ զայս իսկ առեալ է վերջնոյ կանոնի զհրաման»*[1]։

*Վ. Բաստամյանցն իր կարծիքի սկզբի ճիշտ դրույթից՝ «Մեր Մխիթարի ձեռքին եղել է Կանոնագրքի մի այնպիսի օրինակ, որը վերջանում է եղել Դվինի հինգերորդ ժողովի կանոններով» հրաժարվում է և կարծում, թե, «վերջնոյ կանոնի զհրաման» ասելով Գոշը թերևս նկատի է ունեցել Հայաստանում տեղի ունեցած ժողովների ժամանակագրական կարգը և Դվինի ժողովի համեմատ կանոններ հաստատող վերջին ժողովը համարելով Պարտավինը «մեր հեղինակը դյուրությամբ կարող էր սխալվել և Դվինի Ե ժողովը համարել վերջին ժողովը»։ Այստեղ չի երևում Վ. Բաստամյանցի որոշակի կարծիքը և նա իզուր է մեղադրում Գոշին։ Հետևյալ երկու փաստերի համադրումը և դրանից բխող եզրակացությունը ճշտություն են մտցնում այդ հարցում և ժխտում Վ. Բաստամյանցի վարկածի երկրորդ մասը։*

*Վերևում նշված հոդվածում Ս. Տիգրանյանը համեմատելով Գոշի Դատաստանագրքի և կանոնագիրք-ձեռագրերի* B *(մեր բաժանմամբ Ա) խմբի համապատասխան կանոնախմբերի հաջորդական կարգը, գրում է. «Դատաստանագրքում կանոնադրությունների (իմա՛ կանոնախմբերի —Վ. Հ.) հետևողական դասավորության կարգը հենց այն է, որի մեջ այդ նույն կանոնադրությունները դասավորված են Կանոնագրքի կազմում, նրա* B *խմբի ժողովածուներում»*[2]*։ Այնուհետև եզրակացնում է. «Այսպիսով, Մխիթարը կանոնական կարգը քաղել է Կանոնագիրք ժողովածուից, օգտվելով նրա հին օրինակից...»*[3]*։ Մյուս կողմից, իրավացի է Վ. Բաստամյանցը, երբ վերևի ընդարձակ քաղվածքում գրում է, թե Դատաստանագրքի առաջին մասում Գոշի մեջբերումները Կանոնագրքից ավարտվում են Դվինի 645 թվի ժողովի կանոնների քաղվածներով։ Հետևապես Գոշի «Զայս իսկ առեալ է վերջնոյ կանոնի զհրաման» խոսքերն այլ բան չեն նշանակում, քան այն, որ իր ձեռքի տակ եղած Կանոնագիրքը եզրափակվել է 645 թվի Դվինի ժողովի կանոնախմբով, որը Ա խմբի ձեռագրերում դրված է 38 (ԼԸ)-րդ համարի տակ։*

*Այսպիսով, և՛ Անանիա Մոկացու և՛ Մխիթար Գոշի օգտագործած կանոնագիրք-ձեռագրերը չեն ունեցել Երուսաղեմի հայրապետ Մակար Ա-ի կանոնախումբը։ Հիշեցնենք նաև, որ Գոշի ժամանակ՝ XII դարի վերջերին Կիլիկիայում արդեն գոյություն ուներ Ա խմբի ձեռագրերից հնագույնը՝* A*-ն, ընդօրինակված 1098 թվականին, այն էլ 57 և ոչ թե 38 կանոնախմբով, ինչպես էր Գոշի ունեցած օրինակը։ Հնարավոր է, որ Անանիա Մոկացու ձեռքի տակ եղած Կանոնագրքի օրինակը ավարտված լիներ նույն այս՝ 645 թվի Դվինի ժողովի կանոնախմբով։ Գոշի ունեցած Կանոնագրքի օրինակի ծագումը պետք է ընդունել ոչ թե իրեն մոտ ժամանակներում, այլ շատ ավելի հին՝ Անանիա Մոկացու ժամանակներում կամ ավելի վաղ. իսկ սրա մի այլ օրինակում շարունակել են ավելացնել Մակար Ա-ի*[4] *և Սահակ Պարթևի «Գիր ասանդութեան»*

---

*[1] Նույն տեղում, էջ 211, ծանոթ. 413։*

*[2] Տե՛ս նշված աշխատությունը, էջ 70։*

*[3] Նույն տեղում, էջ 71։*

*[4] Երուսաղեմի հայրապետ Մակար Ա-ի Թուղթը Հայոց Վրթանես կաթողիկոսին (տե՛ս սույն հատորում՝ ԼԹ համարի տակ) գտնվում է նաև «Գիրք Թղթոց»-ի 407—412-րդ էջերում (այս միակ հրատարակությունը կատարվել է 1901 թվին Թիֆլիսում, 1298 թվին ընդօրինակված ձեռագրից)։ Մատենագրական հուշարձանի ճոխացման փայլուն օրինակ է նաև այս ժողովածուն։*

կանոնախմբերը 39 (ԼԹ)-րդ և 40 (Խ)-րդ համարների տակ։ Ուստի ընդունելի չէ Ակինյանի այն կարծիքը, թե «Ընդարձակված Կանոնագրքին կը պատահինք առաջին անգամ 1098-ին, երբ հին Հավաքումը գտած է ԻՁ—ԾԳ հավելվածական մասեր» (ընդգծումը մերն է—Վ. Հ.)։ Ընդհակառակը, ինչպես ցույց տվեցինք վերևում Կանոնագրքի հին հավաքմանը առաջին անգամ հանդիպում ենք Անանիա Մոկացուց մի փոքր հետո՝ X դարի վերջերին ԻԵ—Խ ավելացված կանոնախմբերով, որոնք պահված են Ա խմբի ձեռագրերում։ Եվ սա էլ հանդիսանում է Կանոնագիրք X դարի խմբագրությունը, որի մասին չի խոսում Ակինյանը։

Այսպիսով, X դարի 90-ական թվականներին Կանոնագրքի տվյալ օրինակն ընդգրկում էր քառասուն կանոնախումբ, ներառյալ Հովհ. Օձնեցու ժողովածուն։ Կանոնագրքի այս բովանդակությունն այն գումարն է, որի մասին ձեռագրերի Ա և Բ խմբերի առնչությունների հարցը քննելիս, վերևում խոսեցինք որպես որոշակի մի ժամանակաշրջանում ամբողջական դարձած մատենագրական հուշարձանի։

Ինչպիսի՞ փաստերով Հովհ. Օձնեցու ժողովածուն և սրան ավելացված ԻԵ—Խ կանոնախմբերը դիտում ենք մի գործ, որից առաջ եկավ կանոնագրքեձեռագրերի Բ խումբը՝ ի տարբերություն Ա խմբի միևնույն նյութի այլ դասավորության։ Եվ ապա՝ այդ հարցը ինչո՞ւ ենք կապում X դարի 90-ական թվականների հետ։ Այս հարցերի պարզաբանմանը օգնում է ձեռագրերի բազմիցս հիշված Բ խումբն իր ենթախմբերով։ Ուստի դիմում ենք այդ խմբի ձեռագրերին։

it ձեռագրերը բովանդակության ցանկում ունեն 40 կանոնախմբի վերնագիր և այդ հաջորդականությամբ էլ կանոնախմբերը դասավորված են բուն ձեռագրերում։ Սակայն ԻԸ՝ Կյուրեղ Աղեքսանդրացու կանոնախմբի ընդօրինակումով ձեռագրերն այնուհետև մնում են թերի, չընդօրինակվելու պատճառով։ Կասկածից վեր է, որ եթե ընդօրինակությունը շարունակվեր, ապա մնացած կանոնախմբերը նույն հաջորդականությամբ կլինեին մինչև վերջ, Եղիշեի «Վասն դիւահարաց»՝ Բ խմբի ձեռագրերի 40-րդ կանոնախումբը։

Ձեռագրերի մյուս ենթախմբում՝ hlou-ում այլ բան ենք տեսնում 40 կանոնախմբերից հետո։ l ձեռագրի բովանդակության ցանկում նշված են it ձեռագրերի պարունակած Ա—Խ կանոնախմբերի վերնագրերը։ Միևնույն հաջորդականությամբ էլ կանոնախմբերը դասավորված են բուն ձեռագրերում, սակայն դրանից հետո ավելացված են նոր կանոնախմբեր, որոնց վերնագրերը

---

Վերջինիս XI դարի ծավալը փոքր է և եզրափակվում է հրատարակության 218-րդ էջով։ Այս մասին տե՛ս Ներքևում, էջ XLVII։ Գրիգոր Վկայասերի ժամանակ, 1078 թվին, Մակարի Թուղթը «Գիրք թղթոց»-ում չէր մտել, որովհետև այն տակավին ծանոթ չէր։ Այս Թուղթը ծանոթ չէր նաև Անանիա Մոկացուն, քանզի, ինչպես ցույց տվեցինք վերևում, վերջինս երբ X դարի կեսերին գրում էր իր հերքմնագիրը Խոսրով Անձևացու դեմ՝ Կանոնագիրքը օգտագործելիս Մակարի Թուղթը այնտեղ չէր տեսել։ Մյուս կողմից Մակարի Թուղթը Կանոնագրքում տեսնում ենք X դարի 90-ական թվականների խմբագրության մեջ։ Այսպիսով, որևէ վանքի հնագույն մի ձեռագրից հայտնաբերվել է այն և մուծվել Կանոնագրքում Անանիա Մոկացուց՝ X դարի կեսերից մինչև նույն դարի 90-ական թվականներին ընկած միջոցում։ Այնուհետև բավականին ուշ, գուցե և Թովմաս Հոոմկլայեցու 1298 թվի ընդօրինակության ժամանակ, «Գիրք թղթոց»-ում այն մուծվել է Կանոնագրքից։

*չեն նշված բովանդակության ցանկում*[1]*։ Վիճակը ճիշտ այդպիսին է Անկյուրիայի Կարմիր վանքի մատենադարանում պահվող մի ձեռագրում*[2]*։*

*Մի այլ ենթախմբում՝* acdkmpsv *նույնությամբ պահված են* it*-ի Ա—Խ և* hlou*-ի ԽԱ—ԿԵ կանոնախմբերը և այնուհետև կանոնախմբերը թե բովանդակության ցանկում և թե բուն ձեռագրերում շարունակվում են*[3]*։*

*Վերջապես Բ խմբի* befgq *ձեռագրերի ենթախմբում Ա—Խ կանոնախմբերը գտնում ենք միևնույն հաջորդականությամբ, ինչպես* it *և վերևում նշված մյուս ձեռագրերում է, սակայն 40 (Խ)-րդ կանոնախմբից հետո այս ենթախմբի շարունակությունը տարբեր է վերևում նշված ձեռագրերից*[4]*։*

*Այսպիսով, միևնույն Ա—Խ կանոնախմբերը կանոնագիրք-ձեռագրերի Բ խմբի բոլոր ենթախմբերում կրկնվում են և այնուհետև շարունակությունների մեջ շեղվում։ Այս պարագան մեզ բերեց այն եզրակացության, որ Կանոնագիրքը Հովհ. Օձնեցուց հետո ճոխացվելով մի որոշ և հայտնի ժամանակում բովանդակել է 40 կանոնախումբ։*

*Հօգուտ այս եզրակացության խոսում է նաև հետևյալ փաստը. Ա խմբի հնագույն* A *ձեռագիրը բաղկացած է 57 կանոնախմբերից՝ բաժանված 1332 կանոնների, սակայն ձեռագրի սկզբում դրված առարկայական ցանկում*[5] *արտահայտված են 40 կանոնախմբերի 1257 կանոնները։ Մնացած կանոնախմբերն իրենց կանոններով արտահայտված չեն առարկայական ցանկում։*

---

[1] *Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ XXXIV—XXXV։ Միևնույն բանն է կրկնվում նաև* r *ձեռագրում, միայն այն տարբերությամբ, որ շարունակությունը կազմում է ոչ միայն* hlou*-ի ունեցածը, այլ ավելին, ինչպես* acdkmpsv *ձեռագրերը։ Այս ենթախմբի* hou *ձեռագրերը սկզբից թերթ ընկնելու պատճառով՝ չունեն կանոնախմբերի բովանդակության ցանկերը։ Քանի որ* hlou *ձեռագրերը նյութի կառուցվածքի և այլընթերցումներով միմյանց համընկնում են, չենք կասկածում, որ եթե այդ երեք ձեռագրերի սկզբի թերթերի կորուստը չլիներ, այդտեղ էլ կնկատեինք, այն ինչ* l*-ում։*

[2] *Ինչպես նշում է Ցուցակի հեղինակ Բաբգեն Կյուլեսերյանը, ձեռագրի սկզբում դրված է մի ցանկ. «որուն համեմատ ԼԹ գլուխներէ բաղկացած պիտի ըլլա Կանոնագիրքը, և այդ ԼԹ գլուխներուն առաջինն է Առաքելական կանոնք, իսկ վերջինը՝ Սրբոյն Եղիշէի կանոնները, բայց Կանոնագիրքս իրողության մէջ կը բովանդակե աւելի գլուխներ» (Ցուցակ ձեռագրաց Անկիւրոյ Կարմիր վանուց և շրջակայից, Անթիլիաս, 1957, էջ 231)։ Բերված ցանկից երևում է, որ նշված ԼԹ-ի փոխարեն պետք է լինի Խ։ Այդ թյուրիմացությունն արդյունք է տպագրական սխալի։ Կանոնախմբերը թվելիս ԼԷ-ից հետո համարակալումը փոխանակ շարունակվելու՝ ԼԸ, ԼԹ և այլն, այն նորից ետ է գնում՝ ԼԶ, ԼԷ, ԼԸ (նույն տեղում, էջ 233), և այսպես մինչև վերջ։ Մյուս կողմից ԼԹ համարի տակ նշված է ոչ թե Եղիշեի կանոնախումբը, ինչպես նշում է Բաբգեն Կյուլեսերյանը, այլ Հովհ. Կ. Պոլսի հայրապետի, որը հաջորդում է Եղիշեի կանոնախմբին և* hlou *ձեռագրերում դրված է 41-րդ համարի տակ։ Այսպիսով, այստեղ էլ ցանկում և բուն ձեռագրում նույն 40 կանոնախմբերն են, իսկ շարունակությունը* hlou *և ապա* acdkmprsv*-ի նման։ Այն տարբերությամբ միայն, որ 40 կանոնախմբերի շարքում «Խոստովանութիւն Անտիոքայ» գրության (ԻԳ համարի տակ) փոխարեն այստեղ Ե համարի տակ կրկնված է Փիլիպպոս առաքյալին վերագրված կանոնախումբը (նույն տեղում, էջ 231)։*

acdkmprsv *ենթախմբի* acdr *ձեռագրերին է համապատասխանում նաև Մատենադարանի կողմից վերջերս ձեռք բերած № 10311 ձեռագիրը, ընդօրինակված 1637 թ.։ Այն չենք օգտագործել սույն հատորում, վերջինս ավարտված և տպագրության հանձնված լինելու պատճառով։*

[3] *Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ XXXV—XXXVI։ Այս ենթախմբին է պատկանում նաև ամերիկաբնակ Տիրան արքեպիսկոպոս Ներսոյանի ձեռագիրը, որի չորատիպ պատճենը վերջերս շնորհակալությամբ ստացանք նրանից։*

[4] *Նույն տեղում, էջ XXXVI—XXXVII։*

[5] *Նույն տեղում, էջ 5—17։*

*Արդ՝ ի՞նչ նյութեր են դրանք։ Վերջիններս այն նյութերն են, որոնք ավելացվել են* A *ձեռագրում նախագաղափար ձեռագրի ունեցած 40 կանոնախմբերին*[1]*։*

*Եթե մինչև այժմ մեր ջանքերն ուղղված էին կանոնագիրք-ձեռագրերի նախքան այժմյան ձևի մեր բաժանման երկու խմբերի հանդես գալը ցույց տալուն և վերջինիս 40 կանոնախմբեր պարունակելու խնդրի պարզելուն, ապա այժմ պարզենք այն հարցը, թե կանոնագիրք-ձեռագրերի* B *խումբը երբ հանդես եկավ։*

*Վերևում, երբ խոսում էինք Կանոնագրքի կառուցվածքի մասին՝ մեկից ավելի անգամներ նշեցինք, որ Կանոնագիրքը 40 կանոնախմբերով հանդես եկավ X դարի վերջերին կամ նույն դարի 90-ական թվականներին։*

*Հովհ. Օձնեցու կազմած Կանոնագրքին նոր կանոնախմբերի ավելացման մասին խոսելիս, նկատեցինք, որ* B *խմբի մի քանի ձեռագրերում՝* abefgkmpqrs *որոշակի տեղում կանոնական բնագրերն ընդհատվում են պատմական բնույթի նյութերով, որոնք բացառությամբ մեկի*[2]*, կապ չունեն Կանոնագրքի բովանդակած նյութերի հետ, և այնուհետև դարձյալ շարունակվում են կանոնական բնագրերը։ Պատմական բնույթի այդ նյութերը* befgq *ձեռագրերում գտնվում են 40 (Խ)-րդ և 41 (ԽԱ)-րդ՝ Եղիշեի «Վասն դիւահարաց» և «Թուղթ զոր առաքեաց Յակոբոս առ Կոդրատոս» կանոնախմբերի միջև։ Այդ նյութերը կբերենք* e *ձեռագրի համաձայն.*

*1. «Նիկիոյ սուրբ ժողովոյն անուանքն են այսոքիկ։*

*2. Եւ որք ի Կեսարիա ժողովեցան։*

*3. Յետ մատենի ժամանակագրութեան թագաւոր տէրանց աշխարհիս արանց Արշակունեաց։*

*4. Ի սրբոյն Գրիգորէ Բագրեւան եւ Արշակունիք միտ* (sic) *եպիսկոպոսք վիճակ կարգեալ էին...։*

*5. Եպիսկոպոս Երուսաղէմի որոյ եառյ* (sic) *պատրիա[ր]գք եղեն։*

*6. Կ. Պօլսի եպիսկոպոսք որք հայրապետք*[3]*»։*

---

[1] A *և սրան հարող ձեռագրերում (Ա խումբ) 40 (Խ)-րդ համարի տակ դրված է Սահակ Պարթևի «Գիր ապաշխարութեան» կանոնախումբը, որպես 1257 (ՌՄԾԷ)-րդ կանոն։ Վերջինս արտահայտված է առարկայական ցանկի ՁԳ «Վասն հաւատոյ եւ կրաւնից ի Նիկիայ հաւատոյն հաստատուն լինելոյ և նզովեալ հաւատք են այսոքիկ» վերնագրի ներքո (Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 9—10)։ 1257 (ՌՄԾԷ)-րդ կանոնին հաջորդող կանոնները, որոնք արտահայտում են 41—57-րդ կանոնախմբերը, առարկայական ցանկում չենք գտնում, բացառությամբ 1258 (ՌՄԾԸ)-րդ (տե՛ս Դ վերնագրի տակ, նույն տեղում, էջ 5), 1322 (ՌՅԻԲ)—1325 (ՌՅԻԵ)-րդ (տե՛ս Ջ վերնագրի տակ, նույն տեղում, էջ 5) կանոնների՝ թվով 5։ Ավելի ուշադիր ուսումնասիրությունը ցույց տվեց, որ դրանք առարկայական ցանկին գրչի կողմից ավելացվել են* A *ձեռագրի ընդօրինակությունից հետո։ Այսպիսով, 17 կանոնախմբեր (ԽԱ—ԾԷ) 75 կանոններով չեն մտել 40 կանոնախմբերից բաղկացած Կանոնագրքի առարկայական ցանկի սկզբնական բնագրում, որովհետև այդպիսիները Կանոնագրքում այն ժամանակ տակավին մուծված չէին։ Դրանք չեն մտել նաև* A *ձեռագրի առարկայական ցանկում, որովհետև առարկայական ցանկի ընդօրինակվելուց հետո են միայն մուծվել այստեղ։*

[2] *Այդ Նիկիայի ժողովի մասնակիցների ցանկն է, որը հնագույն և մյուս ձեռագրերում դրված է Նիկիայի կանոնախմբին կից և այդպես էլ հրատարակեցինք «Կանոնագիրք Հայոց»-ի Ա հատորի 133—150 էջերում։*

[3] *Ձեռ. № 783, էջ 185ա—190ա.* b *(էջ 243բ—251բ) և* q *(էջ 146բ—152բ) ձեռագրերում չեն պահվել վերևում նշված 2-րդ և 6-րդ վերնագրերի նյութերը, իսկ* g *ձեռագրում չեն ընդօրինակվել 3-րդ համարի նյութի մեծ մասը և 4-րդ համարի նյութն ամբողջությամբ,*

*Մեզ հետաքրքրող հարցը պարզելու համար այս շարքի նյութերից ուշադրության արժանի է երրորդը, որը հայոց կաթողիկոսների ցանկն է, տրված աթոռակալության տարիների սկզբունքով։ Այս բնագիրն ավարտվում է այսպիսի հատվածով. «Յետ սորա (Խաչիկ Ա Արշարունի —Վ. Հ.) ամ մի առանց վերադիտողի մնաց աշխարհս Հայոց։ Իսկ Գագիկ Շահնշահ ժողովեալ զամենայն եպիսկոպոսն եւ զհարս ձեռնադրեն զտէր Սարգիսն հայրապետ աթոռ սրբոյն Գրիգորի, որ <է> հայ թվականն ՆԽԱ (992) էր, իսկ ի ծնընդենէ Փրկչին ՋՂԵ (995) եւ ի սկզբանց անդի ՅՆԺԷ (6417)։ Սա նմանեալ սրբոյն Գրիգորի Հայոց լուսաւորչի»*[1]*։*

*Ուրեմն կաթողիկոսների ցանկը ավարտվում է Սարգիս Ա Սևանցու կաթողիկոս օծվելու հիշատակությամբ։ Իսկ թե վերջինս քանի տարի է հովվապետել, ցանկի կազմողին հայտնի չէ։ Այստեղից էլ նկատի ունենալով վերևում նշված թվականը՝ 992-ը*[2] *կարելի է եզրակացնել, որ կաթողիկոսների ցանկը*

---

*որովհետև նախագաղափար օրինակից թերթ է ընկած եղել. այդ մասին ձեռագրի գրիչը 159ա էջի ներքևի լուսանցքում գրում է. «Թուի թէ այս տեղս պակաս է և յօրինակէն է, որ չմեղադրես»։*

akmps *ձեռագրերում այդ նյութերը գրված են մի փոքր այլ դասավորությամբ, որը բերում ենք ըստ* k *ձեռագրի.*

*«Եպիսկոպոսք Երուսաղէմի, որք յետոյ պատրիարք։*

*Կ. Պօլսի եպիսկոպոսք, որք ապա և հայրապետք։*

*Նիկիայ ժողովոյն անուանք։*

*Քահանայապետք Հայոց մեծաց։*

*Եպիսկոպոսք Կամսարական տանն» (էջ 218բ—227ա. նույնը տե՛ս նաև* a, *էջ 210բ—219ա,* m, *էջ 220բ—229ա,* p, *էջ 240բ—247ա,* s, *էջ 275—286ա)։ Այս ձեռագրերում չի պահվել միայն* e*-ի ունեցած «Եւ որք ի Կեսարիա ժողովեցան» ցանկը։*

*Նշված այս նյութերը հիշված ձեռագրերում դրված են ոչ թե 40 և 41-րդ՝ Եղիշեի և «Թուղթ Յակոբայ առ Կոդրատոս» կանոնախմբերի միջև, ինչպես* befgq *ձեռագրերում է, այլ 40-րդ կանոնախմբից երեք (Հովհ. Ոսկեբերանի, Ագաթանգեղոսի և Մեսրոպի) կանոնախումբ հետո։ Այն հանգամանքը, որ 40-րդ՝ Եղիշեի կանոնախմբից հետո այս ձեռագրերում Կանոնագրքի բովանդակած նյութերի շարունակությունը շեղվում է, մեզ ենթադրել է տալիս որ այստեղ ևս պատմական բնույթի նշված նյութերը դրել են 40 կանոնախմբեր պարունակող կանոնագիրք-ձեռագրերի երեք կանոնախումբ ավելացնելուց հետո և կամ սկզբնական բնագրի վերջին մասը վերադասավորել են, այսինքն՝ 40 կանոնախմբեր պարունակող կանոնագիրք-ձեռագրի վերջում գտնվող պատմական բնույթի նյութերը դրել են վերևում նշված երեք կանոնախմբերը վերադասավորելուց հետո։ Ըստ երևույթին այդպես են վարվել նույն այդ նյութերի հետ* r *ձեռագրում, ուր պահվել են Նիկիայի ժողովի մասնակիցների, հայոց կաթողիկոսների և Կամսարական տան եպիսկոպոսների ցանկերը (էջ 278բ—284բ), որոնք դրված են այս օրինակի վերջին՝ 78-րդ «Վասն քահանայագործութեան» կանոնախմբից հետո։*

[1] *Նույն տեղում, էջ 189աբ։ Տե՛ս նույնը* f*-ում, էջ 286աբ,* g*-ում, էջ 159 աբ,* q*-ում, էջ 152ա, իսկ* b*-ում հայոց թվականը նշված է «ԽԱ» (էջ 249ա)։ Կասկածից դուրս է, որ հարյուրավոր նշանակող «Ն» տառն ընկել է։ Վերջին թվականը* bq*-ում նշված է ՅՉԺԷ (6717, էջ 249ա, էջ 152ա)։ Բերված քաղվածքը տե՛ս նաև* a, *էջ 218բ,* k, *էջ 227ա,* m, *էջ 227բ,* p, *էջ 247ա,* s, *էջ 285բ,* r, *էջ 284ա։* ampsr *ձեռագրերում բնագրի ՋՂԵ-ի փոխարեն ՋՂԷ,* r*-ում՝ ՅՆԺԷ-ի փոխարեն ՅՆՃԷ։ Անշուշտ երկու դեպքում էլ առկա է գրչագրական սխալ։*

[2] *Այս թվականի փոխարեն Ն. Մելիք-Թանգյանը նշում է 997։ Մեջբերված քաղվածքում զուգահեռաբար տրված է երեք թվական՝ հայոց ՆԽԱ (992), փրկչական՝ ՋՂԵ (995), որոշ ձեռագրերում ՋՂԷ (997) և աշխարհի արարչագործության՝ ՅՆԺԷ (6417), իր տարբերակներով։ 995 և 997 (ՋՂԵ և ՋՂԷ) թվականներն առաջ են եկել «Ե» և «Է» տառերի սովորական շփոթումից։ Ն. Մելիք-Թանգյանը հետևել է փրկչական 997 (ՋՂԷ) թվականին։ Ճիշտը թերևս հայոց ՆԽԱ (441) թվականին 551 ավելացնելն է՝ 992։*

կազմված պետք է լինի 992 թվականին կամ մոտակա հաջորդ մի քանի տարիներին։

Ի՞նչ գործ ունեն Կանոնագրքում պատմական այս նյութերը, որոնք իրենց բնույթով անհարիր են նրան։ Այս հանգամանքից արդեն Ն. Մելիք-Թանգյանն էր եզրակացրել, որ կաթողիկոսական ցանկի գոյությունը մի շարք ձեռագրերում նշանակում է, թե այդ բնագրերը 997 թվականից առաջ են գոյություն ունեցել Կանոնագրքում և սահման հանդիսացել վերջինիս վավերական և անվավեր բնագրերի միջև. Նա այդպես էլ գրում է. «997 թվի այս ցանկից հետո մասերը անվավեր են, այսինքն հավելվածներ են 10-րդ և 11-րդ և այլն դարերի»[1]։

Մի կողմ թողնելով Ն. Մելիք-Թանգյանի կարծիքի մասնակի ուղղումը[2] նշենք, որ կաթողիկոսական ցանկը կազմել է մի ժամանակակից և մուծել Կանոնագրքում այն ժամանակ, երբ վերջինս Հովհ. Օձնեցուց հետո ճոխացվելով X դարի 90-ական թվականներին՝ Հայոց կաթողիկոսների ցանկը կազմելու պահին բովանդակում էր 40 կանոնախմբեր։ Այդ եզրակացությանն ենք հանգում այն փաստից, որ B խմբի befgq ձեռագրերում,—որի շարունակությունը, ի դեպ, մյուս ենթախմբերից տարբերվում է իր կարճությամբ,—նշված նյութերը դրված են 40 կանոնախմբերից հետո։ Եվ մեզ այնպես է թվում, որ ծագման առումով, այս ձեռագրերը հանդիսանում են it ձեռագրերից հետո Կանոնագրքին ավելացված նոր շերտը պարունակող առաջին և հնագույն օրինակի տարբերակները. այսինքն B խմբի սկզբնական օրինակի տարբերակները հանդիսանում են it ձեռագրերը, իսկ befgq ձեռագրերը նաև այս խմբին կատարված առաջին ավելացումներ ունեցող հետագա օրինակները։

Եվ այս ժամանակ էլ՝ X դարի 90-ական թվականներին Կանոնագրքում կանոնախմբերը թերևս ժամանակագրական հաջորդականությամբ դասավորելու միտումով վերջիններս դասավորել են և ստեղծել կանոնագիրք-ձեռագրերի մեր բաժանման B խումբը՝ նախ it, ապա ճոխացվելով հանդես են եկել befgq, hlou և acdkmpsv ենթախմբերը։ Այսպիսով, մինչև X դարի 90-ական թվականները գոյություն չի ունեցել կանոնագիրք-ձեռագրերի B խումբը։

Վերևում շարադրվածից հետո կարող ենք ասել, որ X դարի վերջերին Կանոնագիրքը մեզ ներկայանում է 40 կանոնախմբերով, այն է՝ առաջին մաս՝ Օձնեցու ժողոված՝ Ա—ԻԹ, ապա երկրորդ մաս՝ Օձնեցուց հետո ավելացված Լ—Խ կանոնախմբերով՝ Սիոնի (կամ Պարտավի) կանոնախմբից մինչև Սահակ Պարթևի «Գիր աւանդութեան» կանոնախումբը։ Այս երկրորդ մասն էլ հրապարակվում է Կանոնագրքի B հատորում։

---

[1] Հայոց եկեղեցական իրաւունքը, Ա գիրք, Շուշի, 1903, էջ 67, 369։

[2] Ն. Մելիք-Թանգյանը մի փոքր սխալվում է. նախ. ոչ թե անվավեր են, այլ կեղծ, երկրորդ. այդպիսին են ոչ միայն 992 թվի (հեղինակը նշում է 997) կաթողիկոսների ցանկից հետո Կանոնագրքում մուծված գրեթե բոլոր կանոնախմբերը, այլ մինչ այդ Կանոնագրքում մուծված որիշ կանոնախմբեր ևս, օրինակ, Թադեոս և Փիլիպպոս առաքյալներին, Գրիգոր Աստվածաբանին, Բարսեղ Կեսարացուն վերագրված և այլ կանոնախմբեր, որոնք ներկայացված են սույն հատորում։ Նման բնագրեր գտնում ենք նույնիսկ Հովհ. Օձնեցու կազմած Կանոնագրքում, օրինակ, Առաքյալների, Հարանց հետևողաց, Սեանտոսի, թերևս Կեսարիայի կանոնախմբերը։

## Գ. ԿԱՆՈՆԱԳԻՐՔ—ՁԵՌԱԳՐԵՐԻ Ա ԽՄԲԻ XI ԴԱՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Սկսած X դարի վերջերից, երբ արդեն Կանոնագրքի հին ձեռագրերի կողքին առաջ եկավ B խումբը, Կանոնագրքի բովանդակության ճոխացումը ձեռագրերի Ա և B խմբերում ընթանում էր միմյանցից անկախ երկու ուղղությամբ։*

*Նախ քննենք Ա խմբի ձեռագրերի X դարի 90-ական թվականներից հետո ավելացված կանոնական շերտերի հարցը։ Կանոնագիրք-ձեռագրերի հնագույնի A-ի հիշատակարանում գրիչը խնդրում է հիշել. «Եւ զտէր խաչիկ, որ յերկար ժամանակ անդարատ սիրով եւ յաւժար կամաւք զաւրինակս ընձեռեաց»[1]։ Ուրեմն A ձեռագիրն ընդօրինակվել է տեր Խաչիկի օրինակից։ Թե ի՞նչ բովանդակություն և հնություն է ունեցել վերջինս, ինչպես նշում է Ն. Ակինյանը, չգիտենք[2]։ Սակայն որոշ փաստեր այդ ուղղությամբ մեզ խորհրդածությունների առիթ են տալիս։ Վերևում ցույց տվեցինք, որ A ձեռագիրը թեև բովանդակում է 57 կանոնախումբ 1332 կանոններով, սակայն նույն ձեռագրի սկզբում դրված առարկայական ցանկում ընդգրկված են 40 կանոնախմբերի նյութերը՝ 1257 կանոններով։ Մնացած 17 կանոնախմբերը՝ 41—57-րդը առարկայական ցանկում չեն արտահայտվում։ Մյուս կողմից միևնույն ձեռագրի գրիչը հիշատակարանում գրում է, որ կանոնագիրք-մատյանը տեր Խաչիկի օրինակից սկսում է ընդօրինակել նախ Սև լեռան Պաղահու վանքում, այնուհետև ինչ ինչ պատճառներով կիսատ է թողնում ընդօրինակությունը, թերի ձեռագիրը և գաղափար օրինակը (տեր Խաչիկի) իր հետ վերցնելով, տեղափոխվում է Արմեն լեռան կատարին գտնվող Հովհանս անապատը, որի վանահայր Մելիտեն և փոխանորդ Գրիգորիսը «գիտացեալ զթերութիւն գործոյս... հրամայեն լնուլ զպակասութիւն թերութեան գործոյս բարեաց[3]»։ Ակինյանը գրչի այս տեղեկության մասին գրում է. «Հովհաննես գրչի երկդիմի խոսքերը կարծել կու տան, թե այս օրինակությունը նախորդին (իմա՛ տեր Խաչիկի օրինակի —Վ. Հ.) թերությունները լրացնել ձգտած ըլլա։ ...Այստեղ խոսքը անշուշտ Պաղահա վանքին մեջ սկսված ընդօրինակության մասին է, որ կլրացվի Հովհանս անապատին մեջ, ձեռնտվությամբ նույն վանքի առաջնորդներուն, բայց կարող է «լնուլ զպակասութիւն թերութեան գործոյս» ակնարկել նաև Կանոնագրքին պակաս մասերու նոր հավելվածներով ճոխանալը»[4]։*

*Ակինյանը ճիշտ է, երբ գրչի այդ վկայությունն անվանում է երկդիմի, թեև երկդիմի է նաև իր ենթադրությունը։ Եվ մեզ այնպես է թվում, որ գրչի «լնուլ զպակասութիւն թերութեան գործոյս» խոսքերը վերաբերում են և կիսատ մնացած ձեռագրի ընդօրինակության ավարտելուն և նոր կանոնախմբեր ավելացնելուն։ Ելնելով այս կարծիքից թերևս չսխալվենք, եթե ասենք, որ տեր Խաչիկի օրինակը, որից 1098 թվականին ընդօրինակվել է A ձեռագիրը, ունեցել է 40 կանոնախումբ, իսկ ձեռագրում պարունակված 57 կանոնախմբերից 17-ը՝ ԽԱ—ԾԷ ավելացվել են 1098 թվականի ընդօրինակության ժամանակ։*

---

1 *Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ* LX։

2 *Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 109։*

3 *Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ* LX։

4 *Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 109։*

*Հետևապես, բարեփոխելով Ակինյանի կարծիքը, կարող ենք ասել, որ Հովհ. Օձնեցու կողմից կազմված և հետագայում ճոխացած Կանոնագիրքն իր հնագույն ձևի մեջ պահված է X դարի վերջին ձևավորված խմբագրության մեջ, որը և արտահայտված է* A *և սրան հարող ձեռագրերում։ Կանոնագրքի ներկա հատորում X դարի վերջին խմբագրությունը (ԻԵ—Խ կանոնախմբերը) ներկայացնելու հետ միասին, ներկայացված է նաև նրա հետագա՝ XI դարի խմբագրությունը (ԽԱ—ԾԷ կանոնախմբերը), որը արդյունք է Հովհանա անապատի վանահայր Մելիտեի և փոխանորդ Գրիգորիսի և ձեռագրի գրիչ Հովհաննեսի աշխատասիրության։*

*Հետաքրքրությունից զուրկ չէ այն փաստը, որ ժամանակակիցների ձեռքում՝ XII դարի վերջերին Կանոնագրքի օրինակներն ունեցել են տարբեր ծավալներ։ Եթե Մխիթար Գոշի օգտագործած Կանոնագրքի բովանդակությունը, ինչպես ցույց տվեցինք վերևում, եզրափակվել է 645 թվի Դվինի ժողովի կանոնախմբով և Կանոնագրքի այս տարբերակն էլ կառուցվածքի իմաստով ունեցել է X դարի հնություն, ապա Գոշի ժամանակակից՝ Ներսես Լամբրոնացին ունեցել է Կանոնագրքի մի այլ տարբերակ, որն ավելի ճոխ բովանդակություն ուներ և որի հնությունը բովանդակության իմաստով XI դարից այն կողմ չէր անցնում։ Ներսես Լամբրոնացին իր հիշատակարաններից մեկում գրում է. «Եւ խուզեալ ընդ նա մեր* յարկեղս զրոց կաթուղիկոսարանին՝ ոչ գտաք օրէնս *(իմա՛ քաղաքական-աշխարհական —Վ. Հ.)*, բայց միայն զկանոնականս, որ ի սուրբ հարց ժողովոց էր գրեալ. *և որ ի նոյն յարեցաւ ի նոցանէ կանոնս զգուշաւորս եկեղեցւոյ։ Իսկ քաղաքի օրէնս ոչ գտաւ ի մէջ Հայոց, ոչ եկեղեցիս և ոչ առ իշխանս»*[1] *(ընդգծումը մերն է —Վ. Հ.)։*

*Ինչպես դժվար չէ եզրակացնել այս վկայությունից, Ներսես Լամբրոնացին կաթողիկոսարանում գտել է միայն «զկանոնականս, որ ի սուրբ հարց ժողովոց էր գրեալ»՝ այսինքն՝ Կանոնագիրք։ Թե ինչ ծավալ է ունեցել վերջինս կամ դրա մի որևէ տարբերակը, որը գտնվել է Սկևռայի վանքում, կարելի է իմանալ մեր Մատենադարանի № 3919 ձեռագրից*[2]*։ Դա ժողովածու է և բովանդակում է «Գործք առաքելոց», Պողոս առաքյալի թղթերի մեկնությունները և այլ նյութեր։ Ձեռագրի 207ա—218բ էջերում գտնվում է տոնացույց, ուր թվարկված են, թե տարվա ո՞ր ամսին և ո՞ր օրն ինչ տոներ են լինելու։ Տոների թվարկումը երբեմն ընդհատվում է և մեջբերումներ են արվում Կանոնագրքի զանազան կանոնախմբերի համապատասխան կանոններից, նշելով վերջիններիս կարգահամարները։ Մեջբերվածներից միայն չորս կանոնախմբերում, որոնց կարգահամարները նշված են ընդհանուր համարներով, հիշվում է, թե որտեղից են վերցրել քաղվածքները, օրինակ, «Սեբերիանոսի ի Ղուկայ Աւետարանին մեկնութենէն* ի Սկեւռային մեծ կանոնաց գիրքն, *ի ՌՅԻԳ գլու-*

---

[1] *Գարեգին Ա կաթողիկոս, Հիշատակարանք ձեռագրաց, հատ. Ա, Անթիլիաս, 1951, էջ 600. տե՛ս և հմմտ. նաև Քաղաքական օրէնք Ներսիսի Լամբրոնացւոյ, հրատ. Բասմաջյան, Պարիզ, 1907, էջ 5։*

[2] *Ձեռագրի փոքրիկ հիշատակարանում ընդօրինակության տարեթիվը նշված է ՉԾԹ (էջ 44ա)։ Մատենադարանի ձեռագրաց Ցուցակ (Երևան, 1965) կազմողները կարծելով, որ դա սխալ է, որովհետև ձեռագրի գրչությունն իրոք XVII դարի է, հարցականով դրել են 1610 թ. (էջ 1110), ՉԾԹ-ն կարդալով ՌԾԹ։ Դա կարող է ճիշտ լինել, բայց հնարավոր է, որ դա գրչի հին հիշատակարանը լինի, որը ձեռագրի նյութերի հետ ընդօրինակվել է XVII դարում։*

*խրն»*[1], «Ի տէր Ներսիսի Սկեւռային մեծ կանոնքն ի ՌՅԻԵ գլուխն՝ սրբոյն Դիոնէսիոսի բան յաղագս Աստուածածնին»[2], «Ի նոյն կանոնացն ՌՅԻԶ գլուխն ի տէր Ներսիսի Սկեւռացւոյն գրոցն է. *Մանուէլի»*[3], *«Եւ կան բանքն* ի տէր Ներսիսի Սկեւռային կանոնքն *ի ՌՅԺԸ գլուխն, ուստի եւ զայս գրեցի»*[4] *(ամենուր ընդգծումը մերն է* —Վ. Հ.):

*Այս մեջբերումները*[5] *ցույց են տալիս, որ նշված ձեռագիր տոնացույցում կատարված քաղվածքները վերցվել են Կանոնագրքի Սկևռայի վանքի առաջնորդ Ներսես Լամբրոնացու օրինակից։ Մի օրինակ, որի ունեցած Կարինի, Եպիփան Կիպրացու (Բ), Սեբերիանոսի, Հիպպոլիտի, Նեքտաոի, Դիոնեսիոսի, Մանուելի, Մելիտոնի և ուրիշ կանոնախմբերը թվով 17, կանոնական այն բնագրերն են, որոնք բացակայում են Կանոնագրքի X դարի խմբագրությունից, մինչդեռ այդպիսիները հանդիպում են XI դարի խմբագրության մեջ։ Այստեղից դժվար չէ հետևեցնել, որ Ներսես Լամբրոնացու ունեցած Կանոնագրքի օրինակը XI դարի խմբագրություն է եղել և ծագել անպայման A ձեռագրից*

---

1 *Ձեռագիր № 3919, էջ 208 ար։*

2 *Նույն տեղում, էջ 214 ա։*

3 *Նույն տեղում, էջ 215 ա։*

4 *Նույն տեղում, էջ 217 ա։ Այստեղ կանոնների կարգահամարների նշումները կատարված են միայն ընդհանուր համարներով, հակառակ այլ դեպքերի։ Այդպես են վարվել գուցե նրա համար, որ այս չորս կանոնախմբերը Կանոնագրքում առկա են մեկական կանոններով։*

*Մատենադարանի № 6076 ձեռագրում, վերջինիս հետ կապ չունեցող մի հիշատակարան մեկը մուծել է ձեռագրի վերջին էջում հետևյալ բովանդակությամբ.* ***«Թվին Ջb (1456) գրեցաւ*** *Կանոնագիրքս եւ այլ բազում բանս՝ խրատականս հոգոյ եւ մարմնոյ եւ առ Աստուծոյ սքանչելեացն եւ զօրութեանն եւ դաւանութեանն* Ներսէս հայրապետի օրինակէն: *Իմաստնոց բաւ է» (էջ 178 բ, ընդգծումը մերն է—Վ. Հ.)։ Բոլոր դեպքերում «Ներսէս հայրապետի օրինակէն» արտահայտությունը մատնացույց չի անում վերևի մեջբերումներում նշված Ներսես Լամբրոնացու օրինակը, այլ նկատի ունի Կանոնագրքի թերևս Ներսես Շնորհալու մի այլ տարբերակը, որը, առանց կասկածանքի, համարում ենք A ձեռագրի տարբերակներից մեկը։*

5 *Մեջբերումներ կատարված են նաև Առաքելական կանոնախմբի Գ, Դ, Զ, Է, Ը, ԻԴ, Նիկիայի՝ ԺԷ, Լավոդիկեի՝ ԽԶ, ԽԸ, Կարինի՝ Զ, Է, Աթանասի՝ Է, Ը, Սահակ Պարթևի՝ Խ, ԽԱ, ԽԳ, Եփրեմ Ասորու՝ Զ, Է, Եպիփան Կիպրացու՝ Գ, Ե (երկու տարբեր կանոնախմբեր) կանոններից և այլն։ Այս նշումներում, ինչպես տեսնում ենք, կանոնները հիշված են կանոնախմբերի միայն մասնավոր համարներով։ Բերված կանոնների կարգահամարները, երբ համեմատում ենք A ձեռագրի համապատասխան կանոնների համարների հետ, նկատում ենք, որ կանոնների մասնավոր համարները համապատասխանում են միմյանց, օրինակ, Առաքելական Գ, Դ, Զ և այլն, իսկ վերևում բերված չորս ընդհանուր համարներից երեքը շեղվում են A-ում եղածից, թեև երկուսում էլ հաջորդականությունը նույնն է։ Դեմ առ դեմ կդնենք երկու բնագրերի ունեցածը.*

| № 3919 ձեռագիր | A ձեռագիր |
| --- | --- |
| *Մելիտոն—ՌՅԺԸ* | *Մելիտոն—ՌՅԺԸ* |
| *Սեբերիանոս—ՌՅԻԳ* | *Սեբերիանոս—ՌՅԻ* |
| *Դիոնիսիոս—ՌՅԻԵ* | *Դիոնիսիոս—ՌՅԻԲ* |
| *Մանուել—ՌՅԻԶ* | *Մանուել—ՌՅԻԳ* |

*№ 3919 ձեռագրի շարքը ցույց է տալիս, որ Ներսես Լամբրոնացու ունեցած Կանոնագրքում Մելիտոնի և Սեբերիանոսի կանոնախմբերի միջև գտնվել են չորս կանոնախմբեր մեկական կանոնով՝ ՌՅԺԹ, ՌՅԻ, ՌՅԻԱ և ՌՅԻԲ համարներով, մինչդեռ A ձեռագրի նույն տեղում գտնվում է միայն մեկ կանոնախումբ՝ Աթանասինը։ Կանոնների համարակալումների տարբերությունը, անշուշտ, չի կարելի բացատրել գրչագրական սխալով։ Ներսես Լամբրոնացու ունեցած Կանոնագրքի վերջին կանոնախմբերն, ըստ երևույթին, ունեցել են այլ հաջորդականություն, քան A-ի վերջին մասը։*

*կամ սրա որևէ տարբերակից[1]։ Այսպիսով, եթե Արևելյան Հայաստանում Գոշը օգտագործել էր Կանոնագրքի X դարի խմբագրության մի որևէ օրինակ, ապա նույն ժամանակ Կիլիկիայում Ներսես Լամբրոնացին ունեցել էր Կանոնագրքի XI դարի խմբագրության օրինակ։*

*Այժմ անցնենք Ա խմբի ձեռագրերի բովանդակության աճի քննությանը XI դարից հետո։ Այս խմբի 29 ձեռագրերը, որոնք համարում ենք XI դարի խմբագրության արդյունք, մինչև XVII դարը բովանդակության առումով քիչ են փոփոխվել։ Չհաշված թերիները, այս խմբի մնացած ձեռագրերը պահել են Կանոնագրքի XI դարի խմբագրության բովանդակած կանոնախմբերը՝ թվով 57[2], և միայն առանձին ձեռագրերում է ավելացվել մեկ կամ ամենաշատը երեք կանոնախումբ։ Այսպես,* BCDEFGH *ձեռագրերը, բացի* AP*-ի ունեցած 57 կանոնախմբերից ունեն նաև Սիմեոն Աղվանից կաթողիկոսի անունով հայտնի կանոնախումբը։ Ուրեմն այս յոթը ձեռագրերում կանոնագրքի XI դարի խմբագրությանը ավելացվել է մեկ կանոնախումբ։* U *ձեռագրում ավելացվել է դարձյալ մեկ, ոչ նախորդ ձեռագրերինը, այլ Հովհան Ոսկեբերանի «Յաղագս սահմանի կանոնաց կարգաւորաց, որք գան ի խոստովանութիւն» կանոնախումբը։* IJKLMQRSTVXYZWô *ձեռագրերը, թեև ունեն* AP*-ի 57 կանոնախմբերը, բայց բուն ձեռագրերի (և ոչ բովանդակության ցանկերի) վերջում՝ Հովհանն Մանդակունուն վերագրված «Ի կոչումն ապաշխարութեան» կանոնախմբից հետո ավելի ունեն երեք կանոնախումբ, որոնց վերնագրերը բերում ենք համաձայն* T *ձեռագրի.*

*«Նորին կանոնք երրորդ Բարսեղի Կեսարու հայրապետին արարեալ գլուխք ՀԴ (պետք է լինի Հէ—Վ. Հ.):*

*Յոհաննու Ոսկեբերանի յաղագս սահմանի կանոնաց կարգաւորաց, որք գան ի խոստովանութիւն։*

*Յաղագս պսակի ամուսնացելոց»[3]։*

---

[1] *Այս պնդումը հաստատում է նաև հետևյալ փաստը.* A *և սրան հարող ձեռագրերում Ծ կանոնախմբի վերնագիրն այսպես է. «Մելիտոնի եպիսկոպոսի թուղթ առ* տրիպիս» *(տե՛ս ներկա հատորում, էջ 285, 1-ին տողատակ)։ Ընդգծված աղավաղված անունը նույնությամբ գտնում ենք Ներսես Լամբրոնացու օրինակում, որից և անցել է № 3919 ձեռագրում բերված քաղվածքին. «Մելիտոնի թուղթն որ առ* տրիպիս» *(էջ 217 ա)։*

[2] *Նույն 57 կանոնախմբերն է բովանդակում նաև* n *(№ 778) ձեռագիրը, որը դասել էինք Բ խմբի ձեռագրերի շարքին, սակայն կանոնախմբերի դասավորությունն այստեղ տարբեր է թե՛ Ա և թե՛ Բ խմբերից։ Այս ձեռագիրը, անշուշտ, ծագել է Ա խմբի որևէ ձեռագրից, գուցե և* A *կամ սրա մի տարբերակից և մեր հավանական ենթադրությամբ XVII դարում, Լվովում (տե՛ս ներքևում, էջ* CI—CII):

[3] T, *էջ 342բ—362բ։* Q *ձեռագրում այդ երեք կանոնախմբերը դարձյալ ավելացված են վերջում և ցանկում ոչ մի նշում չկա այդ մասին, սակայն մեկ ուրիշը, հավանաբար XIX դարում, բովանդակության ցանկի վերջում գրանցել է այդ երեք կանոնախմբերի վերնագրերը. «Կանոնք Երրորդ Բարսեղի Կեսարու հայրապետին արարեալ գլուխս Հէ։*

*Տեառն Յովհաննու Ոսկեբերանի յաղագս սահմանի կանոնաց կարգաւորաց, որք գան ի խոստովանութեան, գլ[ ուխս ] ԾԳ։*

*Յաղագս պսակի ամուսնացելոց հանդերձ ճիւղագրութեամբք և ազգահամարաւ» (էջ 15 ա)։*

*Ճիշտ այդպես է վարվել մեկ ուրիշը X ձեռագրի միևնույն կանոնախմբերի հետ, ցանկում գրելով վերևում նշված միայն առաջին երկու կանոնախմբերի վերնագրերը (էջ 13 բ)։ Այս շարքի ձեռագրերից* XY*-ում բացակայում է վերևում նշված* ABCDEFGHPU *ձեռագրերի ԾԲ համարի տակ նշված Սեբերիանոսի կանոնախումբը։*

*Այս երեք կանոնախմբերի մասին* T *ձեռագրում գրիչը թողել է հետևյալ տեղեկությունը. «Ծանիջիք ով իմաստուն ընթերցողք, որ այս Գ կանոնքս՝ Բարսղի ՀԷ գլուխն և Յոհան Ոսկէբերանի ԾԳ գլուխն եւ Յակոբ Ղրիմեցոյ կանոնքն* ոչ կայր ի բուն օրինակն. մեք յայլմէ ծեր օրինակէ գտաք եւ եդաք աստ ի կարգի, անմեղադիր լերուք»[1] *(ընդգծումը մերն է—Վ. Հ.)*: *Այս հիշատակարանն ավելի համառոտ գտնում ենք նաև* T *և սրան հարող մի քանի ձեռագրերի վերևում նշված երեք կանոնախմբերից առաջինի վերնագրում. «Նորին կանոնք Երրորդ Բարսեղի Կեսարու հայրապետին արարեալ, գլուխք ՀԴ,* զոր ոչ կայր ի բուն օրինակն, յետոյ գտեալ յայլում յօրինակի եւ աստ եդաք»[2] *(ընդգծումը մերն է—Վ. Հ.)*:

*Եթե* T *ձեռագրում վերոհիշյալ հիշատակարանը չի ընդօրինակված մի ավելի հին ձեռագրից, նշանակում է այդ երեք կանոնախմբերը Կանոնագրքում մուծել է ձեռագրի գրիչ Գրիգոր քահանան 1621 թ., որից և հիշյալ հիշատակարանն անցել է նշված ձեռագրերին։ Բոլոր դեպքերում այդ կանոնախմբերը XV դարից վաղ չէին կարող մուծվել Կանոնագրքում։*

*Վերևում հիշված երեք կանոնախմբերը, որոնք 15 ձեռագրերի բովանդակության ցանկերում չեն մտել, բայց բուն ձեռագրերի վերջում ավելացված են,* NO *ձեռագրերում արդեն մտել են նաև բովանդակության ցանկերում, այդ պատճառով վերջիններիս ցանկերում նշված են ոչ թե 57 կանոնախմբերի վերնագրեր,ինչպես վերևում նշված ձեռագրերում են, այլ 60։*

*Սկզբից և վերջից թերի լինելու պատճառով (կան ընկած թերթեր) հնարավոր չեղավ պարզել, թե մնացած երկու ձեռագրերը՝* êû *վերևում նշված ենթախմբերից որի՞ն են պատկանում։*

*Այսպիսով, պարզվում է Կանոնագրքի Ա խմբի ձեռագրերի բովանդակած նյութերի աճը XI դարի խմբագրությունից հետո մինչև XVII դարը։*

## Դ. ԿԱՆՈՆԱԳԻՐՔ-ՁԵՌԱԳՐԵՐԻ Բ ԽՄԲԻ ՃՈԽԱՑՈՒՄԸ՝ ԱՆԱՆՈՒՆԻ, ԳԵՈՐԳ ԵՐԶՆԿԱՑՈՒ (XIV—XV դդ.) ԵՎ ԱԶԱՐԻԱ ՍԱՍՆԵՑՈՒ (XVII Դ.) ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Այժմ անցնենք Բ խմբի ձեռագրերի բովանդակած նյութերի աճի քննությանը։ Ինչպես ցույց տվեցինք վերևում, X դարի 90-ական թվականներից հետո Կանոնագրքի բովանդակած 40 կանոնախմբերը ենթարկվում են վերադասավորման և այնուհետև դարձյալ շարունակվում։ 40 կանոնախմբերը վերադասավորման սկզբնական վիճակում գտնում ենք այս խմբի* it *ձեռագրերում*[3]*։*

*Հաջորդ ենթախմբում՝* befgq *ձեռագրերում մեզ ծանոթ 40 կանոնախմբերից բացի այնուհետև գտնում ենք շարունակություն, որ այստեղ բերում ենք ըստ* e *ձեռագրի*[4]*.*

---

[1] *էջ 369բ. հմմտ.* J, *էջ 329ա։*

[2] T, *էջ 362 բ. հմմտ նաև* J, *էջ 209 ա,* K, *էջ 209ա,* M, *էջ 280 ա,* S, *էջ 331 բ,* V, *էջ 254 ա,* ô, *էջ 190 ա։*

[3] *Այս ենթախմբի* i *ձեռագրի կանոնախմբերի հաջորդական կարգը տե՛ս վերևում, էջ VII—IX և Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ XXXIII։*

[4] e *և սրան հարող ձեռագրերում մեզ արդեն ծանոթ 40 կանոնախմբերին հետևում են վերևում նշված պատմական նյութերը՝ Նիկիայի և Կեսարիայի ժողովների մասնակիցների,*

*«ԽԱ. Թուխտ Յակոբայ Տեառնեղբօրն առ Կոստանդիանոս (իմա՛ Կոդրատոս —Վ. Հ.)։*

*ԽԲ. Կանոնք Երկրորդ Եպիփանու գլուխ Գ։*

*ԽԳ. Կանոնք Աքաղանգեղայ* (sic) *գլուխ Ա։*

*ԽԴ. Կանոնք Մեսրովպայ վարդապետի Ա։*

*ԽԵ. Յիշատակարան Յոհաննիսի Իմաստասիրի։*

*ԽԶ. Աւանդութիւն Հրէից վասն ողորմութեան»*[1]*։*

*Այս ենթախմբի ձեռագրերը թեև XVII դարի գրչություն ունեն՝* b*-ն՝ 1632 թ.,* e*-ն՝ 1605 թ.,* f*-ը՝ 1611 թ.,* g*-ն՝ 1618 թ.,* q*-ն՝ XVII դար, սակայն դա չի նշանակում, թե այս ենթախումբը ծագել է XVII դարում։*

*Եթե Բ խմբի ձեռագրերից* it*-ն պարունակում են նույն խմբի X դարի 90-ական թվականների խմբագրության որևէ ձեռագրի սկզբնական բովանդակությունը, ասել է թե* it *ձեռագրերին տակավին նոր կանոնախմբեր ավելացված չեն, ապա* befgq *ենթախմբում արդեն կատարված է լրացման առաջին շերտը՝ ԽԱ—ԽԶ կանոնախմբերով։ Այս ենթախումբը իրենից ներկայացնում է Կանոնագրքի լրացման մի առանձին թև, որից հետո նոր բնագրերի ավելացում տեղի չի ունեցել։*

*Ձեռագրերի մյուս ենթախմբերում ավելացված շերտերը կազմում են միմյանց շարունակությունը։* hlou *ձեռագրերում Կանոնագիրքը թեև շարունակվում է, սակայն հետաքրքիրն այն է, որ Բ խմբի* it *ձեռագրերում պահված կանոնախմբերի վերնագրերն ենք գտնում այս ձեռագրերից* l*-ի բովանդակության ցանկում*[2] *և այստեղ արտահայտված չենք գտնում բուն ձեռագրում նոր կանոնախմբերի ավելացումը*[3]*։ Այս պարագան մեզ բերում է այն եզրահանգման, որ ձեռագրերի նշված ենթախմբում Կանոնագիրքը 40 կանոնախմբեր ունենալուց զատ, ինչպես* it *ձեռագրում է, շարունակվել է։* hlou *ենթախմբի շարունակությունը կազմող նյութերը Կանոնագրքի ավելացման մի այլ թևի, ի տարբերություն* befgq *ձեռագրերի, առաջին շերտն է, որը հանդես է եկել X դարի 90-ական թվականների և XIV դարի կեսերի միջոցում՝ մինչև Գեորգ Երզնկացին, որովհետև մինչև վերջինս այս շերտը արդեն մուտք էր գործել Կանոնագիրք։ Այդ ցույց կտանք ներքևում։ Թե ինչպիսի կանոնախմբեր են ավելացվել* hlou *ձեռագրերում 40 կանոնախմբերից հետո, կտեսնենք* l *ձեռագրի օրինակով.*

*«Նորին (իմա՛. Եղիշեի —Վ. Հ.) վասն ուրացողաց։*

*Նորին վասն երեխայից։*

*Յոհաննու Կոստանդինուպաւլսոյ հայրապետի։*

---

*Հայոց կաթողիկոսների, Բագրևանդի, Երուսաղեմի և Կ. Պոլսի եպիսկոպոսների ցանկերը։ Այս նյութերը ձեռագրերի բովանդակության ցանկերում չեն արձանագրված։ Սրանց հաջորդող կանոնախմբերը ցանկերում թեև նշված են և համարակալված, բայց բուն ձեռագրերում համարակալում չունեն։*

[1] *էջ 5 բ. Նույն հաջորդականությունը տե՛ս բուն ձեռագրում (էջ 190 ա—205 ա)։ Միայն* b *ձեռագրում վերջին՝ «Աւանդութիւն Հրէից վասն ողորմութեան» նյութի փոխարեն դրված է Հակոբ Ղրիմեցու «Յաղագս ազգականութեան» բնագիրը։ Իսկ* e *ձեռագրի բովանդակության երկրորդ ցանկում թեև չի նշված, բայց ձեռագրում ընդօրինակված է (վերջից թերի) Հովհ. Մանդակունու մի կանոնախումբը (տե՛ս Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 491—500)։*

[2] *Տե՛ս վերևում, էջ XXI—XXII։*

[3] r *ձեռագրի մասին տե՛ս վերևում, էջ XXII, ծանոթ. 1, և ներքևում, էջ XXXIII։*

Նորին. սկս. «Զոր ինչ խնդրիցէք յանուն իմ...»[1]։

ԽԸ. Մեծի Ագաթանկեղոսի ի բանէն, որ զԿայենէ։

ԽԹ. Երանելոյն Մեսրոպայ Հայոց վարդապետի։

Ծ. Սահմանք և կանոնք կարգի եկեղեցւոյ սրբոյն Ներսէսի հայրապետի Հայոց։

ԾԱ. Կանոնք Յովանու Մանդակունոյ Հայոց կաթողիկոսի գլուխ Է։

ԾԲ. Նորին Յովանու Մանդակունոյ կոչումն ապաշխարութեան։

ԾԳ. [Նորին] Խոստովանութիւն քահանայի։

ԾԴ. Կանոնք երանելոյն Եպիփանու Կիպրացոյ եպիսկոպոսի մեծի և առաքինոյ[2] մարգարէի եւ նշանայգործի գլուխ Գ։

ԾԵ. Ի հարանց կանոնացն է։

ԾԶ. Կղեմայ Հռոմայ եպիսկոպոսին։

ԾԷ. Սրբոյն Դէոնէսիոսի Աթենացւոց եպիսկոպոսի բան Ա։

ԾԸ. Սրբոյն Դէոնէսիոսի Արիսպագացոյն յաղագս աստուածային բանի երկրորդ։

ԾԹ. Կանոնք սուրբ ժողովոյն որ ի Թէոդուպօլիս, որ այժմ կոչի Կարնոյ քաղաք։

Կ. Հիպողիտայ սրբոյ բան ի ծնունդն եւ ի մկրտութիւն Տեառն գլուխ Ա։

ԿԱ. Մելիտոսի եպիսկոպոսի թուխտ առ տոյ (sic) եպիսկոպոսի գլուխ Ա։

ԿԲ. Մանուէլի գլուխ Ա։

ԿԳ. Ի Սոկրատայ գլուխ Ա։

ԿԴ. Նորին։

ԿԵ. Կանոնք տեառն Սիմէոնի Աղուանից կաթողիկոսի» (վերջից թերի)։

Ինչպես դժվար չէ նկատել 1 և նրան հարող hou ձեռագրերում it-ի բովանդակած 40 կանոնախմբերից բացի գտնում ենք ևս 22 կանոնախմբեր։ Վերջիններում կան այնպիսիներ, որ գտնում ենք ձեռագրերի Ա խմբի XI դարի խմբագրության մեջ, օրինակ Կարինի, Ներսեսի, Հիպպոլիտի, Հովհանն Մանդակունու և այլն, սակայն կան և այնպիսիներ, որ չենք գտնում XI դարի խմբագրության մեջ, օրինակ, Ագաթանգեղոսի, Մեսրոպի, Աղվանից կաթողիկոս Սիմեոնի և այլն, կամ ընդհակառակը, օրինակ, Նեկտառի, Աթանասի։

Հաջորդ՝ acdkmpsv ձեռագրերի ենթախումբը հետաքրքիր է նրանով, որ այստեղ արդեն առկա է ավելացումների երկրորդ շերտը, այսինքն այս ենթախումբը բովանդակում է it ձեռագրերի Ա—Խ և hlou ենթախմբի ԽԱ—ԿԵ կանոնախմբերը, որից հետո դարձյալ շարունակվում է։ Այն կներկայացնենք համաձայն m ձեռագրի.

«ԿԶ. Նեկտառեայ Հռոմայ եպիսկոպոսի վասն յիսնակաց գլուխ Ա։

ԿԷ. Հարցումն Թէոդոսի քահանայի առ երանելին Եպիփան վասն Քառասնորդաց և այլոց պահոցն գլուխ Ա։

ԿԸ. Յոհանու Երուսաղէմայ եպիսկոպոսի վասն յիսնակաց պահոց գլուխ Ա։

---

[1] Ձեռագրում Դվինի ժողովի կանոնախումբը դրված է ԼԹ համարի տակ (էջ 197բ), նրան հաջորդող Եղիշեի «Վասն դիւահարաց» կանոնախմբի համարը, որը պետք է լինի Խ, չի նշված (էջ 201 ա), այսպես համարներ չեն նշված վերևում բերված չորս կանոնախմբերի ևս, իսկ Ագաթանգեղոսի կանոնախումբը համարակալված է ԽԸ և հաջորդաբար մնացածները։ Այդ հավանաբար բացատրվում է նրանով, որ Սահակ Պարթևի կանոնախումբը 1 և մի քանի այլ ձեռագրերում բաժանված է առանձին վերնագրերի տակ, որպես առանձին կանոնախմբեր։

[2] Ձեռագրում «աւագինոյ» սխալ ձևով։

ԿԹ. Վասն ութ աւուր պահոց, որ յառաջ քան զՅայտնութիւն գլուխ Ա[1]։

Հ. Կանոնք Ներսէսի Կլաեցոյն վասն ազգապղծութեան գլուխ Ա։

ՀԱ. Կանոնք զգուշաւոր ի խրատ քահանայից գլուխ ԺԲ։

ՀԲ. Կանոնք երկրորդ վասն զգուշութեամբ սպասաւորելոյ քահանայից սուրբ խորհրդոյն գլուխ ՃԼԲ։

ՀԳ. Եզնկայ Կողբացոյ Հայոց վարդապետի վասն պատրաստութեան հաղորդողոյ (sic) գլուխ Ա։

ՀԴ. Նորին Եզնկայ բան երկրորդ գլուխ Զ։

ՀԵ. Բանք Անանիա Հայոց վարդապետի վասն ոչ հաղորդելոյ զժողովրդականսն աւուր Մեծի հինգշաբաթոջ գլուխ Ա։

ՀԶ. Վասն որք ասեն անգոսնելի կիրք ի մարդեղութիւնն Քրիստոսի գլուխ Ա[2]։

ՀԷ. Յաղագս նկարեալ պատկերաց գլուխ Ա։

ՀԸ. Վասն քահանայագործութեան կարգաց խրատ ի պատրաստութիւն գլուխ ԻԹ[3]։

Այսպիսով, այս ենթախումբն ընդգրկում է it և ապա hlou ենթախմբերի ունեցած 65 կանոնախմբերը և ապա ևս 13 կանոնախումբ, սակայն ընդամենը 75[4]։

Այս խմբի r ձեռագիրը, կարելի է ասել, hlou և acdkmpsv ենթախմբերի միջանկյալ օրինակ է հանդիսանում։ Ցանկում նշված են 40 կանոնախմբերի վերնագրեր, այն՝ որ համարում ենք X դարի 90-ական թվականների խմբագրություն, համապատասխան it ձեռագրերին։ Նշված կանոնախմբերը բուն ձեռագրերում դասավորված են ցանկում եղածի հաջորդականությամբ, բացի դրանից այստեղ գտնում ենք ինչպես hlou, այնպես էլ acdkmpsv ենթախմբերի բովանդակած նյութերը։

Վերջին՝ «Վասն քահանայագործութեան կարգաց խրատ ի պատրաստութիւն գլուխ ԻԹ» կանոնախմբին հաջորդում է մեզ արդեն ծանոթ պատմական նյութերը՝ Նիկիայի ժողովի մասնակիցների, հայ կաթողիկոսների և Կամսարական տան եպիսկոպոսների ցանկերը։ Այնուհետև սրա շարունակությունը կազմում են Հակոբ Ղրիմեցու Յաղագս ազգականութեան աշխատությունը, Գոշի Դատաստանագիրքը, Ասորա-հռոմեական օրենսգիրքը և այլն[5]։

---

[1] Բուն ձեռագրում «Սեբ[եր]իանոս յՂուկայ Աւետարանին մեկնութենէ» (էջ 253 բ) վերնագրով։

[2] Բուն ձեռագրում «Այլուստ ժողովածու իմաստախոհ արանց» (էջ 278 բ) վերնագրով։

[3] Վերևում բերեցինք բովանդակության ցանկը. բուն ձեռագրում կանոնախմբերը դասավորված են նույն հաջորդականությամբ։ d ձեռագրի բովանդակությունը նույնն է, միայն սխալ համարակալելու պատճառով երկուսով պակաս է ստացվել։ m ձեռագրի ցանկում թեև բացակայում է, բայց ձեռագրում ուրիշներ ավելացրել են Ներսես Շնորհալու «Խրատ աստիճանաց ազգականութեան» և Հակոբ Ղրիմեցու «Յաղագս պսակի» նյութերը. վերջիններս տե՛ս նաև k ձեռագրում։

[4] Թող մեր այդ նշումը տարօրինակ չթվա, քանի որ ցանկում կանոնախմբերի համարակալումը ավարտվում է 78 (ՀԸ)-ով։ Բանն այն է, որ Սահակ Պարթևի կանոնախումբը (տե՛ս Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 363—421) այս ձեռագրերում ևս դրված է մի քանի համարի տակ, որով համարների թիվն ավելացել է։

[5] r-ին բավական մոտ է ամերիկաբնակ Տիրան արքեպիսկոպոս Ներսոյանի ձեռագիրը։ Պատմական նյութերն այստեղ գտնվում են Մեսրոպի և Ներսես կաթողիկոսին վերագրված

Այսպիսով, Կանոնագրքի Բ հատորի գիտա-քննական բնագրի կազմման համար մեր օգտագործած 50 ձեռագրերի օրինակով պարզեցինք Կանոնագրքի բովանդակության աստիճանական ճոխացումը[1]։ Մնում է ցույց տալ, թե առանձին դեպքերում այդ ճոխացումը երբ է հանդես եկել։

Այս հարցը պարզելուն մեզ օգնում է Անկյուրիայի Կարմիր վանքի մատենադարանում պահվող № 43 կանոնագիրք-ձեռագիրը, որի նկարագրության որոշ տվյալներ և այլ տեղեկություններ վերցրել ենք Բաբգեն Կյուլեսերյանի կազմած ձեռագրաց Ցուցակից[2]։ Նշված ձեռագիրը Ազարիա Սասնեցու պատվերով ընդօրինակել է Սիմեոն Լեհացին, 1609 թվին, Կ. Պոլսում։ Այս ձեռագրում գտնում ենք վերևում բերված m ձեռագրի և սրան հարող ենթախմբի բոլոր կանոնախմբերը։ Կարմիր վանքի մատենադարանի օրինակի վերջին՝ «Վասն քահանայագործութեան կարգաց խրատ ի պատրաստութիւն» կանոնախմբին, որը վերջին է նաև acdkmpsv ենթախմբի ձեռագրերում, հաջորդում է հետևյալ հիշատակարանը. «Արդ՝ աղաչեմք զորդիքդ լուսոյ... զարժանն յիշատակելոյ, զերիցս երանեալ երջանիկ րաբունին, զպետն վարժից եւ զքաջ փաղեբայն հայկազան սեռիս, զմեծ հռետորն **Գէորգ, որ ի պակասն գրոցս շատ աշխատեցաւ եւ գրեաց բազմաշնորհ մատամբն իւրով առ ի կատարել զքերին»**[3] (ընդգծումը մերն —Վ. Հ):

Գեորգ վարդապետի ինքնության մասին ունենք մեկմեկու մերժող երկու հիշատակարան՝ առաջինը գրված XV դարում Հակոբ Ղրիմեցու ձեռքով, երկրորդը՝ 1611 թ. մոտերքում Հակոբ Քյոթահիացու կողմից։ Վերևում քաղվածաբար բերված հիշատակարանի շարունակությունն ունի հետևյալ բովանդակությունը.» [Ը]նդ նմին և զՅակոբ Ղրիմեցիս, զաշակերտս մեծիս րաբունոյ, որ զաղիւսակս և զբոլորակս դրոշմեցի, հանդերձ խրատիւք. նաև դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ»[4]։ Այս վկայության համաձայն «զերիցս երանեալ երջանիկ րաբունին... զքաջ փաղեբայն հայկազան սեռիս,

---

կանոնախմբերի միջև, ինչպես hlou ենթախումբն է։ Սրանից հետո այս ձեռագրի նյութերը դասակարգման առումով, թեև տարբեր են r-ի ունեցած նյութերի դասավորությունից, բայց դրանք գրեթե միևնույն նյութերն են։ r և այս ձեռագրերը XVII դարի գրչություն ունեն և թվում է, թե Տիրան արքեպիսկոպոսի ձեռագիրը պետք է լինի r-ի նախնական օրինակը։ Բ խմբում նշված n-ն ձեռագրի մասին այստեղ չենք խոսի, որովհետև կառուցվածքի առումով Բ խմբին չի պատկանում և երկրորդ, ինչպես վերևում նշեցինք, սրա բովանդակած նյութերը չեն անցնում Կանոնագրքի XI դարի խմբագրությունից։

[1] Ի դեպ ավելորդ չի լինի, եթե ասենք, որ Հայկազյան լեզվի հռչակավոր բառարանում (Վենետիկ, Ա հատոր, 1836, Բ հատոր, 1837) օգտագործվել է Կանոնագրքի Բ խմբի ձեռագրերի տված նյութը։

[2] Բաբգէն աթոռակից կաթողիկոս, Ցուցակ ձեռագրաց Անկիւրիոյ Կարմիր վանուց և շրջակայից, Անթիլիաս, 1957, էջ 229—268։

[3] Նույն տեղում, էջ 235։

[4] Նույն տեղում։ Այս հիշատակարանը XVII դարի (1609 թ.) գրչությամբ է մեզ հասել։ Ինչպես հաղորդում է Բաբգեն Կյուլեսերյանը, իր նկարագրած ձեռագրում չի պահվել Հակոբ Ղրիմեցու նշած «աղյուսակները ու բոլորակները» (Նույն տեղում, էջ 235)։

Հակոբ Ղրիմեցու վերոբերյալ հիշատակարանը մեզ թեև ծանոթ էր նախօրոք, բայց անուշադրության էինք մատնել։ Լ. Խաչիկյանը մեր ուշադրությունը հրավիրեց այդ թերացման վրա։ Հիմք ընդունելով սույն հիշատակարանը նա կարծում է, թե Հակոբ Ղրիմեցին ևս մասնակցություն է ունեցել «Կանոնագրքի» խմբագրման գործին («ԺԵ դարերի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», մասն երրորդ, Երևան, 1967, էջ 342, ծանոթ. 2)։ Սակայն նման պնդման համար հիշատակարանը ոչ մի հիմք չի տալիս։

«մեծ հռետորն Գէորգ» է XIV դարի վերջի և XV դարի սկզբի մատենագիր, եկեղեցական գործիչ, Հովհան Որոտնեցու աշակերտ, Գրիգոր Տաթևացու ընկեր և համշիրակ, Հակոբ Ղրիմեցու ուսուցիչ Գեորգ Երզնկացին (մեռ. 1416 թ.)։

Երկրորդը, 1611 թվականից մի փոքր անագան Կ. Պոլսում ընդօրինակված Կանոնագրքի հիշատակարանն է, ուր Հակոբ Քյոթահիացին գրում է. «...Տեսի անդ կանոնս, կատարեալ գիրս կանոնաց, զոր հաւաքեալ էր զկանոնս առաքելոց, վարդապետաց, հայրապետաց սրբոց, սուրբ վարդապետն Գէորգ Կիլիկեցին, որ է Սսեցի...»[1] (ընդգծումը մերն է —Վ. Հ.)։
Այս վկայությամբ էլ խոսքը վերաբերում է XIII դարի ոչ անհայտ մատենագիր Գեորգ Լամբրոնացուն կամ Սկևռացուն։

Եթե Ցուցակի հեղինակ Բաբգեն Կյուլեսերյանը անորոշ կերպով գրում է, թե Կանոնագրքի «Խմբագրողն է Գէորգ Վարդապետ»[2], ապա Ն. Ակինյանը մեջբերելով Հակոբ Քյոթահիացու վերոնշյալ հիշատակարանը գտնում է, որ խոսքը վերաբերում է Գեորգ Լամբրոնացուն, ուրեմն վերջինս է խմբագրել Կանոնագիրքը[3]։

Այս երկու վկայություններից ո՞րն է հավաստի։ Բանն այն է, որ Հակոբ Քյոթահիացին լինելով XVII դարի անձնավորություն, տեղեկություն է հաղորդել իրենից ավելի քան երեք դար առաջ ապրող գործչի մասին։ Եվ տեղեկությունն էլ այնպիսին է, որ հնարավորություն չկա որևէ կերպ ստուգել, թե այդ տվյալը ի՞նչ փաստերի վրա է հենված և ինչքանո՞վ է հավաստի։ Հետևապես այստեղ նույնանուն գործիչների շփոթումը ոչ միայն հնարավոր է, այլև փաստ։ Մինչդեռ Հակոբ Ղրիմեցու վկայությունը վերաբերում է իր ուսուցչին և ժամանակակցին։ Եվ որ կարևոր է, մեզ հետաքրքրող հիշատակարանը, ուր գրված է, թե «...զմեծ հռետորն Գէորգ, որ ի պակասն գրոցս շատ աշխատեցաւ...» և այլն, պատկանում է Հակոբ Ղրիմեցու գրչին։ Թերևս № 8006 ձեռագրի մի հիշատակարանի «...մէկ կանոն ալ տեսի գրվել է ՌՃԻԹ (1680) թվին Ղրիմ, Յակոբ վարդապետ Ղրըմեցի, աշակերտ Գրիգոր վարդապետի և քաջ դիտապետի Եզընկացոյ»[4] վկայությունը վերաբերում է Կանոնագրքի Հակոբ Ղրիմեցու օրինակից[5] արված մի այլ գրչության, որը կատարվել է 1680 թվականին, ինչպես Ազարիա Սասնեցու ընդօրինակությունը 1609 թ. դարձյալ Հակոբ Ղրիմեցու օրինակից։

Ուրեմն, XIV դարի վերջին և XV դարի սկզբին Գեորգ Երզնկացին[6] կանոնագիրք-ձեռագրերի մի ենթախմբին կատարել է հերթական ավելացում։ Թե այդ ավելացումը ո՞ր ենթախմբին է կատարված, թե մինչև այդ ավելացումը ի՞նչ կանոնախմբեր կային ձեռագրերի տվյալ ենթախմբում և թե Գեորգ

---

[1] Նույն տեղում, էջ 265—266։

[2] Նույն տեղում, էջ 234։

[3] «Հանդէս Ամսօրեայ», 1936, VII—IX էջ 324։

[4] էջ 2 բ, Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ LXXI։ Հ. Քյուրտյանը «Սիոն»-ի 1966 թ. հուլիսի համարում (էջ 366 բ) նշում է, որ «Գրիգոր վարդապետի» փոխարեն պետք է լինի «Գէորգ վարդապետի»։ Դիտողությունը ճիշտ է, բայց ձեռագրում գրված է «Գրիգոր վարդապետի»։

[5] Մեր օգտագործած ас ձեռագրերը XIV—XV դարերի գրչություն ունեն։ Այստեղ, դժբախտաբար, հիշատակարաններ չեն պահվել։ Դրանցից մեկնումեկը գուցե Հակոբ Ղրիմեցու օրինակն է։

[6] Հակոբ Ղրիմեցու վերոբերյալ հիշատակարանն անուշադրության մատնելու պատճառով Կանոնագրքի Գեորգ Երզնկացու խմբագրությունը վերագրել էինք Գեորգ Լամբրոնացուն (տե՛ս „Армянская книга канонов и ее редакции“, Ереван, 1967, դոկտորական դիսերտացիայի ավտոռեֆերատ, էջ 20)։

Երզնկացին ի՞նչ կանոնախմբեր է ավելացրել՝ պարզ չէ։ Քննենք այդ հարցերը։

Անկյուրիայի Կարմիր վանքի № 43 ձեռագրում վերևի բերված առաջին հիշատակարանը դրված է վերջին՝ «Վասն քահանայագործութեան կարգաց խրատ ի պատրաստութիւն» կանոնախմբից անմիջապես հետո։ Երբ նկատի ենք առնում այս փաստը, ապա թվում է, թե X դարի 90-ական թվականների Բ խմբի it ձեռագրերի սկզբնական, այսինքն 40 կանոնախմբեր բովանդակող օրինակին է Գեորգ Երզնկացին ավելացրել վերևում նշված ԽԱ—ՀԸ կանոնախմբերը[1]։ Սակայն, մեր կարծիքով, հարցն այնքան էլ պարզ չէ։ Առաջին հիշատակարանից մեզ հայտնի է դառնում Կանոնագրքի Գեորգ Երզնկացու ավելացրած բնագրերի միայն վերջին եզրը՝ հիշատակարանին անմիջապես նախորդող «Վասն քահանայագործութեան կարգաց խրատ ի պատրաստութիւն» կանոնախումբը։ Բայց թե ավելացված բնագրերի սկզբնական եզրը որ կանոնախմբից է սկսվել, հիշատակարանն այդ մասին բան չի հաղորդում։ Վերևում ցույց տվեցինք, որ hlou ձեռագրերը պարունակում են Կանոնագրքի Բ խմբի հնագույն խմբագրության պատկանող it ձեռագրերի բովանդակած նյութերը նույնությամբ և բացի դրանից նաև Կանոնագրքին ավելացված առաջին շերտը՝ ԽԱ—ԿԵ կանոնախմբերը, (ըստ l ձեռագրերի վերևում բերված համարակալման)։ Այս ԽԱ—ԿԵ կանոնախմբերը որպես առանձին միավոր, գոյություն ունեն Բ խմբի երկու ենթախմբերում, միևնույն տեղում մինչև Գեորգ Երզնկացին։ Այս հանգամանքը մեզ եզրակացնել է տալիս, որ hlou ձեռագրերում եղած առաջին շերտը (ԽԱ—ԿԵ կանոնախմբեր՝) X դարի 90-ական թվականների խմբագրությանը (it ձեռագրեր) ավելացվել է մինչև Գեորգ Երզնկացին՝ մինչև XIV դարի երկրորդ կեսը, մի անհայտ անձնավորության կողմից։ Իսկ այնուհետև Գեորգ Երզնկացին վերցրել է hlou ենթախմբի մի որևէ ձեռագիր և կատարել նոր ավելացումներ, հիշատակարանի գրչի խոսքերով «եւ գրեաց բազմաշնորհ մատամբն իւրով առ ի կատարել զթերին» այսինքն՝ ԿԵ կանոնախմբից հետո եղածները՝ ԿԶ-ից մինչև ՀԸ կանոնախումբը (ըստ m օրինակի համարակալման)։ Եվ որովհետև այս նույն բովանդակությունն ու կառուցվածքը ունեն մեր օգտագործած acdkmpsv ձեռագրերը, հետևապես սրանք էլ պատկանում են Կանոնագրքի Գեորգ Երզնկացու խմբագրությանը։ Նշանակում է acdkmpsv ձեռագրերում Կանոնագիրքն ունի XIV—XV դարերի հնություն։ Հենց այս խմբագրությունն էլ օգտագործելով՝ Ազարիա Սասնեցին 1609 թվականին ընդօրինակության ժամանակ Կանոնագրքում կատարեց նոր ավելացումներ։ Սակայն մինչև այդ խնդրին անցնելը, ցանկանում ենք անդրադառնալ Ն. Ակինյանի այն վարկածին, ըստ որի Գեորգ Լամբրոնացուց (իրականում Գեորգ Երզնկացուց) հետո՝ մինչև Ազարիա Սասնեցին Կանոնագրքին կանոնախմբերի նոր շերտ է ավելացրել Կ. Պոլսի պատրիարք Գրիգոր Կեսարացին (մեծ ու փոքր ընդմիջումներով՝ 1601—1626 թթ)։

Ազարիա Սասնեցին, ինչպես ինքն է պատմում իր հիշատակարանում[2],

---

[1] Բարգեն Կյուլեսերյանի Ցուցակի համաձայն համարակալման ԼԹ—ԿԵ կանոնախմբերը։ Հիշեցնենք, որ այստեղ ևս բովանդակում են այն բոլոր նյութերը, ինչ որ կան m և սրան հարող ձեռագրերում, միայն տեղ-տեղ Ցուցակում համարակալման շփոթում կամ բաց թողումներ կան, այդ պատճառով էլ ստացվել է ԿԵ (65) փոխանակ ՀԸ (78) կանոնախումբ։

[2] Այս հիշատակարանը տե՛ս նաև Սիմէոն դպիր Լեհացւոյ ուղեգրութիւն, տարեգրութիւն և յիշատակարանք, հրատ. Ն. Ակինյան, Վիեննա, 1936, էջ 387—390։

*1599 թվին հայրենի Սասունը և շրջակա վայրերը Կարա Յազիճիի ասպատակությունների ու ավերումների պատճառով թողնում է հայրենական տունը և երկար դեգերումներից հետո՝ 1603 թվին հասնում Կ. Պոլիս և ապաստանում Գրիգոր Կեսարացու մոտ։ Վերջինիս մասին ահա թե ինչ է գրում նա. «Որ էր վցեալ աստուածաշունչ գրովք, ոչ թէ միայն Հին եւ Նոր Կտակարանօք, այլ եւ արտաքին գրոց. եւ նա ի բազում գրեանց եւ ի բազում տեղաց ժողովեալ էր ի մի, զոր ես անարժանս եկեալ յարեցա[յ] ի նա, եւ աշակերտեալ առ նա տեսի զտիեզերալոյս առաքելոցն եւ զսուրբ ժողովոցն կանոնս եւ յոյժ ուրախացեալ ետու գաղափարել»[1]։*

*Հենվելով Ազարիա Սասնեցու «ի բազում գրեանց եւ ի բազում տեղաց ժողովեալ էր ի մի» տեղեկության վրա Ակինյանը փորձում է ցույց տալ, որ Գրիգոր Կեսարացին վերցրել է Կանոնագրքի Գեորգ Լամբրոնացու (իրականում Գեորգ Երզնկացու) խմբագրությունը և կատարել նոր ավելացումներ[2], որից հետո միայն նույն գործը իր ուսուցչի օրինակով շարունակել է Ազարիա Սասնեցին։ Այսպիսով, ըստ Ակինյանի, Կանոնագրքի Ազարիա Սասնեցու խմբագրությունը բաղկացած է հետևյալ մասերից՝ Գեորգ Լամբրոնացու, Գրիգոր Կեսարացու և իր Ազարիա Սասնեցու խմբագրություններից[3]։ Եվ Ակինյանի կարծիքով Գրիգոր Կեսարացին Կանոնագրքին ավելացրել է հետևյալ համարակալումների կանոնախմբերը. «Բ. 41—44, 49, 57, 62—70 և 71—72 հոդվածները, ինչպես նաև Գոշի Դատաստանագիրքը, Ասորա-հռոմեական օրենսգիրքը իր հավելված մասերով»[4]։ Որպեսզի ընթերցողըն առարկայական պատկերացում ունենա, թե Ակինյանի նշած համարները որ կանոնախմբերին են վերաբերում, այստեղ կբերենք նրա հիշած համարների համապատասխան կանոնախմբերը* l *և* m *ձեռագրերի համաձայն, աջ կողմում փլոր փակագծերում նշելով Ակինյանի ցույց տված համարները։*

*Եղիշէի ի կանոնաց գրոց (41).*

*Յոհաննու Կոստանդինուպոլսոյ հայրապետի (42).*

*ԽԸ. Մեծի Ագաթանգեղոսի (43).*

*ԽԹ. Երանելոյն Մեսրոպայ Հայոց վարդապետի (44).*

*ԾԵ. Ի հարանց կանոնացն է (49).*

*ԿԵ. Կանոնք տեառն Սիմէոնի Աղուանից կաթողիկոսի (57).*

*Հ. Կանոնք Ներսէսի Կլաեցոյն վասն ազգապղծութեան (62).*

*ՀԱ. Կանոնք զգուշաւոր ի խրատ քահանայից (63).*

*ՀԲ. Կանոնք երկրորդ վասն զգուշութեամբ սպասաւորելոյ...(64).*

*ՀԳ և ՀԴ. Եզնկայ Կողբացոյ Հայոց վարդապետի վասն պատրաստութեան հաղորդողոյ* (sic) *(65).*

*ՀԵ. Բանք Անանիա Հայոց վարդապետի (66).*

*ՀԶ. Այլուստ ժողովածու իմաստախոհ արանց[5] (67).*

---

[1] *Բաբգէն աթոռակից կաթողիկոս, Ցուցակ ձեռագրաց Անկիւրիոյ Կարմիր վանուց և շրջակայից, էջ 246։*

[2] *Ազարիա վ. Սասնեցի ատաղագէտ, տոմարագէտ և տաղաչափ (Հանդէս Ամսօրեայ, 1936, VII—IX, էջ 324—325։*

[3] *Նույն տեղում, էջ 325։*

[4] *Նույն տեղում, էջ 324։*

[5] m *ձեռագրի ցանկում այն վերնագրված է այսպես. «Վասն որք ասեն անգոսնելի կիրք ի մարդեղութիւնն Քրիստոսի»։*

ՀԷ. Յաղագս նկարեալ պատկերաց (68).

ՀԸ. Վասն քահանայագործութեան... (69). այնուհետև Նիկիայի ժողովի մասնակիցների (70), Հայոց կաթողիկոսների (71) և Կամսարական տան եպիսկոպոսների (72) ցանկեր։

Թե Ակինյանի պնդումը որքան անհավանական է, ցույց են տալիս ներքոհիշյալ պարագաները. նախ, եթե Գրիգոր Կեսարացին Կանոնագրքին իրոք կատարել է լրացումներ, ինչո՞ւ այդ լրացումները կատարվել են ընդմիջաբար, թռիչքներով, օրինակ՝ նա չի վերցրել 45—48, 50—56, 58—61 (ըստ Ակինյանի նշած համարների) կանոնախմբերը։ Թե Ակինյանը ինչպես է որոշել վերևի համարները՝ մեզ մնաց անհասկանալի։ Երկրորդ, Ակինյանը նշում է այնպիսի կանոնախմբեր, որոնք մինչ այդ Կանոնագրքին ավելացվել էին Գեորգ Լամբրոնացու (իրականում Գեորգ Երզնկացու) կողմից կամ նյութեր, որոնք առկա էին Կանոնագրքի X դարի վերջերի խմբագրությունում՝ ձեռագրերի B խմբի հնագույն ենթախմբերում, օրինակ, Հայոց կաթողիկոսների և Կամսարական տան եպիսկոպոսների ցանկերը։ Էլ չենք խոսում Գոշի Դատաստանագրքի կամ Ասորա-Հռոմեական օրենսգրքի մասին, որոնք կապ չունեն Կանոնագրքի խմբագրությունների հետ և մի քանի ձեռագրերում գտնվել են մի կազմում և միայն այսքանը։ Երրորդ, վերևում ցույց տվեցինք, որ Կանոնագրքի Գեորգ Երզնկացու ավելացումները սկսվում են m և սրան հարող ձեռագրերի ԿՁ կանոնախմբից մինչև ՀԸ, իսկ այնուհետև սկսվում են Ազարիա Սասնեցու լրացումները, այնպես, որ նոր մուծված նյութերի մեջ Գրիգոր Կեսարացուն բաժին չի մնում։ Չորրորդ, Ազարիա Սասնեցու վերոհիշյալ հիշատակարանի «ի բազում գրեանց եւ ի բազում տեղաց ժողովեալ էր ի մի» հատվածի ընդգծված մասը պետք չէ անպայման հասկանալ մի տափի կամ կազմի մեջ հավաքված, այլ որ բազմաթիվ գրքերից և տեղերից նյութեր էր հավաքել իր մոտ, որոնց թվում և Կանոնագիրքը։ Հինգերորդ, Կանոնագրքի այն ձեռագրից, որից 1609 թվին Ազարիա Սասնեցին իր համար ընդօրինակել էր մի օրինակ, 1611 թվի մոտերքում Հակոբ Քյոթահիացին գաղափարել է տալիս իր օրինակը։ Եվ իր թողած հիշատակարանում խոսելով Կանոնագրքին Գեորգ Լաբրոնացու (իրականում Գեորգ Երզնկացու) և Ազարիա Սասնեցու կողմից կատարված ավելացումների մասին, Գրիգոր Կեսարացու լրացումների վերաբերյալ բան չի ասում. ահա այդ վկայությունը. «Տեսի անդ (Գրիգոր Կեսարացու մոտ, Կ. Պոլսում —Վ. Հ.) կանոնս, կատարեալ գիրս կանոնաց, զոր հաւաքեալ էր զկանոնս առաքելոց, վարդապետաց, հայրապետաց սրբոց, սուրբ վարդապետն Գէորգ Կիլիկեցին. որ է Սսեցի եւ անտի առեալ էր զօրինակն երիցս երանեալ քաջ րաբունապետն մեր տէր Գրիգոր (*իմա՝ Կեսարացին —Վ.Հ.*) վարդապետն: Եւ ի նմանէ առեալ էր զօրինակն[1] աշակերտն նորա տէր Ազարիա Սասնեցի...»[2]:

---

[1] Մեջբերման «երիցս երանեալ քաջ... ի նմանէ առեալ էր զօրինակն» հատվածը անուշադրության հետևանքով դուրս է ընկել Բաբգեն Կյուլեսերյանի Կարմիր վանքի ձեռագրաց Ցուցակում բերված Հակոբ Քյոթահիացու հիշատակարանից (էջ 266)։ Եվ ստացվում է սխալ այն տպավորությունը, թե Ազարիա Սասնեցին (XVI—XVII դար) Գեորգ Լամբրոնացու (XIII դար) աշակերտն էր։

[2] Հանդէս Ամսօրեայ, 1936, VII—IX, էջ 324։ Շարունակության մեջ խոսվում է Ազարիա Սասնեցու կատարած ավելացումների մասին։ Հիշատակարանի այդ մասը տե՛ս ներքևում։

Ինչպես դժվար չէ նկատել այս մեջբերումից, Գրիգոր Կեսարացին լոկ պատճենավորել է Կանոնագրքի Գեորգ Երզնկացու խմբագրությունը «անտի առեալ էր զօրինակն» և ուրիշ ոչինչ։

Այսպիսով, վերևում նշված փաստերը և հանգամանքները չեն հաստատում Ակինյանի պնդումը, հետևապես Կանոնագրքին Գրիգոր Կեսարացին ոչ մի ավելացում չի կատարել։ Գեորգ Երզնկացուց հետո ձեռագրերի acdkmpsv ենթախմբին, որ է վերջինիս խմբագրությունը, Ազարիա Սասնեցուց բացի ուրիշների կողմից նոր ավելացում չի կատարվել։

Այժմ անդրադառնանք Կանոնագրքի Ազարիա Սասնեցու խմբագրությանը։ Կանոնագրքի բովանդակության պատմության համար խիստ ուշագրավ է Ազարիա Սասնեցու հիշատակարանը, որը գտնվում է իր համար ընդօրինակած կանոնագիրք-ձեռագրին կից, որից և վերևում կատարեցինք մեջբերումներ։ Հիշատակարանից տեղեկանում ենք, որ Ազարիա Սասնեցին գալիս է Կ. Պոլիս Գրիգոր Կեսարացու մոտ, և վերջինիս սեփականություն հանդիսացող կանոնագիրք-ձեռագիրը տեսնելով գրում է. «յոյժ ուրախացեալ եմ ու գաղափարել»[1]։ Սակայն, ինչպես պարզվում է հիշատակարանի շարունակությունից, նա Կանոնագիրքը անմիջապես ընդօրինակել չի տալիս, այլ նախ հավաքում է կանոնական նոր նյութեր՝ Գրիգոր Կեսարացու մոտ եղած Կանոնագրքից գաղափարվող օրինակի բովանդակությունն ավելի հարստացնելու և ճոխացնելու նպատակով։ Ահա թե ինչ է գրում այդ աշխատանքների մասին Ազարիան. «Ես ջանացի այլ եւս աւելուլ եւ հարստացուցանել, զի մի ինչ պակաս գտանիցի. եւ էր յոլով գրեանք ի Կոստանդինուպօլիս... եւ ես գտի զորս ի քահանայս եւ զորս ի յաշխարհականս եւ զորս ի այլ ազգիս, զոր ոմանք բազում աղաչանօք... հագիւ տային ինձ վասն նախանձու, եւ ժողովեցի բազում բանս եւ զանազան կանոնս, ի առանձնական եւ հասարակ ժողովոց, ի մերոց եւ օտարասեռն ազանց բազում աշխատութեամբ հաւաքեցի իբրեւ զծաղիկ ի պսակս բոլորեալս...»[2]։ Այնուհետև ընդհանուր գծերով թվելով Կանոնագրքին իր կողմից ավելացրած նյութերը[3] շարունակում է. «զոր գտցես լրիւ ի ցանկ մատենիս. բայց ժողովեցաւ սայ ի չար եւ ի դժ[ո]ւար ժամանակս, որ էր Հայոց մեծ թվին ՌԾԲ, որ մինչ ի թվին ԾԸ (այսինքն՝ 1603—1609 թթ.—Վ. Հ.) հազիւ ի մի հաւաքեցի...»[4]։ Ուրեմն, Ազարիա Սասնեցին 1603 թվին գալով Կ. Պոլիս մինչև 1609 թիվը զբաղվել է Կանոնագիրքը լրացնելու, ճոխացնելու նպատակով կանոնական նյութեր հավաքելու գործով, որից հետո միայն 1609 թվին պատվիրել Սիմեոն Լեհացուն ընդօրինակել Կանոնագրքի Գրիգոր Կեսարացու ունեցած օրինակը, որը, ինչպես վերևում ցույց տվեցինք, պատկանում էր Գեորգ Երզնկացու խմբագրությանը։

Ձեռագրի գրիչ Սիմեոն Լեհացին Ազարիա Սասնեցու ջանքերի մասին նույնպես գրում է. «Շնորհիւ Տեառն սկսայ եւ ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ գիրքս, որ կոչի կանոնք, եւ է յոյժ պիտանի եւ անգիտ, որպէս եւ առաջիկայդ ընթեռնլով իմասցիս, թէ որպէս աշխատութեամբ եւ բազմախնդիր [յ]ուզմամբ ի բազում տեղաց եւ գաւառաց ժողովեալ հաւաքեաց ի մի յոյժ

---

[1] Ցուցակ ձեռագրաց Անկիւրիոյ Կարմիր վանուց..., էջ 246։

[2] Նույն տեղում։

[3] Նույն տեղում, էջ 247։

[4] Նույն տեղում։

*փարթամ եւ հարուստ»[1]։ Միևնույն միտքը հաստատում է կողմնակի մի այլ անձնավորություն՝ Հակոբ Քյոթահիացին, որը ընտիր Կանոնագիրք ունենալու նպատակով երկար թափառումներից հետո, 1611 թվի մոտերքում, Կ. Պոլսում տեսնում է իր ակնկալածը. «Տեսի անդ կանոնս, կատարեալ գիրս կանոնաց... զի նա (Ազարիա Սասնեցին —Վ. Հ.) բազում ջանիւ խնդրեալ էր բազում տեղիք ժողովոց ի մի վայր ի վերայ այն կանոնացն, առաւել աւելեաց բազում կանոնս ի բազում օրինակաց, այնպէս փարթամ եւ հարուստ, որ ոչ գտանէր ազգիս մերում, ի մի տուփ ժողովեալ, եւ ես տեսի զնա եւ բազում ուրախութեամբ լցայ, եթէ այժմ կատարեցաւ խնդրուածն իմ, եւ առեալ ի նմանէ օրինակեցի...»[2]։*

*Ուրեմն, Կանոնագրքի Գրիգոր Կեսարացու ունեցած օրինակից (Գեորգ Երզնկացու խմբագրությունից) 1609 թվին Ազարիա Սասնեցին իր համար Սիմեոն Լեհացուն ընդօրինակել է տալիս և այնուհետև կատարում մի շարք նյութերի ավելացումներ, իսկ վերջինիցս էլ Հակոբ Քյոթահիացին 1611 թվին կամ մի փոքր հետո իր համար ընդօրինակել տալիս Արսլան գրչին։*

*Իսկ ի՞նչ նյութեր է մուծել Կանոնագրքում Ազարիա Սասնեցին։ Թեպետ հարկ չկա թվարկելու բոլոր նյութերը, որոնց թիվը հասնում է շուրջ 40-ի. հետաքրքրվողներին հղում ենք Բաբգեն Կյուլեսերյանի Անկյուրիայի Կարմիր վանքի մատենադարանի ձեռագրերի Ցուցակի համապատասխան էջերին[3], իսկ այստեղ կթվարկենք գլխավորներից մի քանիսը. «Բանք գեղեցիկ եւ յոյժ պիտանի վասն աթոռոյն Ախթամարայ, որ է ի ներքոյ բանադրանաց ի սրբոյն Գրիգորէ Տաթեւացւոյ», «Խրատ կանոնական ընթանուր ամենայն հաւատացելոց ի Քրիստոս, ասացեալ Կիրակոսի կաթողիկոսի սուրբ էջմիածնի», «Տեսիլ սրբոյն Սահակայ հայրապետին» և սրա մեկնությունը, Գրիգոր Լուսավորչի տեսիլը, Դավիթ Ալավկա որդու կանոնները, Հռոմի եպիսկոպոս Օգոստինոսի «Վասն վարուց կրօնաւորաց» և «Խրատ ողջաձ...» գրությունները, Ներսես Շնորհալու թղթերը ու այլ նամակներ, Վանականի գործերից երկուսը, հայոց թագավորների կարգն ըստ Մովսես Խորենացու և իր՝ Ազարիայի կազմած հայոց կաթողիկոսների ցանկը և այլ նյութեր։ Այս համառոտ թվարկումից էլ երևում է, որ Ազարիա Սասնեցու լրացումները մեծ մասամբ կանոններ չեն և չեն համապատասխանում Կանոնագրքի բնույթին, օրինակ, Գրիգոր Լուսավորչի և Սահակ Պարթևի տեսիլները, այլ և այլ բազմաթիվ նամակներ, հայոց թագավորների և կաթողիկոսների ցանկերը, Նիկիայի և Քաղկեդոնի ժողովների վերաբերյալ նյութերը և այլն։*

*Շտապենք ասել, որ եթե Կանոնագրքի X դարի խմբագրությունում ավելացված են մի երկու ոչ կանոնական նյութեր, ապա նման նյութերի քանակը հաջորդ XI, XIV—XV դարերի խմբագրություններում ավելի մեծ տեղ է բռնում, իսկ XVII դարում Ազարիա Սասնեցու խմբագրությունը, կարելի է ասել, նյութի ընտրության եղանակը հիմնովին խախտեց, և նրա ավելացրած նյութերը ոչ*

---

*[1] Նույն տեղում, էջ 241—242։*

*[2] Նույն տեղում, էջ 265—266. տե՛ս նաև Հանդէս Ամսօրեայ, 1936, VII—IX, էջ 324։ Այս անձնավորության մասին տե՛ս նաև Մկրտիչ Աղավնունու «Մեր Կանոնագիրքն և Յակոբ եպիսկոպոս Կուտինացի» հոդվածը «Բիւզանդիոն»-ի 1897, հուլիսի 14-ի № 214-ում։*

*[3] էջ 235—239։ Այս մասին Ազարիա Սասնեցին գրում է նաև իր հիշատակարանում, տե՛ս նույն տեղում, էջ 247։*

*թե Հարստացրեցին Կանոնագրքի բովանդակությունը, այլ այն դարձրին մատենագրական զանազան նյութերի ժողովածու։*

*Մինչև այժմ քննում էինք տարբեր ժամանակներում Կանոնագրքին ավելացրած նյութերի շերտերի, դրանց ժամանակի և հնարավորության դեպքում ավելացում կատարողների ինքնության հարցերը։ Եվ որպեսզի այդ բանը ընթերցողների համար ատրկայական երևա, XLII էջում ներկայացնում ենք Կանոնագրքի ճոխացման սխեման։*

## Ե. ԿԱՆՈՆԱԳՐՔԻՆ ԱՎԵԼԱՑՎԱԾ ՄԻ ՇԱՐՔ ԿԱՆՈՆԱԽՄԲԵՐԻ ՎԱՎԵՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՅԼ ՀԱՐՑԵՐ

*Դարերի ընթացքում Կանոնագրքի բովանդակության աճը պարզելուց հետո, անցնենք լրացված նյութերի վավերականության հարցին։*

*Հովհ. Օձնեցուց հետո Կանոնագրքին ավելացված նյութերի շարքում աչքի են ընկնում իրենց քանակով այնպիսիները, որոնք կեղծ գրվածքներ են։ Իհարկե այդպիսի գրվածքներ կան նաև Օձնեցու կազմած Կանոնագրքում, օրինակ, Առաքյալներին, Հարանց հետևողաց, Աթանաս Աղեքսանդրացուն, Սևանտոսին վերագրված և թերևս Կեսարիայի կանոնախմբերը։ «Կանոնագիրք Հայոց»-ի Ա հատորի «Ծանոթագրություններ» բաժնում խոսել ենք Կեսարիայի և, մասնավորապես, Աթանաս Աղեքսանդրացու կանոնախմբերի մասին։ Վերջինս չենք գտնում նույն հեղինակի աշխատությունների շարքում[1]։ Սակայն նրա աշակերտ Տիմոթեոս Աղեքսանդրացու 61 (37+24) հարց ու պատասխանի երկու բնագրերում գտնում ենք Աթանասի կանոնախմբի 15 հարց ու պատասխանի նյութերը[2]։ Թե ե՛րբ է այս կանոնախումբը ստեղծվել և վերագրվել Աթանասին՝ դժվար է հաստատ բան ասել, սակայն հաստատ է այն, որ այդ կանոնախումբը մեր մատենագրության մեջ գոյություն ուներ մինչև Հովհ. Օձնեցին՝ VIII դարի սկզբները։ Իսկ Սևանտոսի կանոնախմբի վերաբերյալ Ակինյանի փորձը՝ այն վերագրելու Դիոնեսիոս Աղեքսանդրացուն, հազիվ թե համոզկեր լինի[3], որովհետև այդ վարկածը նա հիմնավորում է այնպիսի վիրահատությամբ, որ դարձյալ մնում է անհավատալի, ուստի և այն դիտում ենք որպես կեղծ գրություն։*

---

*[1] Տե՛ս «Ս. Աթանասի Աղեքսանդրիոյ հայրապետի ճառք, թուղթք եւ ընդդիմացութիւնք», Վենետիկ, 1899։ Այստեղ գտնում ենք 141 հարց ու պատասխան «Երանելի Աթանասի ասացեալ հարցմունք վայելուչք եւ պատասխանիք հոգեշահք» վերնագրով (էջ 347—477), բայց ոչ մի նմանություն չկա այս երկու բնագրերի միջև, օրինակ, քահանայի ուխտության մասին խոսում է այս գրքի ՃԻԷ (էջ 457—458) և Կանոնագրքի Աթանասի ԾԴ (էջ 312—313) հարց ու պատասխաններում, բայց ոչ մի նմանություն։*

*[2] Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 603, 606—608, 610։*

*[3] Հանդէս Ամսօրեայ, 1949, IV—XII, էջ 59—70. մասնավորապես կարդա 70-րդ էջը, ուր կան հետևյալ հեռացատկ մակաբերումները. իբր* Դիոնեսիոս Աղեքսանդրիայ *անունից առաջ է եկել* Սեւանդեայ *անունը. այսօրինակ ձևով՝*

*Դ Ի Ո Ն Ե Ս Ի Ո Ս Ա Ղ Ե Ք Ս Ա Ն Դ Ր Ի Ա Յ*
*Ս Ե Ի Ա Ն Դ Ե Ա Յ*

*կամ* Մեծրուժանայ *ձևից՝* քաղանայից *ձևը, այսպես՝*

*Մ Ե Ծ Ր Ո Ւ Ժ Ա Ն Ա Յ*
*Ք Ա Ղ Ա Ն Ա Յ Ի Յ*


Կանոնագրքի Հովհ. Օձնեցու խմբագրություն
VIII դար
Ա—ԻԴ կանոնախմբեր
Անանիա Մոկացու ունեցած կանոնագիրքը
X դարի կեսեր
Ա-ԻԴ+ԻԵ—ԼԴ (կամ ԻԵ—ԼԸ?) կանոնախմբեր
Տեր Խաչիկի ունեցած կանոնագիրքը
X դար
Ա—ԻԴ+ԻԵ—ԼԸ+ԼԹ—Խ կանոնախմբեր
Ա խումբ
Բ խումբ
Կանոնագրքի XI դարի խմբագրություն
Ա—Խ+ԽԱ—ԾԷ կանոնախմբեր
AP
Կանոնագրքի X դարի վերջերի խմբագրություն Ա—Խ կանոնախմբեր
it
Ա—ԾԷ+ԾԸ կանոնախմբեր
BCDEFGH
Ա—ԾԷ+ԾԸ կանոնախմբեր
U
Ա—ԾԷ+ԾԸ—Կ կանոնախմբեր
IJKLMNOGRST
VXYZWб
Ա—Խ+ԽԱ—ԽՁ կանոնախմբեր
befgq
Ա—Խ+ԽԱ—ԿԵ կանոնախմբեր մինչև XIV դ. կեսեր
hlou
Ա—ԾԷ կանոնախմբեր
n
Կանոնագրքի Գեորգ Երզնկացու խմբագրություն
XIVդ. II կես—XVդ սկիզբ
Ա—Խ+ԽԱ—ԿԵ+ԿՁ—ՀԸ
acdkmpsv
Ա—ՀԸ+ՀԹ—ՉԸ
Տիրան արքեպ. Ներսոյանի օրինակ և r
Ազարիա Սասնեցու խմբագրություն
XVIIդ.
Անկյուրիայի Կարմիր վանքի №43 ձեռ.
Ա—ՀԸ+ՀԹ—ՂԹ կանոնախմբեր

*Սակայն դառնանք Հովհ. Օձնեցուց հետո ավելացված մի շարք կանոնախմբերի վավերականության հարցին։*

Թադեոս առաքյալին վերագրված կանոնախումբը *Կանոնագրքի համակարգում դրված է 26 (ԻԶ)-րդ տեղում։ Այս կանոնախմբի հեղինակի մասին, վաղուց է, որ գոյություն ունի արդարացի կասկածանք։ Տակավին 1880 թվին Վ. Բաստամյանցը գրում էր. «Դոքա (Թադեոսի կանոնները —Վ. Հ.) չեն պատկանում մեր առաջին լուսավորչին (Թադեոսին —Վ. Հ.), այլ հետո են հորինված»*[1]*։ Հակոբոս Տաշյանը «Վարդապետութիւն առաքելոց» (Վիեննա, 1896) իր հմտալի աշխատության 131—148-րդ էջերում մանրամասն քննելով սույն կանոնախմբի վավերականության հարցը, գտնում է, որ այն ներկա ձևի մեջ «ո՛չ Ե դարեն կրնանք համարել»*[2]*, քանի որ վերջինիս մեծ մասի աղբյուրը հանդիսանում է «Վարդապետութիւն առաքելոց» մատյանը*[3]*։ Մի փոքր անագան նույնպիսի կարծիք են հավաստում Ն. Մելիք-Թանգյանը և Մ. Օրմանյանը։ Առաջինը հենվելով պատմական մի շարք փաստերի վրա*[4] *եզրակացնում է. «Պասերի խնդիրը, ժամանակագրության (թերևս պետք է լինի* ժամակարգության—Վ. Հ.) *տեսակները և կանոնադրությունը, նվիրապետության կարգը, ջրի և անխմոր հացի գործածության վեճերը, բոլորը սկսվում են շատ ուշ և կանոնավորվում են III, IV, V, VI, VII դարերում»*[5]*։*

*Եվ իսկապես, երբ հետևում ենք այս կանոնախմբի հոդվածների բովանդակությանը, ապա նկատում ենք, որ հոդվածների զգալի մասը քաղված է մեզ հայտնի աղբյուրներից, օրինակ, Ա հոդվածը կազմված է Պողոս առաքյալի նամակներից (Ա Տիմ. Գ, 1—3, Տիտ. Ա, 7—9) և Առաքելական ԻԲ հոդվածից, Գ-ն՝ Նեոկեսարիայի ԺԶ, Դ-ն՝ Առաքելական Ի, ԻԱ, ԻԲ, Ե-ն՝ Հովհ. Օձնեցու ԺԲ և Սիոնի Ը, Զ-ն՝ Առաքելական ԼԱ հոդվածներից և այլն։ Կազմողն իր ձեռքի տակ գտնվող սկզբնաղբյուրներից օգտվել է ազատ ձևով, քաղված նյութը մատուցել է վերաշարադրելով։*

*Զ հոդվածում հեղինակը խոսում է պատարագի գինու բաժակը անխառն և անապական մատուցելու մասին։ Այս հոդվածի վերջին հատվածը. «Մի՛ ոք յանդգնեսցի խառնել ջուր ի յայն բաժակն...» մինչև վերջ Տաշյանը համարում է» հետսամուտ ընդմիջարկություն»*[6]*։ Մեզ այդպես չի թվում։ Կանոնախմբի ներկա ձևի մեջ շոշափված առանձին հարցեր հայ եկեղեցում կարգավորվել են VI, VII դարերում։ Ինքը՝ Տաշյանն էլ կարծում է, որ այն «ամենեն կանուխ իսկ դնելով՝ Ե դարեն հառաջ չի յերևան եկած»*[7]*։ Քանի որ գինու բաժակին ջուր խառնելու վեճերը կապված Քաղկեդոնի ժողովի որոշումների հետ առաջ եկան VI դարում և այնուհետև այդ հարցը մնաց օրակարգում հաջորդ դարերում. ուրեմն խնդրական այդ հարցը այստեղ ընդմիջարկություն չէր կարող լինել և*

---

*[1] «Փորձ», 1880, VIII—IX, էջ 83, ծանոթ. 3, տե՛ս նաև 1881, VI, էջ 52. հմմտ. «Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց» Վաղարշապատ, 1880, էջ 411, ծանոթ. 915։*

*[2] էջ 146։*

*[3] էջ 141, 147։*

*[4] Ի միջի այլոց անտեղի է հիշված խաչիկ կաթողիկոսի անունը կրող դավանական գրությունը-տե՛ս Ասողիկ, Պատմութիւն տիեզերական, ՍՊԲ, 1885, գլուխ ԻԱ։*

*[5] Հայոց եկեղեցական իրաւունքը, գիրք Ա, էջ 475. հմմտ. Մ. Օրմանյան, Ազգապատում, հատ. Ա, Բեյրութ, 1959, էջ 44։*

*[6] Վարդապետութիւն առաքելոց, էջ 403, տողատակ։*

*[7] Նույն տեղում, էջ 134։*

իր վրա կրել է VI դարից սկսած առաջ եկող վեճերի կնիքը։ Ե հոդվածի առթիվ Տաշյանը գրում է. «Ե կանոնն՝ այն է եկեղեցվո սեղանին նկատմամբ հրամայվածը շատ նման կը հնչէ ս. Սահակա մէկ կանոնին»[1]։ Մեզ այնպես է թվում, որ Տաշյանը Ե հոդվածի աղբյուրը ճիշտ չի նշում։ Նրա նշած Սահակի Բ հոդվածը շատ քիչ է առնչվում մեզ հետաքրքրող հոդվածի հետ։ Թադեոս առաքյալին վերագրված կանոնախմբի Ե հոդվածում կարդում ենք. «Արժան է եպիսկոպոսին հաստատել սեղան ի քարանց՝ ասրինակ խաչին, եւ զայն ծածկել սրբովք կտաւովք եւ խնկարկութեամբ ընդ առաւօտս եւ ընդ երեկոյս եւ ի ժամ պատարագին խափան մի՛ լիցի խնկոց եւ լուցմանց»։ Տաշյանի մատնանշած Սահակի Բ հոդվածում կարդում ենք. «Եւ զտաճարս աղաւթիցն՝ յորս սուրբ եւ աստուածընկալ սեղանն է հաստատեալ, յորոյ վերայ կատարի մեղսաքաւիչ եւ կենդանարար խորհուրդ մարմնոյ եւ արեան ապրեցուցչին մերոյ եւ Տեառն, ըստ արժանի բաւականութեանն զարդարուն պահեսցեն անխափան լուցմամբք եւ խնկարկութեամբ, եւ պարսպեալ եղիցի քաղաք որմովք...» (հոդվածի շարունակությունը մկրտատան և ավազանի մասին է, ուստի այն չենք բերում)։ Այս երկու մեջբերումների մեջ աղերսվող կետերը շատ քիչ են։ Մինչդեռ Հովհ. Օձնեցու կանոնախմբի ԺԲ հոդվածում գրված է. «Ոչ է արժան զսեղանն, յորոյ վերայ պատարագն Քրիստոսի մատչի, փայտեղեն կանգնել եւ շարժուն, այլ քարեղէն եւ անշարժ հիմնացուցանել»[2]։

Մի այլ տեղ Հովհ. Օձնեցին գանգատվում է, որ «ի տեղիս տեղիս զսեղանս եւ զաւազանս ոչ առնեն ըստ հրամանի եւ աւանդութեան երանելեացն մերոց հարանց՝ քարեղէն եւ անշարժաբար զերկոսինն հիմնացուցանելով»[3] կամ «է՞ր աղագաւ քարեղէն եւ ոչ փայտեղէն հրամայեցաւ կանգնել մեզ սեղան» և այնուհետև հաջորդում է բացատրությունը[4]։ Ուրեմն, Օձնեցու ժամանակ, առանձին տեղերում խախտվել էր ավանդական սովորությունը և նա պահանջում էր վերականգնել այն։ Արդյո՞ք այս պահանջի արձագանքը չէ նաև Թադեոս առաքյալի համապատասխան հոդվածը։ Իսկ թե պատարագից հետո ինչպես պետք է այն պահել, այդ մասին գրում է Սիոն կաթողիկոսը իր կանոնախմբի Ը հոդվածում. «Յայսմհետէ մի՛ իշխեսցեն զնոյն անպատուութիւն առնել սուրբ աւազանին, այլ ընդ այլ սրբութիւնսն պատուով կալցին, որպէս զսեղանն եւ զխաչն՝ **վերարկուաւ ծածկեսցեն եւ խնկարկութեամբ պատուեսցեն»**[5] (ընդգծումը մերն է —Վ. Հ): Դժվար չէ նկատել և համոզվել, որ մեզ հետաքրքրող Ե հոդվածը վերաձևված է ոչ այնքան Սահակի վերոբերյալ հոդվածի, այլ Հովհ. Օձնեցու և Սիոն կաթողիկոսի համապատասխան հոդվածների վրա։ Իսկ այս հեղինակները VIII դարի անձնավորություններ են։

Ի դեպ, Տաշյանը վերևում չի էլ ասում, թե Թադեոս առաքյալի սույն կանոնը Սահակ Պարթևի Բ կանոնից է վերցրել, այլ ասում է «շատ նման կը հնչէ»։

---

[1] Նույն տեղում, էջ 147, հմա՛ Սահակի Բ հոդվածը, Կանոնագիրք Հայոց, հատ. Ա., էջ 368—369։

[2] Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 520—521։

[3] Յովհաննու Իմաստասիրի Աւձնեցւոյ մատենագրութիւնք, Վենետիկ, 1833, էջ 5։

[4] Նույն տեղում, էջ 7։

[5] Տե՛ս Ներկա հատորում, էջ 9։

Տաշյանը գտնում է, որ առաջարկվող կանոնախումբը «գոնե Օձնեցվոյն օրով շատ ծանոթ ըլլալու չէր. վասն զի անոր հավաքման մեջ մտած չէ»[1]։ Այս կարծիքը կարող է ճիշտ լինել, բայց հակառակ սրան, կարող է ճիշտ լինել նաև այն, որ այս կանոնախումբը Օձնեցու օրոք Կանոնագրքում չի մտել, ոչ թե այն շատ ծանոթ չլինելու պատճառով, այլ դեռ հորինված չէր։

Թե ով կարող է եպիսկոպոս և վարդապետ լինել հարցին Սահակ Պարթևն անդրադարձել է իր կանոնախմբի ԽԵ և ԽԹ հոդվածներում[2]։ Եթե հայերի առաջին լուսավորչի կանոնախումբը լիներ թեկուզ և ասորերեն, Սահակ Պարթևը կօգտագործեր անպայման, սակայն ավելի հավանական չէ՞, որ հակառակն է տեղի ունեցել՝ այդ հարցերի մասին գրելիս վերևում նշված այլ աղբյուրների հետ այս կանոնախմբի հեղինակը օգտագործել է նաև Սահակ Պարթևի կանոնախումբը։

Սույն կանոնախմբի Ե հոդվածի այն մասը, թե «հաստատել սեղան ի քարանց՝ աւրինակ խաչին», մատնացույց է անում ոչ թե խաչը ևս անպայման կառուցել քարից, մի երևույթ, որը մեզ մոտ հանդես է եկել շատ հնից[3], այլ այն, որ սեղանը լինի քարից պատրաստված խաչի նման ամուր և անշարժ։ Թե որքանով է ճիշտ մեր այս ասածը՝ երևում է Հովհ. Օձնեցու կանոնախմբի մի այլ՝ ԻԷ հոդվածից, ուր թույլատրվում է խաչ պատրաստել ոչ միայն քարից, այլև ուրիշ նյութերից. «Եթէ ոք խաչ արասցէ փայտեայ եւ կամ յի՛նչ եւ իցէ նիւթոյ, եւ ոչ տացէ քահանային աւրհնել եւ աւծանել զնա միւռոնովն սրբով, ոչ է պարտ զնա ի պատիւ ընդունել կամ երկրպագութիւն մատուցանել...»[4]։ Մի բան, որ հայ եկեղեցում շարունակվում է մինչև օրս։

Ուշադրությամբ ուսումնասիրելով մյուս հոդվածների բովանդակությունը՝ նկատեցինք, որ Դ և ԺԲ հոդվածները կրկնված են Ա հոդվածում. այսպես՝ Դ հոդվածում ասվում է, որ եպիսկոպոսը պետք է հրաժարվի տգետներին, հիմարներին (ոչ խելագար), գողերին, շնացողներին և անժուժկալներին ձեռնադրելու, որպեսզի «մի՛ բարկացուցանել զԱստուած», իսկ Ա հոդվածում նույն հարցերի մասին խոսում է ընդարձակ ձևով և դարձյալ ավելացնում՝ այդպիսին «Ի բարկութիւն շարժէ զԱստուած»։ ԺԲ հոդվածում, ինչպես և Ա-ում, միակերպ դատապարտում է եպիսկոպոսին, եթե նա առաջնորդվում է կաշառքի, մերձավորության և բարեխոսության սկզբունքներով։

Այս բոլոր փաստերը հաստատում են, որ սույն կանոնախումբը կեղծ գրվածք է և այն չէր կարող հանդես գալ VIII դարից վաղ, այլ Հովհ. Օձնեցուց և Սիոն կաթողիկոսից հետո։ Երիցս արդարացի է Տաշյանը երբ գրում է. «Բայց թերևս չխալինք ընդունելու, որ Օձնեցիէն հառաջ դեռևս ծանոթ չէին անոնք՝ (Թադեոս առաքյալի կանոնները —Վ. Հ.) գոնե առհասարակ, վասն զի եթե ծանոթ ըլլային, անշուշտ Օձնեցի զանոնք ալ առած կըլլար յուր կանոնագրոց հավաքման մեջ...»[5], որովհետև ավանդական այս անձնավորությունը մեծ

---

[1] Վարդապետութիւն առաքելոց, էջ 131։

[2] Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 403, 409—410։

[3] Տե՛ս Ս. Գ. Բարխուդարյան, Հայաստանի կոթողային հուշարձանները, ՀՍՍՀ ԳԱ Տեղեկագիր, (հաս. գիտ.), 1960, № 7—8, էջ 61։ Մի զրույցի ժամանակ Ս. Բարխուդարյանը հայտնեց, որ քարից, այսպես կոչված «թևավոր խաչեր» հայերը պատրաստել են IV—V դարերում։ Իսկ խաչքարերը IX դարից վաղ մեզ չեն հասել։

[4] Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 532—533։

[5] Վարդապետութիւն առաքելոց, էջ 146։

*հեղինակություն ուներ հայ եկեղեցում՝ հանդիսանալով քրիստոնյա առաջին քարոզիչներից մեկը Հայաստանում։ Հետևապես Թադեոս առաքյալի անունով հայտնի կանոնախմբի ծագման մասին Ակինյանի վարկածը՝ «Թե՛ վարդապետությունն առաքելոց և թե՛ Թադեի կանոնք նախնաբար Ասորիքի մեջ ծագում առած են Դ դարու վերջերը (380) և անկե հասած Հայաստան»[1] մեզ ճիշտ չի թվում։*

*Հովհ. Օձնեցու կազմած Կանոնագրքում հետագա ավելացումների մեջ այս կանոնախումբը կազմում է հնագույն և առաջին շերտի մի մասնիկը, հաջորդելով Սիոնի (Պարտավի) կանոնախմբերին։ Նշանակում է՝ Օձնեցուց հետո նրա Կանոնագրքում առաջինը մուծվել է Սիոնի (Պարտավի) կանոնախումբը և այնուհետև այս։ Այդ կարող էր տեղի ունենալ VIII դարից հետո, բայց ոչ անպայման մինչև X դարի վերջերը, ինչպես կարծում է Ն. Մելիք-Թանգյանը[2], այլ ավելի վաղ, ասենք՝ VIII դարի վերջերից մինչև IX դարը ներառյալ։*

Անտիոքի ժողովին վերագրված երկրորդ կանոնախումբը *Կանոնագրքի համակարգում դրված է ԻԸ (28)-րդ տեղում։ Այս կանոնները պետք չէ շփոթել Անտիոքում կայացած մի շարք ժողովներից որևէ մեկի որոշումների հետ[3]։ Սույն կանոնախմբի Է հոդվածում հեղինակը գրում է. «...զոր դրոշմեցաք ի մի վայր բովանդակեալ եւ* ծայրաքաղ *արարեալ, զաւգտակարն ամենայնի զմեզս և զարդարութիւն ցուցաք...»[4] (ընդգծումը մերն է—Վ. Հ.)։ Այս նշումը արդեն հուշում է, թե այն որտեղից է քաղված։ Մեր որոնումները ցույց տվեցին, որ, օրինակ, Ա հոդվածը համառոտված է Անտիոքի ժողովի Կանոնագրքում մտած ԺԳ հոդվածից[5], Բ-ն, Գ-ն, Դ-ն, Ե-ն, Զ-ն և Թ-ն՝ համապատասխանաբար Լավոդիկեի Ի, ԻԸ, Լ, Ծ, ԾԱ և ԾԵ հոդվածներից[6], իսկ Է և Ը հոդվածները՝ Աստվածաշնչի տարբեր մասերից և առայժմ մեզ անծանոթ այլ գրքերից։ Այսպիսով, առաջարկվող կանոնախումբը կեղծ է և ոչնչով չի կապվում Անտիոքի որևէ ժողովի մշակած կանոնների հետ։ Հաշվի առնելով այն փաստը, որ սույն կանոնախումբը Օձնեցու կազմած Կանոնագրքից հետո է մուծվել Կանոնագրքում և այն էլ ավելացումների սկզբնական շերտում, մինչև X դարը, մնում է ենթադրել, որ այն ստեղծվել է VIII դարի երկրորդ կեսից մինչև IX դարը ներառյալ։*

Անտիոքի խոստովանությունը *Կանոնագրքի համակարգում դրված է 33 (ԼԳ)-րդ տեղում։ Այն կանոնական բովանդակություն չունի, այլ պատկանում է դավանաբանական հակաճառական սեռին, ուր նզովվում են հայ եկեղեցու ուսմունքին խորթ տեսությունները։*

*Որոշ հրատարակություններում այս բնագիրը նշված է բոլորովին ուրիշ հեղինակություններով։ «Գիրք թղթոց»-ում, ինչպես նկատել էր Հ. Անասյանը[7] այն վերագրված է սուրբ Աբդիշո եպիսկոպոսին։ Ահա վերջինիս երկու նամակների վերնագրերը. «Նորին Աբդիսոյ եպիսկոպոսի. յաղագս անիծեալ Նեստորականաց և ամենայն հերձուածողաց»[8] և «Նորին Աբդիսոյի եպիսկոպո-*

---

1 *Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 43։*

2 *Հայոց եկեղեցական իրաւունքը, գիրք Ա, էջ 476—477։*

3 K. J. Hefele, Conciliengeschichte, Erster Band, Freiburg im Breisgau, 1855, S. 109, 433, 477, 483, 512 *և շար.։*

4 *Տե՛ս սույն հատորը, էջ 48։*

5 *Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 213—214։*

6 *Նույն տեղում, էջ 234—236, 239—242։*

7 *Հայկական մատենագիտություն, հատ. Ա, Երևան, 1959, էջ 941—942։*

8 *«Գիրք թղթոց, էջ 66—67։*

*ա ի. յաղագս նզովելոյ զամենայն հերձուածողս, որք էին հակառակ ուղղափառաց»[1]։ Առաջին նամակն ընդգրկում է սույն բնագրի 65—68, իսկ երկրորդը՝ 69—71 էջերը[2]։ Առաջին նամակի սկզբի «Քանզի այսպէս հաւատամ առաջնորդութեամբ Միածնին որ վասն մեր մարդացաւ» հատվածը չի պահվել Կանոնագրքի բնագրում, մնացածը գրեթե նույնն է, եթե նկատի չունենանք առանձին մասերում որոշ բառերի ավելացումը կամ անունների փոփոխում։ Նույնն է երկրորդ նամակը, միայն թե սրա վերջին մասը, սկսած «զայս ամենայն զոր գրեցաք և նզովեցաք...» հատվածից մինչև վերջ բավական ընդարձակ է և տարբեր Կանոնագրքի բնագրի համապատասխան հատվածից, իսկ սրա վերջին «Սուրբ և խաղաղարար ժողովն որ յԱնտիոք...» հատվածը, ուր թված են ժողովի մասնակիցների մի մասի անունները, Աբդիշոյի երկրորդ նամակում չի պահվել։*

*«Գիրք թղթոց»-ում Աբդիշո եպիսկոպոսի այս երկու նամակները դրված են 14 և 15-րդ տեղերում։ «Գիրք թղթոց»-ի 219-րդ էջերում, այսինքն 56-րդ՝ «Տեառն Կոմիտասու Հայոց կաթուղիկոսի վասն հաւատոյ» նամակից հետո կա մի հիշատակարան, ուր կարդում ենք. «Աւրինակ գրոցս՝ որ լեալ էր Տէր Գրիգորիսի Վկայասիրին՝ մինչև ցայս վայր էր, և նա այսպէս էր գրեալ. Ջվահրամ որդի Գրիգորոյ Մագիստրոսի, յիշեսջիք յաղաւթս ձեր, ո՜վ երջանիկ դասք ուղղափառաց խմբիցդ Ազքանազեան սեռի։ ՇԻԷ թուական»։ Ուրեմն, «Գիրք թղթոց»ի Գրիգոր Վկայասերի օրինակը 1078 թ. պարունակում էր 56 նամակներ, հրատարակված բնագրի կեսից պակաս։ Այսինքն Կանոնագրքի մեզ հասած հնագույն օրինակի, Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքի մատենադարանի № 131 ձեռագրի ընդօրինակման ժամանակ՝ 1098թ. «Գիրք թղթոց»-ի Գրիգոր Վկայասերի օրինակը ուներ 56 նամակներ, որոնց թվում նաև Աբդիշո եպիսկոպոսի վերոհիշյալ երկու նամակները։ Եթե նկատենք, որ Աբդիշո եպիսկոպոսի վերևում նշված երկու նամակները տեղավորված են «Գիրք թղթոց»-ի սկզբնական մասում, 56 նամակների 14 և 15-րդ տեղերը, նշանակում է դրանք «Գիրք թղթոց» են մտել շատ վաղ, գուցե և վերջինիս կազմման սկզբնական խմբագրության ժամանակ։ Մինչդեռ սույն բնագիրը Կանոնագրքում մտել է Հովհաննես Օձնեցուց հետո IX—X դարերի միջոցին։ Այստեղից կարելի է ենթադրել, որ այս բնագիրը Կանոնագիրք է մուծվել «Գիրք թղթոց»-ից։ Սակայն չշտապենք։ Հ. Անասյանը նկատել էր նաև, որ այս բնագրի առաջին մասը Երուսաղեմի սուրբ Հակոբյանց մատենադարանի ճառընտիրներից մեկում կրում է Աբրահամ կաթողիկոսի անունը[3]։ Ահա այդ բնագրի վերնագիրը. «Տեառն Աբրահամու Հայոց կաթուղիկոսի խոստովանութիւն»[4]։ Եթե նկատի չունենանք շարադասության առանձին շեղումներ, վերջինս ծածկում է Աբդիշո եպիսկոպոսի վերևում նշված առաջին նամակին։ Աբրահամ կաթողիկոսի խոստովանության միայն վերջին մասը սկսած «Արդ ամենայն վարդապետք զգուշացուցին զմեզ...» հատվածից[5] մինչև վերջ չենք գտնում Աբդիշո եպիսկոպոսի առաջին նամակում, այն գտնում ենք սրա երկրորդ նամակի վերջին մասում, սկսած «զայս ամե-*

[1] *Նույն տեղում, էջ 68—69։*

[2] *Տե՛ս ներկա հատորում։*

[3] *Հայկական մատենագիտություն, հատ. Ա, էջ 942։*

[4] *Տե՛ս Ն. Պողարյան, Մայր ցուցակ ձեռագրաց սրբոց Յակոբեանց, հտ. երկրորդ, Երուսաղէմ, 1953, էջ 32։*

[5] *Տե՛ս նույն տեղում, էջ 32—33։*

*նայն զոր գրեցաք և նզովեցաք» հատվածից մինչև վերջ, ուր Աբդիշո եպիսկոպոսի երկրորդ նամակի «առաւել ի Դաւթայ երանելոյ...ի մոլորեցուցիչ գիտութենէ, և ճշմարիտ վարդապետքն» ընդարձակ հատվածը[1] չի պահվել Աբրահամ կաթողիկոսի խոստովանության մեջ։ Կարելի է նաև նշել, որ Կանոնագրքի Անտիոքի ժողովի խոստովանությունը և Աբրահամ կաթողիկոսի խոստովանությունն ընդհանուր առմամբ ծածկում են միմյանց, միայն վերևում նշված վերջին հատվածը չենք գտնում Կանոնագրքի բնագրում։ Միևնույն բնագրի այս երեք տարբերակներից հարազատության առումով, Աբրահամ կաթողիկոսի խոստովանությունը համեմատաբար ավելի մոտ է Աբդիշո եպիսկոպոսի առաջին նամակին։ Երուսաղեմի այն ձեռագիրը, որտեղ գտնվում է Աբրահամ կաթողիկոսի խոստովանությունը, նոր ձեռագիր է, ընդօրինակված Երուսաղեմում, 1737 թ.։ Հետևապես այն չի կարող հաստատ համոզում ներշնչել այս բնագիրը Աբրահամ կաթողիկոսին վերագրելու համար։*

*Մեզ հայտնի է նաև առաջարկվող բնագրի մի այլ, արդեն հրապարակված տարբերակը։ «Կնիք հաւատոյ»[2] ժողովածուի վերջին փաստաթուղթը ունի այս վերնագիրը. «Մեկնութիւն ի յայտարարութիւն և կշտամբանք հերձուածոցն»[3]։ Սրա երկրորդ մասը՝ սկսած 369-րդ էջի 6—7 և 16-րդ տողից մինչև վերջ միևնույն բնագրի մի այլ տարբերակն է։ Ձեռագիրը, որից հրատարակել է Կարապետ եպիսկոպոսը, դժբախտաբար թերի է։ Հրապարակված է մինչև մեր հրատարակության «զի է Աստուած և մարմին ի մի բն»[4] հատվածը։ «Կնիք հաւատոյ»-ի տարբերակը մեզ հետաքրքրում է այն առումով, որ բնագիրը տրված է ամբողջական ձևով, որպես մի փաստաթուղթ։ Այսպես է նաև Կանոնագրքի տարբերակը։ Մինչդեռ «Գիրք թղթոց»-ում և Ն. Պողարյանի «Ցուցակ»-ում եղած տարբերակները այս բնագիրը մեզ ներկայացնում են որպես երկու առանձին փաստաթղթեր։ Մյուս կողմից, քանի որ սույն բնագիրը և «Կնիք հաւատոյ» ժողովածուն իրենց բնույթով և էությամբ դավանաբանական գրվածքներ են, հարմար է ենթադրել, որ մեզ զբաղեցնող բնագիրը «Կնիք հաւատոյ»-ից է անցել Կանոնագրքին։ Իսկ թե այս նույն բնագիրը ինչպես է հանդես եկել այլ հեղինակների՝ Աբդիշո եպիսկոպոսի, Աբրահամ կաթողիկոսի անուններով՝ դժվարանում ենք որևէ բան ասել։*

*Հենց այն հանգամանքը, որ այս բնագիրը տարբեր տեղերում հանդես է եկել տարբեր անուններով, իսկ «Կնիք հաւատոյ» ժողովածուում անանուն, ցույց է տալիս որ այն կեղծ է, թեև կարող է խոր հնություն ունենալ։*

*Ի դեպ, սույն բնագրի նյութերը համեմատել ենք նաև Միաբանի հրատարակած «Գիրք հերձուածոց»-ի[5] համապատասխան նյութերի հետ[6], բայց դժվարանում ենք ասել, որ վերջինիցս օգտվել են։*

**Երկրորդ Նիկիական կանոնախումբը** *Կանոնագրքի համակարգում զբաղեցնում է 34 (ԼԴ)-րդ տեղը։ Կանոնախմբի վերնագրում նշված «երկրորդ» բառը պետք չէ շփոթեցնի մեզ առնչություններ փնտրելու այս կանոնախմբի և 787*

---

[1] *Գիրք թղթոց, էջ 69։*

[2] *Հրատ. Կարապետ եպիսկոպոսի, Էջմիածին, 1914։*

[3] *Նույն տեղում, էջ 366։*

[4] *Տե՛ս ներկա հատորը, էջ 70, տող 2։*

[5] *Վաղարշապատ, 1892։*

[6] *Նույն տեղում, հատվածներ ԽԲ, ԿԲ, ԿԶ, ՃԽԵ—ՃԽԷ, ՃԾ և այլն, էջ 7, 10—12, 16—17, 19—20։*

*թվի երկրորդ անգամ Նիկիայում հրավիրված ժողովի և վերջինիս որոշումների միջև։ Վերնագրի «կրկնաբանելով կարճ ի կարճոյ» հատվածը հուշում է մեզ, որ սույն կանոնախումբը ինչ որ մի բանի համառոտ կրկնությունն է։ Ելնելով դրանից առաջարկվող և մեր ձեռքի տակ եղած կանոնական մյուս բնագրերը համեմատեցինք և նկատեցինք, որ այն վերցրված, համառոտված և խմբագրրված է Նիկիայի, Անկյուրիայի, Կեսարիայի, Նեոկեսարիայի, Գանգրայի, Անտիոքի և Լավոդիկեի կանոնախմբերի հոդվածներից։ Իսկ թե վերնագրում ինչո՞ւ են գրել «Կանոնք երկրորդ Նիկիականք», թերևս Նիկիայի 325 թվի ժողովի որոշումներից տարբերելու համար, մյուս կողմից տեղական նշված ժողովների որոշումները ևս ունեին Նիկիայի տիեզերական առաջին ժողովի որոշումների ոգին ու կնիքը և դրանք նույնպես ընդունվել էին հայ եկեղեցու կողմից*[1]*։*

*Այստեղ դեմ առ դեմ կդնենք Երկրորդ Նիկիական, Կանոնագրքում բերված հիշված ժողովների կանոնախմբերի և կլոր փակագծերում հունարեն բնագրի (վերջինս նշում ենք պայմանականորեն, հետագայում բացատրելու պայմանով) համապատասխան հոդվածների համակարգը.*

| *Երկրորդ Նիկիական* | *Կանոնագիրք* | | *Հունարեն* |
|---|---|---|---|
| Ա. | Նիկիայի | Ա. | (1) |
| Բ. | » | Բ. | (2) |
| Գ. | » | — | (3) |
| Դ. | » | Դ. | (4) |
| Ե. | » | Ե. | (5) |
| Զ. | » | Զ. | (6) |
| Է. | » | Է. | (7) |
| Ը. | » | Ը. | (8) |
| Թ. | » | — | (8) |
| Ժ. | » | Թ. | (9) |
| ԺԱ. | » | Ժ. | (10) |
| ԺԲ. | » | ԺԱ. | (11) |
| ԺԳ. | » | ԺԳ. | (13) |
| ԺԴ. | » | ԺԴ. | (14) |
| ԺԵ. | » | ԺԵ. | (15) |
| ԺԶ. | » | — | (16) |
| ԺԷ. | » | ԺԶ. | (17) |
| ԺԸ. | » | ԺԷ. | (18) |
| ԺԹ. | » | ԺԹ. | (19) |
| Ի. | » | Ի. | (20) |
| ԻԱ. | Անկյուրիայի | Ա, Բ. | (1,2) |
| ԻԲ. | » | Դ. | (4) |
| ԻԳ. | » | ԺԲ. | (11) |
| ԻԴ. | » | ԺԵ. | (14) |
| ԻԵ. | » | ԺԶ. | (15) |
| ԻԶ. | » | ԺԷ. | (16) |
| ԻԷ. | » | ԺԸ. | (17) |

[1] *Հմմտ. Ս. Տիգրանյան, Հայոց իրավունքի պատմության ներածություն, Երևան, 1924 էջ 106։*

| Երկրորդ Նիկիական | | Կանոնագիրք | Հունարէն |
|---|---|---|---|
| ԻԸ. | Անկյուրիայի | ԺԹ. | (18) |
| ԻԹ. | » | Ի. | (19) |
| Լ. | Կեսարիայի | Ա. | (Անկյուրիայի 20) |
| ԼԱ. | » | Գ. | ( » 21) |
| ԼԲ. | » | Թ. | ( » 25) |
| ԼԳ. | Նեոկեսարիայի | Բ. | (2) |
| ԼԴ. | » | Գ. | (3) |
| ԼԵ. | » | Դ. | (4) |
| ԼԶ. | » | Ե. | (5) |
| ԼԷ. | » | Զ. | (6) |
| ԼԸ. | » | Ա. | (1) |
| ԼԹ. | » | Է. | (7) |
| Խ. | » | ԺԴ, ԺԵ. | (9, 10) |
| ԽԱ. | » | ԺԳ. | (8) |
| ԽԲ. | » | ԺԶ. | (11) |
| ԽԳ. | » | ԺԷ. | (12) |
| ԽԴ. | » | ԺԸ. | (13) |
| ԽԵ. | » | Ի. | (15) |
| ԽԶ. | Գանգրայի | Ա. | (1) |
| ԽԷ. | » | Գ. | (3) |
| ԽԸ. | » | Բ. | (2) |
| ԽԹ. | » | Դ. | (4) |
| Ծ. | » | Ե, Զ. | (5, 6) |
| ԾԱ. | » | Է. | (7) |
| ԾԲ. | » | ԺԱ. | (11) |
| ԾԳ. | Լաւոդիկեի | ԻԴ. | (24) |
| ԾԴ. | » | ԻԵ. | (25) |
| ԾԵ. | » | ԻԶ. | (26) |
| ԾԶ. | » | ԻԷ. | (27) |
| ԾԷ. | » | ԻԸ. | (28) |
| ԾԸ. | » | ԻԹ. | (29) |
| ԾԹ. | » | Լ. | (30) |
| Կ. | » | ԼԲ, ԼԳ. | (32, 33) |
| ԿԱ. | » | ԼԵ. | (35) |
| ԿԲ. | » | ԼԶ. | (36) |
| ԿԳ. | » | ԼԷ. | (37) |
| ԿԴ. | » | ԼԹ. | (40) |
| ԿԵ. | Գանգրայի | ԺԷ. | (17) |
| ԿԶ. | » | ԺԶ. | (16) |
| ԿԷ. | » | ԺԵ. | (15) |
| ԿԸ. | » | ԺԸ. | (18) |
| ԿԹ. | » | ԺԹ. | (19) |
| Հ. | » | ԻԲ. | (20) |
| ՀԱ. | Անտիոքի | Զ. | (6) |

| Երկրորդ Նիկիական | | Կանոնագիրք | Համարն |
|---|---|---|---|
| ՀԲ. | Անտիոքի | Է. | (7) |
| ՀԳ. | » | Ը. | (8) |
| ՀԴ. | » | Թ. | (9) |
| ՀԵ. | » | ԺԳ. | (13, 22) |
| ՀԶ. | » | ԺԶ. | (16) |
| ՀԷ. | » | ԺԷ. | (17) |
| ՀԸ. | » | ԺԸ. | (18) |
| ՀԹ. | » | ԻԲ. | (23) |
| Ձ. | » | ԻԳ. | (24) |
| ՁԱ. | » | ԻԴ. | (25) |
| ՁԲ. | Լավոդիկեի | Բ. | (2) |
| ՁԳ. | » | Գ. | (3) |
| ՁԴ. | » | ԼԳ. | (33) |
| ՁԵ. | » | Թ. | (9) |
| ՁԶ. | » | ԼԱ. | (31) |
| ՁԷ. | » | ԺԱ. | (11) |
| ՁԸ. | » | ԺԲ. | (12) |
| ՁԹ. | » | ԺԴ. | (14) |
| Ղ. | » | ԺԵ. | (15) |
| ՂԱ. | » | ԺԷ. | (17) |
| ՂԲ. | » | ԺԸ. | (18) |
| ՂԳ. | » | | |
| ՂԴ. | » | ԺԹ. | (19) |
| ՂԵ. | » | | |
| ՂԶ. | » | — | (21) |
| ՂԷ. | » | ԻԳ. | (23) |
| ՂԸ. | » | ԻԲ. | (22) |
| ՂԹ. | » | ԽԲ. | (45) |
| Ճ. | » | ԽԳ. | (46) |
| ՃԱ. | » | ԺԶ. | (16) |
| ՃԲ. | » | ԽԴ. | (47) |
| ՃԳ. | » | ԽԵ. | (48) |
| ՃԴ. | » | ԽԸ. | (51) |
| ՃԵ. | » | ԽԷ. | (50) |
| ՃԶ. | » | ԽԹ. | (52) |
| ՃԷ. | » | ԾԱ. | (53) |
| ՃԸ. | » | ԾԱ. | (54) |
| ՃԹ. | » | ԾԲ. | (55) |
| ՃԺ. | » | ԾԳ. | (56) |
| ՃԺԱ. | » | — | (57) |
| ՃԺԲ. | » | ԾԴ | (58) |
| ՃԺԳ. | » | ԾԵ. | (59) |
| ՃԺԴ. | ավելացրել է կազմողը | | |

Այսպիսով, մեզ համար պարզ է դառնում, թե սույն կանոնախումբը

ինչ է ներկայացնում իրենից։ Սակայն, որոնումների ժամանակ մեր հետաքրքրասիրությունը պատվում էր այն հարցի շուրջը, թե արդյոք այս կանոնախումբը Հովհ. Օձնեցու Կանոնագրքի հանդես գալուց հետո՞ է կազմվել՝ օգտագործելով Կանոնագրքում նշված ժողովների բնագրերը, թե՞ կազմողը անմիջական աղբյուր է ունեցել նույն ժողովների որոշումները, որոնք առանձին առանձին գոյություն են ունեցել մինչև Հովհ. Օձնեցին, ասել է թե մինչև Կանոնագրքի հանդես գալը։

Կանոնական նշված բնագրերի ուշադիր և մանրակրկիտ համեմատական վերլուծությունը ցույց տվեց, որ այս կանոնախումբը հանդես է եկել մինչև Կանոնագրքի հանդես գալը և սրա կազմողը օգտվել է ոչ թե Կանոնագրքից, այլ վերևում հիշված ժողովների որոշումների, Կանոնագրքից անկախ, առանձին առանձին գոյություն ունեցող բնագրերից։ Ահա թե ինչպիսի փաստեր մեզ բերեցին այդ համոզման։

Սույն կանոնախմբի և Կանոնագրքի համապատասխան կանոնախմբերի հոդվածները համեմատելիս նկատեցինք, որ այստեղ կան այնպիսի հոդվածներ, որ չեն պահվել Կանոնագրքում, բայց այդպիսիները գտնվում են միևնույն կանոնախմբերի հունարեն բնագրում. այսպես՝ այս կանոնախմբի Գ հոդվածում կարդում ենք. «Ոչ է պարտ որոց ի վիճակաւորութեան են՝ ի ներքս ածական ունել կանայս, բայց ի հանւոյ եւ ի մաւրէ եւ ի քեռէ»։ Կանոնագրքի Նիկիայի կանոնախմբի բնագրում այդպիսի կանոն չկա, այնտեղ Գ կանոնը բոլորովին այլ բան է, մինչդեռ նույնի հունարեն բնագրի 3-րդ կանոնը արտահայտված է Երկրորդ Նիկիական կանոնախմբի Գ կանոնում։ Հունարենում կարդում ենք. „'Απηγόρευσεν καθόλου ἡ μεγάλη σύνοδος, μήτε ἐπισκόπῳ, μήτε πρεσβυτέρῳ, μήτε διακόνῳ, μήτε ὅλως τινὶ τῶν ἐν κλήρῳ, ἐξεῖναι συνείσακτον γυναῖκα ἔχειν. Πλὴν εἰ μὴ ἄρα μητέρα, ἢ ἀδελφήν, ἢ θείαν, ἢ ἃ μόνα πρόσωπα πᾶσαν ὑποψίαν διαπέφευγεν“[1] (Ընդհանրական մեծ ժողովը բոլորովին (բացարձակապես) արգելեց եպիսկոպոսին, երեցին, սարկավագին և ընդհանրապես հոգևորականության մեջ մըտնողներից որևէ մեկին կնոջ հետ միասին բնակվելը, բացի մորից, քրոջից, մորաքրոջից (հորաքրոջից) կամ այն անձերից, որոնք դուրս են ամեն կասկածանքից)։

Մեզ հետաքրքրող երկու կանոնների նույնությունը ակներև է, ձևական տարբերությունը կայանում է նրանում, որ հունարենում մեկ մեկ թվում է հոգևորականության՝ եպիսկոպոս, քահանա, սարկավագ աստիճանները և այնուհետև էլի ավելացնում «ընդհանրապես հոգևորականության մեջ մտնողներից որևէ մեկին». իսկ Երկրորդ Նիկիականում գրված է վերջին՝ ընդհանուր ձևով և ապա՝ հունարենի մորաքրոջ (հորաքրոջ) փոխարեն այստեղ գրված է մամի՝ «ի հանւոյ»։

Ի դեպ այս կանոնը անցել է նաև Եպիփանի անունով հայտնի կանոնախմբին[2]։

ԴՁ հոդվածում կարդում ենք՝ «Ոչ է պարտ զկէսսարկաւագաց ի սարկաւագաց տեղի ունել»։ Կանոնագրքի Լավոդիկեի կանոնախմբի հոդվածներում նման սահմանում չենք գտնում, մինչդեռ նույնի հունարեն 21-րդ հոդվածում կարդում ենք. „''Οτι οὐ δεῖ ὑπηρέτας ἔχειν χώραν ἐν τῷ διακονικῷ καὶ ἅπτεσθαι

[1] I. B. Pitra, Juris ecclesiastici graecorum historia et monumenta, tom. 1, Romae, MDCCCLXIV, p. 428. այսուհետև Պիտրա։

[2] Տե՛ս սույն հատորում, էջ 62։

δεσποτικῶν σκευῶν[1]“.(*Պետք չէ սպասավորը (կեսսարկավագը) սարկավագանոցում տեղ ունենա (մտնի) և հպվի տերունական սպասներին)։ Ինչպես դժվար չէ նկատել, Կանոնագրքի Լավոդիկեի կանոնախմբի ԻԱ հոդվածում ընդարձակված ձևով պահվել է հունարեն նույն հոդվածի միայն վերջին մասը,իսկ առաջին հատվածի մասին ոչ մի խոսք չկա, մինչդեռ Երկրորդ Նիկիական կանոնախմբի ԴՁ հոդվածում պահվել է հունարենի առաջին մասը, իսկ երկրորդ մասը դուրս է ընկել։ Այսպիսով, հունարեն միևնույն հոդվածի նյութը հայերեն երկու տարբեր բնագրերում տարբեր մոտեցմամբ է օգտագործվել։*

*Երկրորդ Նիկիական կանոնախմբի ԾԺԱ հոդվածում կարդում ենք. «Ոչ է պարտ ի գեաւղս կամ յագարակս եպիսկոպոս նստուցանել, այլ տեսուչք շրջել»։ Այս ևս չենք գտնում Կանոնագրքի Լավոդիկեի կանոնախմբի սահմանումներում, մինչդեռ նույնի հունարեն 57-րդ հոդվածի սկզբի հատվածը արտահայտում է ԾԺԱ հոդվածը։ Ահա հունարենը.* „Ὅτι οὐ δεῖ ἐν ταῖς κώμαις καὶ ἐν ταῖς χώραις καθίστασθαι ἐπισκόπους, ἀλλὰ περιοδευτάς,...“[2] *(Պետք չէ գյուղերում և (փոքր) բնակավայրերում եպիսկոպոս նշանակել (հաստատել, նստեցնել), այլ շրջիկ)։ Հունարենի շարունակությունը Կանոնագրքում բացակայում է, ուստի այն չենք բերում։*

*Վերևում նշված օրինակներին նման են նաև այս կանոնախմբի Թ և ԺՁ հոդվածները, որ Կանոնագրքի Նիկիայի կանոնախումբը չունի, բայց դրանք արտահայտված են նույն կանոնախմբի հունարեն 8-րդ և 16-րդ ընդարձակ հոդվածների փոքր հատվածներում։*

*Բերենք այլ տիպի փաստեր. Երկրորդ Նիկիական կանոնախմբում կան այնպիսի հոդվածներ, որոնք թեև համառոտ են, բայց կարող ենք նկատել, թե այդ համառոտումը ո՞ր բնագրից է կատարված՝ Կանոնագրքի՞, թե հունարենի։ Այսպես, սույն կանոնախմբի ԽԳ հոդվածում կարդում ենք. «Որք ի հիւանդութեան մկրտեցան՝ մի՛ ձեռնադրեսցին ի քահանայութիւն, քանզի ոչ հաւատացին, բայց եթէ երկիւղածութեամբ կեցցեն կամ հարկ ինչ լինիցի»։ Այս պետք է համապատասխանի Կանոնագրքի Նեոկեսարիայի ԺԷ հոդվածին. ահա այն. «Վասն որք ի նեղութիւն անկանիցին կամ ի խիստ հիւանդութիւն եւ կամ ըմբռնեսցի ի բռնաւորաց եւ վասն նեղութեան մկրտիցի, եւ կամ յառաջ էր անուն քրիստոնեայ եւ գործք վատթարք եւ ապա վասն նեղութեանն ի հաւատս կացցէ, զայնպիսին ընդունի եկեղեցի, այլ ոչ կատարելապէս, զի ակամայութեամբ են հաւատքն. զայնպիսւոյն ասէ գիր. «Միթէ՞ ի հող խոստովան առնիցիմ առ քեզ»[3]։ Իսկ նույն կանոնախմբի հունարեն բնագրի 12-րդ հոդվածում գրված է.* „Ἐάν νοσῶν τις φωτισθῇ, εἰς πρεσβύτερον ἄγεσθαι οὐ δύναται, οὐκ ἐκ προαιρέσεως γὰρ ἡ πίστις αὐτοῦ, ἀλλ᾿ ἐξ ἀνάγκης,...“[4] *(Եթե որևէ մեկը հիվանդ ժամանակ [մկրտությամբ] լուսավորվեց, այդպիսին չի կարող երեց դառնալ, որովհետև նրա հավատը ոչ թե իր ցանկությամբ է, այլ անհրաժեշտությամբ (կարիքի, պահանջի)։ Հունարեն հոդվածի վերջին մասը չենք բերում, որովհետև այն Կանոնագրքում դարձյալ չի պահվել։ Կանոնագրքի բնագրում խոսքը հիվանդի մկրտության մասին է, մինչդեռ Երկրորդ Նիկիական և հունարեն հոդվածներում՝ հիվանդ ժամանակ մկրտվածներին քահանա չձեռնադրելու մասին է։*

---

[1] *Պիտրա, էջ 488։*

[2] *Պիտրա, էջ 503։*

[3] *Հատ. Ա, էջ 186։*

[4] *Պիտրա, էջ 453։*

*Մի այլ օրինակ. Երկրորդ Նիկիական կանոնախմբի ԽԵ հոդվածում կարդում ենք. «Սարկաւագունք պարտ է լինել յեկեղեցւոջ է, ըստ առաքելական կանոնին որ ի Գործս առաքելոցն» (տե՛ս Զ, 3)։ Կանոնագրքի Նեոկեսարիայի կանոնախմբի համապատասխան՝ Ի հոդվածում ասված է. «Եւ սարկաւագունս ըստ պիտոյիցն արժան է առնել, որչափ տեղիքն եւ պէտքն խնդրեսցեն, եւ մի՛ աւելիս ինչ զի մի՛ ցոփութիւն լինիցի»[1]։ Հունարեն համապատասխան՝ 15-րդ հոդվածում գրված է.* „Διάκονοι ἑπτὰ ὀφείλουσιν εἶναι κατὰ τὸν κανόνα, κἂν πάνυ μεγάλη εἴη ἡ πόλις, πεισθείσῃ δὲ ἀπὸ τῆς βίβλου τῶν Πράξεων“[2]։ *(Սարկավագները ըստ կանոնի պետք է լինեն յոթ [հոգի], եթե նույնիսկ շատ մեծ է քաղաքը, իսկ դրանում կհամոզվեք Գործք [առաքելոց] գրքից)։ Կանոնագրքի բնագրում բացակայում է սարկավագների թիվը՝ յոթ և վերջինիս աղբյուրը, մինչդեռ այդ երկուսն էլ գտնում ենք և՛ հունարենի և՛ Երկրորդ Նիկիական կանոնախմբի վերևում նշված հոդվածներում։*

*Դարձյալ օրինակ. Երկրորդ Նիկիական կանոնախմբի նախավերջին՝ ԾԺԳ հոդվածում կարդում ենք. «Ոչ է պարտ ոգիտական կամ անկանոնական գիրս կարդալ կամ սաղմոսել յեկեղեցւոջ, այլ զկանոնեալքն՝ զՆոր եւ զՀին Կտակարանաց, ըստ որում եւ կանոնեալքն են»։ Վերջինս Կանոնագրքի Լավոդիկեի ԾԵ հոդվածի առաջին մասն է[3], իսկ երկրորդ մասը, ուր թվում է Հին և Նոր Կտակարանի բովանդակությունը[4], Երկրորդ Նիկիական կանոնախմբում բացակայում է, իսկ հունարենում դրված է որպես առանձին հոդված՝ 60 համարի տակ[5]։ Բերում ենք վերևում նշված՝ ԾԺԳ հոդվածին համապատասխան հունարեն 59-րդ հոդվածը.* „Ὅτι οὐ δεῖ ἰδιωτικοὺς ψαλμοὺς λέγεσθαι ἐν τῇ ἐκκλησίᾳ οὐδὲ ἀκανόνιστα βιβλία, ἀλλὰ μόνα τὰ κανονικὰ τῆς Παλαιᾶς καὶ Καινῆς διαθήκης“[6]. *(Պետք չէ (հարմար չէ) եկեղեցում իր հորինած սաղմոսն ասել (կարդալ), ոչ էլ պարականոն գրքեր, այլ միայն Հին եւ Նոր Կտակարանի կանոնական [գրքերը])։ Երկրորդ Նիկիական կանոնախմբի այս հոդվածը և՛ բովանդակությամբ և՛ կառուցվածքով համապատասխանում է ավելի հունարենի նշված հոդվածին, քան Կանոնագրքի ունեցածին։*

*Եվ էլի. սույն կանոնախմբի Լ հոդվածում կարդում ենք. «Եթէ ոք շնացաւ կամ շնայցէ՝ Է ամ ապաշխարեսցէ, եւ այսպէս աղաւթակից լիցի»։ Սրան համապատասխան Կանոնագրքի Կեսարիայի կանոնախմբի Ա հոդվածում կարդում ենք. «Վասն կանանց, որ ընդ արամբ են եւ շնան, թէ թողցեն ի բաց զպղծութիւնն եւ յապաշխարութիւն եկեսցեն՝ Ե ամ առ դրանն ընդ ձեռամբ կացցեն եւ Բ ամս մտեալ յեկեղեցի եկեսցէ ընդ ապաշխարողս, քննեալ վարքն, տրաւք տնանկաց քաւեալ զմեղս իւր՝ հաղորդելոյ աւրինացն արժանի լիցի»[7]։ Հայերեն այս երկու բնագրերից մեջբերման միտքը արտահայտված է Անկյուրիայի ժողովի հունարեն բնագրի 20-րդ հոդվածում. ահա այն.* „Ἐάν τινος γυνὴ μοιχευθῇ, ἢ μοιχεύσῃ τις ἐν ἑπτὰ ἔτεσιν δεῖ αὐτὸν τοῦ τελείου τυχεῖν, κατὰ τοὺς βαθμοὺς τοὺς προάγοντας“[8]. *(Եթե որևէ կին կամ [տղամարդ] շնացավ, կատարյալ հաղորդության [համար] յոթ տարի, դրան տանող [պատժի] աստիճանների*

---

[1] *Հատ. Ա, էջ 187։*

[2] *Պիտրա, էջ 454։*

[3] *Հատ. Ա, էջ 240—241։*

[4] *Նույն տեղում, էջ 241—242։*

[5] *Պիտրա, էջ 503—504։*

[6] *Նույն տեղում, էջ 503։*

[7] *Հատ. Ա, էջ 169։*

[8] *Պիտրա, էջ 447։*

համաձայն)։ Կանոնագրքի բնագրում խոսքը վերաբերում է միայն կանանց, մինչդեռ Երկրորդ Նիկիականում և հունարենում՝ և՛ կանանց և՛ տղամարդկանց։ Այստեղ պատժաչափը նույնն է՝ յոթը տարի, մինչդեռ Կանոնագրքում՝ աստիճաններով՝ 5+2։

Մի այլ փաստ. Կանոնագրքի Ա հատորի ծանոթագրություններում արդեն ցույց ենք տվել, թե հունարենից հայերեն թարգմանված Կանոնագրքի առանձին կանոնախմբերում ինչ հոդվածներ հունարեն կանոնախմբերը չունեն և ընդհակառակը. օրինակ, Կանոնագրքի Նիկիայի կանոնախմբի Գ և ԺԸ, Անկյուրիայի Ժ, Կեսարիայի Բ, Զ, Ը, և Ժ, Նեոկեսարիայի Ը—ԺԲ, Գանգրայի Ի, ԻԱ, ԻԳ և ԻԴ, Անտիոքի ԻԵ հոդվածները հունարեն բնագրերում չենք գտնում[1]։ Այստեղ նշված հոդվածներից և ոչ մեկը չի օգտագործված Երկրորդ Նիկիական կանոնախմբում, մինչդեռ, ինչպես վերևում նշեցինք, հունարեն մի շարք հոդվածներ, որոնք Կանոնագրքում չեն պահվել, օգտագործվել են Երկրորդ Նիկիական կանոնախմբում։ Միայն այս փաստը ցույց է տալիս, որ Երկրորդ Նիկիական կանոնախումբը կազմվել է վաղ քան նշված կանոնախմբերին կատարվել են այդ ավելացումները։

Վերոբերյալ փաստերի նշումից հետո արդեն կարող ենք եզրակացնել, որ ճիշտ չեն Վ. Բաստամյանցի և Ն. Մելիք-Թանգյանի այս կանոնախմբի վավերականության մասին հայտնած կարծիքները։ Մխիթար Գոշի Դատաստանագրքի առաջին մասի ԾԴ հոդվածին տված 291-րդ ծանոթագրության մեջ Վ. Բաստամյանցը գրում է. «Բացի Նիկիո ժողովի 20 կանոններից, մեր կանոնագրքերի մեջ կան ևս 115 կանոն, որք կոչվում են Կանոնք Երկրորդ Նիկիական... Ձևայելով բազմաթիվ արևելյան և արևմտյան հնագույն հեղինակների վկայության վրա, թե Նիկիո առաջին ժողովը (325 թ.) հաստատեց միայն քսան կանոն, ոմանք կարծում էին դոցա թիվը քսանից ավելի, մինչև անգամ յոթանասուն։ 16-րդ դարում ի հայտ եկան մի արաբերեն ձեռագիր կանոններ Նիկիո ժողովի անվամբ, դոցա թարգմանեցին ոմանք 80 և ոմանք 84 համարով, իսկ զանազան հավելվածներով նոցա թիվը ըստ ոմանց հասնում է մինչև 128-ի։ Մեր հեղինակը (Գոշը—Վ. Հ.) արդեն 12-րդ դարում ունեցել է իր ձեռքի տակ այդ տեսակ կանոններ...»[2]։

Ն. Մելիք-Թանգյանը իր միևնույն գրքում այս կանոնախմբի մասին երկու տարբեր կարծիք է հայտնում. «Հայոց ձեռագրերում կան 114—115 Երկրորդ Նիկիական կանոններ։ Այդ ավելի համարվող կանոնները պիտի քաղված լինին ժողովի ընդհանուր արձանագրությունից, որը մեզ չի հասել»[3]։ Եվ ապա.

---

[1] Այս հանգամանքը լույս է սփռում Կանոնագրքում Կեսարիայի անունով մտած կանոնախմբի վավերականության վրա, որովհետև, ինչպես ցույց է տալիս վերևում շարադրածը, V դարում այդ կանոնախումբը գոյություն չուներ (հմմտ. Ն. Ակինյան, Շահապիվանի ժողովի կանոնները, «Հանդէս Ամսօրեայ», 1949, № 4—12, էջ 105. հմմտ. Ն. Մելիք—Թանգյան, Հայոց եկեղեցական իրավունքը, գիրք Ա, էջ 183, Կանոնագիրք Հայոց, հատ Ա, էջ XLI, 572—574)։ Ահա թե ինչ է եզրակացնում Ն. Ակինյանը. «Ինձ կը թվի, թե հայ խմբագիրը շահագործած է այդ տեղիքը կազմելու համար նոր «Կեսարիո կանոններ» ինչ ինչ առնելով Անկյուրիո կանոններեն, ինչ ինչ հերյուրելով ըստ քմաց» (Նույն տեղում, էջ 105)։ Ընդունելի եզրակացությունն այն է, որ այս կանոնախումբը կազմվել է V դարից հետո՝ VI—VII դարերում։ Սակայն երկբայելի է Ակինյանի «ինչ ինչ հերյուրելով ըստ քմաց» արտահայտությունը։ Կազմողը ոչ թե հերյուրել է «ըստ քմաց», այլ գուցե իր ձեռքի տակ ունեցել է այնպիսի աղբյուրներ, որոնց մասին մենք առայժմ պատկերացում չունենք։

[2] Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց, էջ 154—155։

[3] Հայ եկեղեցական իրավունքը, գիրք Ա, էջ 159։

«Գալով մեր ձեռագրերի 115 Երկրորդ Նիկիական կանոններին, պետք է նկատել..., որ նրանցից սկզբի քսան կանոնները նույնն են, ինչ որ իսկական Նիկիական կանոնները, բայց ոչ հայոց ձեռագրերում եղած Նիկիականը, իսկ մնացած 95 կանոններն են ժողովածու առաքելական, տիեզերական, տեղական ժողովների կանոնների, նոր բան ամենևին չեն ներկայացնում իրենց բովանդակությամբ, նրանք բոլորն էլ անվավեր են, որովհետև Նիկիայի վավերական կանոնները քսան են»[1]։

Վերևում բերված փաստերից երևում է, որ Մխիթար Գոշը իր ձեռքի տակ չի ունեցել «այդ տեսակ կանոններ» (իմա՝ արաբերենից թարգմանված—Վ. Հ.), ինչպես կարծում է Վ. Բաստամյանցը և ոչ էլ այս կանոնախումբը կազմված է առաքելական և տիեզերական ժողովների կանոններից, ինչպես մասնակիորեն սխալվում է Ն. Մելիք-Թանգյանը։ Այդ հարցին այժմ կարելի է ստույգ պատասխանել. Մխիթար Գոշը օգտվել է Կանոնագրքի X դարի խմբագրության մի որևէ տարբերակից[2] և, որ կարևոր է, Երկրորդ Նիկիական կանոնախումբը աղբյուրագիտական առումով չի լծորդվում Կանոնագրքի համապատասխան բնագրերի հետ։ Սույն բնագիրը անհամեմատ ավելի հարազատ է հունարեն համապատասխան բնագրերին, քան Կանոնագրքի ունեցածը։

Սրանից հետո այնուամենայնիվ, մեզ շարունակում է հետաքրքրել այն հարցը, թե Երկրորդ Նիկիական կանոնախմբի կազմողը ի՞նչ բնագրեր է օգտագործել՝ հունարե՞ն, թե դրանց հայերեն հնագույն թարգմանությունները։ Վերևում հունարեն բնագրերը վկայակոչեցինք, որովհետև մինչև հիմա մեզ չեն հասել այդ կանոնախմբերի հայերեն հնագույն թարգմանությունները։ Բայց և այնպես որոշ փաստեր մեզ ստիպում են եզրակացնել, որ հեղինակը օգտվել է ոչ թե հունարեն, այլ սրանց հայերեն հնագույն թարգմանություններից։

Կանոնագրքի Ա հատորի «Հավելված» բաժնում հրատարակել էինք Մատենադարանի № 2151 ձեռագրի մագաղաթյա պահպանակի բովանդակած նյութը։ Վերջինս Բարսեղ Կեսարացու կանոնախմբի հոդվածների ոչ լրիվ ցանկն է, ապա Կանոնագրքում մտած նրա Գ, Դ, Ե, Ժ (հունարենին համապատասխան 2, 4, 8, 9 և 18-րդ) հոդվածները թերի վիճակում և Կանոնագրքում չմտած նրա հունարեն 15, 16, 17-րդ հոդվածները[3]։ Մի բնագիր էլ հրատարակել էինք նույն հեղինակի կանոնախմբի «Ծանոթագրություններ» բաժնում[4]։ Այն Կանոնագրքում մտած Բարսեղ Կեսարացու ԾԱ (հունարենին համապատասխան 87-րդ) հոդվածի հայերեն հնագույն և ամբողջական թարգմանությունն է։ Կանոնագրքից անկախ ընդօրինակությունների շնորհիվ մեզ են հասել այս երկու բնագրերը, որոնք, անշուշտ, գոյություն են ունեցել մինչև Հովհ. Օձնեցին, այսինքն՝ մինչև Կանոնագրքի հանդես գալը և հանդիսանում են Բարսեղ Կեսարացու կանոնական նամակների հայերեն հնագույն և լրիվ թարգմանության բեկորները։ Բարսեղ Կեսարացու կանոնական նամակների հայերեն հնա-

[1] Նույն տեղում, էջ 160—161։

[2] Տե՛ս վերևում, էջ XIX—XX։

[3] Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 657—661։ Տպագրական սխալի պատճառով 17-րդը դարձել է 47-րդ, էջ 651։

[4] Նույն տեղում, էջ 620—621։ Այս բնագիրը վերցրել էինք Մատենադարանի № 659 ձեռագրից, սակայն, հետագայում մեր որոնումների ժամանակ մեզ հանդիպեց դրա այլ տարբերակները, հետևյալ ձեռագրերում՝ №№ 436 (էջ 186 ա—187 ա), 822 (էջ 191 բ—193 բ), 1500 (էջ 919 ա—920 ա), 5595 (էջ 349 ա—351 բ)։

գույն և լրիվ թարգմանության փաստը մեզ իրավամբ ենթադրել է տալիս, որ նման թարգմանություն անպայման ունեցել են նաև Նիկիայի, Անկյուրիայի, Նեոկեսարիայի, Գանգրայի, Անտիոքի և Լավոդիկեի ժողովների որոշումները, որոնք ինչ ինչ պատճառներով մեզ չեն հասել։ Ն. Ակինյանի կարծիքով այս վեց կանոնախմբերի հայերեն թարգմանությունը Եզնիկը բերել է 436/437 թվականներին[1], որոնք թեև չեն օգտագործվել, բայց ընդունվել են Շահապիվանի ժողովի կողմից։ Դժվար է ասել, թե Եզնիկը բերել է այդ կանոնախմբերի թարգմանությունը։ Գուցե նա բերել է դրանց հունարեն բնագրերը և դրանք թարգմանել Հայաստանում, որ ավելի հավանական է։ Բայց որ այդ կանոնախմբերը թարգմանվել են հինգերորդ դարի 30-ական թվականներին ավագ թարգմանիչների գործունեության բուռն շրջանում, միանգամայն հավանական է։

Հետաքրքիր է նաև հետևյալ փաստը. վերևում ցույց ենք տվել, թե Երկրորդ Նիկիական կանոնախումբը կազմելիս ինչ կանոնախմբեր են օգտագործվել։ Տեղական ժողովներից միմիայն Սարդիկեի կանոնախումբն է դուրս մնացել Երկրորդ Նիկիական կանոնախմբի համար օգտագործված աղբյուրների ցանկից, թեև այն մտել է Հովհ. Օձնեցու կազմած Կանոնագրքում։ Ինչո՞ւ։ Ըստ երևույթին նշված ժողովների որոշումների հայերեն հնագույն թարգմանություններից հետո Երկրորդ Նիկիական կանոնախումբը կազմելիս Սարդիկեի կանոնախումբը տակավին թարգմանված չէր։ Վերջինիս թարգմանության ոճը, բառակազմությունը զգալի կերպով տարբերվում է նշված ժողովների հայերեն թարգմանություններից։ Ինչպես ճիշտ նկատել է Համազասպ Ոսկյանը, Սարդիկեի կանոնախումբը թարգմանվել է «Հունաբան դպրոցի աշակերտի մը» կողմից[2]։ Այդ թարգմանությունը, ուսումնասիրողի գնահատմամբ, «մութ է և ստրկական»[3]։ Ասել է, թե այն թարգմանվել է VI—VII դարերում, մինչև Հովհ. Օձնեցին։ Այս ենթադրությունը հաստատում է նաև մի այլ կարծիք։ Հովսեփ Գաթրճյանը անցյալ դարի 60-ական թվականներին պատրաստել էր մի ուսումնասիրություն՝ նվիրված Հայոց Կանոնագրքին։ Վերջինս անտիպ է։ Որանից երկու հատված հրատարակվել է Հ. Տաշյանի «Վարդապետութիւն առաքելոց» աշխատության 429—442 էջերում և «Հանդէս Ամսօրեայ»-ի 1949-ի № 4—12-ի 135—137 էջերում։ Գաթրճյանի համոզմամբ Կանոնագրքի V դարի ժողովածուն ներկայանում է հետևյալ բովանդակությամբ.

«1. Առոբի՝ Կանոնք Առաքելոց ԼԴ։

2. Յունական՝ ա. Կանոնք Նիկիոյ Ի, բ. Կանոնք Անկիւրայ, գ. Կանոնք Կեսարեայ, դ. Կանոնք Նիոկեսարեայ, ե. Կանոնք Գանգրայ, զ. Կանոնք Անտիոքայ, է. Կանոնք Ղաւոդիկեայ ՄԹ։

3. Հայ՝ Կանոնք Շահապիվանի Ի»[4]։

---

[1] Հանդէս Ամսօրեայ, 1949, № 4—12, էջ 105, համմտ. նույնի Քննութիւն Ս. Սահակի վերագրված կանոններու, Վիեննա, 1950, էջ 2։ Սակայն այստեղ հեղինակը որոշակի չի նշում այն մասին, թե Եզնիկը իր հետ կանոնների հունարեն բնագի՞րը, թե վերջինիս հայերեն թարգմանությունը բերեց։

[2] Սարդիկէի ժողովքի հայերէն կանոնները, Վիեննա, 1945, էջ 115։

[3] Նույն տեղում, էջ 132։

[4] Վարդապետութիւն առաքելոց, էջ 441—442, Հանդէս Ամսօրեայ, 1949, № 4—12, էջ 137. համմտ. Հ. Ոսկյան, Սարդիկէի ժողովքի հայերէն կանոնները, էջ 117։

*Ինչպես դժվար չէ նկատել՝ Գաթրճյանը, այնուհետև Տաշյանը*[1] *և Ակինյանը*[2]*, Կանոնագրքի V դարի խմբագրությունից բացառում են Սարդիկեի ժողովի կանոնախումբը, որովհետև վերջինս այդ ժամանակ հայերեն թարգմանված չէր։ Իսկ դա նշանակում է, որ Երկրորդ Նիկիական կանոնախումբը կազմվել է մինչև Սարդիկեի ժողովի կանոնների հայերեն թարգմանությունը՝ մինչև VI—VII դարերը։ Ելնելով սրանից կարելի է եզրակացնել, որ Երկրորդ Նիկիական կանոնախումբը կազմել է V դարի վերջերին, կամ VI դարի սկզբներին։*

*Այս կապակցությամբ տեղին է հիշել Ակինյանի կարծիքը։ Մեզանից տարիներ առաջ նա Շահապիվանի ժողովին նվիրած ուսումնասիրության մեջ գրել է. «Համառոտութիւնս (իմա՛ Երկրորդ Նիկիական կանոնախումբը —Վ. Հ.) կատարված է վաղ ժամանակ մը, երբ տակավին նախնական թարգմանությունը կը գտնվեր անաղարտ վիճակի մեջ»*[3]*։*

*Գաթրճյանի, Տաշյանի և Ակինյանի վարկածը, թե Կանոնագրքի առաջին խմբագրությունը կազմվել է V դարում, թերևս կասկածելի է։ Գոնե այդպես կարելի է եզրակացնել Հովհ. Օձնեցու հետևյալ վկայությունից. «Վասն զի ոմանք առ ոմանս եւ ոչ ամենեքին առ ամենեսեան սոքա սերմանեալք, կամեցայ զբովանդակ զառ ի նոցանէն կանոնական սահմանեալ բան ի միում տեղւոջ գեղեցկագործ մատենիւ ի հայրապետանոցի աստ արմատացուցանել»*[4]*։ Եվ մեզ այնպես է թվում, որ V դարում Հովհ. Օձնեցու սկզբունքով (ինկորպորացիայի) չեն կազմել Կանոնագրքի առաջին խմբագրությունը, այլ գործնական նկատառումներով ի մի բերելով համառոտել են ձեռքի տակ եղած առանձին-առանձին գոյություն ունեցող՝ նշված ժողովների ընդարձակ բնագրերը, հետագայում ճոխացրել և այդպես օգտագործել։ Ճիշտ է, առայժմ դժվար է այս բնագրի հանդես գալու ժամանակը ստույգ որոշել, բայց կասկածից դուրս է, որ այն խոր հնություն ունի։ Մեր ենթադրությամբ V դարի կանոնական հավաքածուն հանդիսացել է սույն կանոնախումբը, որը Օձնեցուց հետո Կանոնագրքում մուծվելով ստացել է «Կանոնք Երկրորդ Նիկիականք» անունը։ Այսպիսով, Երկրորդ Նիկիականը կազմվել է մի անձնավորության կողմից, որն իր ձեռքի տակ ունեցել է նշված կանոնախմբերի հայերեն հնագույն թարգմանությունները։ Եվ ճիշտ է Բարսեղ Սարգիսյանը, երբ այս կանոնախմբի մասին գրում է. «Բայց ինձ կը թվի, որ Նիկիականեն* անկախ և անանունե *մը գրված ըլլա»*[5]*։*

*Քանի որ Հովհան Մանդակունին V դարի վերջին քառորդի անձնավորություն է, «Ուստի,—ենթադրում է Ակինյանը,—Կանոնագրքի խմբագրութիւնն ալ մոտավորապես նույն դարի վերջին քառորդին կատարված ըլլալու է»*[6]*։ Եթե ճիշտ է այս ենթադրությունը, ապա կարելի է ասել, որ թերևս Հովհան Մանդակունին էլ եղել է Երկրորդ Նիկիականի կազմողը։*

*Մեզ հետաքրքրում է նաև այն հարցը, թե արդյոք Հովհ. Օձնեցին Կանոնագիրքը կազմելիս իր ձեռքի տակ ունեցե՞լ է այս կանոնախումբը։ Վերջինիս մի*

---

[1] *Վարդապետութիւն առաքելոց, էջ 230։*

[2] *Հանդէս Ամսօրեայ, 1949, № 4—12, էջ 104։*

[3] *Նույն տեղում։*

[4] *Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 536։*

[5] *Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանի Մխիթարեանց ի Վենետիկ, հատ. Բ, Վենետիկ, 1924, էջ 619. (ընդգծումը մերն է—Վ. Հ.)։*

[6] *Հանդէս Ամսօրեայ, 1949, № 4—12, էջ 111։*

այլ՝ «Սակս ժողովոց որ եղեն ի Հայք» փոքրիկ աշխատության մեջ, որը մտել է նաև «Գիրք թղթոց»-ում, կարդում ենք. «Առաջին ժողով արար երանելի հայրապետն մեր սուրբն Գրիգոր,... յորժամ եկն Ռստակէս ի Նիկիայ սուրբ ժողովոյն, բերելով ընդ ինքեան զգիր կանոնաց թուեալ միահամար կարգաւ տունս ԾԱ, յորս նայեցեալ սուրբն Գրիգորի սուղ ինչ յաւելումն արարեալ յեդեալ կանոնսն սուրբ հայրապետացն՝ որք ի Նիկիայն ժամանեալ ժողով»[1] (ընդգծումը մերն է —Վ. Հ.)։ Եթե ընդունենք, որ Նիկիայի ժողովի քսան կանոններին (գուցե եղել է այնպիսի օրինակ, ուր Նիկիայի ժողովի կանոնները նշված են 21. հմմտ. բ ձեռագիրը՝ № 3544, որտեղ կանոնները նշված են 22)[2] Գրիգոր Լուսավորիչը «սուղ ինչ յաւելումն արարեալ» կցել է իր կանոնախումբը 30 կանոնով[3], ընդամենը 51 կանոն, ինչպես նշում է Օձնեցին վերևի մեջբերման մեջ։ Բայց դա համոզկեր չէ, որովհետև Օձնեցին նշում է. «բերելով ընդ ինքեան... տունս ԾԱ», որին նայելով Գրիգոր Լուսավորիչը նոր միայն «սուղ ինչ յաւելումն արարեալ»։ Նշանակում է՝ Օձնեցու պատկերացմամբ Արիստակեսը բերել է Նիկիայի ժողովի որոշումները բաղկացած 51 կանոններից։ Իսկ եթե ընդունենք, ինչպես վերևում ցույց տվեցինք, որ Երկրորդ Նիկիական կանոնախումբը բաղկացած է ոչ միայն Նիկիայի, այլև ուրիշ ժողովների՝ Անկյուրիայի, Նեոկեսարիայի, Գանգրայի, Անտիոքի, Լավոդիկեի կանոնախմբերի թվով 51 կանոններից և այն Նիկիայի անունով իր հետ բերել է Արիստակեսը, դարձյալ չի ստացվի. նախ՝ մինչև Արիստակեսի վերադարձը, տեղի էին ունեցել Անկյուրիայի, Նեոկեսարիայի (314 թ.) և Նիկիայի (325 թ.) ժողովները, իսկ մյուս ժողովները տեղի էին ունեցել Նիկիայի ժողովից՝ 325 թվականից հետո, հետևաբար, Արիստակեսը չէր կարող իր վերադարձից հետո տեղի ունեցած ժողովների որոշումները բերել, լավագույն դեպքում նա կարող էր բերել Նիկիայի, Անկյուրիայի և Նեոկեսարիայի ժողովների որոշումները, որոնք առանց Գանգրայի, Անտիոքի և Լավոդիկեի կանոնախմբերի բաղկացած են 60 կանոններից (20+25+15)։ Երկրորդ՝ Նիկիայի ժողովի որոշումներն իրականում կազմված են 20 կանոններից, և հավաստի այլ աղբյուրներից մեզ հայտնի է, որ Արիստակեսն իր հետ Հայաստան է բերել Նիկիայի ժողովի 20 կանոնները։ Այդպես էլ այն մտել է մեր մատենագրության մեջ, տակավին նրա արշալույսին (V դար)։ Մովսես Խորենացին, որը ժամանակով շատ ավելի մոտ էր Արիստակեսին, քան Հովհ. Օձնեցին, իր «Պատմութիւն Հայոց»-ում գրում է. «Այլ դարձեալ Արիստակէս արժանահաւատ բանիւ, եւ քսան կանոնեալ գլխովք ժողովոյն՝ գայ հանդիպի հօրն եւ արքային ի Վաղարշապատ քաղաքի»[4] (ընդգծումը մերն է —Վ. Հ.)։ Ագաթանգեղոսը հաստատում է նույնը, բայց չի

---

[1] Գիրք թղթոց, էջ 220։ Նախապես ասենք, որ բնագրի «տունս ԾԱ»-ն այլ տարբերակում կարող էր այլընթերցում ունենալ. այդ մտայնությամբ ստուգեցինք Մատենադարանում պահվող Հովհ. Օձնեցու վերոհիշյալ աշխատության երեք օրինակները։ Սրանցից երկուսը ունեին միևնույն՝ «տունս ԾԱ» ընթերցումը (№ № 500, էջ 297 ա, 3062, էջ 68 բ), իսկ երրորդը՝ № 3076 ձեռագիրը՝ «տունս Ա» էջ 109 բ)։ Կասկածից վեր է, որ այստեղ «Ծ»-ն ընկել է անուշադիր ընդօրինակելու հետևանքով։

[2] Տե՛ս Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 114, առաջին տողատակ։

[3] Նույն տեղում, էջ 243—249։

[4] Տփխիս, 1913, էջ 240. տե՛ս նաև Հովհ. Դրասխանակերտցի, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912 թ., էջ 40։

*նշում կանոնների քանակը[1]։ Այսպիսով, թեև Հովհ. Օձնեցին կարծում է, թե Արիստակեսը իր հետ բերել է Նիկիայի ժողովի որոշումները 51 կանոնով, իրականության չի համապատասխանում։ Մեր համոզմամբ Հովհ. Օձնեցու մոտ հիշվածը Երկրորդ Նիկիական կանոնախումբն է, որը, նրա կարծիքով, իր հետ բերել է Արիստակեսը և որը Օձնեցու ժամանակ ունեցել է 51 կանոն։ Այսպիսով, մինչև Օձնեցին, մինչև Կանոնագրքի հանդես գալը, նշված ժողովների կանոնների հայերեն հնագույն թարգմանության բնագրից ծաղկաքաղ անելով, համառոտելով և պարզեցնելով կազմվել է այս կանոնախումբը Երկրորդ Նիկիական անունով[2]։ Այս վերնագիրը դրվել է այն ժամանակ, երբ սույն կանոնախումբը, Օձնեցուց հետո մուծվել է Կանոնագրքում, որպեսզի տարբերվի Նիկիայի առաջին տիեզերական ժողովի կանոնախմբից։ Վերնագիրը սկզբնապես թերևս այդպես չի եղել, այն հավանաբար եղել է «Կանոնք Նիկիականք» ձևով[3]։*

*Հովհ. Օձնեցին հարկ չի համարել սույն կանոնախումբը մուծել իր կազմած Կանոնագրքում, որովհետև սրա փոխարեն նա Կանոնագրքում մուծել է Երկրորդ Նիկիական կանոնախմբին հիմք հանդիսացած հայերեն հնագույն և լիարժեք թարգմանությունների խմբագրությունը։ Հետագայում, Օձնեցուց հետո, այս կանոնախումբը ճոխացվել է նույն աղբյուրների հիման վրա, դարձել 114 կանոններ և մինչև X դարի առաջին կեսը, գուցե և առաջին տասնամյակներում՝ մինչև Անանիա Մոկացի կաթողիկոսը, մտել է Կանոնագրքում։*

*Մեր ասածը՝ ճոխացման փաստի ճշտությունը երևում է հետևյալից։*

---

*[1] Պատմութիւն Հայոց, աշխատութեամբ Գ. Տէր—Մկրտչեան և Ստ. Կանաեանց, Տփխիս, 1909, էջ 465—466։*

*[2] Ս. Տիգրանյանը կարծում է, թե Ուխտանեսի «Գիրք կանոնացն Նիկիայ» նշումը (Պատմութիւն Հայոց, հատ. Ա, Վաղարշապատ, 1871, էջ 110) ակնարկում է Հովհ. Օձնեցու այն վկայությունը, ըստ որի Արիստակեսը իր հետ բերել է Նիկիայի ժողովի 51 կանոնները (Տե՛ս Հայոց իրավունքի պատմության ներածություն, էջ 107)։ Հնարավոր է, բայց ապացուցման համար հիմքեր չունենք։*

*Ի դեպ, նման մի բնագիր կազմվել է ավելի ուշ շրջանում։ Վերջինս դարձյալ Նիկիայի անունով է և ունի 50 կանոն (Կանոնագրքի Ա հատորում սխալմամբ նշված է 48 (էջ 561. մեկով ավելի են նշված նաև նախորդ՝ 560-րդ էջի 21 և 22-րդ տողերի 7, 9, 7 թվերը)։ Այն գտնվում է №№ 659, 8459, 9311, ձեռագրերում, իսկ սրա մի այլ տարբերակը՝ № 657 ձեռագրում 31 կանոնով (տե՛ս Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 560—562, 569—570)։ Այս բնագիրը և Երկրորդ Նիկիական կանոնախումբը ընտրած նյութի տեսակետից ոչ մի նմանություն չունեն, օրինակ՝ կան հոդվածներ, որ Երկրորդ Նիկիականն ունի, բայց այս բնագիրը չունի (տե՛ս Նիկիայի Զ, Է, ԺԱ, ԺԵ, ԺԹ, Ի, Անկյուրիայի ԺԲ, ԺԶ, ԺԹ, Ի, Նեոկեսարիայի Ա, Գ, Զ, ԺԸ, Ի) և ընդհակառակը (Կեսարիայի Բ, Դ-Ը, Ժ)։ Այս բնագրում օգտագործված է չորս կանոնախումբ՝ Նիկիայի, Անկյուրիայի, Կեսարիայի և Նեոկեսարիայի, ընդ որում Նիկիայի կանոնախմբից վերցված է 14 հոդված՝ Ա—Ե, Ը—Ժ, ԺԲ—ԺԴ, ԺԶ—ԺԸ, Անկյուրիայից 12-ը՝ Ա—Դ, Է—ԺԱ, ԺԵ, ԺԷ, Ի, Կեսարիայից լրիվ՝ Ա—Ժ, Նեոկեսարիայից 14-ը՝ Բ, Դ, Ե, Է—ԺԷ։ Իսկ № 657-ում Նիկիայից մեկ հոդված՝ ԺԸ, Անկյուրիայից 9՝ Ա—Դ, Է—Ժ, Ի, Կեսարիայից լրիվ՝ Ա—Ժ, Նեոկեսարիայից 12-ը՝ Բ, Դ, Է—ԺԴ, ԺԶ, ԺԷ։ Բոլոր դեպքերում էլ միևնույն կանոնախմբի բերված և չբերված հոդվածների ընդհանուր քանակը համապատասխանում է Կանոնագրքում եղած նույն կանոնախմբերի հոդվածների քանակին՝ Նիկիա 20, Անկյուրիա 20, Կեսարիա 10, Նեոկեսարիա 20։ Այս բոլորը ցույց են տալիս, որ նշված ձեռագրերում պահված բնագիրը կազմվել է Կանոնագրքի համապատասխան կանոնախմբերից։ Այն ավելի ուշ շրջանում՝ XIII—XIV դարերում, Երկրորդ Նիկիական կանոնախմբի նման նոր կանոնախումբ վերակազմելու մի փորձ է։ Ըստ երևույթին այդպիսի կանոնախմբեր ստեղծելու անհրաժեշտությունը զգացվել է միջնադարում։*

*[3] Հմմտ. Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 560։*

Երկրորդ Նիկիական կանոնախմբի հոդվածների հաջորդականության համապատասխան, օգտագործված աղբյուրներն ունեն հետևյալ համակարգը.

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Ա—Ի հոդվ.՝ | Նիկիայի հունարեն | 1—20 հոդվ. | | չի օգտագործված | 12-րդը. |
| ԻԱ—ԼԲ | » Անկյուրիայի | » | 1—25 | » | 3,5—10, 12, 13, 22—24-րդը |
| ԼԳ—ԽԵ | » Նեոկեսարիայի | » | 1—15 | » | 14-րդը |
| ԽԶ—ԾԲ | » Գանգրայի | » | 1—11 | » | 8—10-րդը |
| ԾԳ—ԿԴ | » Լավոդիկեի | » | 24—40 | » | 31, 34, 38 39-րդը |
| ԿԵ—Հ | » Գանգրայի | » | 15—20 | — | — |
| ՀԱ—ՁԱ | » Անտիոքի | » | 6—25 | չի օգտագործված | 10—12, 14, 15, 19—21-րդը |
| ՁԲ—ՃԺԳ | » Լավոդիկեի | » | 2—23 45—59 | » | 4—8, 10, 13, 20, 49-րդը |

Ի՞նչ է երևում այս աղյուսակից։ Հերթականությամբ օգտագործված են Նիկիայի, Անկուրիայի, Նեոկեսարիայի, Գանգրայի, Լավոդիկեի կանոնախմբերը, այնուհետև կրկնվում են վերջին երկու կանոնախմբերը և այս երկուսի միջև մեկ անգամ օգտագործվել է Անտիոքինը։ Ընդ որում վերևում նշված առաջին երեք կանոնախմբերը օգտագործված են գրեթե ամբողջությամբ, բաց թողնելով առանձին հոդվածներ, իսկ չորրորդ և հինգերորդ՝ Գանգրայի և Լավոդիկեի կանոնախմբերը օգտագործված են մասնակիորեն։ Այս հանգամանքը, ըստ երևույթին, հնարավորություն է ստեղծել այդ կանոնախմբերին անդրադառնալ երկրորդ անգամ։ Կարծում ենք, որ եթե այս բնագիրը մեկ անգամից և մեկ մարդու կողմից կազմվեր, Գանգրայի և Լավոդիկեի կանոնախմբերը չէին կրկնվի։ Կազմողը կվերցներ Գանգրայի կանոնախմբից այնքան, ինչքան ինքը նպատակահարմար կգտներ, հետագայում դրան չանդրադառնալու դիտավորությամբ, ինչպես արված է Նիկիայի, Անկյուրիայի և Նեոկեսարիայի կանոնախմբերի հետ, և նոր միայն կանցներ ուրիշ կանոնախմբերի։ Այդպես և Լավոդիկեինը։ Իսկ Անտիոքի կանոնախումբը, թեև օգտագործվել է մեկ անգամ, սակայն դա նշանակում է, որ սրանից արված լրացումը կատարվել է Գանգրայի և Լավոդիկեի կանոնախմբերի լրացման ժամանակ։

Այստեղ խոսեցինք կանոնախմբերի կրկնությունների մասին, բայց փաստեր կան, ուր այս կանոնախմբի տարբեր շերտերում կրկնված է միևնույն հոդվածի միտքը. օրինակ՝ Կ հոդվածում կարդում ենք. «Ոչ է պարտ ընդ հերետիկոսս ճաշել կամ աղաւթել, կամ աւրհնութիւն առնուլ ի նոցանէ»։ Սա համապատասխանում է Լավոդիկեի 32 և 33-րդ հոդվածներին[1], իսկ ավելի ներքև, ՁԴ հոդվածում գրված է. «Ոչ է պարտ հերետիկոսաց ընդ մեզ յաղաւթս կալ»։ Սա էլ համապատասխանում է Լավոդիկեի 33-րդ հոդվածին[2]։ Այս հոդվածի միտքը գտնում ենք վերևում մեջբերված Կ հոդվածում։ Հազիվ թե միևնույն հեղինակը նման կրկնություն թույլ տար[3]։

---

[1] Հմմտ. Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 236, հոդված ԼԲ, ԼԳ։

[2] Նույն տեղում, էջ 236, հոդված ԼԳ։

[3] Ի դեպ, այս ՁԴ հոդվածը չի պահվել սույն կանոնախմբի № 659 ձեռագրի տարբերակում, որովհետև սրա միտքը գտնում ենք ՂԴ հոդվածում (նույն Կ հոդվածը, որը № 659 ձեռագրում դրված է ՂԴ համարի տակ)։

*Որևէ աշխատության ճոխացման, լրացման փաստը նոր երևույթ չէ հայ մատենագրության մեջ, ինչպես օրինակ կարելի է նշել «Գիրք թղթոց», «Կնիք հաւատոյ» ժողովածուները։ Որ ժամանակի ընթացքում Երկրորդ Նիկիական կանոնախումբը լրացվել ու ճոխացվել է վերոհիշյալից հետո, հազիվ թե վիճարկվի։ Կարելի է վիճարկել միայն ավելացված շերտերի վերաբերյալ. օրինակ՝ մեր համոզմամբ, այս կանոնախմբի սկզբնական բնագիրը, որը և Օձնեցուն ծանոթ էր, եղել են Ա—ԾԲ հոդվածները[1], որոնք վերցվել են Նիկիայի, Անկյուրիայի, Նեոկեսարիայի և Գանգրայի կանոնախմբերից։ Հետագայում մեկ ուրիշը ավելացրել է ԾԳ—ԿԴ (Լավոդիկեի 24—40) հոդվածների շերտը, իսկ մեկ ուրիշն էլ՝ ԿԵ—ՃԺԳ (Գանգրայի 15—20, Անտիոքի 6—25, Լավոդիկեի 2—23, 45—59) հոդվածների համառոտումը։ Թերևս այսպես ավելի հավանական է, որովհետև վերևում, ինչպես ցույց տվեցինք, ՁԴ հոդվածը կրկնվում է Կ-ում, որը գտնվում է երկրորդ՝ ԾԳ—ԿԴ հոդվածների շերտում, իսկ ՁԴ-ն ԿԵ—ՃԺԳ՝ վերջին շերտում։ Միևնույն հեղինակը, ինչպես նշեցինք, նման կրկնություն թույլ տալ չէր կարող։ Այսպիսով, Երկրորդ Նիկիական կանոնախմբի սկզբնական բնագրում եղել են Ա—ԾԲ հոդվածները, հետագայում դրան ավելացրել են ԾԳ—ԿԴ և ապա ԿԵ—ՃԺԳ հոդվածները։*

*Որ Երկրորդ Նիկիական կանոնախմբի սկզբնական բնագիրը կազմված է եղել Ա—ԾԲ հոդվածներից և մնացած հոդվածները հետագա ավելացումներ են, երևում է սրա մի այլ՝ № 659 ձեռագրի տարբերակից։ Այդ ցույց տալու համար № 659 տարբերակի հոդվածների հերթականության համապատասխան դեմ առ դեմ կբերենք Կանոնագրքի ունեցած համակարգը.*

| **№ 659** | **Կանոնագիրք** | **№ 659** | **Կանոնագիրք** |
|---|---|---|---|
| Ա. | Ա | ԺԹ. | ԺԹ |
| Բ. | Բ | Ի. | Ի |
| Գ. | Գ | ԻԱ. | ԻԲ |
| Դ. | Դ | ԻԲ. | ԻԲ |
| Ե. | Ե | ԻԳ. | ԻԳ |
| Զ. | Զ | ԻԴ. | ԻԴ |
| Է. | Է | ԻԵ. | ԻԵ |
| Ը. | Ը | ԻԶ. | ԻԶ |
| Թ. | Թ | ԻԷ. | ԻԷ |
| Ժ. | Ժ | ԻԸ. | ԻԸ |
| ԺԱ. | ԺԱ | ԻԹ. | ԻԹ |
| ԺԲ. | ԺԲ | Լ. | Լ |
| ԺԳ. | ԺԳ | ԼԱ. | ԼԱ |
| ԺԴ. | ԺԴ | ԼԲ. | ԼԱ |
| ԺԵ. | ԺԵ | ԼԳ. | ԼԲ |
| ԺԶ. | ԺԶ | ԼԴ. | ԼԳ |
| ԺԷ. | ԺԷ | ԼԵ. | ԼԴ |
| ԺԸ. | ԺԸ | ԼԶ. | ԼԵ, ԼԶ |

[1] *Օձնեցու իմացածից մեկ հոդվածով ավելի, կամ նա իր ձեռքի տակ ունեցել է այնպիսի տարբերակ, որը պարունակել է 51 հոդված։*

| № 659 | Կանոնագիրք | № 659 | Կանոնագիրք |
|---|---|---|---|
| ԼԷ. | ԼԷ | ՀԵ. | ՁԶ |
| ԼԸ. | ԼԹ | ՀԶ. | ՁԷ |
| ԼԹ. | ԼԸ | ՀԷ. | ՁԸ |
| Խ. | — | ՀԸ. | ՁԹ |
| ԽԱ. | Խ | ՀԹ. | Ղ |
| —. | ԽԱ | Ձ. | ՃԱ |
| ԽԲ. | ԽԲ | ՁԱ. | ՂԱ |
| ԽԳ. | ԽԳ | ՁԲ. | ՂԲ |
| ԽԴ. | ԽԴ | ՁԳ. | ՂԳ, ՂԴ |
| ԽԵ. | ԽԵ | ՁԴ. | ՂԵ |
| ԽԶ. | ԽԶ | ՁԵ. | ՂԶ |
| ԽԷ. | ԽԷ | ՁԶ. | ՂԷ |
| ԽԸ. | ԽԹ | ՁԷ. | ԾԴ |
| ԽԹ. | — | ՁԸ. | ԾԴ |
| Ծ. | Ծ | ՁԹ. | ԾԵ |
| ԾԱ. | ԾԱ | Ղ. | ԾԶ |
| ԾԲ. | ԾԲ | ՂԱ. | ԾԷ |
| ԾԳ. | ԿԵ | ՂԲ. | ԾԸ |
| ԾԴ. | — | ՂԳ. | ԾԹ |
| ԾԵ. | ԿԵ | ՂԴ. | Կ |
| ԾԶ. | ԿԶ | ՂԵ. | ԿԱ |
| ԾԷ. | ԿԸ | ՂԶ. | ԿԲ |
| ԾԸ. | ԿԹ | ՂԷ. | ԽԸ |
| ԾԹ. | Հ | ՂԸ. | ԿԳ |
| Կ. | ՀԱ | ՂԹ. | ԿԴ |
| ԿԱ. | ՀԲ | Ճ. | ՂԸ |
| ԿԲ. | ՀԳ | ՃԱ. | ՂԹ |
| ԿԳ. | ՀԴ | ՃԲ. | Ճ |
| ԿԴ. | ՀԵ | ՃԳ. | ՃԲ |
| ԿԵ. | ՀԶ | ՃԴ. | ՃԳ |
| ԿԶ. | ՀԷ | ՃԵ. | ՃԴ |
| ԿԷ. | ՀԸ | ՃԶ. | ՃԵ |
| ԿԸ. | ՀԹ | ՃԷ. | ՃԶ |
| ԿԹ. | Ձ | ՃԸ. | ՃԷ |
| Հ. | ՁԱ | ՃԹ. | ՃԸ |
| ՀԱ. | ՁԲ | ՃԺ. | ՃԹ |
| ՀԲ. | ՁԳ | ՃԺԱ. | ՃԺ |
| ՀԳ. | — | ՃԺԲ. | ՃԺԱ |
| —. | ՁԴ | ՃԺԳ. | ՃԺԲ |
| ՀԴ. | ՁԵ | ՃԺԴ. | ՃԺԳ, ՃԺԴ |

*Այսպիսով, երկու բնագրերի կանոնների հաջորդականության զուգորդումից երևում է, որ նախ այս կանոնախմբի՝ մեր նշած սկզբնական բնագիրը ներկայացնող Ա—ԾԲ կանոնների հերթականությունը և՛ Կանոնագրքում և՛ № 659 տարբերակում նույնն են. միայն շարունակության մեջ խախտվում է հերթականու-*

*թյունը, ուրեմն հասկանալի պատճառով, ընթանում է այլ համարակալմամբ։ Այնուհետև, հաջորդ՝ ՄԳ—ԿԳ կանոնները № 659 տարբերակում ամբողջությամբ տեղափոխված է ՁԷ—ՂԹ համարների տակ։ Մի կողմից այն հանգամանքը, որ Կանոնագրքի Երկրորդ Նիկիական կանոնախմբի Ա—ՄԲ կանոնները № 659 տարբերակում դրված են սկզբում, միևնույն հերթականությամբ, և միայն շարունակության մեջ է խախտվում կանոնների հաջորդականությունը, իսկ մյուս կողմից մեր նշած երկրորդ շերտը՝ ՄԳ—ԿԳ կանոնները, որպես ամբողջական հատված, օգտագործված է նույն տարբերակի վերջին մասում, մեզ թույլ է տալիս կրկին հավաստելու, որ Երկրորդ Նիկիական կանոնախումբը սկզբնապես ունեցել է 52 կանոն (կամ 51, ինչպես Օձնեցին է հաղորդում), որին ծանոթ էր Օձնեցին։*

*Վերևում (էջ XVII—XVIII) արդեն նշել ենք, որ Երկրորդ Նիկիական կանոնախումբը Կանոնագրքում մուծվել է մինչև X դարի առաջին կեսը, գուցե և առաջին տասնամյակներում, համենայն դեպս մինչև Անանիա Մոկացի կաթողիկոսը (941—965 թթ.՝ ըստ Գալուստ Տեր-Մկրտչյանի, 946—969 թթ.՝ ըստ Մաղաքիա Օրմանյանի)։ Ինչպիսի՞ փաստեր բերեցին մեզ այդ համոզման։ 1897 թ. «Արարատ»-ի մարտ և հունիս ամիսների Հավելվածում Գալուստ Տեր-Մկրտչյանը հրատարակեց Անանիա Մոկացու չորս գրությունները հետևյալ վերնագրերով ա. «Տեառն Անանիայի Հայոց կաթողիկոսի յաղագս ապստամբութեան տանն Աղուանից որ ընդ ժամանակս ժամանակս լեալ իցէ ձեռնադրութիւնն արտաքոյ սուրբ Լուսաւորչի աթոռոյն» (էջ 129—144), բ. «Տեառն Անանիայի Հայոց կաթողիկոսի պատճառ յաղագս զխոսրով նզովելոյն զԱնձեւացեաց եպիսկոպոսն» (էջ 275—277), գ. «Նորին տեառն Անանիայի Հայոց կաթողիկոսի յաղագս որ ասեն, թէ մի պատիւ հայրապետին եւ եպիսկոպոսին եւ վասն մի լինելոյ կոչմանն» (էջ 277—280), դ. «Նորին տեառն Անանիայի Հայոց կաթողիկոսի» (էջ 280—288)։ Այս գրությունները ուշագրավ և կարևոր տեղեկություններ են պարունակում ոչ միայն X դարի առաջին կեսի և հաջորդ տարիներում հայերի քաղաքական, եկեղեցական պատմության, այլև հայ բանասիրության վերաբերյալ։*

*Արդարացի է Ակինյանը, երբ գրում է, թե Մոկացի կաթողիկոսը երես առ երես թերթել է Հայոց Կանոնագիրքը*[1]*։ Սակայն նա ոչ միայն թերթել է Կանոնագիրքը երես առ երես, այլև վերջին գրության մեջ բավական քաղվածքներ բերել Կանոնագրքի տարբեր կանոնախմբերից՝ Առաքելական, Կղեմեսի, Հարանց հետևողաց, Նիկիայի, Անկյուրիայի (սխալմամբ նշում է Նեոկեսարիայի), Կ. Պոլսի, Եփեսոսի, Բարսեղի, Սահակի, Շահապիվանի, ինչպես նաև Երկրորդ Նիկիական։ Բերում ենք վերջինիցս արված քաղվածքը. «Կարճառոտ ի կանոնաց, որ եւ այն կոչի Նիկիայի, ԻԱ գլխոյն. Պարտ է, ասէ, զիրիցունս որ զոհեցին եւ ապա դարձան եւ խոստովան եղեն ոչ ամենեւին լուծանել, աթոռոյն միայն արժանի լինել, այլ ոչ պատարագ մատուցանել եւ ի վարդապետութեան կալ»*[2]*։ Այս մեջբերումը համապատասխանում է Երկրորդ Նիկիական կանոնախմբի ԻԱ կանոնին, որովհետև կանոնախմբի անունը և հոդվածի համարը ճշտիվ նշում է Անանիա Մոկացին։ Ահա Կանոնագրքի համապատասխան հոդվածը. «Պարտ է զերիցունս որ զոհեցին եւ ապա դարձան եւ խոստովան եղեն՝ ոչ ամենեւին լուծանել, աթոռոյն միայն արժանի առնել, այլ ոչ պատա-*

---

1 *Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 108։*

2 *«Արարատ» 1897, էջ 281։*

րագ մատուցանել, եւ ոչ ի խաւսսն կալ եւ ոչ այլ պաշտաւն պաշտել քահանայութեան։ Նմանապէս եւ սարկաւագին՝ ոչ քարոզել եւ ոչ սպասաւորել, բայց եթէ վասն յոյժ երկիւղածութեան՝ եպիսկոպոսն հրամայիցէ»[1]։ Այս մեջբերման վերջին մասը՝ սկսած «նմանապէս եւ սարկաւագին...» հատվածից Անանիա Մոկացին չի բերել, որովհետև իր քննած հարցին չէր վերաբերում։ Այս երկու հատվածների համեմատությունը ցույց է տալիս նաև, որ Երկրորդ Նիկիական կանոնախումբը կազմվելուց հետո մնացել է անաղարտ և նրա վրայով օտար ձեռք չի սահել։ Մյուս մեջբերումը, որը հանդիսանում է վերևում բերվածի հիմքը, Անանիա Մոկացին սխալ է հասցեագրում, ահա այն. «Նեոյ-Կեսարիայն, որ եւ այն Նիկիա անուանի, վասն երիցանց, որ ի բռնութենէ հեթանոսաց նախ քան զտանջանս զոհեցին եւ ճշմարտութեամբ դարձան, զպատիւ յաթոռոյն կալցին, այլ ի թարգմանութիւն նստել կամ պատարագ մատուցանել կամ Աւետարան կարդալ՝ ոչ ունի իշխանութիւն»։ Այս մեջբերման «որ եւ այն Նիկիա անուանի» հատվածը թվում է թե հուշում է Երկրորդ Նիկիական կանոնախմբի մասին, բայց այստեղ սույն կանոնը արդեն մտել է ԻԱ կանոնի տեսքով։ Մյուս կողմից այս քաղվածքի հենց սկզբի «Նեոյ-Կեսարիայն» նշումը չի կարող լինել նրա հասցեատերը, որովհետև Նեոկեսարիայի կանոնախմբում նման կանոն չենք գտնում։ Եթե Անանիա Մոկացին նկատի ունի վերջինիս Կանոնագրքի բնագրի ԺԷ կանոնը[2], ապա այն հիվանդների, նեղության և բռնության մեջ ընկածների մկրտության մասին է, թեև սրա համապատասխան հունարեն կանոնում խոսքը ոչ թե նմաններին մկրտելու, այլ քահանա ձեռնադրելու մասին է։ Անանիա Մոկացու վերևի մեջբերումը եթե լիներ ազատ շարադրությամբ, թերևս համաձայնվեինք, որ այն վերցված է Նեոկեսարիայի կանոնախմբից, բայց այն բերված է գրեթե բառացի, հետևապես կարող ենք ստույգ մատնացույց անել Կանոնագրքի համապատասխան կանոնախումբը։ Անկյուրիայի կանոնախմբի Ա կանոնում կարդում ենք. «Վասն երիցանց. որք ի բռնութենէ հեթանոսաց մինչեւ ի տանջանս ածել ի վերայ եւ մահ սպառնալ եւ նոքա առ երկիւղի զոհեցին եւ ապա ջանացան, նկրտեցան եւ ճշմարտութեամբ դարձան. վասն այսպիսեացս կամ եղեւ զի զաթոռոցն կարգն կալցին, այլ ի թարգմանութեան նստել կամ պատարագ մատուցանել կամ Աւետարան կարդալ՝ ոչ ունին իշխանութիւն»[3]։ Կարծում ենք հարցը լուծված է։

Այս ամբողջ շարադրանքից երևում է, որ Անանիա Մոկացու ժամանակ, X դարի կեսերին, Երկրորդ Նիկիական կանոնախումբն արդեն մտել էր Հովհ. Օձնեցուց հետո, նրա կազմած Կանոնագրքում 34 (ԼԴ)-րդ համարի տակ։ Հնարավոր է, որ Անանիա Մոկացու ժամանակ Կանոնագիրքը եզրափակվել է Երկրորդ Նիկիական կանոնախմբով։

Բարսեղ Կեսարացուն վերագրված կանոնախումբը Կանոնագրքում զետեղված է 36 (ԼԶ)-րդ տեղում։

Որոշ ձեռագրերում, օրինակ՝ №№ 835, 837, 8459, կանոնախմբի վերնագիրը թեև նման է Կանոնագրքի ունեցածին, բայց որպես հեղինակ նշված է ոչ թե Բարսեղ Կեսարացին, այլ Հովհան Ոսկեբերանը։ Ահա այդ վերնագիրը. «Տեառն

[1] Տե՛ս ներքևում, էջ 76։
[2] Հատ. Ա, էջ 186։
[3] Նույն տեղում, էջ 154։

*Յովհաննու ասացեալ (№ 837-ում՝ ասաց) ի խնդրոյ սրբոյն (№ 835-ում՝ չիք սրբոյն) Բարսղի սահմանադրութիւն վասն պէսպէս եւ բիւրապատիկ ախտից»*[1]

*Տվյալ պահին չենք կարող ստույգ որոշել, թե դրանցից որն է սկզբնապես հանդես եկել։ Մեր կարծիքով, հավանականը առաջինն է, որովհետև Կանոնագրքի XI դարի խմբագրության մեջ այս կանոնախումբը նշված է նրա անունով։ Այդպես գիտի նաև Մխիթար Գոշը*[2]*։ Ավելին. հոդվածներից մեկի կապակցությամբ Գոշը կասկած է հայտնում, թե այդ Բարսեղ Կեսարացունը լինի։ Դատաստանագրքի Ա մասի ՁՁ հոդվածում մեջբերելով վերջինիս կանոնախմբի ՄԸ կանոնը*[3] *Գոշն ավելացնում է. «Երկբայի այս կանոնք սրբոյ լինել Բարսղի, եւ թէ նորա անհնարին է լինել այս կանոնաց»*[4]*։ Այս քաղվածքից երևում է, որ Գոշը ևս սույն կանոնախումբը Բարսեղ Կեսարացունը չի համարել։*

*Այն հարցը, թե տվյալ կանոնախումբը իսկապես պատկանում է Բարսեղ Կեսարացու և կամ Հովհան Ոսկեբերանի գրչին, մենք ևս բացասաբար ենք պատասխանում։ Եվ ահա թե ինչու։ Ուշադիր քննելով կանոնների բովանդակությունը և դրանք համադրելով մեր ձեռքի տակ գտնված կանոնական այլ բնագրերի հետ, նկատում ենք շոշափելի բազմաթիվ կետեր, որոնք մեզ հուշում են, թե այս կանոնախումբը աղբյուրագիտական ինչպիսի հիմքեր պետք է ունենա։ Թերևս անհրաժեշտություն չզգացվի բոլոր 272 կանոնների այդ հիմքերը նշել, մանավանդ, որ մի շարք կանոնների համար չկարողացանք ստույգ հիմքեր գտնել։ Այնուամենայնիվ, մեր ասածը ցույց տալու նպատակով կնշենք շատերից մի քանիսի աղբյուրագիտական հիմքերը։ Նախ և առաջ բնորոշ է այն, որ կանոնախմբի սկզբի հոդվածները համառոտված և խմբագրված ձևով քաղված են Կանոնագրքի Հովհ. Օձնեցու խմբագրության մեջ մտած Բարսեղ Կեսարացու կանոնախմբի կանոններից*[5]*։ Թերևս այս մոտեցմամբ էլ բնագրի կազմողը թաքնվել է Բարսեղ Կեսարացու անվան տակ։ Դեմ առ դեմ կդնենք այս երկու բնագրերի և ապա մյուս աղբյուրների համապատասխան կանոնները.*

| Առաջարկվող կանոնախումբ | Կանոնագիրք Հայոց, հ. Ա | | |
|---|---|---|---|
| *Ա կանոն . . . . . . . .* | *Բարսեղ Կեսարացի* | *Գ* | *կանոն* |
| *Բ » . . . . . . . .* | » | *Ը* | » |
| *Գ » . . . . . . . .* | *Աթանաս Աղեք.* | *ԾԹ* | » |
| *Դ » . . . . . . . .* | *Բարսեղ Կեսարացի* | *ԻԴ* | » |
| *Ե » . . . . . . . .* | » | *ԻԸ* | » |
| *Զ » . . . . . . . .* | » | *ԻԹ* | » |
| *Է » . . . . . . . .* | » | *Լ* | » |
| *Ը » . . . . . . . .* | » | *ԼԱ* | » |

*1 №№ 8459, էջ 90 ա, 835, էջ 126 ա, 837, էջ 66 ա։ Վերնագիրն այդպիսին է նաև №№ 7060 (էջ 78 ա—116 ա), 2576 (էջ 155ա—160ա) ձեռագրերում, որոնք, սակայն, չենք ուսումնասիրել և արդյունքները նշել ծանոթագրություններում, որովհետև այդպիսիները հանդիպեցին սույն աշխատանքի տպագրվելու ընթացքում։*

*2 Դատաստանագիրք Հայոց, էջ 181, 187։*

*3 Բաստամյանցը նշում է ՄԷ, որովհետև իր օգտագործած ձեռագրում՝ № 761, այժմյան № 778-ը, նշված է ՄԷ, էջ 175 բ։*

*4 Դատաստանագիրք Հայոց, էջ 187։*

*5 Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 329—362։*

| Առաջարկվող կանոնախումբ | Կանոնագիրք Հայոց, հ. Ա |
|---|---|
| Թ կանոն . . . . . . . . | Բարսեղ Կեսարացի ԼԲ կանոն |
| Ժ » . . . . . . . . | » ԼԳ » |
| ԺԱ » . . . . . . . . | » ԼԴ » |
| ԺԲ » . . . . . . . . | » ԼԷ » |
| ԺԴ » . . . . . . . . | Կղեմես Ի » |
| ԺԵ » . . . . . . . . | » ԻԳ » |
| ԺԶ » . . . . . . . . | » ԿԳ » |
| ԺԷ » . . . . . . . . | » ԿԴ » |
| ԺԸ » . . . . . . . . | » ԾԲ » |
| ԻԴ » . . . . . . . . | » ՀԲ » |
| ԻԶ » . . . . . . . . | Աթանաս Լ » |
| ԼԲ » . . . . . . . . | Սահակ վերջնոյ Դ, ԺԱ » |
| ԼԳ » . . . . . . . . | Հարանց հետևողաց ԺԶ » |
| ԼԴ » . . . . . . . . | Գր. Լուսավորիչ ԺԶ » |
| ԼԵ » . . . . . . . . | Հարանց հետևողաց ԻԳ » |
| ԼԶ » . . . . . . . . | » ԺԱ » |
| ԼԹ » . . . . . . . . | » ԺԶ »<br>Գր. Լուսավորիչ ԺԳ » |
| ԾԲ » . . . . . . . . | » Թ » |
| ԾԵ » . . . . . . . . | Նեոկեսարիա ԺԳ » |
| ԾԹ » . . . . . . . . | Գր. Լուսավորիչ ԻԶ » |
| ԿԱ » . . . . . . . . | » ԻԲ » |
| ՀԲ » . . . . . . . . | Գանգրա Ա, Թ » |
| ՀԴ » . . . . . . . . | » Դ » |
| ՀԹ » . . . . . . . . | Գր. Լուսավորիչ ԺԵ » |
| Ձ » . . . . . . . . | Գանգրա Ի » |
| ՁԱ » . . . . . . . . | » ԻԳ » |
| ՁԴ » . . . . . . . . | Գր. Լուսավորիչ Է » |
| Ղ » . . . . . . . . | Շահապիվան Ժ » |
| ՂԲ » . . . . . . . . | » ԺԱ » |
| ՂԶ. » . . . . . . . . | Գր. Լուսավորիչ ԺԱ » |
| ՃԲ » . . . . . . . . | Գանգրա ԺԶ » |
| ՃԴ » . . . . . . . . | » ԺԵ » |
| ՃԺ » . . . . . . . . | Սահակ Պարթև ԺԷ » |

Եվ այսպես կարելի է շարունակել։ Վերևի նշումները ցույց են տալիս, որ այս բնագրի հեղինակը Բարսեղ Կեսարացին չէր կարող լինել։ Սույն կանոնախմբում նկատեցինք մի այլ երևույթ էլ։ Մի շարք կանոններ կրկնված են՝ մերթ համառոտ, մերթ մի փոքր ընդարձակ. այլև կան հարցեր, որոնց նվիրված է 3—4 կանոն։ Բերենք այս կարգի մի շարք փաստեր.

1. Բ և ՂԷ կանոնները վերաբերում են այն բանին, թե պատերազմում մարդ սպանելիս, սպանողի հետ ինչպե՞ս վարվել, որպես հանցապարտի՞, թե նա անպարտ է։

2. ԼԳ և ԼԹ կանոնները վերաբերում են կույսերին, որոնք դրժում են իրենց խոստումը։

*3. ԼԴ և ՁԹ կանոնները վերաբերում են դիակողոպտությամբ զբաղվողներին։*

*4. ԼԲ և ԾԺԲ կանոնները վերաբերում են բորոտ և ուրուկ քահանաների և սարկավագների վարքագծին։*

*5. ԾԽԴ և ՄՀԱ կանոնները վերաբերում են հայհոյողներին։*

*6. ԼՁ և ԾԽՁ կանոնները վերաբերում են բորոտների և ուրուկների հետ կենակցողներին։*

*7. Իէ, ԾԽԹ, ՄԺԹ և ՄԻԱ կանոնները վերաբերում են ամուսնության ազատ ընտրության հարցին։*

*8. Ժ, ԺԱ, ԽԹ, ԾԼԴ և ԾՉԱ կանոնները վերաբերում են մերձավորների կենակցության հարցին, իսկ ՀԱ, ԾԼԲ, ՄԺԵ և ՄՀԲ հոդվածները՝ մերձավորների և խնամիների ամուսնությանը։*

*Մեջ ենք բերում մերձավորների ամուսնության վերաբերյալ ՀԱ և ՄԺԵ կանոնները. «ՀԱ. Եթէ ոք առնու կին ի մերձաւոր արենէ իւրմէ մինչեւ ի Գ-երորդն եւ յէ-երորդն՝ նզովեալ եղիցի եւ մեկնեսցեն ի միմեանց առաջնորդքն. եւ վասն պսակին անարգելոյ Ծ դրամ տուգանս տացէ յեկեղեցին եւ Գ ամ առ դրանն ապաշխարեսցէ. բայց վարդապետն իշխան է զինչ կամեսցի»[1]։*

*«ՄԺԵ. Եթէ ոք յիւր արենէ եւ ի մերձաւորէ խնամութիւն առնէ մինչեւ ի չորրորդ եւ ի հինգերորդ ազգն՝ պսակն անվաւեր լիցի եւ պսակադիրն լուծցի. Ծ դրամ տուգանս տացէ եւ ապաշխարութիւն պոռնկին եղիցի եւ ում կամի առն լիցի»[2]։*

*Միևնույն հարցի մասին տարբեր մոտեցում և սահմանում։ Այս փաստերը համոզում են, որ սույն բնագիրը թերևս մեկ հեղինակ չի կազմել, այլ մեկից ավելի և կամ կազմողն այնքան անփույթ է եղել, որ պատշաճ ձևով չի ընտրել և մշակել քաղվածաբար վերցրած նյութերը, որի պատճառով ստացվել են կրկնություններ։*

*Այսպես ուրեմն, առաջարկվող բնագիրը Բարսեղ Կեսարացու գրչին չի պատկանում, այն կեղծ գրվածք է։*

*Ն. Ակինյանը, հետևելով Հ. Գաթրճյանին, Սահակ Պարթևի կանոնախումբը[3] համարում է կեղծ, կարծելով, թե այն հանդես է եկել Ներսես Բ Բագրևանդացու կանոնախմբից[4] հետո։ Հետևապես, ինչպես, եզրակացնում է Ն. Ակինյանը, օգտվելու դեպքում Սահակ Պարթևի կանոնախմբի հեղինակն իր առջև ունեցել է Ներսես Բ Բագրևանդացու կանոնախումբը[5]։ Այստեղից էլ նա իր աշխատության 51—53 էջերում մի շարք շոշափելի կետեր է համադրում միմյանց և եզրակացնում, որ Սահակ Պարթևի անունով հայտնի կանոնախումբը կեղծ է և հանդես է եկել VI դարի 60-ական թվականներից հետո կամ ավելի ուշ[6]։*

*Շարունակելով քննական իր տեսությունը՝ Ակինյանը կարծում է նաև, որ Սահակ Պարթևին վերագրված կանոնախմբի հեղինակը օգտագործել է Բարսեղ Կեսարացու անունով հայտնի սույն կանոնախումբը։ Այս վարկածը*

---

*[1] Տե՛ս սույն հատորում, էջ 118։*

*[2] Նույն տեղում, էջ 159։*

*[3] Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 363—421։*

*[4] Նույն տեղում, էջ 475—490։*

*[5] Քննութիւն Ս. Սահակի վերագրուած կանոններու, Վիեննա, 1950, էջ 51։*

*[6] Նույն տեղում, էջ 24, 63։ Հմմտ. Ս. Տիգրանյան, Հայոց իրավունքի պատմության ներածություն, էջ 116—117։*

հավաստելու համար նա վկայակոչում է Սահակ Պարթևի կանոնախմբի ԺԵ կանոնը[1], որը, ըստ Ակինյանի, թեև «Ներսէսի ԻԴ կանոնի համաձայն խմբագրված է, նկատի ունի նաև Բարսեղի (իմա՛ սույն կանոնախմբի —Վ. Հ.) ՄԺԹ և ՄԻԱ կանոնները»[2] և դեմ առ դեմ բերում նշված երեք կանոնախմբերի տվյալները[3]։

Եթե ճիշտ է այս պնդումը, նշանակում է պետք է ընդունել, որ Բարսեղ Կեսարացուն վերագրված սույն կանոնախումբը երևան է եկել մինչև Ներսես Բ Բագրևանդացու կանոնախմբի հանդես գալը՝ մինչև VI դարի կեսերը։ Սակայն այս պնդումը ապացուցելու համար փաստեր գոյություն չունեն։ Ի դեպ, Ակինյանը չի էլ կասկածում առաջարկվող կանոնախմբի վավերականության վրա։ Մինչդեռ ուրիշ փաստեր, որոնք անտեսել է Ակինյանը, տրամագծորեն հակառակ եզրակացությանն են բերում։ Այսպես. Ակինյանը չի կասկածում Կանոնագրքի Հովհ. Օձնեցու ժողովածուում մտած Սահակ Գ Ձորոփորեցու կանոնախմբի[4] վավերականության վրա[5]։ Վերջինս Կանոնագրքում մտել է «Կանոնք վերջնոյ Սահակայ գլուխք ԺԴ» խորագրով. այսինքն Հովհ. Օձնեցու համար Սահակ Գ Ձորոփորեցին, որը կաթողիկոս է եղել 677—703 թթ., հանդիսացել է վերջին Սահակը[6]։

VII դարի վերջում կամ VIII դարի սկզբում ստեղծված այս կանոնախմբից օգտվել է Բարսեղ Կեսարացուն վերագրված սույն կանոնախմբի հեղինակը։ Բերում ենք այդ փաստերը դեմ առ դեմ.

Կարծեցյալ Բարսեղ Կեսարացի

«ԼԲ. Թէ երէց կամ սարկաւագ բորոտի կամ ուրկանայ՝ միայն առանձինն յաղաւթս կացցէ, առանց խորհրդոյ. եւ եթէ վախճանի՝ պատուով թաղեսցեն։

Եւ սխնական թէ վախճանի՝ մատուսցէ քահանայն պատարագ, ելցէ ի վեր եւ տացէ հաղորդ եւ արասցէ զփշատակ նորա ի նմին աւուր, զի այն է արժանն»[7]։

Սահակ Ձորոփորեցի

«Դ. Հարցումն. Եթէ երէց ոք բորոտի կամ ուրկանայ, պա՞րտ է յառանձին աղաւթսն իւր Աւրհնութիւն եւ փառս ասել եւ աւետարանել, թէ բնաւ իսկ զինուորել։

Պատասխանի. Յառանձին աղաւթս ասել արժան է՝ Աւրհնութիւնն եւ փառս, բայց յայլ ինչ մի՛ համարձակել»։

ԺԱ. Հարցումն. Քահանայ որ սխնական է կամ խցարգել եւ պսուրբ խորհուրդն խնդրէ առ ի հաղորդել, արժա՞ն է իւրովի կատարել զհաղորդութեանն եւ զգոհանալոյն աղաւթս յարգելանի անդ կամ ի սեան, եթէ նորին իսկ մատուցողին այսօրէիկ պատշաճին։

Պատասխանի. Ջճաշակմանն պարտ է ասել, եւ զգոհութեանն ասացեալ է»[8]։

Եթե բացառենք խմբագրական աշխատանքը, նմանությունը ակներև է։ Հիշենք, որ բացի Սահակ Գ Ձորոփորեցու այս վկայությունից կանոնական գրականության մեջ նման տեղեկություն այլուստ մեզ ծանոթ չէ։ Այստեղից

---

[1] Կանոնագիրք Հայոց, հտ. Ա, էջ 382։ Ակինյանը նկատի ունի Իէ կանոնը։

[2] Քննութիւն Ս. Սահակի վերագրուած կանոններու, էջ 53։

[3] Նույն տեղում, էջ 53—54։

[4] Կանոնագիրք Հայոց, հտ. Ա, էջ 506—513։

[5] Քննութիւն Ս. Սահակի վերագրուած կանոններու, էջ 13։

[6] Ս. Տիգրանյան, Հայոց իրավունքի պատմության ներածություն, էջ 147—149։

[7] Տե՛ս սույն հատորում, էջ 108—109։

[8] Կանոնագիրք Հայոց, հտ. Ա, էջ 508—509, 511։

*հարց է առաջանում, եթե Բարսեղին վերագրված սույն կանոնախումբը հանդես է եկել մինչև VI դարի կեսերը, գուցե ավելի վաղ՝ մինչև Ներսես Բ Բագրևանդացու կանոնախմբի հանդես գալը, ինչպես երևում է Ակինյանի բերած փաստերի համադրումից, ապա ինչպե՞ս կարող էր նրա հեղինակը օգտվել VII դարի վերջում ստեղծված Սահակ Գ Ձորոփորեցու կանոնախմբից։ Նշանակում է Սահակ Պարթևի կանոնախմբի ԻԷ կանոնը իր հիմքում չի ունեցել սույն կանոնախմբի նշված կանոնները, ինչպես թվում է Ակինյանին, և Բարսեղին վերագրված այս կանոնախմբի ստեղծման ժամանակը պետք է ետ բերել և դա ճիշտ կլինի։ Այս պարագան ցույց է տալիս, որ սույն կանոնախումբը հանդես է եկել VII դրանից հետո, համենայն դեպս Սահակ Գ Ձորոփորեցուց հետո։ Եվ այդ պատճառով էլ այն չի մտել Հովհ. Օձնեցու ժողովածուի մեջ, որովհետև այդ ժամանակ տակավին գոյություն չուներ։ Այս դեպքում, արդեն, կհանգենք հակառակ եզրակացության. այն է՝ Ներսես Բ Բագրևանդացին, ինչպես և կարծեցյալ Բարսեղ Կեսարացու սույն կանոնախմբի հեղինակը օգտվել են Սահակ Պարթևի կանոնախմբից[1]։ Այլ հարց է, որ ներկա ձևի մեջ Սահակ Պարթևի կանոնախումբը կարող է որոշ չափով հեռացած լինել իր սկզբնական բնագրից։ Եթե նկատի ունենանք այն փաստը, որ սույն կանոնախմբում չի օգտագործված Սիոն կաթողիկոսի (Պարտավի 768 թ.) կանոնախումբը, ապա կարելի է ենթադրել, որ մեզ հետաքրքրող բնագիրը հանդես է եկել մինչև Հովհ. Օձնեցին. բայց միակ այդ փաստը բավարար չէ նման ենթադրության հենակ ծառայելու, իսկ այլ փաստեր առայժմ մեզ հայտնի չեն։ Բոլոր դեպքերում փաստն այն է, որ սույն կանոնախումբը չի մտել Հովհ. Օձնեցու ժողովածուում և հանդես է գալիս այն նյութերի շարքում, որոնք ավելացվել են Հովհ. Օձնեցուց հետո մինչև X դարի վերջերը։ Այստեղից եզրակացնում ենք, որ այն եղել է Կանոնագրքի մինչև XI դարի խմբագրությունում։ Անանիա Մոկացի կաթողիկոսը իր նամակներում[2] թեև մեջբերումներ չի կատարել ներկա կանոնախմբից, ինչպես Առաքյալների, Կղեմեսի, Նիկիայի և այլ կանոնախմբերից, կարող ենք ենթադրել, որ այդ ժամանակ այս կանոնախումբը տակավին մուծված չէր Կանոնագրքում, սակայն հնարավոր է, որ Մոկացու ժամանակ այն եղել է Կանոնագրքում, բայց դրա օգտագործման անհրաժեշտությունը նա չի զգացել։*

*Ընդհանուր առմամբ հայ եկեղեցու պաշտամունքի և ծիսական հարցերը այստեղ քիչ տեղ են բռնում, ավելի շատ ավատական հասարակության ապրելակերպի, առօրյա կյանքի, հոգևորականության ցածր աստիճանի, մասնավորապես քահանաների վարքագծի հնարավոր խախտումները խափանելու նպատակով կանոնական սահմանումներ են, օրինակ, ԾԽԱ կանոնում կարդում ենք. «Թէ ոք ի մտի դնէ պոռնկել ընդ կնոջ իշխանի եւ յորոգայթ մահու անկանի, արիւն նորա ի գլուխ նորա եղիցի»[3]։ Կանոնական որոշումներում գաղտնի պոռնկության մասին բազմաթիվ կանոններ կան ընդհանրապես, բայց այստեղ հարցը մասնավորված է իշխանի կնոջ վերաբերյալ։ ԾՆ կանոնը սահմանում է, որ եթե արհեստավորը պատվիրատուի նյութից գողանա, ապա չորեքպատիկը վճարե կամ ապաշխարե[4]։ ԾԻՆ կանոնով դատապարտվում են նրանք, ովքեր*

*[1] Հմմտ. Հ. Տաշյան, Վարդապետութիւն առաքելոց, էջ 217—218, 229, 239։*

*[2] «Արարատ», 1897։*

*[3] Տե՛ս սույն հատորում, էջ 135։*

*[4] Նույն տեղում, էջ 126։*

*թատրոնի օթյակում կնոջ հետ ներկա են գտնվում ներկայացման[1]։ ՃԿԴ կանոնը կարգավորում է ծնողների ժառանգության բաժանման հարցը, սահմանելով, որ երկու քույրերը պետք է ստանան մեկ բաժին[2]։ ՃՁԸ հոդվածը խիստ դատապարտում է արհեստական վիժում կատարողներին[3], իսկ ՀԳ կանոնը՝ հղիանալուց արհեստական կերպով խուսափողներին[4]։ ՁԸ հոդվածը սահմանում է, որ ով «հրդեհիցէ զարդար վաստակս՝ տուժեսցի ընդ միոյն չորեքկին» կամ ապաշխարե տասը տարի[5]։ Հղի կինը եթե հրաժարվում է ամուսնու հետ կենակցելուց, իսկ ամուսինը դրա համար նրան ծեծում է, ապա վերջինս հանցապարտ է (ՂԱ)[6]։ Հիվանդներին պետք է բժշկել սուրբ դեղերով, այլապես բժշկողները մեղավոր են (ՃՁԹ)[7]։ Այն երկրի թագավորը, որը լինում է նախահարձակ, իրավունք չունի զոհաբերություն (մատաղ) անելու (ՃՂԸ)[8]։ Եթե վաճառողը սուտ երդմամբ կգովի իր ապրանքը իրացնելու նպատակով՝ նա արժանի է նզովքի (ՄՃ)[9]։ ՄԺԲ կանոնում խոսվում է ծնունդի ժամանակ ծանր վիրահատության և անհրաժեշտության դեպքում մեղավորներին պատժելու մասին[10]։*

*Ամուսնության և պսակի մասին այս կանոնախմբում էլ կան բազմաթիվ կանոններ, սակայն որոշ առումով հետաքրքիր է ՃԽԹ կանոնը, ուր կարդում ենք, որ եթե ազնիվ դիտավորությամբ զույգը ամուսնանում է, իսկ սրանց ծնողները համաձայն չեն, ապա գործը պետք է գլուխ բերել. «զի լաւ է ի ծնաւղաց անարգիլ քան ուրանալ յԱստուծոյ»[11]։ Այս հոդվածը, ըստ էության, Սահակ Պարթևի կանոնախմբի Իէ հոդվածի և Պողոս առաքյալի առ Եփեսացիս թղթի (Ե, 31) ոգու վերաշարադրումն է։*

*Վերևում շարադրված կանոնների նման կան այլ բնույթի ուրիշ կանոններ ևս, օրինակ, ՁՁ, ՃԺԵ, ՃԻԷ, ՃԻԹ, ՃԼՁ, ՃՂԳ, ՃՂԴ, ՃՂԵ, ՃՂՁ և այլն։ Իսկ մի շարք կանոններ, որոնց աղբյուրագիտական հիմքերը չկարողացանք որոշել, թերևս հեղինակը վերցրած լինի սովորույթի իրավունքից։*

*Ինչպես տեսնում ենք, նշված և չնշված նման կանոնները դուրս են գալիս դավանանքի և պաշտամունքի ծիսական հարցերի նեղ շրջանակներից։ Եվ որպես այդպիսին, սույն կանոնախումբն իր ընդգրկումներով և ծավալով կարծես մի առձեռն կանոնագիրք է մայր Կանոնագրքում։ Եվ այդ է պատճառը, որ Մխիթար Գոշը իր Դատաստանագրքի երկրորդ մասում այս կանոնախմբից օգտվել է (Գոշ ՂԳ՝ Իէ, ՂԴ՝ ՁԸ, ՂԵ՝ ՃԵ, Ճ՝ ՄԱ, ՃԱ՝ ՄԲ) ավելի հաճախ, քան որևէ այլ կանոնախմբից։*

Գրիգոր Աստվածաբանին վերագրված կանոնախումբը *Կանոնագրքի համակարգում դրված է 37 (Լէ)-րդ տեղում։ Այս կանոնախմբի վավերականությունը պարզ չէ. օրինակ՝ Տաշյանը այն համարում է կեղծ[12], թեև փաստեր չի*

[1] *Նույն տեղում, էջ 130։*
[2] *Նույն տեղում, էջ 143։*
[3] *Նույն տեղում, էջ 151։*
[4] *Նույն տեղում, էջ 119։*
[5] *Նույն տեղում, էջ 122։*
[6] *Նույն տեղում, էջ 122—123։*
[7] *Նույն տեղում, էջ 151—152։*
[8] *Նույն տեղում, էջ 154։*
[9] *Նույն տեղում, էջ 155։*
[10] *Նույն տեղում, էջ 158։*
[11] *Նույն տեղում, էջ 137։*
[12] *Վարդապետութիւն առաքելոց, էջ 72, 149։*

*բերում։ Ճիշտ է, Աստվածաբանի գրվածքներում չենք հանդիպում նման կանոնական գրությունների, բայց որոշ փաստեր,—իսկ թե դրանք որքանով են հավաստի՝ առայժմ չենք կարող պնդել,—մեզ խորհրդածությունների առիթ են տալիս. օրինակ՝ կանոնախմբի նախաբանում, Ա և Բ կանոններում, երբ խոսվում է հերձվածների մասին, հիշվում են Արիոսը, Մակեդոնը, և սրանց առնչությամբ Նիկիայի և Կ. Պոլսի տիեզերական ժողովների որոշումները, սակայն խոսք չկա Նեստորի և Եփեսոսի տիեզերական ժողովի որոշումների մասին։ Մի այլ օրինակ. ԺԷ կանոնում, երբ խոսվում է Աթանաս Աղեքսանդրացու աքսորման մասին, հեղինակը գրում է, որ վերջինս* «**ազդ արարեալ առ մեզ** *ի ձեռն գրոյ...*»[1]*։ (Ընդգծումը մերն է—Վ. Հ.)։ Այս փաստերը տպավորություն են ստեղծում, որ սույն կանոնախումբը հանդես է եկել IV դարում՝ մինչև 431 թ. Եփեսոսի ժողովը։*

*Այս առումով պակաս հետաքրքիր չէ նաև հնագույն բառերի գոյության փաստը այստեղ. օրինակ՝* **գտակ** *(սկզբնապատճառ, հնարող),* **արտագրել** *(մերժել, արտաքսել, տարագրել),* **լրակցութիւն** *(բովանդակություն, միաբան),* **համապատիւ** *(պատվակից),* **ծանրաբեռ**, **արտադրել** *(բացատրել, ճարել, վճռել, մեկնել)* **գտանիլ** *(լինել),* **բարեձեւութիւն**, **ակատան** *(ապահով վիճակ, ամրություն),* **պատուճասակոծ** *և այլն, որոնք գտնում ենք V դարի հեղինակների գրվածքներում կամ այդ ժամանակ կատարված թարգմանություններում. օրինակ՝ Եզնիկ, Եղիշե, Ագաթանգեղոս, Մովսես Խորենացի, Հովհ. Մանդակունի, Պլատոն, Բարսեղ Կեսարացի, Գրիգոր Նյուսացի, Փիլոն, Եվսեբիոս և այլն։*

*Իհարկե, այս փաստերը բավարար չենք համարում խնդրի վերջնական լուծման համար, մանավանդ եթե նկատի ունենանք ԻԳ կանոնը, ուր արգելվում է եպիսկոպոսների ամուսնությունը, որը ուշ ժամանակի արտահայտություն է, գոնե մեր իրականության մեջ։ Համենայն դեպս, եթե ճիշտ է Տաշյանի կարծիքը, մնում է ենթադրել, որ կեղծողը այդ բանը կատարել է բավական նուրբ կերպով, կամ էլ Գրիգոր Աստվածաբանի առանձին գրվածքներից նա քաղվածաբար այնպես է օգտվել, որ առաջին դեմքով գրելու ձևը պահվել է։*

**Դվինի 645 թ. ժողովի կանոնախումբը** *Կանոնագրքում գրավում է համակարգի 38 (ԼԸ)-րդ տեղը։ Այս ժողովի որոշումները պահպանվել են միայն Կանոնագրքում։*

*Ուսումնասիրողները գրեթե բոլորն էլ ընդունում են, որ Ներսես Գ Շինողի օրոք տեղի է ունեցել երկու ժողով՝ 645 թ., ուր սահմանվել են այս կանոնները և 648 թ. (Լեոն ընդունում է 650 թ.)*[2]*, ուր մերժվեց բյուզանդական կայսր Կոստանդինոս Գ-ի պահանջը՝ հայ-բյուզանդական եկեղեցական միություն կազմելու մասին։*

*Ն. Մելիք-Թանգյանի կարծիքով Ներսես Գ Շինողի ժամանակ Դվինում հրավիրվել է մեկ ժողով՝ 648 թ. և այստեղ էլ սահմանվել են վերևում նշված կանոնները*[3]*։ Մեր նպատակը չէ որոշել ժողովի ստույգ տարեթիվը, առայժմ այդ խնդիրը խիստ դժվար է՝ բավարար փաստեր չլինելու պատճառով։ Այս կանոնախմբի վերնագրից երևում է, որ մեզ հետաքրքրող ժողովը տեղի է ունեցել Կոստանդինոս Գ կայսեր չորրորդ տարում, այսինքն 645 թ.։ Այս տեղեկությունը հաստատող վկայություններ չունենք այլուստ։ Անկախ ժողովի*

[1] *Տե՛ս սույն հատորը, էջ 194։*

[2] *Հայոց պատմություն, հատ Բ., Երևան, 1947, էջ 324, 326։*

[3] *Հայոց եկեղեցական իրավունքը, Ա գիրք, էջ 390։*

տարբեթվից, տեսնենք, թե այս կանոնախմբի մասին հայ մատենագրության մեջ ինչպիսի հիշատակության ենք հանդիպում։

Սույն կանոնախմբի սահմանման մասին ժամանակակից և ժամանակով մոտ պատմիչները ոչինչ չեն հաղորդում։ Ճիշտ է, Սեբեոսը[1], Հովհաննես Դրասխանակերտցին[2] և Ասողիկը[3] պատմում են Դվինի մի ժողովի մասին, որը տեղի է ունեցել Կոստանդինոս Գ կայսեր Հայաստան գալուց չորս տարի առաջ (ըստ Սեբեոսի), կամ երկու տարի առաջ (ըստ Հովհ. Դրասխանակերտցու, Վարդանի[4]), հավանաբար 648 թվին, բայց ժողովում սահմանե՞լ են առաջարկվող կանոնները, այդ մասին ոչինչ չեն ասում. միայն նշում են, որ ժողովում մերժվել է հայ-բյուզանդական եկեղեցական միություն կազմելու կայսերական առաջարկը։ Վերջինիս մասին, նույնիսկ չի հիշում Սամուել Անեցին[5]։ Կիրակոս Գանձակեցին բոլորովին այլ բան է հաղորդում. Ներսես Գ Շինողը Բագավանում հրավիրել է մի աշխարհաժողով շարականների երգեցողության մեջ միօրինակություն մտցնելու նպատակով[6]։

Բարեբախտաբար մեզ հասել են Հայաստանում տեղի ունեցած ժողովների մի քանի ցուցակներ։ Այդ ցուցակներից հնագույնը Հովհ. Օձնեցու կազմածն է, բայց այստեղ, դժբախտաբար, ոչինչ չի արձանագրվել սույն կանոնախումբը սահմանող ժողովի մասին[7]։ Ճիշտ է, Հովհ. Օձնեցին նշում է. «Ի սկզբան թուականութեանս Հայոց, վեցերորդ ժողով արար տէր Ներսէս ի Դուին...։ Զայս ժողով արար տէր Ներսէս, հակառակ ժողովոյն Քաղկեդովնի»[8] կամ «Նախ քան զմեզ հաստատեալ էին ի սուրբ հաւատ միութեան անպականաբար, ի ձեռն տեառն Ներսէսի որ ի Դուին հաւաքեալք ընդ ձեռամբ նորա»[9]։ Սակայն այս վկայությունները վերաբերում են Ներսես Բ Բագրևանդացու հրավիրած ժողովին[10]։

Մխիթար Գոշի մի նամակում, որը պահվել է մեր Մատենադարանի №№ 2966 (էջ 63բ—80ա), 3062 (էջ 165ա—176բ) ձեռագրերում, բերվում է նման մի ցուցակ։ Այստեղ ևս խոսքը գնում է վերևում նշված Ներսես Բ Բագրևանդացու հրավիրած ժողովի մասին։ Սակայն զարմանալին այն է, որ Մխիթար Գոշը Դատաստանագիրքը կազմելիս օգտվել է այս կանոնախմբի Է—ԺԲ կանոններից[11] առանց իր աղբյուրը հիշելու, ինչպես վարվում է այլ դեպքերում, մինչդեռ Հայաստանում կայացած ժողովների իր կազմած ցուցակում չի նշում այս ժողովը։ Գուցե դա բացատրվում է նրանով, որ Գոշի նամակում բերված այդ ցուցակը վերցված և համառոտված է Հովհ. Օձնեցու վերևում նշված «Սակս ժողովոց որ եղեն ի Հայք» ցուցակից։

Ստեփանոս Օրբելյանի Պատմության ԿԹ՝ «Թուղթ վասն հաւատոյ եւ

[1] Սեբեոսի եպիսկոպոսի պատմութիւն, Երևան, 1939, էջ 145։

[2] Հովհ. Դրասխանակերտցի, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 87։

[3] Ասողիկ, Պատմութիւն տիեզերական, էջ 91։

[4] Վարդան Բարձրբերդցի, Պատմութիւն տիեզերական, Մոսկվա, 1861, էջ 95։

[5] Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, հրատ. Ա. Տեր-Միքելյան, Վաղարշապատ, 1893, էջ 80—83։

[6] էջ 61—62։

[7] Գիրք թղթոց, էջ 220—223։

[8] Նույն տեղում, էջ 221։

[9] Նույն տեղում, էջ 223։

[10] Նույն տեղում, էջ 72—75։

[11] Դատաստանագիրք Հայոց, մասն Ա, ԾԴ—ԾԷ, մասն Բ, ԾԳ—ԾԴ։

*կարգաց եկեղեցւոյ յարեւելեան աշխարհէս առ կաթողիկոսն Հայոց տէր Գրիգոր...» գլխի[1] մի քանի էջերում (էջ 453—455) բերվում է նման մի ցուցակ, բայց մեզ հետաքրքրող ժողովի մասին դարձյալ ոչ մի խոսք։ Այսպես է դրությունը Մատենադարանի № 2335 ձեռագրի (1421 թ. ընդօրինակություն) 33բ—36բ էջերում պահվող արտաքին և հայոց ժողովների մի այլ ցուցակում։*

*Թե ինչով կարելի է բացատրել այդ լռությունը, դժվար է հաստատ բան ասել. թերևս ենթադրաբար ասվի, որ եթե բացառենք Շահապիվանի ժողովը, ապա Հովհ. Օձնեցու, Մխիթար Գոշի, Ստեփանոս Օրբելյանի մոտ նշված են այն ժողովները, որոնք արծարծել են արտաքին վտանգի հետ կապվող դավանաբանական հարցեր՝ հայ եկեղեցին պատնեշելու համար օտար եկեղեցիների ազդեցությունից և միությունից, դրանով իսկ պահպանելու հայ եկեղեցու անկախությունը և ապա հայ ժողովրդի ազգային դեմքը։ Իսկ այն ժողովները, որոնք նվիրված են եղել քրիստոնյա հայ համայնքի ներքին կյանքում կարգ ու կանոն հաստատելուն, առօրյա ապրելակերպի ավանդական կարգերի պահպանմանը և կամ ծիսական հարցերին, չեն մտել պատմիչների երկերում և նշված ցուցակներում։ Այս բանը, կարծեք, երևում է Մխիթար Գոշի վերևում բերված նամակից։ Ժողովները թվարկելուց հետո նա ավելացնում է. «Գլխաւոր ժողովք ի Հայք այդոքիկ են, զի զաղանդն մերժեցին զչար եւ ոչ ընկալան»[2]։ Ուրեմն, նրա և մյուսների նպատակը ոչ թե Հայաստանում տեղի ունեցած բոլոր ժողովների ցուցակ կազմելն է, այլ գլխավոր ժողովների, իսկ գլխավորը, նրանց պատկերացմամբ, այն է, որ նշեցինք վերևում։ Թերևս սրանով բացատրվի, թե ինչու Հովհ. Օձնեցին ժողովների իր կազմած ցուցակում անտեսել է ոչ միայն Ներսես Բ Բագրևանդացու[3] և Ներսես Գ Շինողի (առաջարկվող բնագիրը), այլև 719 թ. իր հրավիրած Դվինի[4] ժողովների մասին նշել, մինչդեռ 726 թ. Մանազկերտի իր հրավիրած ժողովը մտել է նշված ցուցակում[5]։*

*Նման մոտեցումը արտացոլումն է հայ միջնադարյան պատմագրության մեջ իշխող այն մտայնության, թե պետք է նշել կամ արձանագրել անսովոր, քաղաքական նշանակություն ունեցող և մարդկանց առօրյա ապրելակերպը բեկբեկող արտաքին և ներքին իրադարձությունների և ոչ թե հասարակության համապազօրյա կրկնվող «անփոփոխ» վիճակի մասին։*

*Այս մոտեցումը, կարծես, խախտել է Գրիգոր Տաթևացին իր «Գիրք հարցմանց»[6] աշխատության իններորդ հատորի Ը պրակում. այն վերնագրելով «Առանձին ժողովք Հայոց»[7], ուր խոսում է յոթ ժողովների մասին՝ Շահապիվան, Կարին, Դվին, Մանազկերտ, Պարտավ, Վաչագան և Սիմոն։ Ի տարբերություն վերևում նշված ցուցակների, Գրիգոր Տաթևացին այստեղ խոսում է մեզ հետաքրքրող՝ Դվինի ժողովի մասին։ Բերում ենք այդ հատվածը լրիվ. «Երրորդ ժողովն է Դվնայ, ի չորրորդ ամի թագաւորութեանն Կոստանդեայ Հռոմոց, հրամանաւ մեծի կաթողիկոսին Հայոց Ներսէսի Շինողի եւ այլ է եւ Ժ եպիսկոպոսաց եւ վարդապետաց բազմաց եւ իշխանաց։ Եւ նորոգեցին*

---

1 *Թիֆլիս, 1910, էջ 449—460։*

2 *№№ 2966, էջ 67բ, 3062, էջ 167բ։*

3 *Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 475—490։*

4 *Նույն տեղում, էջ 514—535։*

5 *Գիրք թղթոց, էջ 223։*

6 *Կ. Պոլիս, 1729։*

7 *Նույն տեղում, էջ 544—545։*

զթուլութիւն եւ զերկպառակութիւն ինչ եկեղեցւոյ եւ հաստատեցին գիրս կանոնականս Բժ-ան գլխոց»[1]։ Եվ կարելի է ասել, Դվինի այս ժողովի մասին, թեև անագան, բայց մատենագրական միակ վկայությունն է սա։ Մեզ թվում է, որ Գրիգոր Տաթևացին այս տեղեկությունը վերցրել է ոչ թե հնագույն պատմիչների երկերի վկայություններից, այլ Կանոնագրքից։

Թե ինչո՞ւ Հովհ. Օձնեցին այս կանոնախումբը չի մուծել իր կազմած Կանոնագրքում, թերևս բացատրվի վերևում նշված հանգամանքով, իսկ եթե մեր նշումը ճիշտ չէ, գուցե ենթադրվի, որ Հովհ. Օձնեցին տեղեկություն չուներ այդ ժողովի մասին կամ ավելի ճիշտ՝ այդ ժողովի որոշումների բնագրի մասին։

Ժողովի մասնակիցների մասին կարելի է ասել հետևյալը։ Մ. Օրմանյանը կարծում է, թե ժողովի մասնակիցները եղել են 16 անձնավորություն, իսկ 17-րդը՝ Հակոբոս Պալունյանց եպիսկոպոսը Ջամչյանի ավելացրածն է[2]։ Այս դիտողությունը ճիշտ չէ։ Նշված անվան հանդիպում ենք Կանոնագրքի գրեթե բոլոր ձեռագրերում։

Կանոնների տակ ստորագրված 17 մասնակիցներից երկուսի անուններին հանդիպում ենք այլ աղբյուրներում, օրինակ՝ Ստեփանոս Օրբելյանը հիշում է Հովհաննես Մարդպետական եպիսկոպոսին, որը Եզր կաթողիկոսի, Մաթուսաղա Սյունյաց եպիսկոպոսի և այլ եպիսկոպոսների հետ ստորագրել է Հերակլ կայսեր ուղարկված հավատո գրի տակ[3]։ Գրիգոր Անձևացյաց եպիսկոպոսի անունը մի քանի անգամ հիշվում է «Գիրք թղթոց»-ում[4] և Ուխտանեսի Պատմության մեջ[5]։

Մ. Օրմանյանը Վանանդի Իսրայել եպիսկոպոսին[6], իսկ Հ. Աճառյանը՝ Տայոց Իսրայել եպիսկոպոսին[7] ենթադրաբար նույնացնում են Իսրայել Ա Ոթմսեցի ապագա կաթողիկոսի հետ։ Այս երկու ենթադրություններից մեկն ու մեկը կարող է ճիշտ լինել, բայց ոչ մեկն էլ փաստերի վրա չի հենվում։

Այնուհետև ցանկանում ենք կանգ առնել մի այլ հարցի վրա ևս։ Մխիթար Գոշը իր Դատաստանագրքում օգտագործել է առաջարկվող կանոնախմբի վերջին վեց՝ Է—ԺԲ կանոնները։ ԺԱ կանոնի սկզբի հիմնական մասը նա օգտագործել է Դատաստանագրքի Բ մասի ԾԳ հոդվածում, մեզ հետաքրքրող մասը բերելով գրեթե նույնությամբ։ Այս և Գոշի նշված հոդվածների էական տարբերությունն այն է, որ Կանոնագրքի «կռուով և պատուհասիւ» բառերի փոխարեն Դատաստանագրքում կարդում ենք «և կոռով և պահակութեամբ»[8]։ Գոշի Դատաստանագրքի հրատարակիչ Վ. Բաստամյանցը այս մասին տրված ծանոթագրության մեջ գրում է հետևյալը. «Միայն մեր օրինակի մեջ (հին №-ը՝ 492, նոր №-ը՝ 488 —Վ. Հ.) և № 489 Կարապ. մեջ (այժմյան №-ը՝ 209 —Վ.Հ.) **կոռով**, իսկ մյուս օրինակների մեջ և կանոնի մեջ՝ **կռուով**»[9]։

---

1 Նույն տեղում, էջ 544—545։

2 Ազգապատում, Բեյրութ, 1959, էջ 712։

3 Պատմութիւն..., էջ 119։

4 էջ 146, 149, 151։

5 Հատոր Բ, Վաղարշապատ, 1871, էջ 55, 57, 64։

6 Ազգապատում, էջ 713։

7 Հայոց անձնանունների բառարան, հատ. Բ, էջ 393։

8 Մխիթարայ Գօշի դատաստանագիրք Հայոց, էջ 412։

9 Նույն տեղում, էջ 412, ծանոթ. 921։

Սակայն Գոշի Դատաստանագրքի մեր Մատենադարանում և այլուր պահվող 29 ձեռագրերում այդ հատվածի ստուգումները ցույց տվեցին, որ քանի ձեռագրերում պահվել է «և կոռով և պահակութեամբ»[1], մեկում՝ «և կոռով և սուղրայով»[2], երկուսում՝ «և կոռովութեամբ և պահակութեամբ»[3], երկուսում՝ «և կոռով և պահսուղրայովակութեամբ»[4], երկուսում՝ «և կռով և պահակութեամբ»[5], վերջին երկուսում՝ «և կռուով և պահակութեամբ»[6] ընթերցումները։

Ակադ. Հ. Մանանդյանը ուշադրություն դարձնելով «և կռուով և պատուհասիւ» հատվածի փոխարեն «և կոռով և պահակութեամբ» փոփոխության վրա, գրում է․ «Կոռ»-ը, իմ կարծիքով, հիշատակված է եղել նաև Դվնի 645 թվի ժողովի ԺԱ կանոնում։ Այս վկայությունը, որ ամենահինն է ու կարևորը, անհայտ է մնացել մինչև այժմ, որովհետև «կոռ»-ի վերաբերյալ հատվածը կանոնում աղճատվել և փոփոխման է ենթարկվել ագետ գրիչների կողմից»։ Ապա դեմ առ դեմ դնելով Կանոնագրքից և Դատաստանագրքից վերցրած համապատասխան հատվածները շարունակում է. «Այս համեմատությունից պարզ երևում է, որ Դվնի կանոնում բնագիրն աղճատված է և «կռուով և պատուհա-

[1] Տե՛ս մեր Մատենադարանի ձեռագրերը №№ 2750, էջ 129ա, 2776, էջ 136ա, 2775, էջ 183ա, 3291, էջ 95ա, 2593, էջ 138ա, 6890, էջ 100բ, 6398, էջ 89բ, 3562, էջ 131բ, 7580, էջ 6բ, 8938, էջ 392բ, 2383, էջ 61ա, 8245, էջ 52բ, 2635, էջ 202ա, 209, էջ 137ա, 488, էջ 70ա, 485, էջ 125ա, 486, էջ 76ա, (վերջին չորս ձեռագրերը Վ. Բաստամյանցի օգտագործածներն են) Ջմմառայի, Լենինգրադի Սալտիկով-Շչեդրինի անվան գրադարանի ձեռագրերը (Երևանի Մատենադարանի միկրոֆիլմերի ֆոնդ, համապատասխանաբար №№ 365, էջ 200ա, 133. վերջին ձեռագրի էջերը համարակալված չեն, հոդված ՃԺԶ), Վենետիկի ձեռագիր, էջ 465 (այս և XIX դարում սրանից ընդօրինակված Թբիլիսիի ձեռագրերի ընթերցումները շնորհակալությամբ վերցրինք Խ. Թորոսյանից)։

[2] № 6496, էջ 332բ,։ «Սուղրայով» ընթերցումն այս և մի քանի այլ ձեռագրերում անցել է ամենայն հավանականությամբ № 488 ձեռագրից, տե՛ս ծանոթ. 4։ «Սուղրան» որպես կոռ գործածում է Զաքարիա Սարկավագը, նա գրում է. Ամիրգունա խանը «բազմացոյց զսուխրայն՝ այսինքն կոռն» (Պատմագրութիւն, հատ. Ա, Վաղարշապատ, 1870, էջ 46. հմմտ. Առ. Դավրիժեցի, էջ 84)։

[3] №№ 10311, էջ 334բ—335ա, 3788, էջ 287։

[4] №№ 8926, էջ 295բ (այստեղ «պահսուղրայով» ձևով), 2655, էջ 250ա։ № 488 ձեռագրում (1295 թ. գրչություն) «պահակութեամբ» բառը լուսանցքում բացատրված է «սուղրա»։ Հետագայում այս բառը մուծվել է «պահակութեամբ» բառի մեջ այս ձևով՝ «պահսուղրայովակութեամբ»։ № 8926 ձեռագրում վերևում բերված հատվածն ուղղված է «և կոռով և պահակութեամբ»։

[5] №№ 795, էջ 292ա, 3059, էջ 81բ։ № 795-ում (1618 թ. գրչություն) «պահակութեամբ» բառին որպես բացատրություն լուսանցքում դարձյալ դրված է «սուղրայով», իսկ № 3059-ում «կռով» բառն ուղղված է «կոռով»։

[6] № 3497, էջ 128ա («պահակութեամբ» բառն այստեղ «պահսուղրայովագութեամբ» ձևով), Վրաստանի ՍՍՀ Գիտությունների ակադեմիայի Թբիլիսիի ձեռագրերի ինստիտուտի Arm. 14 ձեռագիր (մեր Մատենադարանի միկրոֆիլմերի ֆոնդ, № 50), էջ 116բ։ Այս ձեռագիրն ընդօրինակված է վերևում նշված (ծանոթ. 1) Վենետիկի Մխիթարյանների № 1237 ձեռագրից (XII դարի գրչություն), որը, սակայն, «կռուով»-ի փոխարեն ունի «կոռով»։ Այս երկու ձեռագրերում թեև պահվել է «կռուով» ձևը, սակայն Վ. Բաստամյանցը դրանք չի օգտագործել։ Ուստի մեզ համար անհասկանալի է մնում Վ. Բաստամյանցի վերևի նշումը, թե իր օգտագործած «միայն» երկու ձեռագրերը ունեն «կոռով, իսկ մյուս օրինակների մեջ և կանոնագրքի մեջ՝ կռուով»։ Կանոնագրքում, իսկապես, այդպես է, սակայն Դատաստանագրքի վերևում նշված ձեռագրերի, դրանց թվում և Բաստամյանցի օգտագործածների, տվյալները նման բան չեն հաստատում։ Վ. Բաստամյանցի օգտագործած № 657 (հին №-ը՝ 749) ձեռագրում այս հոդվածը չի պահվել, Դատաստանագիրքը թերի լինելու պատճառով։ Ձեռագրում հոդվածների ցանկը հասնում է ՄՃԱ համարին (էջ 22բ—28ա), Դատաստանագիրքը ավարտվում է ՃԼԶ հոդվածով (էջ 28բ—87բ)։

սիւ» խոսքերը, որ անտեղի են ու անհարմար, ծագել են «կռով և պահակութեամբ» ուղիղ ընթերցվածի աղավաղումից։ Մխիթար Գոշը, անկասկած, ունեցել է ձեռքի տակ Դվնի կանոնի բնագիրն առանց այդ աղճատման։ Կարծում եմ, որ այս սրբագրության դեմ ոչ մի առարկություն չէ կարող լինել, որովհետև աղճատումն ակներև է ու անվիճելի»[1]։

Վերևում ցույց տվեցինք, որ Դատաստանագրքի մեր ձեռքի տակ եղած ձեռագրերը բոլորն էլ ունեն նշված փոփոխությունը։ Հետևապես Գոշի մոտ սկզբնապես եղել է «և կռով և պահակութեամբ» ձևը։ Բայց արդյոք այս կանոնում սկզբնապես եղել է նույն այդ ձևը, որը հետագայում «փոփոխման է ենթարկվել տգետ գրիչների կողմից», ինչպես կարծում է ակադ. Հ. Մանանդյանը։ Նախ՝ Կանոնագրքի մեր օգտագործած բոլոր ձեռագրերը տալիս են «կռուով և պատուհասիւ» ընթերցումը, երկրորդ՝ կանոնի էությունից ելնելով, թվում է, թե VII դարի համար ճիշտ է «կռուով և պատուհասիւ» ձևը, քան թե Դատաստանագրքում պահվածը՝ «և կռով և պահակութեամբ»։ Եվ ահա, թե ինչու։ Կանոնը սկսվում է այսպես. «Ոմանք յազատաց ի վերայ տկարանոցաց իշխանութիւն առնեն...»։ Սա նշանակում է, որ ոչ բոլոր ազատները, այլ նրանցից մի մասը բռնություն է բանեցնում հիվանդանոցներում և աղքատանոցներում պատսպարվածների նկատմամբ։ Ի դեպ, այդպես են սկսվում նաև նույն կանոնախմբի Ժ և ԺԲ կանոնները։ Այս կանոնում խոսքը գնում է այն մասին, որ «Ազատներից ոմանք հիվանդանոցներում և աղքատանոցներում պատսպարվածների վրա բռնություն են գործադրում, որպես ունեցողների հարկեր պահանջում և (նույնիսկ) իրենց (ընչազուրկները) կերակուրները և ըմպելիները հանձնում են (ազատների) գործակալներին. (վերջիններս) կռվով և պատուհասով նեղում են ողորմելի հավատակիցներին (եղբայրներին), չարչարում անխղճաբար, մինչդեռ անհրաժեշտ էր հոգալ նրանց պետքերը...» և այլն։ Ի դեպ, Վ. Բաստամյանցը ավելի վաղ ևս գտնում էր, որ «կռուով և պատուհասիւ նոյնպէս հարմար է»[2]։

Գոշը վերցնելով այս կանոնը, նախքան Դատաստանագրքում մուծելը, նրա վրա կատարել է խմբագրական աշխատանք։ Այդ աշխատանքի ժամանակ այլ բառերի կրճատման և փոփոխման հետ փոխել է «կռուով և պատուհասիւ» սկզբնական ձևը «և կռով և պահակութեամբ»։ Այս փոփոխությունը, լավ է ասել խմբագրությունը, անհրաժեշտ էր, եթե նկատի ունենք Գոշի ժամանակ, շուրջ հինգ դար տևող Հայաստանի և մանավանդ Հյուսիսային Հայաստանի տնտեսական և ագրարային հարաբերությունների զարգացման ընթացքը։

Երուսաղեմի հայրապետ Մակար Ա-ի կանոնախումբը Կանոնագրքի համակարգում դրված է 39 (ԼԹ)-րդ համարի տակ։ Այս բնագիրն իր բնույթով նամակ է. այն պահվել Կանոնագրքում և «Գիրք թղթոց»-ում[3]։ Հայագիտության մեջ, եթե բացառենք մի քանի հետազոտողների ընդհանուր բնույթի կասկածանքը, սույն կանոնախումբը համարում էին Երուսաղեմի հայրապետ Մակար Ա-ի հեղինակություն, այսինքն IV դարի։ Ընդհանուր այս ըմբռնման

[1] Հայաստանի արքունի հարկերը մարզպանության շրջանում, Երևան 1926, էջ 39։ Նույն միտքը տե՛ս նաև հեղինակի «Ֆեոդալիզմը հին Հայաստանում», Երևան, 1934, էջ 208—209, Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության, հատ. Բ, մասն Ա, Երևան, 1957, էջ 382—383։

[2] Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց, էջ 412, ծանոթ. 921։

[3] էջ 407—412։

*դեմ, բավականին կրքոտ, հանդես եկավ Ակինյանը։ Նա, առաջին անգամ, 1908 թվին «Հանդէս Ամսօրեայ»-ում՝ «Կիւրիոն կաթողիկոս Վրաց» աշխատության մեջ*[1] *կարծիք հայտնեց, որ «Գրված է թուղթս Զ դարու Բ կիսուն Երուսաղեմի Մակար Բ հայրապետն (565—572) առ Վրթանես եպ. Սյունյաց (558—580)»։ Միաժամանակ հեղինակը այս վարկածի մանրամասն քննությունը վերապահում էր «ուրիշ առիթի»։ Եվ ահա նա, կատարելով իր խոստումը, Մակար եպիսկոպոսապետի թղթի գրության ժամանակի մասին տվեց մանրամասն ուսումնասիրություն, որը նախապես լույս տեսավ 1930 թ. «Հանդէս Ամսօրեայ»-ում*[2] *և ապա առանձին գրքով, «Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի առ Վրթանէս եպիսկոպոսապետ Սիւնեաց յաղագս կարգաց եկեղեցւոյ» խորագրով*[3]*։*

*Իր աշխատության 13—21 էջերում թվարկելով այն հեղինակներին, որոնք գտնում են, թե այս թուղթը գրված է IV դարում, հեղինակը դրան հակադրում է մի քանի հայագետների՝ Գաթրճյանի, Գելցերի, Վեբերի, Տաշյանի, Անգելո Մայիի և Ալիշանի կասկածանքը և ավելացնում. «Այս դարերու համոզման դեմ ունինք նաև* Ե—ԺԱ դարերու լռությունը: Ոչ միայն Ե—Է դարերու հայ մատենագիր-պատմագիրներու անծանոթ է թուղթս հանվանե, *այլև ոչ Ը—Ժ դարու մատենագիրք կճանչնան անոր գոյությունը»*[4] *(ընդգծումը մերն է—*Վ. Հ.): *Եվ ապա թվարկում Մովսես Խորենացու (հեղինակի կարծիքով IX դարի մատենագիր), Հովհաննես Դրասխանակերտցու, Ասողիկի, Ցուրտավի եպիսկոպոս Մովսեսի անունները։ Մի պահ ենթադրենք, թե այս թուղթը ոչ թե IV, այլ VI դարի գրություն է, դրանով «Ե—ԺԱ դարերու լռությունը» կխախտվի՞. իհարկե ոչ։ Այս դեպքում էլ լռությունը կմնա լռություն։ Հետևապես այդ լռությունը չի կարող փաստարկ լինել հեղինակի ձեռքում։*

*Մակարի կանոնախմբի Ա հոդվածում խոսվում է այն մասին, թե սարկավագները իրավունք չունեն մկրտություն կատարելու, որովհետև դա եպիսկոպոսների և քահանաների իրավունքն է։ Իսկ եթե սարկավագները կատարել են նման քայլ, ապա Մակարը պահանջում է հետաքննել, որովհետև առանձին գավառներում դա սովորություն էր. և եթե այն կատարել են հետևելով տեղի սովորությանը, «անմեղութեամբ է վասն անգիտութեան կարգաց եկեղեցւոյ... իսկ եթէ գիտէր զկարգս եկեղեցւոյ եւ անց զնոքաւք»՝ պատժել։ Վերապատմելով նշված հոդվածի բովանդակությունը Ակինյանը վկայակոչում է 306 թվականի Ելվիրայի ժողովի 77-րդ կանոնը, ուր թույլատրվում է սարկավագին մկրտել, պայմանով, որ հետո եպիսկոպոսը սարկավագի մկրտածը դրոշմով լրացնե*[5]*։ Այստեղից Ակինյանը եզրակացնում է. «Ուստի Դ դարուն տակավին «խափանեալ» չէ սարկավագի իրավունքը մկրտելու, և ոչ ալ կնկատվի ապօրինի»*[6]*։ Այդպես էր դարի սկզբում, սակայն Ելվիրայի ժողովից շուրջ քսան տարի հետո՝ 325 թվականին Նիկիայի ժողովի XVIII կանոնը (հունարեն բնագիր) արգելում է սարկավագներին հաղորդություն մատուցել*[7]*։ Միևնույն կանոնի հայկական*

[1] *էջ 171. նույնը տե՛ս առանձին, Վիեննա, 1910, էջ 98, ծանոթ. 2։*

[2] *էջ 509—578։*

[3] *Վիեննա, 1930։*

[4] *Նույն տեղում, էջ 22—23։*

[5] K. I. Hefele, Conciliengeschichte, Erster Band, Freiburg im Breisgau, 1855, S. 159.

[6] *Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 26։*

[7] *Պիտրա, էջ 434—435։* «... τοῖς πρεσβυτέροις τὴν εὐχαριστίαν οἱ διάκονοι διδόασιν, ὅπερ οὔτε ὁ κανὼν, οὔτε ἡ συνήθεια παρέδωκεν...»

տարբերակում՝ Ժէ հոդվածում սարկավագներին արգելվում է «աւրՀնս» (հաղորդություն) տալ և «մկրտութիւնս» առնել[1]։ Այս ոգով է սահմանված Սահակ Պարթևի կանոնախմբի Ժէ հոդվածը. «Եւ սարկաւագք մկրտութիւն մի՛ իշխեսցեն առնել, ապա եթէ արասցեն՝ լուծեալ լիցին ի սարկաւագութենէն հանդերձ պատուհասիւ, զի ոչ է սարկաւագն քահանայ, այլ սպասաւոր քահանային»[2]։ Ակինյանը այս կանոնախումբն էլ, դժբախտաբար, կեղծ է համարում, ուստի և քննության ենթակա հարցերի համար նշանակությունից զուրկ։

Սահակ Պարթևի վերևում նշված կանոնում սարկավագների այդ քայլի դատապարտումը ցույց է տալիս, որ նույնիսկ V դարում նման դեպքերը բացառություն չեն կազմել և վերջիններս արգելելու համար մշակվել են կանոններ։ Եթե եկեղեցական կարգ ու կանոնի վիճակն այդպիսին էր V դարում, նշանակում է IV դարում այն դրանից տարբեր չէր։

Բացի այդ, Վ. Հացունին բերելով մի շարք փաստեր՝ Գործք առաքելոցից, Իգնատիոսից (II դար), Տերտուղիանոսից (III դար), Կիւրեղից (IV դար) և Հերոնիմոսից (IV դար), ցույց է տալիս, որ սարկավագներն այդ իրավունքն ունեին, որովհետև սկսած առաքյալների ժամանակներից գոյություն է ունեցել մկրտության երկու տեսակ՝ սովորական, որը կատարում էին եպիսկոպոսներն ու քահանաները, և անսովոր՝ բացառիկ առիթների ժամանակ՝ սարկավագները, երբ բացակա էին առաջինները[3]։

Մակարը նամակից և նամակատարներից իմանալով հայ եկեղեցու պաշտամունքի ծիսական թերությունների մասին՝ պատասխան նամակում Վրթանեսին գրում է. «Եւ զամենայն կանոնադրութիւնս սրբոյ ժողովոյն որ վասն հերձուածողացն եղեւ, զորս կարեւոր է ընդունել ամենայն բարեպաշտաց, որ եղեւ վասն դրութեան կարգաց եկեղեցւոյ»[4]։ Նամակի մի այլ մասում Մակարը ասում է. «զժողովոյն կարգեալսն»։ Մեջբերելով այս հատվածները Ակինյանը պնդում է, թե դրանցում Մակարը ակնարկել է «Սահմանադրութիւն առաքելոց» մատյանը[5]։ Ելնելով նման մտայնությունից, նա առաջարկում է այդ մատյանի «διαταγαί (կամ διατάξεις) τῶν ἁγίων ἀποστόλων» վերնագիրը սրբագրել «διατάξεις τῆς ἁγίας Συνόδου»։ Ինչո՞ւ. որպեսզի այն համարվի իր՝ Ակինյանի պնդմանը։ Մի՞թե չի կարելի «սրբոյ ժողովոյն», «զժողովոյն կարգեալսն» արտահայտությունների տակ անկախ Ակինյանի սրբագրությունից «դյուրավ» (Ակինյանի օգտագործած բառն է) հասկանալ ոչ թե Առաքելոց սահմանադրությունը, այլ Նիկիայի ժողովը, ուր բացի հերձվածողական հարցերից (Պողոս Սամոստացի, Արիոս) քննվել են և ընդունվել եկեղեցու բարեկարգության վերաբերյալ կանոններ[6]։ Միանգամայն ճիշտ է Վ. Հացունին, երբ գրում է. «Որոնք (Նիկիայի կանոնները —Վ. Հ.) թեպետ հասած էին մեր

1 Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 129։

2 Նույն տեղում, էջ 378։

3 Տե՛ս Առ Վրթանէս թղթին հեղինակը Մակար առաջին է, ոչ երկրորդը (Բազմավէպ, 1931 թ. էջ 15)։

4 Տե՛ս նույն հատորում, էջ 218։

5 Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 29—30։

6 Հմմտ. Վ. Հացունի «Թուղթ Մակարայ Երուսաղէմացւոյ առ ս. Վրթանէս, Բազմավէպ, 1929, էջ 260։ Իր մի այլ հոդվածում Վ. Հացունին այս կապակցությամբ գրում է. «Մակարա բացատրութենեն ու ժողովին անունը չտալեն կհետևի՝ որ ժողովը կամ դեռ միակն էր յուր տեսակին մեջ ու ծանոթ ամենուն, կամ տակավին շատ նոր էր և նույնպես հայտնի հասարակաց (Բազմավէպ, 1931 թ., էջ 18)։ Եվ ապա շարունակում. «Արդարև միակ, թարմ և

աշխարհը, բայց կերևի թե նորադարձ Հայաստանի կրոնական խառնակ վիճակին մեջ լավ արմատ չէին բռնած»[1]։

Ըստ երևույթին նման պայմաններում է, որ Վրթանես կաթողիկոսը հարկ է համարում դիմել Մակար Ա-ին և նրանից խնդրել իրեն հետաքրքրող հարցերի պատասխանները։ Մյուս կողմից, եթե ընդունենք Ակինյանի նշված ենթադրությունը, այն դեպքերում ի՞նչպես հասկանանք Մակարի թղթի «զի զծողովոյն կարգելսն ոչ ասեն ուրեք ուրեք քահանայքն ի ժամ մկրտութեանն»[2] (ընդգծումը մերն է —Վ. Հ.) արտահայտությունը։ Ընդգծված հատվածում խոսքը վերաբերում է Նիկիայի ժողովի Հավատամքին, որը պետք է ասվեր մկրտության ժամանակ, բայց Հայաստանում տեղ-տեղ խախտվել էր։ Հետևապես խոսքն այստեղ ոչ թե Առաքյալների սահմանադրության մասին է, այլ Նիկիայի ժողովի և նրա սահմանած Հավատամքի[3]։

Իսկ թղթի այն մասում, ուր ասվում է «աւանդեմ զկանոնադրութիւնս զայս ձեզ, ունեալ յառաքելոցն պատմութեանց» (Դ հոդված), Ակինյանը հասկանալով Առաքելական անվավեր կանոնները՝ եզրակացնում է. «Արդ այս անվավերական մատյանը հրապարակ ելած է, ինչպես քննիչները ապացուցած են, Դ դարու վերջերն և կամ Ե դարու առաջին տասնյակին Ասորիքի մեջ»[4]։ Նշանակում է, ինչպես կարծում է Ակինյանը, Մակարը կարող էր միայն դրանից հետո օգտվել։ Կարծում ենք Մակարի թղթի խոսքը ոչ թե «անվավերական մատյան»-ի կամ սրանից օգտվելու մասին է, այլ Առաքյալներին վերագրված ավանդության։ Այս առումով միանգամայն ճիշտ է հարցիս մասնագիտական և մանրախույզ քննության հեղինակ Տաշյանը, երբ գրում է. «Ոմանք, անշուշտ, գրավոր կանոն մը չեն ակնարկեր, այլ ընդհանուր ավանդություն մ' որ այն սովորությունքն առաքելոց կ'ընծայեր»[5] (ընդգծումը մերն է —Վ. Հ.)։ Ուստի պարտադիր չէ ընդունել, թե Մակարը օգտվել է IV դարի վերջին և V դարի սկզբին հանդես եկած այդ մատյանից և դրանով էլ նրա տեղը շարժել դեպի VI դար[6]։

---

խական ժողով մը, Նիկիականը, և ինք միայն կրնար ըսել «զկանոնադրութիւնս սրբոյ ժողովոյն». որուն ինքն էլ մասնակցած էր» (Նույն տեղում, էջ 19)։

[1] Նույն տեղում, էջ 261։

[2] Տե՛ս սույն հատորում, էջ 219։ Ուխտանեսը հաղորդում է, որ Հավատամքն ասվում է նաև ավետարանն ընթեռնելուց հետո (Պատմութիւն Հայոց, Բ, գլ. ԻԲ, էջ 43)։

[3] Սակայն Վ. Հացունին Նիկիայի Հավատամքի մասին ոչինչ չի նշում։ Նա հենվելով Հեֆելեի այն կարծիքի վրա, որ Նիկիայի ժողովի որոշումներից կորած նյութեր կան, որոնք Նիկիական Բ կանոնի ընդլայնումն են (Conciliengeschichte, Erster Band S. 356), կարծում է թե ժամանակի ավանդությամբ Ագաթանգեղոսը Լուսավորչի բերանը դնում է մի վարդապետություն, որը ասվելու է մկրտության ժամանակ (Բազմավէպ, 1931, էջ 19)։ Ճիշտ է Հավատամքին այդպիսի հավելում գոյություն ունի, բայց այն չի ասվում առանձին, այլ ասվում է Նիկիայի Հավատամքից անմիջապես հետո (տե՛ս Հայ եկեղեցու Մաշտոց, Էջմիածին, 1894, էջ 26—29)։

[4] Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 30—31։

[5] Վարդապետութիւն առաքելոց, էջ 149—150։

[6] Ինչո՞ւ անպայման հասկանալ «Սահմանադրութիւն առաքելոց» մատյանը, ինչպես կարծում է Ակինյանը, երբ Մակարի թղթում խոսք չկա այդ մասին։ Ընդհակառակը թղթի Դ և Է հոդվածներում խոսվում է միայն ավանդության մասին. «ունեալ յառաքելոց պատմութեանց և աւանդութեամբ» կամ «ըստ առաքելոցն աւանդութեան». տե՛ս նաև Վ. Հացունու հոդվածում (Բազմավէպ, 1931 թ., էջ 16)։ Այս կապակցությամբ թերևս ավելորդ չի լինի այստեղ բերել ամերիկաբնակ Տիրան արքեպիսկոպոս Ներսոյանի 1966 թ. փետրվարի 24-ի մեզ գրած նամակից մեկ հատված. «Ակինյան իր փաստը կը հիմնե այն բանի վրա՝ որ Կանոնք Առաքելականք Ե դարու խմբագրություն է։ Բայց այս ճիշտ չէ։ Լավագույն բանասերներ, օրինակ, անգլիացի Բևերիտգէ (Բևրիճ) կը դնե զանոնք երրորդ դարու կիսուն։ Պեարսոն (Պիյրսըն)

*Ակինյանի կարծիքով VI դարում Հայ եկեղեցում հանդես են եկել պաշտամունքի ծիսական կարգ ու կանոնի զեղծումներ*[1]*։ Իր այդ ցույց տալու համար նա վկայակոչում է VIII դարի հեղինակ Հովհ. Օձնեցուն։ «Հայ պատգամավորներու հաղորդած տեղեկությունները,—գրում է Ակինյանը,—Հայաստանի մեջ մուտ գտած* զեղծումներու *մասին կ'արդարանան Հովհ. Օձնեցվո վկայությամբ, որ իբր 720-ին այսպես կը մաքառի նույն զեղծումներու դեմ»*[2] *(ընդգծումը մերն է —Վ. Հ.) և բերում է Օձնեցու «Մատենագրութիւնք» աշխատության 5—6 էջերը*[3]*։ Նախ՝ եթե ընդունենք, որ Մակարի Թուղթը գրվել է VI դարում, նշանակում է այն գրվելուց հետո էլ հայ եկեղեցու ոլորտում նշանակություն չի ունեցել, որովհետև նշված թղթի գրությունից հետո էլ շուրջ երկու հարյուր տարի, ինչպես կարծում է Ակինյանը, այդ զեղծումները գոյատևել են հասնելով մինչև VIII դար։ Երկրորդ՝ եթե խոսքը գնում է զեղծումների մասին, ապա պետք է ընդունել, որ հայ եկեղեցում պաշտամունքի ծիսական հարցերում եղել է կարգ ու կանոն, որը ինչ-ինչ պատճառներով զեղծվել է կամ աղավաղվել և այն վերականգնելու համար կարիք չկար դիմելու մեկ ուրիշի։ Հովհ. Օձնեցին իր ժամանակի զեղծումների դեմ մաքառելիս նման քայլի չդիմեց, այլ ինքը ձեռնամուխ եղավ զեղծումների վերացմանը։ Երրորդ՝ Մակարի Թղթում խոսք անգամ չենք գտնում զեղծումների մասին. Թղթում խոսվում է այն մասին, «Թէ կողմանք Արեւելից (իմա՛ Հայաստանում —Վ. Հ.)* բերի են զգուշութեամբ յայսպիսիսս *բազում ինչ իրաւք»*[4] *(ընդգծումը մերն է— Վ. Հ.)։ Ինչպես տեսնում ենք, այստեղ խոսքը ոչ թե զեղծումների, այլ թերի՝ ոչ լրիվ լինելու մասին է։ Նշանակում է հայ եկեղեցում պաշտամունքի ծիսական կարգ ու կանոն եղել է, բայց այն լրիվ չէր, անհրաժեշտ էր դարձնել կատարյալ, որի համար էլ դիմել են հեղինակավոր մի անձնավորության՝ Մակար Ա-ին*[5]*։*

---

*անգլիացին կպնդե թե Առաքելական կանոնները խմբագրված են Նիկիոյ ժողովեն առաջ։ Հաոնակ գերմանացին խմբագրության ժամանակը կը դնե մոտավորապես 300 թվականը։ Համենայն դեպս Առաք. կանոնները հիմնված են երրորդ դարու և ավելի կանուխի կանոններու վրա, և ինչ ավելի բնական է, քան այն՝ որ Մակար անուղղակի ակնարկած լինի անոնց»։*

[1] *Քանի որ ծիսական մի շարք հարցեր՝ մկրտության, մեռոնի, մանկան զգայարանների օծման, օծման տարբեր յուղերի՝ հիվանդների, մահացածների և այլն մանրամասն քննություն կատարել է Վ. Հացունին և մերժել Ակինյանի այդ հարցերի մասին առաջ քաշած կարծիքները, դրանց չենք անդրադառնա. հետաքրքրվողներին կհանձնարարեինք կարդալ Վ. Հացունու երկրորդ հոդվածը տպված Բազմավէպում (1931 թ. հատկապես 20, 61—64 էջերը)։*

[2] *Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 32։*

[3] *Վենետիկ, 1833։*

[4] *Տե՛ս սույն հատորում, էջ 219։*

[5] *Մակար Ա-ը և ոչ Մակար Բ-ը մեծ հեղինակություն է ունեցել հայ եկեղեցում։ Մեր մատենագրության մեջ պահվել են մի շարք գրություններ վերագրված նրան, օրինակ, Մատենադարանի № 2776 ձեռագրի 249բ—258բ էջերում պահվել է մի հարց ու պատասխան. «Հարցումն երիտասարդի միոյ տխմարի եւ պատասխանի սուրբ հաւրն Մակարայ վասն ամենայն գործոց առաքինի» վերնագրով։ Մի այլ հարց ու պատասխանից, որը վերագրված է Վանական վարդապետին, իմանում ենք, որ հայերը Քրիստոսի Ծննդյան և Հայտնության տոնը միասին կամ առանձին տոնելու վերաբերյալ դիմել են Մակար Ա-ին և նրանից ստացել ցուցումներ, տե՛ս № 1480, էջ 575) և այլն։ Անկախ նրանից, թե այս տեղեկությունները ինչքանով են հավաստի, վերջիններս ցույց են տալիս Մակար Ա-ի հեղինակության փաստը հայ եկեղեցում, տե՛ս և հմմտ. Վ. Հացունու հոդվածը, Բազմավէպ, 1931 թ., էջ 70։*

*Ծիսական կարգ ու կանոնի թերությունները հայ եկեղեցում ավելի բնական էին IV դարում, երբ քրիստոնեությունը նոր էր մուտք գործել Հայաստանում, ինչպես ծիսական, այնպես էլ ուրիշ հարցեր տակավին լրիվ չէին մշակվել ու ձևակերպվել հայ եկեղեցու ընդերքում*[1]*։ Մյուս կողմից, ինչքան հարմար է VIII դարի իրավիճակով բացատրել ու հաստատել VI դարի հայ եկեղեցու պաշտամունքի ծիսական խրադրությունը։ Եթե հարցը վերաբերում է VIII դարի փաստերով VI դարի ծիսական զեղծումները արդարացնելուն, այն դեպքում Հովհ. Օձնեցին նշված աշխատության մեջ խոսում է նման այլ կարգի զեղծումների մասին, որոնք չեն արտահայտվել Մակարի թղթում։ Հովհ. Օձնեցին գրում է. «Բայց առ սոքօք եւ զայս եւս տեսանեմք յոմանս անկարգութիւն սովորութեամբ հիմնացեալ. զի ղնոսա, որք յամուսնութիւն անդր գայցեն, ոչ տանելով ըստ օրինաց հաւատացելոց յեկեղեցիս ի մէջ ժողովրդոց, հաղորդս առնելով ամենայն կարգաց եւ կրօնից քրիստոնէութեան, եւ անդ յարժանաւոր տեղիսն զնոսա պսակեսցեն։ Այլ առանց ժամու եւ աղօթից եւ առանց օրհնելոյ եւ հաղորդութեան, արտաքոյ մնան՝ ուր կամք իցեն։ Եւ քահանայն ընդ ձեռն ուրուք անդր երթողաց հրամայէ տանել զպսակն, թշնամանելով միանգամայն զպսակն եւ զպսակեալսն»*[2]*։*

*Մի այլ օրինակ. «Բայց տեսանեմք առ այսոքիւք եւ զայն եւս, եթէ ոմանք եւ վայելչագունից սովորութեանց ջանան խափանումն ի վերայ բերել. եւ զաստուածայայտութեանն եւ զծննդեան նորին զօր, զոր ի վեցն յունուարի ի միասին տօնել սովոր է աշխարհս մեր, այժմ զծննդեանն սիրեն ոմանք կատարել զտօն, իսկ յայտնութեանն խորհրդոյ՝ եւ ոչ միով իւիք կամին ճառս ի մէջ բերել, կապելով ամենեւին զինքեանս ընդ ընթերցուածոցն հրաման»*[3] *և այլն։*

*Օձնեցու ժամանակի՝ VIII դարի այս իսկական զեղծումները արդյունք էին ոչ թե պաշտամունքի ծիսական հարցերին անտեղյակության կամ թերի լինելուն, որովհետև Մակարի նամակը (VI դար, ինչպես կարծում է Ակինյանը) կար, ուրեմն պետք է այս կամ այն չափով գիտակ լինեին այդ հարցերին և վերացնեին։ Այդ զեղծումները, և ոչ թերությունները, պետք է բացատրել այլ պատճառներով, որոնք կապ չունեն հայ եկեղեցու պաշտամունքի ծիսական հարցերի աստիճանական զարգացման հետ։ Օձնեցու ժամանակ ծիսական հարցերի զեղծումները կապված էին տվյալ ժամանակի քաղաքական հանգամանքների հետ։ Մի կողմից բյուզանդական կայսրության և բյուզանդական եկեղեցու նվաճողական ու միավորման քաղաքականությունը, հայ համայնքի ներսում առաջ եկած աղանդավորական շարժումները և, վերջապես, արաբական ավերիչ արշավանքներն ու ապա ծանր հարկապահանջությունը։ Ահա թե ինչպես է ներկայացնում Ղևոնդ պատմիչը երկրի, մասնավորապես եկեղեցիների և նրանցում կատարվող ծիսական կարգ ու կանոնի վիճակը. «աշխարեալ եւ աւաղեալ զկորուստ աշխարհիս եւ զկործանումն եկեղեցեաց եւ զթափուր*

[1] *Մակար Ա-ից հետո էլ Տերենտիոս կոմեսին Բարսեղ Կեսարացու 370-ական թվերին գրած մի նամակում հետաքրքիր տեղեկություն ենք գտնում Հայաստանի, ավելի ճիշտ Փոքր Հայքի հայերի նման վիճակի մասին «Իսկ ինչ վերաբերում է այն բանին, որ Հայաստանում այսպիսի անտարբերությամբ խախտվում են օրենքները, ապա ես նրանց տվի կանոններ, թե ինչպես պետք է հոգ տանել»* (δοὺς αὐτοῖς καὶ τύπους περὶ τῶν ἀδιαφόρως κατὰ τὴν 'Αρμενίαν παρανομουμένων ὅπως αὐτοῖς προσῆκεν ἐπιμελεῖσθαι. *տե՛ս* Saint Basile Lettres, tome I (texte établi et traduit par Yves Courtonne, Paris, 1957, p. 218):

[2] *Մատենագրութիւնք, էջ 10։*

[3] *Մատենագրութիւնք, էջ 12։*

*յինելն ի նախարարական տոհմէն»*[1]. *«սուրբ եկեղեցին խրթնացեալ ի բարեզարդութենէ բեմին եւ լռեալ ձայն աստուածային փառատրութեանն, ընդ նմին լռեալ հոգեւոր և բանաւոր պատարագացն կարգք...»*[2]։ *Համանման վկայություն VII դարի համար հաղորդում է Սեբեոսը. «Արդ՝ զի թշնամիք աստուածպաշտութեանն բազում անգամ արշաւեալ կորուսին զերկիրս մեր. եւ որպէս զմարդիկ երկրիս կորուսին, եւ զկտակարանս եկեղեցւոյ եւ զվարդապետս նոյնպէս սպառեցին։ Եւ արդ՝ կտակարանս եւ վարդապետս ոչ գոն...»*[3]։

*Երկրի տնտեսությունը, զինված ուժերը քայքայվում էին։ Կոտորածների, եկեղեցիների ու վանքերի կողոպուտի, ընդհանուր ավարառության և ծանր հարկապահանջության պայմաններում կարո՞ղ էր հայ եկեղեցու պաշտամունքի ավանդական ձեւերի մեջ խախտումներ ու զեղծումներ չառաջանալ։ Իհարկե ոչ։ Օձնեցին այս մասին է խոսում։ Նա թվելով ծիսական զեղծումների շարքը, գրում է. «Եւ պատճառ ոչ ունիմ ասել, զանփո՞յթն առնելոյ զառաջնոցն այսպիսի խառնաբնդոր եւ եղծագործ սովորութեանց, եթէ ժամանկի կարճութիւն, եթէ հիւանդութեանց ի վերայ անկումն, եթէ անպարապութիւն յաշխարհակալացն հարստահարութենէ. զայս ի նոսա եւ յաստուած թողլի է»*[4] *կամ «զայն՝ նորագիւտ եւ դեռահաւակ ժամանակն ստիպէր առնել այնպէս»*[5] *և կամ «այս (Քրիստոսի ծնունդը և մկրտությունը մեկ օրում՝ հունվարի 6-ին տոնելը —Վ. Հ.) նախնական սովորութիւն ի վաղընջաց հետէ նախահաւեալ, եւ մինչև առ մեզ հասեալ»*[6]։ *Ինչպես տեսնում ենք, այստեղ խոսքը վերաբերում է ոչ թե պաշտամունքի ծիսական հարցերի թերություններին և կամ անտեղյակությանը, այլ ինչ ինչ պատճառներով եղած կարգ ու կանոնի խանգարմանը, զեղծմանը։ Հետևապես մեզ չի համոզում Ակինյանը, երբ փորձում է Օձնեցու տվյալներով բացատրել VI դարի ծիսական հարցերի խանգարումները, եթե այդպիսիք նույնիսկ գոյություն են ունեցել։*

*Ակինյանը այնուհետև բերում է «Հավատարիմ ժամանակակցի մը և եղելության քաջածանոթ անձնավորության մը վկայություն»*[7], *այն մասին, որ «հիրավի Մակար Բ (VI դար—Վ. Հ.) գրած է թուղթ առ Հայս»*[8]։ *Նա նկատի ունի Երուսաղեմի հայրապետ Մակար Բ-ի հաջորդ Հովհաննես եպիսկոպոսապետի (ըստ Ակինյանի 575—592 թթ.) նամակը*[9] *գրված Աղավնքի*[10] *հովվապետ Աբասին (552—596 թթ.) «Սրբոյ եւ աստուածասիրի երանելոյ հոգեւոր եղբօր եւ պաշտօնակցի մերոյ Աբասայ եպիսկոպոսի Աղուանից ի Յոհաննէ եպիսկոպոսապետէ Երուսաղէմի» խորագրով*[11]։ *Այստեղ կբերենք Ակինյանի կողմից այս նամակից վերցված երկու քաղվածները. «Աստուածասէր Թումաս, երանելոյ Պանտավանաց վանական,* **ըստ սովորութեանն՝** *որպէս յառաջ քան զմեզ յաջորդեալք ս. աթոռոյն Յակովբայ եղբօր Տեառն* **առեալ էր գիր հաւատոյ**

1 *Պատմություն, Ս. Պետերբուրգ, 1887, էջ 23։*

2 *Նույն տեղում, էջ 21։*

3 *Սեբեոսի եպիսկոպոսի պատմութիւն, Երևան, 1939, էջ 131։*

4 *Մատենագրութիւնք, էջ 8։*

5 *Նույն տեղում, էջ 6։*

6 *Նույն տեղում, էջ 12։*

7 *Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 47։*

8 *Նույն տեղում։*

9 *Նույն տեղում, էջ 46։*

10 *Պետք է նկատի ունենալ «Հայոց արևելից կողմանք»-ը՝ Կուրի և Արաքսի միջագետքը։*

11 *Տե՛ս «Արարատ», 1896, մայիս, Հավելված, էջ 252—256. հրատ. Կարապետ վարդապետ։*

*եւ կարգաց եկեղեցւոյ,* նոյնպէս եւ ի մէնջ խնդրեաց *եւ մատոյց տոմարս երկուս ժողովոյ որ առանց Քրիստոսի ժողովեալ էր ի Հայս հակառակ սրբոյ եկեղեցւոյ»*[1]։

*«Բայց վասն քո երանութեանդ լուաք, եթէ կամակից ես բարւոյ եւ ընկալար թուղթս երկուս ի Մակարայ եւ յԵւսդորայ՝* ի ձեռն բարեպաշտի եւ աշխատասիրի Թումասու, որ ոչինչ պէտս ունի ի ձէնջ պատուի եւ մեծութեան, բայց միայն ոգոց ձերոց փրկութեան, վասն որոյ եւ զիս թախանձեաց գրել ըստ օրինակի նոցա, *որ յառաջ քան զմեզ էին նախընկալք աթոռոյս Յակոբայ առաքելոյ»*[2] *(ընդգծումը մերն է —Վ. Հ.)*։

*Ակինյանի կարծիքով ոչ մի տարակուսանք չկա, թե Հովհաննես եպիսկոպոսապետը այլ գրվածք կակնարկե, որովհետև նամակում նախ նշված է Մակարի անունը (Ակինյանի կարծիքով Բ-ը), և ապա գրության բովանդակությունը՝ «վասն կարգաց եկեղեցւոյ»*[3]։

*Քննենք այս հարցը ավելի մանրամասն։ Հովհաննես եպիսկոպոսապետի վերոնշյալ նամակից պարզ երևում է, որ ոչ այս և ոչ էլ նամակում ակնարկված Մակար Բ-ի նամակները ուղղված չեն հայոց ընդհանուր հոգևոր պետին, ինչպես նշված է Մակար Ա-ի նամակում (տես՝ այս կանոնախումբը), այլ Աղվանից հովվապետին՝ Աբասին։ Ավելին, Երուսաղեմի Հովհաննես եպիսկոպոսապետի վերոհիշյալ նամակում խոսք անգամ չկա, թե իր անմիջական նախորդը՝ Մակար Բ-ը նամակ է գրել Սյունյաց եպիսկոպոս Վրթանեսին։ Ընդհակառակը, նամակից երևում է, որ Մակար Բ-ը գրել է Աղվանքի եպիսկոպոս Աբասին։ Իր վարկածը Ակինյանը փորձում է բացատրել այսպես. «Հովհաննու թղթին մեջ չէ հիշված Վրթանես հանվանե, թեև իրեն ուղղված էր Մակարի թուղթը։ Այսպեսի անուշադրություն ներելի էր անշուշտ հայրապետի մը, որ կգրեր յուր թուղթը «հեռաբնակ կողմանց», իրարու սահմանակից աշխարհներու, որոնց պետերը կգործեին համամիտ և միասիրտ»*[4]*։ Թույլատրելի՞ է Երուսաղեմի հայրապետին այսպիսի տարօրինակություն, երբ Սյունյաց եպիսկոպոս Վրթանեսը, ինչպես կարծում է Ակինյանը, նամակ է գրել նրան և խնդրել եկեղեցու ծիսական կարգին վերաբերող հարցերի պատասխաններ, իսկ նա պատասխանն ուղարկում է մեկ ուրիշին՝ Աղվանից եպիսկոպոս Աբասին։ Եվ մի՞թե կարելի է արդարացնել այդպիսի «անուշադրությունը» նրանով, որ Աղվանքի և Սյունիքի հոգևոր պետերը «կգործեին համամիտ և միասիրտ» կամ այդ «անուշադրությունը» ծնել է նրանից, որ Մակարը իր թուղթը գրել է «հեռաբնակ կողմանց»։ Այդ հեռավորությունը ի՞նչ նշանակություն կարող էր ունենալ հոգևոր երկու պետերի, առավել ևս երկու երկրների անունը շփոթելու խնդրում։ Չէ որ Մակարին ուղղված նամակում պետք է նշված լիներ Վրթանես (անկախ նրանից, թե ով է վերջինս՝ IV դարի Վրթանես կաթողիկոսը, թե VI դարի Սյունյաց եպիսկոպոս Վրթանեսը), ինչպես այս կանոնախմբի մեջ նշված է նրա գրողի անունը։ Եթե, իսկապես, Մակարին ուղղված նամակի մեջ չի նշված նրա գրողի անունը, ինչ որ միանգամայն անհավանական է, ապա մի՞թե նամակատարները, որոնք հայ եկեղեցու ծիսական հարցերի մասին Երուսաղեմում պատմում էին ոչ*

[1] Նույն տեղում, էջ 252։

[2] Նույն տեղում, էջ 255—256։

[3] Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 48։

[4] Նույն տեղում, էջ 61։

համառոտ կերպով, չգիտեին կամ չէին ասել իրենց հոգևոր պետի անունը։ Սակայն ինչն է ստիպել Ակինյանին՝ Աղվանից եպիսկոպոս Աբասին ուղղված Մակար Բ-ի նամակը նույնացնելու քննարկվող կանոնախմբի հետ։ Այն, որ Երուսաղեմի Հովհաննես եպիսկոպոսապետը վերևում հիշված իր նամակի մեջ Մակար Բ-ի, Աղվանից եպիսկոպոս Աբասին ուղղված նամակի բովանդակության մասին ասում է. «կարգ եկեղեցւոյ»։ Եվ քանի որ առաջարկվող բնագրի ներածականում և Ա, Թ հոդվածներում մի քանի անգամ հիշվում է «կարգ եկեղեցւոյ» կամ «կարգք եկեղեցւոյ» և բացի այդ, այս կանոնախումբը ինքնին վերաբերում է եկեղեցու պաշտամունքի կարգ ու կանոնին, նշանակում է, ինչպես եզրակացնում է Ակինյանը, Երուսաղեմի Հովհաննես եպիսկոպոսապետի նամակում հիշված Մակար Բ-ի նամակը սույն բնագիրն է, հետևապես վերջինիս հեղինակն է Մակար Բ-ը VI դարում, ուղղված Սյունիքի եպիսկոպոս Վրթանեսին։ Սակայն ինչքա՞ն հիմնավոր է նամակի բովանդակությամբ որոշել նամակի կամ նրա հեղինակի ինքնության հարցը։ Հայտնի է, օրինակ, որ Հովհ. Օձնեցին էլ երկու գրություն ունի «Յաղագս կարգաց եկեղեցւոյ» վերնագրով և նույն խնդրին վերաբերող[1], բայց բովանդակությամբ բոլորովին այլ բան է, քան սույն կանոնախմբում շոշափված հարցերը, որոնք վերաբերում են դարձյալ եկեղեցու կարգերին[2]։ Նշանակում է «կարգ եկեղեցւոյ», «կարգք եկեղեցականք» չեն վերաբերում միայն ծիսական հարցերին, այլև դավանաբանությանը։ VI դարի Երուսաղեմի հայրապետների գրությունները Աղվանքի Աբաս եպիսկոպոսին հենց այդ բնույթն են ունեցել։ Հարցի մանրամասն քննությունը ստիպում է մեզ կանգ առնել Երուսաղեմի Հովհաննես եպիսկոպոսապետի Աղվանից եպիսկոպոս Աբասին ուղղված նամակի բովանդակության և դրա հետ աղերսվող Պանտավանքի վանական Թումասի գործունեության վրա։

VI դարի կեսերին քաղկեդոնականությունը (այդ ժամանակվա գրություններում այն նույնանում էր նեստորականության հետ)[3] թափանցել էր Աղվանք և Սյունիք։ Այս բանը անհանգստացնում է հայ եկեղեցուն։ Կաթողիկոս Հովհաննես Բ Գաբեղենեցին մի քանի եպիսկոպոսների հետ նամակ է գրում Աղվանքի եպիսկոպոս Աբասին[4], մի նամակ էլ Սյունյաց եպիսկոպոս Վրթանեսին[5]։ Նամակներում խորհուրդ է տրվում մերժել նորամույծ ուսմունքը։ Այս նամակների մասին իմանում է Երուսաղեմի Հովհաննես եպիսկոպոսապետը և նամակ գրում Աղվանից եպիսկոպոս Աբասին։ Նամակը, որի էությունը դավանաբանական հարցերն են, ուղղված է հայ եկեղեցու դեմ, այն համարվում է հերձված, որը «ընդ բազում հերձուածս միաւորի»[6]։ Նամակի հեղինակը առանց թաքցնելու գրում է, որ նա Երուսաղեմում հալածելով նզովել է հայերին

---

[1] Մատենագրութիւնք, էջ 81—100։

[2] Հմմտ. Գրիգոր Տղայի նամակը Գրիգոր Տուտեորդուն՝ «Գիր ողջունի եւ հարցումն խրատու տեառն Գրիգորի Հայոց կաթողիկոսի Տղայն կոչեցելոյ առ մեծապատիւ վարդապետն Գրիգոր որդի Տուտեայ, խնդրելով ի նմանէ բան պատասխանոյ թղթին Հոռոմոց, որ էր գրեալ առ նա ցուցանել նոցա գրով զկարգս եկեղեցական զխոստովանութիւն հաւատոց մերոց» վերնագրով. ՄՄ № 2966, էջ 49բ—52բ։

[3] Գիրք թղթոց, էջ 49, 79, 81։

[4] Նույն տեղում, էջ 81—84. Մ. Կաղանկատուացի, Պատմութիւն Աղուանից աշխարհի, Թիֆլիս, 1912, էջ 137—142։ Թեև այս ժամանակ Աբասն արդեն Աղվանքի հայոց կաթողիկոսն էր։

[5] Նույն տեղում, էջ 78—80. Ստ. Օրբելյան, Պատմութիւն նահանգին Սիսական, Թիֆլիս, 1912, էջ 92—96։

[6] «Արարատ», 1896, մայիս, էջ 252։

և այրել նրանց վանքերից մեկը[1]։ Այնուհետև շարադրում իրենց դավանքի սկզբունքները[2] և խորհուրդ տալիս մերժել հայ եկեղեցու դավանանքը։

Այս բանագնացությունների մեջ մեծ դեր է խաղում Երուսաղեմի Պանտավանքի՝ վանական Թումասը, մի անձնավորություն, որը մի քանի անգամ եղել է Աղվանքում։ Հենց սա էլ հայ կաթողիկոսի նամակի և Աղվանքում իր կուսակիցների դեմ տարվող հալածանքի մասին հաղորդում է Երուսաղեմի Հովհաննես եպիսկոպոսապետին։ Այդ մասին վերջինիս Աղվանքի եպիսկոպոս Աբասին գրած նամակում կարդում ենք. Թումասը «**ըստ սովորութեանն** որպէս յառաջ քան զմեզ յաջորդեալք... **առեալ էր** գիր հաւատոյ եւ կարգաց եկեղեցւոյ, **նոյնպէս եւ ի մէնջ խնդրեաց...**»[3]: Նույն նամակի մի այլ մասում դարձյալ կարդում ենք. «**զիս թախանձեաց գրել ըստ օրինակի նոցա**»[4] (*իմա՝ Մակար Բ և Եվսդոքիոս. ընդգծումը մերն է —Վ. Հ.*)։ Ուրեմն, Թումասը հաջորդաբար դիմել է Երուսաղեմի Մակար Բ, Եվսդոքիոս և Հովհաննես հայրապետների օգնությանը և վերջիններս նրա խնդրանոք և թախանձանքով նամակ են գրել Աղվանքի եպիսկոպոս Աբասին։ Այդ նամակները, Ակինյանի հավանական ենթադրությամբ, Աղվանք է տարել և ապա թարգմանել Թումաս[5]։ Նշանակում է Երուսաղեմի հայրապետներին հայերը, այդ թվում և Սյունյաց եպիսկոպոս Վրթանեսը, նամակով չեն դիմել։

Դավանաբանական հարցերի շուրջը գրված՝ Հովհաննես եպիսկոպոսապետի նամակից բացի, Մակար Բ-ի և Եվսդոքիոսի նամակները թեև մեզ չեն հասել, սակայն այդ միակ նամակից էլ կարող ենք եզրակացնել, թե Աղվանքում Թումասի գործունեության նշանախեցը որն է եղել։ Այդ մասին այնտեղ կարդում ենք. Թումաս «**ոչինչ պէտս ունի ի մէնջ պատուի եւ մեծութեան, բայց միայն ոգոց ձերոց փրկութեան**»[6] (*ընդգծումը մերն է —Վ. Հ.*)։

Ուրեմն, պայքարը գնում էր դավանաբանական հարցի շուրջը՝ Աղվանից եկեղեցին դուրս բերելու հայ եկեղեցու ազդեցությունից։ Այս էր Թումաս վանականի գործունեության և Երուսաղեմի նշված հայրապետների առաքած նամակների բովանդակության մեխը։

Հարց է առաջանում. ինչպե՞ս կարող էր Սյունյաց եպիսկոպոսությունը ի դեմս նրա պետ Վրթանեսի, որը հայ լուսավորչական եկեղեցու ներկայացուցիչն էր, նամակ գրել քաղկեդոնական եկեղեցու հայրապետներից մեկին՝ Մակար Բ-ին և նրանից հայ եկեղեցու ծիսական կարգերի վերաբերյալ ցուցումներ խնդրել։ Սյունիքի աշխարհիկ և հոգևոր պետերը քաղաքական պատճառներով ինչքան էլ դժգոհ լինեին Մամիկոնյաններից և ձգտեին բաժանվել Դվինից[7], կարող էին հոգևոր կենտրոնի նկատմամբ հակաթոռ լինել, բայց ոչ հրաժարվել հայ եկեղեցու ավանդական դավանանքից։ Այս հանգամանքը եզական չէ հայ եկեղեցու պատմության մեջ։ Ի դեպ, Ակինյանը ևս այս կարծիքին է. «Իհարկե, նման քաղաքական պարագաներու մեջ տեղի ունեցած թեմական բաժանումները արտաքին են միայն և չեն կարող ազդել դավանաբանական համոզում–

---

1 Նույն տեղում։

2 Նույն տեղում, էջ 254։

3 Նույն տեղում, էջ 252։

4 Նույն տեղում, էջ 255։

5 Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 48։

6 «Արարատ, 1896, մայիս, էջ 255։

7 Այս մասին կարդա Ակինյանի նշված աշխատության 51—56 էջերը։

ներու վրա»[1]։ Եվ մնում է զարմանալ, թե ինչպես մեր հեղինակը հարցի երկու հակադիր ծայրերը փորձում է միացնել։

Դավանաբանական այդ պայքարում, ինչպես հաղորդում է Մովսես Կաղանկատվացին, ի վերջո հաղթանակով է դուրս գալիս հայ եկեղեցին։ Աղվանից Աբաս եպիսկոպոսը «հալածեաց ի տանէն Աղուանից զվարդապետս կրօնին այնմիկ՝ զԹովմաս եւ զՈղիայն եւ զԲնոտն եւ զԻբաս եւ զայլս ընդ նոսին...»[2]։

Այս բնագրի ժամանակի որոշման հարցում նշանակություն ունի նաև մի այլ հանգամանք։ Սույն կանոնախմբի Է հոդվածում կարդում ենք. «Հանել ի սեղանն զհացն սուրբ՝ ջերմ ըստ առաքելոցն աւանդութեան եւ անապակ, առանց իրիք խառնման...»։ Սույն հոդվածը Ակինյանի մոտ ունի հետևյալ տեսքը. «[Պարտ է] հանել ի սեղանն զհացն սուրբ՝ ջերմ ըստ առաքելոցն աւանդութեան եւ զբաժակն՝ անապակ, առանց իրիf խառնման...»[3] (ընդգծումը մերն է —Վ. Հ.)։ Ընդգծված հատվածը նշանակում է հաղորդության ժամանակ գինու բաժակին ջուր չխառնել։ Պատարագի ժամանակ գինու բաժակին ջուր խառնելու հարցը կապված Քրիստոսի երկու բնության՝ Քաղկեդոնի ժողովի որոշումների հետ, Հայաստանում վեճի առարկա դարձավ VI դարից։ Մինչև VI դարը գինու բաժակին ջուր խառնելը խնդիր չէր մեզ մոտ։ Արևելյան եկեղեցիների մի մասը, տվյալ դեպքում հայ եկեղեցին, հակառակ արևմտյան եկեղեցուն, հնուց ի վեր հաղորդությունը կատարում էր անխառն գինով՝ գինու բաժակին առանց ջուր խառնելու։ Եթե ընդունենք, որ այս բնագրի Ակինյանի կազմածը ճիշտ է, այսինքն բնագրում թողնենք «զբաժակն» բառը, նշանակում է հայերը այդ հարցին անդրադարձել են V դարից հետո, որովհետև վերջինս վեճի առարկա էր, ինչպես նշեցինք վերը, մասնավորապես, սկսած VI դարից։ Ինչպես ճիշտ նկատել է Հացունին, «Երուսաղեմացի հայրապետ մը, որ ինք տիեզերական սովորությամբ... ջրախառն բաժակով կը պատարագեր, անկասկած, չէր կարող Հայոց հանձնարարել անապակը, ...»[4]։ Իսկ եթե «զբաժակն» բառը չդնենք բնագրում, նշանակում է սույն կանոնախումբը առաջ է եկել մինչև այդ հարցի խնդիր դառնալը։ Բանն այն է, որ Կանոնագրքի այս հատորի համահավաք բնագրի կազմման համար օգտագործած 50 ձեռագրերից 4-ը՝ hlou ունեն «զբաժակն» իսկ մեկը՝ F «զգինին» բառերը[5]։ Այս երկու բառերը ունեցող 5 ձեռագրերը XVII դարի են, իսկ «Գիրք թղթոց»-ի տվյալը 1298 թվականի է։ Ուրեմն, մնացած ձեռագրերը, որոնց մեջ և հնագույն ձեռագրերը, չունեն «զբաժակն» կամ «զգինին» բառերը։ Մի՞թե պարզ չէ, որ այդ բառն անազան ընդմիջարկություն է[6]։ Նշված հոդվածում ասվում է. «ըստ

[1] Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 55։

[2] Պատմութիւն Աղուանից աշխարհի, էջ 143։

[3] Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 123։

[4] Բազմավէպ, 1929, էջ 263։

[5] «Գիրք թղթոց»-ում պահված է «բաժակ», էջ 411։ Այս բառերից որևէ մեկը չունեն նաև ամերիկաբնակ Տիրան արքեպիսկոպոսի սեփականությունը հանդիսացող ձեռագիրը (էջ 40բ), և ծանոթագրությունների համար օգտագործած №№ 648, 3562 ձեռագրերը. իսկ № 4488-ի բնագիրը, որը վերցված է Ջամչյանի պատմության Բ հատորից, ունի։

[6] Տե՛ս և հմմտ. Հացունու հոդվածը, Բազմավէպ, 1929, էջ 263։ Ի դեպ, Ներսես Շնորհալու մի նամակում բերվում է եկեղեցական բազմաթիվ հայրերից մեջբերումներ այս խնդրի մասին։ Այստեղ Թադեոս առաքյալից հետո՝ երկրորդ տեղում նշված է Մակար Ա-ի մեզ հետաքրքրող նամակի հետևյալ հատվածը. «Պարտ է զսուրբ հացն ըստ առաքելոյն անդութեան

*առաքելոցն աւանդութեան»։ Այս ավանդությունը գրավոր մատյան է դարձել IV դարի վերջում, ուր խոսք անգամ չկա բաժակի մասին[1]։ Հետևապես չի կարելի մի կողմից ընդունել այս ավանդությունը, ուր բաժակի մասին խոսք չկա, իսկ մյուս կողմից բնագրում դնել «ըբաժակն» բառը։ Դա ժամանակավրեպ է։*

*Հենց այս հոդվածի աղերսով Ակինյանը դիմում է Անգելո Մայիին[2], որը, իբր թե, Մակարի Թուղթը համարում է կեղծիք «Դ դարու առաջին կեսին համար»[3]։ Վերջինս սույն կանոնախմբի է հոդվածի և ոչ ամբողջ բնագրի համար գրում է. «Կանոնը կամ կեղծ կամ ընդմիջարկություն է»[4]։ Այսպիսով, Անգելո Մային է հոդվածն անվերապահորեն «կեղծ» չի համարում, այլ «կամ կեղծ կամ ընդմիջարկություն»։ Եվ նա ճիշտ է, որովհետև հիմքեր ուներ։ Եթե ընդունենք, որ բնագրում սկզբնապես եղել է «ըբաժակն» բառը, նշանակում է, այս բնագիրը հորինվել է VI դարում և վերագրվել IV դարի հեղինակ Մակար Ա-ին։ Այս իսկապես կեղծիք է։ Իսկ եթե ընդունենք, որ «ըբաժակն» բառը սկզբնապես բնագրում չի եղել և այն ավելացրել են հետագայում, նշանակում է այստեղ գործ ունենք բնագրի ընդմիջարկության հետ և այդպես էլ Անգելո Մային կարծում է։ Վերջինս չխորանալով բնագրի մասնագիտական և խոր վերլուծության մեջ, որպիսի նպատակ նա չի էլ ունեցել, առաջին տպավորությամբ գրել է. «Կանոնը կամ կեղծ կամ ընդմիջարկություն է»։ Իսկ Ակինյանը այս բանի վրա ուշադրություն չդարձնելով դուրս է գցում մեջբերման վերջին մասը և պահում միայն «կեղծ» բառը և այն վերագրում ամբողջ բնագրին, մինչդեռ Անգելո Մային տվյալ դեպքում կարծիք է հայտնել միայն է հոդվածի մասին։*

*Վերջապես Սահակ Պարթևի կանոնախմբի ԼԷ հոդվածում[5] խոսք չկա բաժակը անապական պահելու մասին, որովհետև այդ ժամանակ նման խնդիր գոյություն չուներ։ Իսկ Ներսես Բ Բագրևանդացու և Ներշապուհի կանոնախմբում (VI դար) խոսում է բաժակի անապականության կամ անխառնության մասին[6], որովհետև այս ժամանակ այդ խնդիրը, կապված Քաղկեդոնի ժողովի որոշումների հետ, սուր վեճի առարկա էր։*

*Ի դեպ, Ակինյանը փորձում է Տաշյանի ճիշտ հարցադրումը ծռել։ Տաշյանը «Վարդապետութիւն առաքելոց» աշխատության մեջ խոսելով Առաքելական կանոնների և «ուրիշ հնագույն» գրությունների աղերսի մասին, թվարկում է*

---

*ջերմ հանել ի սեղանն առանց իրիք խառնուածոյ, զի ապականացու իւիք ոչ փրկեցաք, այլ անապական մարմնով և արեամբ անարատ գառինն» (№ 502, էջ 151բ. տե՛ս և հմմտ. № 4405, էջ 239ա)։ Այս բացակայում է Ներսես Շնորհալու «Թուղթ ընդհանրական»-ի տպագրված (Էջմիածին, 1865) բնագրում։ Երբ էլ լինի այս նամակի խմբագրության ժամանակը կարևոր չէ, կարևոր է այն, որ այստեղ օգտվել են Մակարի Թղթի մի այնպիսի բնագրից, ուր բացակայել է բաժակի հարցը (հմմտ. Ներսես Լամբրոնացու 1197 թ. Կ. Պոլսում վարած վիճաբանության ժամանակ այս հարցի մասին արտահայտածը. № 2019, էջ 374աբ)։ Իր երկրորդ հոդվածում Վ. Հացունին ցույց է տալիս, որ «անապակ, առանց իրիք խառնման» խոսքերը վերաբերում են հաղորդության հացին (Բազմավէպ, 1931 թ., էջ 64—65)։*

[1] *Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 46, հոդ. ԼԱ։*

[2] *Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 21, 23։*

[3] *Նույն տեղում, էջ 23։*

[4] „Canonem vel fictum vel interpolatum„. *տե՛ս* Scriptorum veterum nova collectio e Vaticanis codicibus edita, tomus X, Romae, MDCCCXXXVIII, *էջ 272, ծանոթ. 1։*

[5] *Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 392։*

[6] *Նույն տեղում, էջ 480—481, հոդված Ջ, հմմտ. նաև Հովհ. Օձնեցու կանոնախմբի Ը հոդվածը, նույն տեղում, էջ 519։*

*մի շարք հեղինակների՝ Մակարի, Եփրեմ Ասորու, Սոկրատի, Գրիգոր Աստվածաբանի գրությունները։ Այս շարքում բացի Մակարի գրությունից, Տաշյանը մյուսների գրությունները համարում է կեղծ*[1], *իսկ Մակարի գրության (իմա՛ առաջարկվող բնագրի) մասին ահա թե ինչ է գրում. «Միայն նշանակություն կրնա ունենալ Մակարա անվամբ եղած հիշյալ կանոնն,* **որուն անվամբ եղ՛ած կանոնադրությունն թերևս հնականն ճառագատ գործ մ'ըլլա»**[2] *(ընդգծումը մերն է —Վ. Հ.)։ Մեջբերելով այս հատվածը Ակինյանը գրում է. «Բայց չէ արտահայտված Տաշյան, թե հարազատության դեպքին ո՞ր Մակարի պետք է վերագրել գրությունը»*[3]*։ Տաշյանը երբ գրում էր վերոբերյալ տողերը, հայագիտության մեջ գրեթե բոլորի կարծիքով սույն գրությունը համարվում էր Մակար Ա-ին (IV դար), հետևապես նա կարիք չուներ նշելու Մակար Ա, առանց այդ նշման էլ հասկանալով վերջինս։*

*Գալով առաջարկվող բնագրի վերջում Բասենի և Բագրևանդի Տուրգյա (կամ Տուրքյա) եպիսկոպոսի դեպքին, Ակինյանը գրում է. «Տուրգ (ըստ ՁՁ նաև Տուրք) առանց տարակույսի* աղավաղված *հայկական անուն մըն է»*[4] *(ընդգծումը մերն է —Վ. Հ.)։*

*Այս անվանը հանդիպում ենք մեր պատմիչների մոտ, օրինակ, Մովսես Խորենացին Հայկ նահապետի շառավիղներից մեկին կոչում է Տուրք*[5]*։ Տուրք անունով մեկը 1227 թ. ընդօրինակել է տվել մի Ճառընտիր*[6]*։ Այս նույն անունով ուրիշ անձնավորությունների հանդիպում ենք 1304, 1315, 1347 թվականներին գրված հիշատակարաններում*[7]*։*

*Ունենք այս անվան փաղաքշական ձևը՝ Տուրքիկ, հայր Թեղենյաց վանքի, XIII դարում մասնակցեց Զաքարեի հրավիրած կրոնական ժողովին*[8]*։ Հետևապես Տուրք անունը աղավաղված չէ։ Ակինյանը նշված անունը դիտում է աղավաղված, որպեսզի այն մակաբերի Տիրիկ կամ Մարկոս անուններից։ Եվ քանի որ այս բնագիրը համարում է VI դարի գործ, ուստի նա «Գիրք Թղթոց»-ից վերցնում է Բագրևանդի VI դարի եպիսկոպոսներ Տիրիկին և Մարկոսին*[9] *և կարծում, որ «Տուրգեայ» անվանաձևը կարող էր առաջ գալ* Տիրիկ=Տիրկայ *ձևից. «որուն Կ՝ հնչափոխությամբ կարող էր փոխանակ* Κ *նաև* Γ *լսված ըլլալ հույն ականջին մեջ. ուստի նախնաբար տառադարձված՝* ΤΥΡΚΟΥ *կամ* ΤΥΡΓΟΥ *հայ թարգմանիչը այս գրությունը շրջած է տառադարձական օրենքով հայերե-*

---

*[1] Վարդապետութիւն առաքելոց, էջ 148—149։*

*[2] Նույն տեղում, էջ 150։*

*[3] Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 22։*

*[4] Նույն տեղում, էջ 72։*

*[5] Պատմութիւն Հայոց, էջ 114. տե՛ս նաև Ասողիկ, Պատմութիւն տիեզերական, հրատ. Ստ. Մալխասյանց, ՍՊԲ, 1885, էջ 35, Ս. Անեցի, էջ 49, Վ. Հացունու հոդվածը (Բազմավէպ, 1931 թ., էջ 68—69)։*

*[6] № 3779, էջ 545բ։ Այս ձեռագրի մասին գրում է նաև Մ. Սմբատյանցը, բայց նա ձեռագիրը նշում է որպես Հայսմավուրք, իսկ ստացողին՝ Տուրքին համարում գրիչ. տե՛ս Տեղագիր Գեղարքունի ծովազարդ գաւառի, որ այժմ Նոր Բայազիտ գաւառ, Վաղարշապատ, 1896, էջ 407։*

*[7] Լ. Խաչիկյան, ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, Երևան, 1950, էջ 25, 116, 367։*

*[8] Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն Հայոց, էջ 171, հմմտ. Մանր ժամանակագրություններ 13—18-րդ դդ., կազմեց Վ. Ա. Հակոբյան, Երևան, 1951, էջ 38։ Տե՛ս և հմմտ. նախորդ ծանոթագրության մեջ Լ. Խաչիկյանի նշված աշխատությունում, էջ 184։*

*[9] Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 73։*

*նի՝* ՏԻՐԳԱՅ *կամ* ՏՈՒՐԳԵԱՅ»[1], *կամ* Մարկոս=Մարգեայ. *«որուն սխալագրութիւնը դյուրավ* ՏԱՐԳԵԱՅ *և* ՏՈՒՐԳԵԱՅ *կրնար կարդացվիլ»[2]։ Եթե այս ենթադրությունը (լոկ ենթադրությունը) հավանական է, ապա պարտադիր չէ այդ անունները փնտրել հեղինակի ցանկացած ժամանակում՝ VI դարում. Բուզանդը IV դարի երկրորդ կեսին Բասենի եպիսկոպոս նշում է Տիրիկ անունով մեկին. «Եւ էին երկու եպիսկոպոսք Բասենայ գաւառին, Մովսէս եւ Տիրիկ»[3]։ Ավելի վաղ ժամանակի համար (IV դարի 20—30-ական թվականներ) պատմիչները տեղեկություններ չեն հաղորդում։ Գուցե եղել են Տիրիկ կամ Մարկոս անուններով եպիսկոպոսներ, մանավանդ եթե նկատի ունենանք, որ Բասենի կամ Բագրևանդի եպիսկոպոսների համար Տիրիկ անունը կարծեք եղել է ժառանգական[4]։ Ագաթանգեղոսը հաղորդում է, որ Գրիգոր Լուսավորչի կողմից քրմերի որդիներից ձեռնադրված եպիսկոպոսներից մեկի անունը եղել է Տիրիկէս[5], թեև նշված չէ, թե ո՛ր թեմում։*

*Ի միջի այլոց նշենք, որ չի արդարանում Ակինյանի զարմանքը, երբ գրում է. «Երկո՞ւ Բագրևանդ և կամ մեկ Բագրևանդի երկո՞ւ եպիսկոպոս պետք է ենթադրել։* Բայց այսպես հազիվ թե հնարավոր ըլլա»[6] *(ընդգծումը մերն է— Վ. Հ.)։ Ի՞նչ կա որ. Բագրևանդը կամ որևէ մի այլ թեմ ունեցել է երկու եպիսկոպոս, թերևս այդպես կարելի է եզրակացնել Բուզանդի վերոնշյալ վկայությունից, իսկ Ներսես Բ Բագրևանդացի կաթողիկոսի «Ուխտ միաբանութեան Հայոց աշխարհիս...» նամակի տակ, միմյանցից անջատված, ստորագրված է. «Տիրակ Բագրեւանդեայ եպիսկոպոս» և «Մարկոս Բագրեւանդեայ եպիսկոպոս»[7], կամ մի այլ նամակում նշված է. «Ի Փովկասայ եւ ի Սամուէլէ Բասենոյ եպիսկոպոսաց»[8]։ Ուրեմն, երկու եպիսկոպոս մեկ Բագրևանդին կամ Բասենին։ Այստեղ տարօրինակ բան չկա։ Մեկ թեմին որպես բացառություն, երկու եպիսկոպոս լինելը արձանագրված է նույնիսկ ավելի ուշ ժամանակի կանոնական որոշումներում։ 1651 թ. Երուսաղեմի ժողովի կանոններում, որ Առաքել Դավրիժեցին բերում է համառոտ, կարդում ենք. «Հինգերորդ՝ միոյ վիճակի մի՛ լիցին երկու եպիսկոպոսք, եւ երկու առաջնորդք, բայց թէ կարի մեծ ինչ պատճառ ի մէջ գայցէ»[9]։ Նախ՝ պետք է ընդունել, որ կյանքում որևէ թեմ ունեցել է երկու եպիսկոպոս, որպեսզի ժողովը որոշում ընդուներ այն արգելելու մասին, երկրորդ՝ Երուսաղեմի ժողովը այդ երևույթը արգելում է վերապահությամբ, թույլատրելով բացառություն, որը ստացել է օրենքի ուժ, արձանագրվելով ժողովի որոշումներում։*

*Այս փաստերը, հավանաբար, վրիպել են Ակինյանի ուշադրությունից։*

*Ակինյանը որոշելով, որ Տուրգ եպիսկոպոսը VI դարի Բագրևանդի Տիրիկ կամ Մարկոս եպիսկոպոսն է, այնուհետև փորձում է ընդհանուր շոշափելի եզրեր գտնել առաջարկվող բնագրի Տուրգ եպիսկոպոսի վերաբերյալ եղած «սա-*

*[1] Նույն տեղում, էջ 74։*

*[2] Նույն տեղում, էջ 75—76։*

*[3] Պատմութիւն Հայոց, Վենետիկ, 1889, էջ 279։*

*[4] Հմմտ. Բուզանդի վերոհիշյալ և «Գիրք թղթոց»-ի (էջ 73) վկայությունները։*

*[5] Պատմութիւն Հայոց, աշխատությամբ Գ. Տեր-Մկրտչյան և Ստ. Կանայանց, Տփղիս, 1909, էջ 442։*

*[6] Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 75։*

*[7] Գիրք թղթոց, էջ 73։*

*[8] Նույն տեղում, էջ 41։*

*[9] Պատմութիւն Հայոց, Վաղարշապատ, 1896, էջ 332։*

կաւուք ընդ արիանոսս միաւորեալ է եւ դարձեալ խղճեալ» վկայութեան և Հովհաննես Բ Գաբեղենեցի կաթողիկոսի և այլոց նամակի տակ Բագրևանդի Տիրիկ կամ Մարկոս եպիսկոպոսների ստորագրության բացակայության միջև։ Նա գրում է. «որ Բագրևանդի եպիսկոպոսի անունը՝ Տիրիկ կամ Մարկոս չի տեսնըվիր Հովհաննես Գաբեղենեցվո 568-ին գրած կրկին թղթերու մեջ, իսկ Բասենի աթոռին վրա կը ներկայանա Ներսես («ի Ներսայ») Բասենո և Մարդաղո եպիսկոպոս տիտղոսով (Գիրք թղթոց, 78, 81)։ Ուստի Հայոց կաթողիկոսի Միաբանության ուխտեն դուրս ելած է Բագրևանդի եպիսկոպոսն և հարած անշուշտ Աղվանից և Սյունյաց միության»[1] (ընդգծումը մերն է —Վ. Հ.)։ Եթե այսպես մոտենանք, ապա Հովհաննես Բ Գաբեղենեցի կաթողիկոսի անմիջական նախորդ Ներսես Բ Բագրևանդացի կաթողիկոսի և այլոց «Ուխտ միաբանութեան Հայոց աշխարհիս...» թղթի տակ ստորագրված Հարքի եպիսկոպոս Պարգևը, Արշամունյաց եպիսկոպոս Վաղոտը, Արծրունյաց եպիսկոպոս Գրիգորը, Ապահունյաց եպիսկոպոս Հոհանը, Արշարունյաց եպիսկոպոս Հովուկը և ուրիշներ[2], կամ սրանց հաջորդները չեն ստորագրել Ակինյանի նշած նամակի տակ[3], ուրեմն սրա՞նք էլ «Հայոց կաթողիկոսի միաբանության ուխտեն դուրս ելած» են «և հարած անշուշտ Աղվանից և Սյունյաց միության»։

Եթե հարցերն այսպես, լոկ ենթադրություններով և առանց փաստերի, լուծվեն, ապա շատ անհարիր եզրակացությունների կհանդիպենք։ Թե ինչո՞ւ վերոհիշյալ եպիսկոպոսները չեն ստորագրել նշված նամակում, ինչո՞ւ երկու գավառ ունեցել է մեկ եպիսկոպոս կամ մեկ գավառ երկու եպիսկոպոս և նման այլ ինչուներ, դժվար է, գուցե և անհնար, առայժմ լուսաբանել, անհրաժեշտ փաստեր չունենալու պատճառով, իսկ առանց դրանց լոկ ենթադրությունները գործին չեն օգնում։

Ըստ երևույթին, այս հարցի քննությունից և իր եզրակացություններից (թե ենթադրություններից) գոհ չլինելով Ակինյանը գրում է. «Խնդիրը այս տեսակետե առնելով ալ լուծված չ'ըլլար Տուրքյա «Բասենոյ եւ Բագրեւանդեայ» թեմերու եպիսկոպոս հորջորջվելու կնճիռը։ Այս հարցը որչափ ալ այժմ անբացատրելի կ'երևա, բայց բարդությունն նույն դարուն համար բոլորովին ալ եզական չէ»[4]։ Եթե VI դարի համար Ակինյանը տեսնում է բարդություն և այն էլ ոչ «եզական», ապա այդ բարդությունն ինչքան կնճռոտ կլինի պատմագիրների նույնիսկ անձուկ վկայությունների բացակայության պայմաններում IV դարի վերաբերյալ։ Նշանակում է՝ քանի դեռ նոր փաստեր չունենք, պետք է հենվենք եղած վկայությունների համեմատական քննության վրա և հանգենք սրանցից բխող եզրակացություններին։

---

[1] Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 76։ Ի դեպ, Վ. Հացունին իրական չի համարում Մ. Կաղանկատվացու վկայությունը Սյունյաց եպիսկոպոսների (Պետրոսի և՛ Վրթանեսի) ապստամբությունը հայ կաթողիկոսական աթոռի դեմ (Բազմավէպ, 1931 թ., էջ 66—68)։ Նա գրում է. «Ոչ Պետրոս և ոչ Վրթանէս հայրապետական աթոռեն զատված չապրեցան երբեք» (Նույն տեղում, էջ 68)։ Այդ եզրակացության համար հիմք է ընդունում Հովհաննես Բ Գաբեղենեցի կաթողիկոսի Վրթանեսին ուղղված նամակի հետևյալ տողերը. «Որպէս ցայժմ լեալ էք ազգ սուրբ, ժողովուրդ սեպհական տեառն Աստուծոյ, նոյնպէս և այժմ էք և մինչև յավիտեան...» (Գիրք թղթոց, էջ 79)։

[2] Գիրք թղթոց, էջ 73։

[3] Նույն տեղում, էջ 78, 81։

[4] Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 76։

*Մակարի թղթում երկու անգամ հիշվում է արիանոսների մասին, ահա այդ տեղերը. Զ հոդվածում Մակարը հաղորդում է փրկական խորհուրդը զգուշությամբ կատարել «զի մի՛ արիանոսացն մերձ լինելով» և վերջում, երբ խոսում է Տուրդ եպիսկոպոսի մասին, «որ սակաւուք ընդ արիանոսս միաւորեալ է եւ դարձեալ խղճեալ»։ Վ. Հացունին այս մասին գրում է. «Այդ կցորդութիւնն արիանոսաց հետ կը յարմարի Դ դարուն, մինչ վեցերորդին Հայք գործ ունէին նեստորականաց հետ, և արիանոսք վաղուց լռել էին։ Նոյն ինքն Մակար արիանոսներէն միայն կը զգուշացնէ զՀայս, ապացույց, թե Նեստոր ու Եվտիքես չկային տակավին»[1]։ Ակինյանը առարկում է նաև սրա դեմ, գրելով, որ եթե VI դարում արիանոսները չէին կարող երևալ Հայաստանում, ապա «Դ դարու համար անհեթեթ է կարծել, թե Հայաստան արիանոսներ գոյություն ունեցած ըլլան»[2]։ Բանն այն է, որ արիանոսները մեծ աղմուկ էին հանել Արևմուտքում։ Նրանք դատապարտվեցին Նիկիայի ժողովի կողմից, որին մասնակցում էին նաև Մեծ և Փոքր Հայքի ներկայացուցիչները։ Մակարը զգալով արիանոսների վտանգի մեծությունը, զգուշացրել է Հայոց հովվապետին հնարավոր վտանգի ներթափանցումից, մանավանդ որ այդ ժամանակ քրիստոնեությունը տակավին խոր և ամուր արմատներ չուներ հայ ժողովրդի մեջ. հիշենք Վրթանես կաթողիկոսի դեմ կազմակերպված մահափորձը Աշտիշատում, որին մասնակցում էր նաև թագուհին[3]։*

*Ակինյանը, այնուհետև, փորձում է բացատրել իր վարկածը, դարձյալ դիմելով լոկ ենթադրությունների. «Ես կը կարծեմ թե «Արիանոսք կամ սխալ իմացումն է հունարեն սկզբնագրին* αἱρετικός, αἱρεσιώτης, *«հերձուածող» բառին, և կամ ավելի հավանորեն «արիանոսք» գործածված է իբրև հակադրություն «նեստորիանոսք» հորջորջման»[4]։*

*Ակինյանի փորձառու աչքից դժբախտաբար վրիպել է կարևոր մի փաստ։ Խոսելով Անանիա Հաղբատեցու (XI դար) «Հակաճառութիւն ընդդէմ երկաբնակաց» աշխատության «Վասն տօնի Ծննդեան Քրիստոսի» գլխի մասին և վերջինիցս մեջբերելով ընդարձակ քաղվածք[5], նա նշում է, որ այս գլուխը հայտնի է նաև Անանիա Շիրակացու անունով և կրում է «Ի Յայտնութիւն Տեառն եւ Փրկչին մերոյ» խորագիրը։ Ակինյանի կարծիքով Անանիա Հաղբատեցու այս գրությունը, հետագա ընդօրինակողները շփոթել են երկու Անանիաների գրության հեղինակությունը և վերագրել Անանիա Շիրակացուն։ Այս գրությունն իրականում Անանիա Հաղբատեցո՞ւնն է, թե Անանիա Շիրակացունը, Ակինյանը քննության հարց չի դարձրել և անուշադրությամբ է անցել այդ խնդրի վրայով։ Այս քննենք ավելի մոտիկից։*

*Ակինյանը խոսելով Մակարի թղթի հնագույն բնագրի և նույնի Կանոնագրքում պահված խմբագրության աղերսի մասին գրում է. «Թղթիս այժմյան օրինակը, պահված Կանոնագրքի մեջ, կներկայացնե համառոտություն մը ընդարձակ բնագրին, կատարված առանց տարակուսի ԺԱ դարու սկիզբը։ Սկզբնագիրը, այնպես ինչպես ելած էր Մակարի ձեռքեն, եղած է ընդարձակ,*

[1] *Բազմավէպ, 1929, էջ 260։*

[2] *Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 77, տե՛ս Վ. Հացունու առարկությունը («Բազմավէպ», 1931 թ., էջ 71)։*

[3] *Բուզանդ, էջ 7—8։*

[4] *Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 78։*

[5] *Նույն տեղում, էջ 82—84։*

*առանձին մուտքով և գլխարկարգությամբ։ Բնագրին այս կազմությունը կնկատվի նաև այն բեկորներեն, որ պահպանված են այժմյան օրինակին ավերակներու մեջ»*[1]։

*Ակինյանի դիտողությունները սկզբնական բնագրի ընդարձակ լինելու, վերջինիս այլ կազմություն ունենալու վերաբերյալ միանգամայն ճիշտ են։ Եվ նա մի քանի դեպքերում նշում է ներկա բնագրի մեջ տեղ գտած ետևառաջությունների մասին*[2]*։ Սակայն նա խիստ սխալվում է, երբ այս թղթի ընդարձակ բնագրից օգտվելը վերագրում է XI դարի հեղինակի Անանիա Հաղբատեցուն*[3]*։ Անանիա Հաղբատեցու «Հակաճառութիւն ընդդէմ երկաբնակաց» աշխատության ԺԲ ճառը կոչվում է «Վասն տաւնի Ծննդեանն Քրիստոսի»*[4]*։ Ակինյանը որպեսզի ցույց տա, որ Մակարի թուղթը սկզբնապես եղել է ընդարձակ, քան Կանոնագրքում եղածը, իր գրքի 82—84-րդ էջերում դեմ առ դեմ բերում է այս երկու բնագրերից ընդարձակ հատվածներ։ Մենք ևս բերում ենք այդ հատվածները, օգտվելով Մատենադարանի № 567 ձեռագրի և Կանոնագրքի համապատասխան բնագրերից։*

| Անանիա Հաղբատեցի, № 567 ձեռ. | Մակարի կանոնախումբ, Կանոնագրքի ներկա նատորում |
| --- | --- |
| *«Իսկ յաւուրս սրբոյն Կոստանդիանոսի, ի սուրբ ժողովոյն Նիկիա ոչ եղեւ ընկալեալ տօնս այս ի սրբոց հարցն, այլ ըստ նոյն կանոնի սրբոց առաքելոցն սահմանադրեցին տօնել։ Եւ յայտ ի թղթոյն երանելւոյն Մակարա հայրապետին Երուսաղէմի, զոր ի Հայաստանեայցս գրեաց յաշխարհ, յաղագս խրատու սրբոյ մկրտութեան, քանզի նա մի էր ի սրբոց հարցն ՅԺԸ-իցն, որ ի Նիկիա։ Եւ գրեալ է այսպէս ի Զ-երրորդ գլխի հրամանի խրատուութեանն. «Բայց կարգաւորութիւն մկրտութեան սուրբ աւազանին եւ փոյթ յօժարութեան երից տօնիցն մկրտութեան, յորում առաւել եւս փափագին մերս դաւանել ի մկրտութիւնն զընծայեալսն Աստուծոյ, եւ կատարեալ զօրինակ մեծի փրկական խորհրդոյն, յոր ի սուրբ եւ յերեւելի աւուրս կատարեցաւ։ Եւ այժմ մեծաւ փափագանօք փութան կատարել ի սուրբ տեղիսս Քրիստոսի, զոր պարտ է եւ ամենայն քրիստոնէից երկիրպածացս Քրիստոսի կատարել ի նոսա զկոչումն մկրտութեանն սուրբ Յայտնութեանն եւ ծննդեանն Տեառն, եւ փրկական Զատկի կենարար չարչարանացն Քրիստոսի եւ ի շնորհալից Պենդակոստէին, յորում էջք աստուածային Հոգւոյն ի մեզ ծաւալեցան։ Զոր պարտ է զիւրաքանչիւր սրբոց տօնից պատճառ մկրտութեանն ծանուցանել, զի եւ դուք ի նոյն փութացեալք կատարեցէք։ Քանզի լուսաւոր աւր ծննդեանն Քրիստոսի եւ* | |

*[1] Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 81, հմմտ. էջ 108։*

*[2] Նույն տեղում, էջ 84—89, թեև Վ. Հացունին առարկում է նաև դրա դեմ (Բազմավէպ», 1931 թ., էջ 71—72)։*

*[3] Նույն տեղում, էջ 15—16, 81 և շար.։*

*[4] Տե՛ս մեր Մատենադարանի № 567 ձեռագիրը, էջ 89ա—97բ։*

մեր մեղսաքաւիչ ծնունդ սուրբ աւազանին ի նմին փրկական աւուրն կատարեցի, այլ ի նմին աւուրն առ ի յանձն մկրտել յաղագս առ մեզ զիջանելոյ։ Զի ոչ եթէ ինքն կարօտ էր սրբութեան, այլ զի զմեզ կամեցաւ սրբել ի մեղաց պղծութենէ, որ մեծաձայն գոչմամբ աղաղակէ ասելով. «Եթէ ոչ ոք ծնցի ի ջրոյ եւ ի Հոգւոյ՝ ոչ մտանել կարէ յարքայութիւնն Աստուծոյ մերոյ Քրիստոսի»։ Ըստ նմին օրինակի ծնեալք ընդ նմա եւ մկրտեալք ընդ նմին եղիցուք ի սուրբ աւուրն ծննդեանն Քրիստոսի։ Իսկ ի կենսաբեր Յարութեանն Զատկին ի ձեռն մեռուցանելոյ զմեղս մեր ի ջուրս աւազանին՝ [նմանողք լինիմք մեռելութեան մահու Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ երեքկին ընկղմամբն թաղել ի ջուրս սրբոյ աւազանին] զերեքօրեայ զթաղումն՛ Տեառն մերոյ նշանակեմք յանձինս մկրտելոցն, զոր եւ աստուածային առաքեալ յայտնապէս ցուցանէ ասելով, թէ «Թաղեալք ընդ նմին մկրտութեամբն, ի մահ նմանողք եղիցուք նմանութեան մահու նորա. զի եւ նորոգութեամբ յարութեանն հաղորդք լինիցիմք նմա ի կեանսն յաւիտենականս։

Իսկ յաւուրն շնորհապարգեւ սրբարար Պէնտակոստէին զլուսապայծառ ազդումն Հոգւոյն Սրբոյ կենդանարարի, որ ի տեսակս հրեղէն լեզուաց իջեալ յառաքեալսն երեւեցաւ, պարգեւելով նոցա ձեռս ի վերայ մկրտելոցն դնելով պարգեւս, ընդունելով ի շնորհաց Հոգւոյն։ Ըստ նմին օրինակի եւ մեք ի նմին աւուր ձեռս ի վերայ մկրտելոցն դնելով նոյն հոգի պարգեւի, զորոյ զօրինակն զգուշութեամբ անխափան կատարեմք, զի կատարեալք լիցուք». զայս Մակարիոս»[1] (ընդգծումը Ակինյանինն է — Վ. Հ.)։

Եւ երեքկին ընկղմամբն թաղեալ ի ջուր սուրբ աւազանին, զերեքաւրեայ թաղումն Տեառն նշանակեմք յանձինս մկրտելոցն։ Զոր եւ աստուածային առաքեալն յայտնապէս ցուցանէ ասելով, թէ՝ «Թաղեցաք ընդ նմա մկրտութեամբն, նմանողք եղիցուք նմանութեան մահու նորա, զի նորոգութեամբ յարութեանն հաղորդ լինիցիմք նմա ի կեանսն յաւիտենից»։ Եւ այսպէս ուղիղ դաւանութեամբ ձեռս ի վերայ դնելով՝ պարգեւեալ լինի Հոգին Սուրբ ի փրկութիւն մեզ, լուսաւորել զկոչեցեալսն յորդեգրութիւն։ Եւ հաւատովք ածանիմք յիւղ սրբութեան»[2]։

Ինչպես նշեցինք վերևում, Ակինյանին հայտնի էր, որ Անանիա Հաղբատեցու վերևում նշված աշխատության ԺԲ գլուխը (Ակինյանը նշում է ԺԱ)[3] վերագրված է Անանիա Շիրակացուն՝ «Ի Յայտնութիւն Տեառն եւ Փրկչին մերոյ» խորագրով։ Բերում ենք այդ ճառի համապատասխան հատվածը պրոֆ. Աշ. Աբրահամյանի հրատարակության համապատասխան. «Իսկ յաւուրս սրբոյն Կոստանդիանոսի, ի սուրբ ժողովին Նիկիայ ոչ եղեւ ընկալեալ տաւնս այս ի սրբոց հարցն. այլ ըստ նոյն կանոնի սրբոց առաքելոցն սահմանեցին տաւնել։ Եւ յայտ է ի թղթոյ երանելւոյն Մակարայ հայրապետին Երուսաղէմի, զոր ի Հայաստանեայցս գրեաց աշխարհ յաղագս խրատու սրբոյ մկրտութեանն. քանզի նա մի էր ի սրբոց ՅԺԸ հարանցն, որք ի Նիկիա. եւ գրեալ է այսպէս ի վեցերորդ գլխի հրամանի խրատտուութեանն, բայց կարգաւորութիւն մկրտութեան սրբոյ աւազանին եւ փոյթ յաւժարութեանն Գ տաւնիցն, յորում առաւել եւս փափագեն միգազդ փութացուցանել ի մկրտութիւն զընծայեալսն Աստուծոյ, եւ կա-

[1] էջ 89բ—90բ։

[2] էջ 223։

[3] Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 15, ծանոթ. 1։

տարել զաւրինակ մեծ փրկական խորհրդեանն, որ ի սուրբ եւ յերեւելի աւուրս կատարեցաւ։ Եւ զայս մեծաւ փափագանաւք փութան կատարել ի սուրբ տեղիսս Քրիստոսի, զոր պարտ է եւ ամենայն քրիստոնէից երկիւղածաց Քրիստոսի կատարել ի նոսա զկոչումն մկրտութեանն ի սուրբ յայտնութեանն ծննդեանն տեառն, եւ փրկական զատկի կենարար չարչարանացն Քրիստոսի, եւ ի շնորհաւլից Պենտակոստին, յորում աստուածային էջք Հոգւոյն կենդանարարի ի մեզ ծաւալեցան։ Զոր պարտ է զիւրաքանչիւր տաւնիցն պատճառ ծննդեանն եւ մկրտութեան ծանուցանել, զի եւ դուք ի նոյն փութացեալք կատարեցէք. քանզի յուսաւոր ծննդեանն Քրիստոսի եւ մեր մեղսաքաւիչ ծնունդ սրբոյ աւազանին ի նմին փրկական աւուրն կատարեցաւ, զի ի նմին աւուր առ յանձն մկրտիլ յաղագս առ մեզն զիջանելոյ։ Զի ոչ եթե ինքն կարաւտ ինչ էր սրբութեան, այլ զմեզ կամեցաւ սրբել ի մեղացն պղծութենէ, որ մեծաձայն գոչմամբ աղաղակէ ասելով, եթե ոչ ոք ծնցի ի ջրոյ եւ ի Հոգւոյ, ոչ կարէ մտանել յարքայութիւնն Աստուծոյ. զի ըստ նմին աւրինակի ծնեալք ընդ նմա, եւ մկրտեալք ընդ նմին եղիցուք ի սուրբ աւուր ծննդեանն Քրիստոսի։

Իսկ ի կենսաբեր յարութեանն զատկին, ի ձեռն մեռուցանելոյ զմեզս մեր ի ջուրս աւազանին նմանողք լինիմք մեռելութեան մահուան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, եւ երեքկին ընկղմամբն թաղել ի ջուրս սրբոյ աւազանին, զերեքաւրեայ թաղումն տեառն մերոյ նշանակեմք յանձինս մկրտելոցն, զոր եւ աստուածայինն առաքեալ յայտնապէս ցուցանէ, ասելով, թէ թաղեալք ընդ նմին մկրտութեամբն, նմանողք եղիցուք նմանութեան մահու նորա, զի եւ նորոգութեամբ յարութեանն հաղորդ լինիցիմք նմա ի կեանսն յաւիտենականս։

Իսկ յաւուրն շնորհապարգեւ սրբարար Պենտեկոստեին զլուսապայծառ ազդումն Հոգւոյն կենարարի, որ ի տեսակս հրեղէն լեզուաց իջեալ յառաքեալսն, պարգեւելով նոցա ձեռս ի վերայ մկրտեցելոցն դնելով, ընդունելով պարգեւս ի Հոգւոյն շնորհաց։ Ըստ նմին աւրինակի եւ մեք ի նմին աւուր ձեռս ի վերայ մկրտելոցն դնելով, նոյն հոգի պարգեւի, զորոյ զաւրինակն զգուշութեամբ անխափան կատարեմք, զի կատարեալք լիցուք։ Զայս Մակարիոս»[1]։

Ինչպես դժվար չէ նկատել՝ Անանիա Հաղբատեցու և Անանիա Շիրակացու մեջբերված հատվածների մեջ իմաստային և էական տարբերություններ չկան։ Ավելին, նույնությամբ գնում են ոչ միայն Հաղբատեցուց և Շիրակացուց բերված վերևի մեջբերումները, այլև Հաղբատեցու «Հակաճառութիւն ընդդէմ երկաբնակաց» աշխատության ԺԲ գլուխը սկզբից՝ «Բազում աշխատութիւնն գործառնութեանս մերոյ վասն սրբոյ տօնիս յԱստուծոյ էր»[2] մինչև նույն ձեռագրի 96-րդ բ էջի «Բայց նա ուրեմն խոտանեն բանք ճշմարտի. սակայն ոչ թիւրեսցուք ի ճանապարհէ հարցն» հատվածը[3]։ Միայն այստեղից հետո տարբեր են Անանիա Հաղբատեցու և Անանիա Շիրակացու բնագրերի վերջին փոքր մասը։

Այժմ մնում է պարզել, թե այս բնագիրը ումից ումն է անցել. Շիրակացուց Հաղբատեցո՞ւն, թե ընդհակառակը, ինչպես կարծում է Ակինյանը։ Ամբողջ

---

[1] Անանիա Շիրակացու մատենագրությունը, Երևան, 1944, էջ 283—284։

[2] № 567, էջ 89ա։

[3] Այս ամբողջը՝ մի քանի էջ տե՛ս և համմտ. Շիրակացու նշված ճառի հետ (պրոֆ. Աշ. Աբրահամյան, Անանիա Շիրակացու մատենագրությունը, էջ 283՝ «Բազում աշխատութիւն գործառնութեանս մերոյ վասն սրբոյ տաւնից» հատվածից մինչև 290-րդ էջի «բայց նա ուրեմն խոտան են բանք ճշմարտի, սակայն ոչ թիւրեսցուք» հատվածը)։

*հարցն այն է, որ Անանիա Շիրակացու նշված ճառը գտնվում է մեր Մատենադարանի թղթյա հնագույն ձեռագրում[1], որի ընդօրինակությունը կատարվել է 971 թ., այսինքն այն ժամանակ, երբ Անանիա Հաղբատեցին հավանաբար դեռ չէր ծնվել։ Նշանակում է՝ մինչև Անանիա Հաղբատեցին այս ճառը գոյություն ուներ։ Մյուս կողմից, Անանիա Շիրակացին վերևի մեջբերման հատվածի սկզբում շատ որոշակի գրում է, որ մկրտության վերաբերյալ Մակարը նամակ է գրել Հայաստան։ Կարծես Անանիա Շիրակացին կանխազգում էր, որ կարող են հետագայում նամակի հեղինակին՝ Մակարին շփոթել ուրիշների հետ, ինչպես այս դեպքում, նամակում ավելացնում է, թե խոսքը որ Մակարին է վերաբերում՝ այն Մակարին, որը մասնակցել է 325 թ. Նիկիայի ժողովին[2]։ Ուրեմն, VII դարում սույն նամակը գիտեին որպես Մակար Ա-ի հեղինակություն։ Հետևապես կասկած չի մնում, որ Անանիա Հաղբատեցին «Հակաճառութիւն ընդդէմ երկաբնակաց» աշխատության ԺԲ գլուխը վերցրել է Անանիա Շիրակացուց։ Այս բանը նշում է նաև ինքը՝ Անանիա Հաղբատեցին և չգիտես ինչու այն դարձյալ վրիպել է Ակինյանի ուշադրությունից։ Անանիա Հաղբատեցին նշված աշխատության ԺԳ՝ «Պատճառ երից սրբասացութեանն, զոր Հայք ի դէմս Որդւոյ ասեն» գլխի[3] սկզբի մասում գրում է. «Թէ վասն էր երիցս սրբասացութիւնն վերաբերի հասարակածութեանն եւ մի երրեակ խաչեցարն կցորդ ի վերայ յատուկ յանուն միածնի՝ որդւոյն Աստուծոյ, եւ թէ յորում ժամանակի եւ յորոց ումանց նախ կարգեցաւ. բայց նախ զյառաջագրեալ զխորհուրդ խաչին տեսչիր սկզբնաւորեալ ի կենաց տնկոյն որ ի դրախտին, զի անդուստ ի վերուստ իսկ արկեալ էր ի միտ երեքսրբեան տէրութեան զխորհուրդ փրկագործ խաչելութեան Աստուածն բանի, զոր յայլում տեղւոջ քաղեալ եմ եւ եդեալ. եւ ապա զայս,* զոր յԱնանիա վարդապետին գրոցն համառօտիւ ժողովեցի[4] *(ընդգծումը մերն է — Վ. Հ.)։ Թվում է, թե Հաղբատեցին «յԱնանիա վարդապետին գրոցն» ասելով նկատի ունի միայն Անանիա Շիրակացուն և նրա գրվածքները։ Այդ մասին առարկություն հազիվ թե լինի։ Գուցե առարկություն լինի այն մասին, թե Հաղբատեցու այս վկայությունը չի կարելի տարածել միևնույն աշխատության ԺԲ գլխի վրա, այլ խոսքը այստեղ վերաբերում է միայն նույն աշխատության ԺԳ գլխի աղբյուրներին։ Սակայն այն փաստը, որ Շիրակացու Հայտնության ճառը գոյություն ուներ մինչև Հաղբատեցու ծնունդը մի կողմից և վերջինիս վկայությունը Շիրակացու գրվածքներից ծաղկաքաղ անելու մասին («համառօտիւ ժողովեցի») մյուս կողմից, ոչ մի կասկած չեն թողնում, որ Հաղբատեցին օգտվել է Շիրակացուց։ Հետևապես Մակարի թղթի ընդարձակ բնագրից օգտվել է ոչ թե Անանիա Հաղբատեցին XI դարի առաջին կեսին, այլ Անանիա Շիրակացին VII դարում[5] և այն գիտե որպես Մակար*

---

[1] *№ 2679։*

[2] *Անանիա Շիրակացու մատենագրությունը, էջ 283։ Նույն միտքը բառացի տե՛ս Անանիա Հաղբատեցու անունով № 567 ձեռագրից վերևում մեջբերված ընդարձակ հատվածի սկզբում։*

[3] *№ 567, էջ 98ա—111բ։*

[4] *Նույն տեղում, էջ 98ա։*

[5] *Մովսես Կաղանկատվացին գրում է. «Նոյնպէս Մարկոս (կարդա Մակարիոս—Վ. Հ.) հայրապետն Երուսաղէմի, որ մի էր ի Նիկիական հարցն, յիւրում խրատական թղթին գրեաց առ Հայս յաղագս մկրտութեան, եթէ ի միում աւուր տօնեմք զԾնունդն և զՄկրտութիւնն, զոր-օրինակ մահն և թաղումն անկատար է առանց յարութեանն...» (Պատմութիւն Աղուանից աշխարհի, III գլ. ԺԳ, էջ 362)։ Այս ամբողջն արտահայտված ենք գտնում Մակար Ա-ի Վրթանես*

*Ա-ի գրած։ Եթե այս թուղթը գրված լիներ՝ Մակար Բ-ի կողմից VI դարի երկրորդ կեսին՝ 567 թ*[1]*, ինչպես կարծում է Ակինյանը, Անանիա Շիրակացու, որպես մատենագիր հանդես գալուց 50—60 տարի առաջ, հազիվ թե Շիրակացին շփոթեր թղթի հեղինակներին, մանավանդ որ նա գիտեր երկու Մակարների գործունեությունը*[2]*։ Նշանակում է Մակար Ա-ի թղթի մասին ունենք հանվանե վկայություն VII դարից։ Ուստի Ակինյանի «Ե—Է դարերու հայ մատենագիր-պատմագիրներու անծանոթ է թուղթս հանվանե»*[3] *պնդումը ճիշտ չէ։ Ինչպես նաև ճիշտ չէ նրա մի այլ պնդումը. «Անանիա Հաղբատեցի, երբ Պետրոս Գետա-դարձ կաթողիկոսի (1019—1054) հրամանավ կը գրեր յուր Հակաճառությունը, ուներ աչքի առաջ Մակարի թղթին ընդարձակ օրինակը և անկե կը բերեր յուր կոչումները, ուստի անծանոթ էր իրեն թղթին համառոտ խմբագրությունը Կանոնագրքին մեջ»*[4]*։ Իրականում Մակարի թղթի համառոտ խմբագրությանը անծանոթ էր Անանիա Շիրակացին, իսկ Անանիա Հաղբատեցին նշված թղթի ընդարձակ բնագիրը օգտագործել է վերջինիս միջոցով։*

*Մի այլ հանգամանք։ Ճիշտ է Ակինյանի դիտողությունը, որ Կանոնագրքում պահված այս բնագրի վերնագիրը սկզբնականը չէ և այն «Առանց տարակույսի կանոնագրոց խմբագրչեն է, ուստի և անհարազատ»*[5]*։ Եվ նա ենթադրում է, որ խորագիրը սկզբնապես պետք է լիներ այսպես. «Մակարիոսի արքեպիսկոպոսի Երուսաղէմի կանոնադրութիւն յաղագս կարգաց Կաթողիկէ եկեղեցւոյ, առ քրիստոսասէր եւ երկիւղած եպիսկոպոսապետն Վրթանէս եւ առ համօրէն եպիսկոպոսս եւ քահանայս Հայոց*[6]*»։ Այս ենթադրության համար նա վկայակո-չում է բնագրի նախաբանի հետևյալ հատվածը. «Վասն երկիւղին Աստուծոյ ոչ հեղգացաք... Ես Մակարիոս արքեպիսկոպոս Երուսաղէմի եւ ամենայն բազմու-թիւն եպիսկոպոսացս, որ ընդ իս են՝ [եւ] առաքել ի կողմանսդ Արեւելից առ քրիստոսասէր եւ երկիւղած եպիսկոպոսապետդ Վրթանէս եւ առ համայրէն եպիսկոպոսս եւ քահանայս Հայոց»*[7]*։*

*Հարց է առաջանում. եթե այս շարադրանքն ընդունում է Ակինյանը, ապա ինչո՞ւ է նա գտնում, որ Մակարը նամակը գրել է ոչ թե Հայոց կաթողիկոս Վրթանեսին, այլ Սյունյաց եպիսկոպոս Վրթանեսին։ Այս առթիվ հիշում ենք Վ. Հացունու բացատրությունը. «Ոչ Սյունյաց առաջնորդը կրնար «եպիսկոպո-սապետ» կոչվիլ և ոչ ալ Մակար կարող էր խոսիլ ամբողջ հայ կղերին՝ սովորա-կան եպիսկոպոսի մը բերանով, փոխանակ Հայոց կաթողիկոսին՝ որ կը հրամա-յեր եպիսկոպոսաց, և ինքը միայն կրնար լսեցնել յուր ձայնը»*[8]*։*

---

*կաթողիկոսին գրած թղթի ընդարձակ բնագրում (տե՛ս վերևի ընդարձակ քաղվածքում, էջ* XCIII—XCIV*, իսկ նույնի Կանոնագրքում մտած համառոտ տարբերակում չի պահվել միայն «եթէ ի միում աւուր տօնեմք զԾնունդն և զՄկրտութիւնն» հատվածը։*

*Հնարավոր է, որ Մովսես Կաղանկատվացին այս մեջբերումը վերցրած լինի Անանիա Շիրակացուց։ Բոլոր դեպքերում Մակար Ա-ի թղթի մասին տեղեկություն ունենք նաև X դարից։*

[1] *Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 77։*

[2] *Պրոֆ. Աշ. Աբրահամյան, Անանիա Շիրակացու մատենագրությունը, էջ 284, 395—396։*

[3] *Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի հայրապետի..., էջ 22։*

[4] *Նույն տեղում, էջ 108։*

[5] *Նույն տեղում, էջ 11։*

[6] *Նույն տեղում, էջ 11։*

[7] *Տե՛ս սույն հատորը, էջ 219—220. հմմտ. նաև Դ հոդվածի սկիզբը։*

[8] *Բազմավէպ, 1929, էջ 260, տե՛ս նաև նրա երկրորդ հոդվածում (Բազմավէպ, 1931 թ., էջ 70)։*

*Թվում է, թե պարզ է ասվածը։ Ասվածը ցույց է տալիս, որ սույն կանոնախումբը Երուսաղեմի հայրապետ Մակար Ա-ի նամակն է ուղղված Հայոց կաթողիկոս Վրթանեսին (IV դար) և Ակինյանի խաչընդուս ջանքերը այն վերագրելու Սյունյաց Վրթանես եպիսկոպոսին (VI դար)՝ իզուր են։*

**Կարինի կարծեցյալ ժողովի կանոնախումբը** *Կանոնագրքում դրված է 42 (ԽԲ)-րդ համարի ներքո։ Հենց սկզբից ասենք, որ այստեղ նշված Կարինի ժողովը ոչնչով չի լծորդվում մեր սկզբնաղբյուրներում բազմիցս հիշատակվող այն ժողովի հետ, որ հրավիրեց Հերակլ կայսրը, ուր և Եզր կաթողիկոսն ընդունեց քաղկեդոնական դավանանք։ Պատմիչների մեծ մասի համաձայն (Ասողիկ, Սամուել Անեցի, Կիրակոս Գանձակեցի, Ստ. Օրբելյան և ուրիշներ) այս ժողովը հրավիրվել է Կարինում, մինչդեռ Սեբեոսը և Հովհ. Դրասխանակերտցին այդ մասին նշում չունեն։ Սեբեոսը գրում է. «եւ գնաց կաթուղիկոսն յերկիրն Ասորեստանի, ետես զթագաւորն եւ հաղորդեցաւ ընդ նմա աւրինաւք»[1], իսկ Հովհ. Դրասխանակերտցին անորոշ է գրում. Եզր կաթողիկոսն «յանձն առնու երթալ առ կայսր»[2] հավանաբար Երուսաղեմ։ Սկզբնաղբյուրների հավաստած Կարինի ժողովը տեղի է ունեցել 629 թ.։ Վերջինիս մասին պատմիչների հաղորդածն էլ հավանաբար անցել է Հայաստանում հրավիրված ժողովների մի քանի ցուցակներին, օրինակ, Հովհ. Օձնեցու[3], Մխիթար Գոշի[4], Ստ. Օրբելյանի[5] և Անանունի[6]։*

*Այսպիսով, առկա եղած փաստերը վերաբերում են Հերակլ կայսեր և Եզր կաթողիկոսի ժամանակ Կարինում կայացած ժողովին։ Իսկ մեզ հետաքրքրող Կարինի ժողովի մասին սկզբնաղբյուրները բացարձակ առումով լռում են։ Միակ սկզբնաղբյուրը այդ մասին առաջարկվող կանոնախմբի առաջաբանն է, այն էլ, դժբախտաբար, հակասական տեղեկություններով լի։ Այստեղ կարդում ենք, որ Թեոդուպոլսում (Կարին) տեղի է ունեցել ժողով «հրամանաւ մեծի թագաւորին Յուստինեայ» «հանդերձ կաթողիկոսաւն Հայոց Սահակաւ»։ Թերևս քննության առանձին նյութ չդարձնենք XIV—XV դարերի մատենագիր Գրիգոր Տաթևացու «Գիրք Հարցմանց»-ի՝ այս ժողովին վերաբերող տողերը, ուր կարդում ենք. «Երկրորդն է ժողովն Թէոդուպօլսի, որ այժմ կոչի Կարնոյ քաղաք։ Ոչ այն զոր յետոյ Հերակլ քաղկեդոնիկ ժողովեաց եւ խաբեաց զԵզր կաթողիկոսն Հայոց։ Այլ հրամանաւ մեծի թագաւորին Ուստինեայ ժողովեցան Յունաց եւ Հռոմոց եւ Հայոց եւ Վրաց եւ Աղուանից եպիսկոպոսունք եւ կաթողիկոսն Հայոց Սահակ, եւ հաստատեցին զկանոնսն երից սուրբ ժողովոյն որ ի Նիկիայ, ի Կոստանդնուպօլիս եւ յԵփեսոս։ Եւ նզովեցին զաղանդն Մարկիանու եւ զԱրտեմոնի եւ զտումարն Լեւոնի. եւ միաբանեցան ի մի հաւատս սուրբ առաքելոցն եւ ի կանոնս սուրբ ժողովոյն ինչ պէտք էին յաւելին գլուխս Թ ի զգուշութիւն եկեղեցւոյ»[7]։ Սակայն այս տեղեկությունը համարում ենք նշանակալից, քանի որ քաղված լինելով Կանոնագրքի սույն կանոնախմբից՝ նորություն չի բովանդակում։*

1 *Պատմութիւն..., էջ 102։*

2 *Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 77։*

3 *Գիրք թղթոց, էջ 221, 223։*

4 *№ 2966, էջ 67ա։*

5 *Պատմութիւն..., էջ 455։*

6 *№ 2335, էջ 36բ։*

7 *Գիրք հարցմանց, էջ 544։*

Ուսումնասիրողներից Միքայել Չամչյանը, Աբել Մխիթարյանցը, Ներսես Մելիք-Թանգյանը, Լեոն և ուրիշներ, իրենց ուսումնասիրություններում անտեսել են այս ժողովի որոշումները և լռությամբ անցել դրանց կողքով, սակայն առանձին ուսումնասիրողներ փորձել են հավաստել այս կանոնախմբի վավերականությունը և ցույց տվել, թե ե՞րբ կարող էր տեղի ունենալ այդ ժողովը։ Կարապետ եպիսկոպոսի (Տեր-Մկրտչյան) կարծիքով Կարինի այս ժողովը, ինչպես ակնարկված է կանոնախմբի առաջաբանում, հրավիրվել է Հայոց կաթողիկոս Սահակ Բ Հաբքացու (իմա՛ Ուղկացու, 534—539 թթ.) օրոք 532 թվականից առաջ[1]։ Մ. Օրմանյանը կարծում է, որ այդ ժողովը կայացել է 692 թ. Տրուլյան ժողովից հետո, ի հակադրություն քաղկեդոնականության և Տրուլյան ժողովի, ուր հայ եկեղեցու ծիսական խնդիրների մասին մի քանի կանոններ էին ընդունված։ Օրմանյանը թեև որոշ տարակուսանքով, բայց այնուամենայնիվ կարծում է, որ Կարինի ժողովը քանի որ չհամապատասխանեց Հուստինիանոս Բ կայսեր կամքին և չհամաձայնեց Քաղկեդոնի դավանության, զայրացրեց կայսրին, և վերջինս Հայոց կաթողիկոս Սահակ Գ Ձորոփորեցուն (677—703 թթ.) հինգ եպիսկոպոսների և մի քանի իշխանների հետ բանտարկեց և ուղարկեց Կ. Պոլիս[2]։

Այսպիսով, Կարապետ եպիսկոպոսի կարծիքով Կարինի ժողովը հրավիրվել է Հուստինիանոս կայսեր և Սահակ Բ Հաբքացի կաթողիկոսի օրոք 532 թ. առաջ, իսկ Օրմանյանի կարծիքով՝ Հուստինիանոս Բ կայսեր և Սահակ Գ Ձորոփորեցու օրոք, 690-ական թվականներին։ Վերջին կարծիքը հիմնավոր չէ, որովհետև, եթե ժողովը տեղի ունեցած լիներ 690-ական թվականներին, անհնարին է, որ վրաց եկեղեցու ներկայացուցիչները մասնակցած լինեն, քանի որ վրաց եկեղեցին այդ ժամանակ արդեն բաժանված էր հայ եկեղեցուց և պաշտպանում էր վերջինիս հակառակ դրույթներ։ Իրականում, եթե այդ ժողովը կայացել է, ապա այն կարող է տեղի ունեցած լինել Հուստինիանոս Ա կայսեր և Սահակ Բ Հաբքացի կաթողիկոսի օրոք։ Սակայն այս վարկածն էլ հեռու է ճշմարտությունից։ Հակոբոս Տաշյանն անդրադառնալով սույն կանոնախմբի վավերականության հարցին, միանգամայն ճիշտ կերպով այն համարում է կեղծ, և նրա հորինողը, ինչպես կարծում է Տաշյանը, փորձում է մի ժողով գումարել տալ Կարինում Հուստինիանոս Բ և Սահակ Գ Ձորոփորցու օրոք[3]։

Ժողովի որոշումների առաջաբանում ասվում է, որ «Հրամանաւ մեծի թագաւորի Յուստինեայ» ժողով կայացավ «ի միջասահմանս աշխարհին Հայոց, Վրաց, եւ Աղուանից» որին մասնակցում են «յամենայն քաղաքաց եւ յաշխարհաց Յունաց եւ ի Հոռոմոց եւ ի մեծն Հռոմայ», Հայաստանի, Վրաստանի և Աղվանքի ներկայացուցիչները։ Ինչպես ցույց է տալիս ժողովի որոշումների ուսումնասիրությունը, դրանք ունեն հակաքաղկեդոնական բնույթ։ Թեև չեն նշված Նեստորի և հետևորդների անունները, բայց մերժում է Լևոնի տոմարը։ Հարց է առաջանում. կարո՞ղ էին Արևմուտքի եկեղեցիները, նույնիսկ Հռոմը, մասնակցել այս ժողովին և ընդունել իրենց դրույթները խարազանող

---

[1] Հայոց եկեղեցւոյ պատմութիւն, մասն Ա, Վաղարշապատ, 1908, էջ 196—197։ Ի դեպ, այդպես է կարծում նաև Գրիգոր Տաթևացին վերևի մեջբերման մեջ, գտնելով, որ Կարինի ժողովը տեղի է ունեցել մինչև Հերակլ կայսեր դարձյալ Կարինում հրավիրված ժողովը։

[2] Ազգապատում, էջ 766—767։

[3] Վարդապետութիւն առաքելոց, էջ 240—241։

կանոններ, ինչպես սույն կանոնախմբի կանոններն են։ Իհարկե ոչ։ Այս կանոնախմբի վավերականության մասին Տաշյանի եզրակացությունը միանգամայն հիմնավոր և ճիշտ ենք համարում. «Թե ամբողջ այս պատմվածքն յուր այժմու հանգամանաց մեջ բոլորովին անպատմական և անհեթեթ կարկատանք մըն է, և ոչ վայրկյան մը կըրնա տարակուսվել։ Դժվար է երևակայել, թե ինչպես կըրնար պատմական դույզն ծանոթություն ունեցող մ՚ այս պարագայիս մեջ... ստեղծել պատմություն մ՚որուն համեմատ ոչ միայն Հայք, Վիրք և Աղվանք, այլև «Յոյնք և Հոռոմք» և «ի մեծն Հռոմայ» անգամ եպիսկոպոսք գան ժողով գումարեն ի Կարին, և այն՝ մերժեն Չորրորդ տիեզերական ժողովն, դնեն այնպիսի կանոններ, որոնք այն ատեն բոլորովին հակառակ էին այն եկեղեցյաց սովորությանց, ինչպես է Ծննդեան տոնը հունվար 6-ին կատարել, անապակ անջուր սրբագործել և այլն»[1]։

Հետաքրքիր է նաև հետևյալ փաստը. Ա կանոնում գրված է. «Եթէ պատրիարգ իցէ եւ եթէ եպիսկոպոս հրամանաւ թագաւորականաւ ելցէ յաշխարհէ եւ յաքսորս բնակեսցէ մինչեւ ի մահ»[2] եթե հարում են Արտեմոնի դավանանքին։ Ինչպե՞ս կարող էր այդ տողերը գրվել, երբ հայ իրականության մեջ այս ժամանակ թագավոր չկար։ Սա անտեղյակություն է և կեղծիք։

Թե ե՛րբ է ստեղծվել այս կեղծ բնագիրը, դժվար է ասել, սակայն կարելի է հաստատ ասել, որ սույն բնագիրը չի մտել Կանոնագրքի ոչ Հովհ. Օձնեցու VIII դարի և ոչ էլ X դարի խմբագրության մեջ, այլ մտել է Կանոնագրքի XI դարի խմբագրության մեջ։

**Ներսես կաթողիկոսին վերագրված կանոնախումբը** Կանոնագրքում դրված է 43 (ԽԳ)-րդ տեղում «Սահմանք եւ կանոնք կարգի եկեղեցւոյ սրբոյն Ներսէսի հայրապետի Հայոց գլուխք ԽԳ» խորագրով։ Վերնագրի «սրբոյն Ներսէսի հայրապետի Հայոց» հատվածը մեզ հուշում է, որ հեղինակը հայ եկեղեցու կաթողիկոսներից մեկը պետք է լինի։ Քննության ենթակա շրջանում հայ եկեղեցու պատմության մեջ հանդիպում ենք չորս Ներսես կաթողիկոսի, Ներսես Ա, որը կաթողիկոս եղել է 353—373 թթ., Ներսես Բ Աշտարակեցի կամ Բագրևանդացի՝ 548—557 թթ., Ներսես Գ Իշխանեցի կամ Շինող՝ 641—661 թթ., Ներսես Դ Շնորհալի՝ 1166—1173 թթ.։ Այս չորս Ներսեսներից որի՞ն կարելի է համարել սույն բնագրի հեղինակ։ Վերնագրում նշված «սրբոյն Ներսէսի» արտահայտությունը թերևս հարմար լիներ Ներսես Ա-ին կամ Ներսես Դ Շնորհալուն, որովհետև հայ եկեղեցին վերջիններիս դասել է սրբերի կարգը։ Սակայն ոչ մի փաստ չունենք Ներսես Ա-ին վերագրելու, իսկ Ներսես Շնորհալուն չենք կարող վերագրել, որովհետև նրա կաթողիկոս դառնալուց շուրջ 70 տարի առաջ այս կանոնախումբը արդեն մտել էր Կանոնագրքի XI դարի հավաքածուի մեջ[3]։ Վերջինիս սկզբում դրված է Կանոնագրքի բովանդակության ցանկը, ուր ԽԳ համարի տակ կարդում ենք. «Կանոնք սրբոյն Ներսիսի Գ-րդ գլուխ ԻԳ»[4]։ Ուրեմն, այս կանոնախմբի հեղինակը որոշելու առաջին փորձը կատարվել է XI դարում և այն վերագրել են Ներսես Գ Շինողին։ Ուրիշ-

[1] Վարդապետութիւն առաքելոց, էջ 241—242։

[2] Տե՛ս ներքևում, էջ 247։ Հմմտ. նաև Ե կանոնը, էջ 251։

[3] Խոսքը Նոր Ջուղայի Ամենափրկիչ վանքի մատենադարանի № 131 ձեռագրի մասին է, ընդօրինակված 1098թ. մեր օգտագործած A ձեռագիրը։

[4] Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 4։

*ներ, օրինակ՝ Վ. Բաստամյանցը, հեղինակ համարում է Ներսես Բ Բագրևանդացուն*[1]։

*Եթե Ներսես Գ Շինողին վերագրելու հիմքեր չունենք, ապա Վ. Բաստամյանցը փորձում է իր կարծիքը հիմնավորել, գրելով, թե «Ուշադրության արժանին այն է, որ հիշյալ բոլոր կանոնագրքերի մեջ (իմա՛ իր օգտագործած —Վ. Հ.) այս երկու տեսակ կանոնները (իմա՛ առաջին՝ Ներսես և Ներշապուհի ու երկրորդ՝ այս կանոնախմբերը—Վ. Հ.) միշտ միասին են դրված*[2]։ *Վ. Բաստամյանցի օգտագործված ձեռագրերում ստուգեցինք երկու Ներսեսների անունով մեզ հասած կանոնախմբերի տեղը, և նկատեցինք, որ դրանք նշված ձեռագրերում միշտ չէ, որ միասին են դրված. օրինակ՝ Բաստամյանցի նշած №№ 746, 752, 759 (այժմյան համարակալմամբ համապատասխանաբար №№ 654, 833, 660) ձեռագրերում այս երկու կանոնախմբերը միմյանցից դրված են բավականին հեռու։ Այսպես է դրված նաև Կանոնագրքի քննական բնագիրը կազմելու համար մեր կողմից օգտագործված 50 ձեռագրերում (սրա մեջ է մտնում նաև վերևում նշված №№ 654, 660 ձեռագրերը)։ Բաստամյանցի նշած մյուս ձեռագրերում՝ №№ 741, 742, 743, 750, 761 (այժմյան համարակալմամբ համապատասխանաբար №№ 649, 650, 651, 658, 778) երկու Ներսեսների կանոնախմբերը թեև հաջորդում են միմյանց, բայց այդ փաստը հիմք չի տալիս այս կանոնախմբի հեղինակին համարել Ներսես Բ Բագրևանդացուն, որովհետև այս ձեռագրերը, բացառությամբ № 778-ի լիակատար կանոնագրքեր չեն, այլ համառոտ, որոնք հանդես են եկել սկսած XIV դարից և իրենց մեջ լրիվ չեն պարունակում Հովհ. Օձնեցու կազմած և սրանից հետո Կանոնագրքին ավելացված կանոնախմբերը։ Այսպիսի կանոնագրքեր մեր Մատենադարանում պահվում են մի քանի տասնյակի հասնող ձեռագրերում, որոնց մի խմբում Կանոնագիրքը վերագրվում է Եպիփանին. «Գէորգեայ Հայոց վարդապետի համառաւտ ժողովեալ ի կանոնվնաց սրբոց հարցն յԵպիփանու կանովն» վերնագրով*[3]։ *Նման կանոնագրքերից մեկում պահվել է գրչի շատ բնորոշ հիշատակարանը. բերում ենք մեզ հետաքրքրող հատվածը. «...սատանոր կատարեցաւ աստուածային օրինացն հեռեւողաց սուրբ հարցն կանոնագրաց* լիակատար կանովնաց սակաւ ծաղկաքաղս փոքր մի կանոնս»[4] *(ընդգծումը մերն է—Վ. Հ.)։ Նշանակում է հետագայի խմբագրողները կամ գրիչները սույն կանոնախումբը դիտել են Ներսեսի և Ներշապուհի կանոնախմբի հեղինակ Ներսես Բ Բագրևանդացու գրչի արդյունք և վերադասավորելիս դրել հաջորդաբար*[5]։

*Իսկ № 778 ձեռագիրը, թեև լիակատար Կանոնագիրք է ուրույն կառուց-*

---

[1] *«Փորձ», 1881, IV էջ 57, Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց, Հառաջաբանութիւն հրատարակողի, էջ 74—75, ծանոթ. 44, բնագրում էջ 105, ծանոթ. 185, էջ 108, ծանոթ. 192 և այլն։*

[2] *Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց, Հառաջաբանութիւն հրատարակողի, էջ 74—75, ծանոթ. 44։*

[3] *№ 1242, էջ 88ա. հմմտ. նաև №№ 657, էջ 88ա, 833, էջ 7բ, 6562, էջ 47ա և այլ ձեռագրերում։*

[4] *№ 657, էջ 129բ, ձեռագիրը 1614 թվի ընդօրինակություն է։*

[5] *Տեղն է հիշելու, որ այս կանոնախմբի՝ Ա. Ղլտճյանի կազմած գիտա-քննական բնագիրը չքացված է այսպիսի ձեռագրերի ընթերցումներով, որոնք կատարված են հետագայում և ունեն հողվածի միտքը պարզ և հասկանալի դարձնելու բնույթ, հետևապես նման ընթերցումները, թեկուզ հասկանալի, չեն համապատասխանում սույն կանոնախմբի սկզբնական բնագրին։ Ուստի նման ընթերցումներով պետք է ոչ թե բնագիր կազմել, այլ այն բացատրել։*

*վածքով[1], սակայն ձեռագրի հիշատակարանը մեզ ենթադրել է տալիս, որ ձեռագրի պատվիրատու՝ Լվովի եկեղեցու ավագ քահանա տեր Զաքարիան Կանոնագրքի նախնական կառուցվածքի վրայով ձեռք է սահեցրել և մասնակիորեն փոփոխել կառուցվածքը. «Դարձեալ աղաչեմ զձեզ... մի մոռանալք յիշել ի Քրիստոս զյառաջ անուանեալ տէր Զաքարիայն, որ բազում աշխատութեամբ եւ ջատագովութեամբ պարզեաց եւ սրբագրեաց զկանոնս...»[2]։ Թերևս այդ «պարզեաց»-ի արդյունք է ոչ միայն երկու Ներսեսների կանոնախմբերի միմյանց հաջորդումը, այլև այն, որ տիեզերական երեք ժողովները՝ Նիկիա, Կ. Պոլիս, Եփեսոս դրված են հաջորդաբար, մինչդեռ մեզ հայտնի այլ կանոնագիրք ձեռագրերում դրանք ուրիշ դասավորություն ունեն[3]։*

*Այս փաստերից հետո կարելի է ընդունել, որ Բաստամյանցի քննության առարկա հանդիսացող եզրակացությունը հիմնված է միանգամայն թույլ հենակետի վրա։ Այս կանոնախումբը իրավամբ անվավեր են համարել և հետագայի հորինվածք՝ Ն. Մելիք-Թանգյանը[4] և Ա. Ղլտճյանը[5]։ Վերջինս գրում է նաև, որ կանոնների ընդհանուր բնույթը ցույց է տալիս, թե նրանք խմբագրված լինեն զանազան ժամանակներում ու հետո իրար հետ միացված[6]։ Այդ դժվար է ասել, քանի որ փաստեր չկան։ Սակայն նրա՝ հետագայի հորինվածք լինելը կասկածից դուրս է։*

*Կանոնախմբի վերնագրում նշված է. «Սահմանք եւ կանոնք կարգի եկեղեցւոյ»։ Ծանոթանալով հոդվածների բովանդակությանը՝ եկեղեցու կարգավորության, նրա տարբեր աստիճան սպասավորների կամ պաշտամունքի վերաբերյալ բան չենք գտնում։ Հոդվածների նյութերը վերաբերում են մարդկանց առօրյա խնդիրներին։ Թե երբ կարող էր ստեղծվել այս կանոնախումբը, հնարավոր է պարզել ներկա բնագրի հոդվածների աղբյուրագիտական հիմքերի քննությամբ։ Այդ աշխատանքի մեզանից տասնյակ տարիներ առաջ կատարել է Ա. Ղլտճյանը։ Նախ քննենք նրա արածը։*

*«Հանդէս Ամսօրեայ»-ի 1908 թ. մայիս (էջ 133—139) և հուլիս (էջ 161—166) համարներում նա տվել է այս կանոնախմբի ուսումնասիրության արդյունքները, իսկ օգոստոսի (էջ 227—232) համարում՝ գիտա-քննական բնագիրը։ Ահա թե ինչ է գրում նա. «Այս կանոնները խմբագրողն իր կանոններից Ա—ԺԲ, ԺԳ—ԺԷ, ԺԹ, Ի, ԻԲ—ԻԵ, ԻՁ և ԼԴ—Խ կանոնները խմբագրելիս օգտվել է Առաքելական ԻԹ և ԽԵ, Նիկիական, ԺԳ, Անկյուրիայի Ժ, ԺԷ, Կեսարիայի, Ա, Բ, Գ, Ե, Թ, Ժ, Նեոկեսարիայի, Ա, Ը, Թ, ԺԱ, ԺԲ, Բարսեղի, ԺԱ, ԻԵ, ԻՁ, ԻԸ, Թադեոսի, ԺԹ, Ի, ԻԱ, ԻԸ, Լուսավորչի Դ, Ե, Զ, ԺԱ, ԺԴ, Շահապիվանի Բ, ԺԳ, Պարտավի (իմա՛ Սիոնի —Վ. Հ.) ԺԱ, ԺԳ, ԻԳ, Բարսեղի (Բ) Խ, ԽԵ, ԾԳ, ՃԻԱ, ՃԽՁ, ՄԷ, ՄՀԱ, Աթանասի ԿԱ, Գոշի Ա մասն ՁՁ, Բ մասն ԽԸ, ԽԹ, ԾԱ, ԴԴ կանոններից, երբեմն համարյա թե բառացի արտագրելով նրանցից»[7]։ Մնացած 12 կանոններն են կազմում, ըստ Ղլտճյանի, խմբագրողի ինքնուրույն մասը, որը*

---

1 *Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ XXX, ծանոթ 5։*

2 *№ 778 (ո), էջ 291բ։*

3 *Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 4։*

4 *Հայոց եկեղեցական իրաւունքը, գիրք Ա, էջ 369։*

5 *«Հանդէս Ամսօրեայ» 1908, մայիս, էջ 134։*

6 *Նույն տեղում, հունիս, էջ 166։*

7 *«Հանդէս Ամսօրեայ», 1908, մայիս, էջ 134։*

վերցված է սովորույթի իրավունքից[1]։ Մի կողմ թողնելով մի շարք նշումներ, օրինակ՝ Առաքելական ԻԹ, ԽԵ, Նիկիական ԺԳ, Բարսեղի ԺԱ, ԻԸ, Թադեոսի Ի, ԻԱ, Պարտավի (Սիոն) ԻԳ, Բարսեղի (Բ) Խ, ՄՀԱ հոդվածները, որ արտահայտված չենք գտնում սույն կանոնախմբում, ավելացնենք, որ Գոշից օգտվելու փաստը բոլորովին իզուր է նշված։ Կարծեցյալ Ներսեսը ինչպես կարող էր իր կազմած կանոնախմբում օգտվել Գոշից, երբ վերջինիցս գրեթե հարյուր տարի առաջ այդ կանոնախումբը արդեն մտել էր Կանոնագրքի XI դարի հավաքածուի մեջ[2]։

Ա. Ղլտճյանի վերևում նշած՝ Գոշի հոդվածները հեռավոր նմանություն ունեն սույն կանոնախմբի համապատասխան հոդվածների հետ։ Վերևում էլ ցույց ենք տվել, որ Գոշի օգտագործած Կանոնագիրքը չուներ 39 (ԼԹ)-րդ կանոնախմբից սկսած, հետևապես այս կանոնախումբը ևս։ Իսկ Ղլտճյանը ի՞նչ հիման վրա էր Գոշի Դատաստանագիրքը համարում այս կանոնախմբի աղբյուրներից մեկը։ Այս հարցի պատասխանն իմանում ենք «Մուրճ»-ի 1905 թ. մայիսի համարում Ն. Մելիք-Թանգյանի «Հայոց եկեղեցական իրաւունքը» գրքի մասին նրա գրախոսականից։ Թվելով մի շարք ձեռագրեր՝ Ղլտճյանն այնուհետև գրում է. «որոնց մեջ 751 ձեռագիրը[3] մատենադարանի (իմա՛ էջմիածնի —Վ. Հ.) բոլոր կանոնագրքերի մեջ ամենահինն է (1368 թվին գրված) ...»[4] (ընդգծումը մերն է—Վ. Հ.)։

Այսպիսով, այս թյուրիմացությունը ծնունդ է այն բանի, որ Էջմիածնի № 751 (այժմյան համարակալմամբ № 659) ձեռագրից հին կանոնագիրք-ձեռագիր, ինչպես օրինակ Նոր Ջուղայի վերևում նշված (XI դար) և մեր Մատենադարանի № 6409 (XIII դար) ձեռագրերը այն ժամանակ Ղլտճյանին ծանոթ չէին, որոնցից առաջինը Գոշի Դատաստանագրքից գրեթե հարյուր տարի վաղ գոյություն ուներ և պարունակում էր այս կանոնախումբը։

Վերջինիս Զ հոդվածի համար, եթե Սիոնի կանոնախմբի ԺԳ հոդվածը որպես աղբյուր կարող ենք երկբայությամբ նշել, քանի որ այդ կարող էր քաղված լինել նաև Նեոկեսարիայի Թ հոդվածից, մանավանդ երկու բնագրերում էլ պատժաչափերը նույնն են, ապա ԺԴ հոդվածի համար, որպես աղբյուր, կարելի է հաստատորեն մատնացույց անել Սիոնի ԺԱ հոդվածը։

Այս փաստերը մեզ ստիպում են հավաստել, որ կարծեցյալ Ներսեսը օգտագործել է ինչպես Կանոնագիրքը, այնպես էլ Սիոնի կանոնախումբը, լինի այն Կանոնագրքում, թե վերջինից դուրս։ Նշանակում է՝ մեր հեղինակը հանդես է եկել VIII դարից հետո։ Ժամանակագրական այս սահմանը թերևս անշարժ չէ։ ԻԷ հոդվածում հանդիպում ենք «ապռոնայէ» բառին։ Ղլտճյանն իրավամբ գրում է, որ այդ բառը չի բացատրված հայերեն բացատրական և ոչ մի բառարանում[5]։ Երկար որոնումներից հետո նա գալիս է այն ենթադրության, որ նշված բառը կազմվել է լատիներեն abortus (բայը՝ aborior) բառից, հայացնելով այն՝ ապռոնել—ապորթել—ապռոնայել, այսինքն վիժել։ Հենց

1 Նույն տեղում։

2 Այս հավաքածուի բովանդակության ցանկը տե՛ս Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 3—4։

3 Մի այլ տեղ էլ այդ համարը նա սխալմամբ գրում է 741, տե՛ս «Հանդէս Ամսօրեայ», 1908, V, էջ 135։

4 «Մուրճ», 1905, V, էջ 154. Նույն միտքը տե՛ս «Հանդէս Ամսօրեայ»-ում 1908, V, էջ 135։

5 Հանդէս Ամսօրեայ, 1908, էջ 232։

դրա մասին է հոդվածի միտքը և բնագրում «ապոռնայէ» բառը բացատրված է «ձգէ» (խմա՛ վիժե) բառով[1]։ Հավանական ենք համարում այս ենթադրությունը։ Այսպիսով, սույն կանոնախումբը կարող էր հանդես գալ մի այնպիսի միջավայրում, որտեղ շփումը լատինների հետ առկա էր։ Իսկ այդպիսի շփում նկատում ենք Կիլիկիայում[2], որտեղ հայերը IX—X դարերում զգալի թիվ էին կազմում[3]։ Սրա հետ մեկտեղ, եթե նկատի ունենանք, որ մեզ հասած կանոնագիրքձեռագրերից ամենից հինը՝ XI դարի հավաքածուն ընդօրինակվել է և լրացվել նույնպես Կիլիկիայում[4], ապա բացառված չէ այն հնարավորությունը, որ Կիլիկիայի հայերի միջավայրում ստեղծվել է սույն կանոնախումբը։

Բարսեղ Կեսարացուն վերագրված «Վասն պէսպէս եւ բիւրապատիկ ախտից» կանոնախումբը, որի ՂԹ, ՃԻԱ, ՄԸ հոդվածներից օգտվել է կարծեցյալ Ներսեսը (հմմտ. համապատասխանաբար ԺԱ, Բ, ԼԸ հոդվածները), Կանոնագրքի X դարի խմբագրության մեջ արդեն կար, իսկ Ներսեսին վերագրված կանոնախումբը Կանոնագրքում մտել է, ինչպես ճիշտ կերպով դիտել է Ն. Մելիք-Թանգյանը, 997 թվականից հետո[5], այսինքն XI դարի խմբագրության ժամանակ։ Եվ իզուր է ջանք թափում Ա. Ղլտճյանը մերժելու Ն. Մելիք-Թանգյանի այդ վարկածը, հենվելով նրա թերևս ոչ ճիշտ մի արտահայտության վրա[6]։

Այսպիսով, այս կանոնախմբի ստեղծման ժամանակագրական միջոցը համարում ենք X դարից և Կանոնագրքում առաջին անգամ մտել է նրա XI դարի հավաքածուի մեջ։

Սակայն անհրաժեշտ ենք համարում մեր դիտողությունները ներկայացնել սույն կանոնախմբի ԻԲ կանոնի առթիվ Ա. Ղլտճյանի սրբագրության մասին։ Նշված կանոնում կարդում ենք. «Վասն զազգական կին առնելոյ. ցհինգերորդն մի՛ իշխեսցէ, եւ չորրորդն ապաշխարեսցէ եւ երրորդքն մեկնեսցին եւ ապաշխարեսցեն»[7]։ Առարկելով մի շարք հեղինակների (Վ. Բաստամյանց, Ն. Մելիք-Թանգյան, Ա. Սեդրակյան և ուրիշներ) Ա. Ղլտճյանը հոդվածի «ցհինգերորդն» բառը փոխարինում է «զերրորդն» բառով[8]։ Այս հարցին նա անդրադարձել է մանրամասնորեն իր երեք աշխատություններում[9]։ Երկար վիճելուց և պատմական ճանապարհորդություն կատարելուց հետո նա հոդվա-

---

[1] «Հանդէս Ամսօրեայ», 1908, V, էջ 232։ Հ. Աճառյանը «Հայերէն նոր բառեր Կանոնագրքի մէջ» իր հոդվածում «ապոռնա» բառը բացատրում է «հօսում կամ վիժում ունեցող» (Բազմավէպ, 1924 թ., էջ 81)։ Սակայն նա այս բառը համեմատում է նաև «հուն. ἀπίρροια «հօսում» ἀπόρροος «հօսում ունեցող» և կամ ἀπουρέω «միզած ժամանակ դուրս ձգել» բառերուն հետ, թեև առնցմե ոչ մեկուն ճշտիվ համապատասխան չըլլար։ Արդյոք ավելի մերձավոր ստորական ձև մը կա՞» (նույն տեղում)։ Դիմեցինք ստորագետ պրոֆ. Ե. Տեր-Մինասյանին։ Նա մերժեց այդ բառի ստորական ծագումը։

[2] Տե՛ս Г. Г. Микаелян, История Киликийского армянского государства, Ереван, 1952, стр. 181.

[3] Նույն տեղում, էջ 51։

[4] Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ LIX։

[5] Հայոց եկեղեցական իրաւունքը, գիրք Ա, էջ 369։

[6] «Մուրճ», 1905, V, էջ 154. տե՛ս նաև «Հանդէս Ամսօրեայ» 1908, V, էջ 134—135։

[7] Տե՛ս սույն հատորը, էջ 260—261։

[8] Տե՛ս «Հանդէս Ամսօրեայ», 1908, VIII, էջ 229, Կանոնգիրք Հայոց, Թիֆլիս, էջ 119։

[9] Ամուսնություն, ամուսնալուծություն և քաղաքացիական պսակ, Ալեքսանդրապոլ, 1904, Հանդէս Ամսօրեայի 1908, V, VI համարներում (տես վերևում) և Հայ հին իրաւունքը, Ալեքսանդրապոլ, 1913։

ծին տալիս է հետևյալ կերպարանքը. «Վասն զազգական կին առնելոյ. զեր-րորդն մի՛ իշխեսցէ, չորրորդն ապաշխարեսցէ և երրորդքն մեկնեսցին և ապաշխարեսցեն»[1]։ Այնուհետև Ա. Ղլտճյանը շարադրում է վերոբերյալ հոդ-վածից բխող հետևյալ կետերը. 1. Երրորդ աստիճանում չհամարձակվեն ամուսնանալ։ 2. Չորրորդ աստիճանում ամուսնացածները ապաշխարեն։ 3. Երրորդ աստիճանում ամուսնացածները բաժանվեն և ապաշխարեն[2]։ Եվ ապա այս հոդվածի մասին գրում է. «Մեր վերջնական եզրակացությունն այն է, որ նա (հոդվածը —Վ. Հ.) սահմանում է երրորդ աստիճանի արյունակիցների պսակի խիստ արգելք, և կողմնակի կերպով թույլ է տալիս չորրորդ աստիճանի արյունակիցների ամուսնություն»[3]։

Որ Ա. Ղլտճյանի առաջարկած ուղղումը ճիշտ չէ և բնագրում պետք է թող-նել «ցհինգերորդն» և ոչ թե դարձնել «զերրորդն», երևում է նաև 1661 թ. Ղալասար գյուղում ընդօրինակված № 838 ձեռագրի (էջ 138ա) ազգականների ամուսնու-թյան մասին տարբեր հեղինակներից արված քաղվածքներում։ Վերջիններիցս մեկի վերևում գրված է «Ներսէսի է» և բերում սույն հոդվածից հետևյալ քաղ-վածքը. «Ե-երրորդն՝ մի՛ իշխեսցէ և Դ-ն՝ ապաշխարեսցեն, և Գ-ն՝ մեկնեսեն»[4]։ Այն ժամանակ ճիշտ են հասկացել, հետո է, որ ոմանք շփոթել են և տվել տար-բեր բացատրություններ։

Մեզ ավելի ճիշտ է թվում նախորդ՝ «ցհինգերորդն» ընթերցումը։ Բնագրի «ցհինգերորդն մի՛ իշխեսցէ» հատվածը հոդվածում համարում ենք ընդհանուր դրույթ կամ սահմանում։ Եթե պատահի, որ մինչև հինգերորդ աստիճանը, ասենք, չորրորդ, երրորդ աստիճաններում ամուսնություններ լինեն, ապա չորրորդ աստիճանում գտնվողները ապաշխարեն՝ ամուսնությունը շարունակե-լով հանդերձ, իսկ երրորդ աստիճանում գտնվողները բաժանվեն և ապաշխա-րեն։ Մեր այս բացատրությունը հաստատող փաստեր հանդիպեցին ՊՊԿԱ գոր-ծերում[5]։ Ճիշտ է, այստեղ խոսքը ոչ թե հինգերորդ, այլ վեցերորդ աստիճանի ազգակցական կապի մասին է, մեկ աստիճանով հեռու վերևի նշումից, բայց մոտեցումը նույնն է։ 1909 թվականի հոկտեմբերի 14-ին էջմիածնի հոգևոր սինոդը հանդես է գալիս հետևյալ հայտարարությամբ հասի և չհասի հարցում. «... ա. Անվաւերք համարիցին պսակք կատարեալք մինչ ցհինգերորդ աստի-ճան ազգակցութեան և ցչորրորդ աստիճան խնամէութեան։ բ. Անթոյլատրելի համարիցին պսակք հինգերորդ և վեցերորդ աստիճանաց ազգակցութեան և չորրորդ աստիճանի խնամութեանց։ Բայց ի դէպս պատահմանց՝ յորժամ յայտնեսցի, եթէ կատարեալք են պսակք ի յիշատակեալ անթոյլատրելի աստի-ճանս, պսակքն համարիցին վաւերականք, իսկ պսակադիր քահանայն, պսա-կեալքն ենթարկեսցին խիստ ապաշխարանաց ըստ այսմ...»[6]։ Վավերագրի շարունակության մեջ խոսում է նման դեպքերի մասին. «Եփրեմ քահանայն տէր Ստեփանեան Ղայաբաշի գեղջ վճռովդ ծանուցեալ է յանցաւոր յայնմ, զի ի նոյեմբեր ամսեան 1905 ամի պսակեալ է նորա զԱրշակն Համբարձումեան

[1] Հանդէս Ամսօրեայ, 1908, VIII էջ 223, Կանոնգիրք Հայոց, էջ 119։

[2] Հանդէս Ամսօրեայ, 1908, VI, էջ 161։

[3] Նույն տեղում, էջ 164։

[4] էջ 80ա։

[5] Պատմության պետական կենտրոնական արխիվ (Երևան). այսուհետև ՊՊԿԱ։

[6] Ֆոնդ 57, գործ 1362, էջ 58աբ։ Տե՛ս նաև Խրիմյան հայրիկի 1899 թ. հունիսի 30-ի, դեկտեմբերի 17-ի և 1902 թ. հունվարի 4-ի կոնդակները («Արարատ» 1902 թ., Ա, էջ 3—7)։

ընդ Սաթենկան Յովսէփեան և զՍողոմոնն Բաբայեան ընդ Բաւականի Ղուլիեան, գիտելով, զի նոքա գտանին ընդ իրեարս ի վեցերորդում աստիճանի ազգակցութեան. **սոյն օրինակ պսակք թէպէտ և արգելեալ են կանոնական օրինօք եկեղեցւոյ Հայոց, սակայն ոչ համարին անվաւեր՝ յորժամ** *արդէն կատարեալ են նոքին*»[1] (ընդգծումը մերն է—Վ. Հ.)։

«Ամուսնություն, ամուսնալուծություն և քաղաքացիական պսակ» աշխատության մեջ Ա. Ղլտճյանը գրում է. «Պետք է առանձնապես շեշտել, որ հայ եկեղեցին ամուսնական չհասության դեպքում յուրաքանչյուր նոր աստիճան արգելելիս, հետևել է հունա-բուզանդական եկեղեցուն։ Յուրաքանչյուր նոր արգելք արձագանք է գտել (սխալմամբ տպագրված է գրել —Վ. Հ.) հարևան հայ եկեղեցու կյանքում և նա այդ ազդեցության տակ, իր կանոնական սահմանադրությունն անելիս, ուշ կամ շուտ, այնտեղ՝ արևմուտքում արդեն արգելված արյունակցական պսակների աստիճանները մտցրել իր եկեղեցու գործադրվող կանոնների մեջ՝ նախապես ազգի և եկեղեցու ներկայացուցիչների կանոնադիր ժողովի հաստատությունն ստանալով»[2]։ Մենք կասկածելի ենք համարում այս դրույթը։ Հայ եկեղեցին, որը արևմտյան եկեղեցու դեմ պայքարի դարավոր պատմություն ուներ, կապված քաղկեդոնականության հետ, հազիվ թե նման սարկամտությամբ հետևեր հունա-բուզանդական եկեղեցուն։ Ենթադրենք, թե Ա. Ղլտճյանի այս եզրակացությունը ճիշտ է, այն դեպքում ինչու է նա ջանում այս հոդվածի «ցհինգերորդն» բառը փոխել «զերրորդն» բառով, չէ որ Կ. Պոլսի պատրիարք Փոտի Նոմոկանոնում (tit. 13, cap. 2) մինչև IX դարը արգելվում էր ամուսնությունը ազգականների միջև մինչև չորրորդ աստիճանը, իսկ IX դարից այն արգելեցին հինգերորդ աստիճանում[3]։ Նշանակում է կարծեցյալ Ներսեսն էլ հետևել է Փոտի Նոմոկանոնին և գրել «ցհինգերորդն»։ Այսպիսով, այս ընթերցումը ևս իր հերթին ցույց է տալիս, որ սույն բնագիրը առաջ է եկել VIII դարից հետո, քանի որ հայ եկեղեցում սկսած Շահապիվանի ժողովից (նույնը և Առաքելական կանոնախմբում) մինչև Սիոնի Պարտավում հրավիրված ժողովը (VIII դ.) ամուսնությունը ազգականների միջև արգելվում էր մինչև չորրորդ աստիճանը ներառյալ։ Այս հարցի մասին, ինչքան մեզ հայտնի է, հայ եկեղեցական ժողովներում, VIII դարից հետո մինչև 1243 թ. Սսի ժողովը, որոշում չի ընդունվել։ Ներսես Շնորհալին[4] և Սսի ժողովը[5] ամուսնության թույլատրելի ազգականության աստիճանը ավելի են հեռացրել։

Վերևում արդեն ցույց տվեցինք մի շարք բնագրերի, օրինակ՝ Թադեոս առաքյալին, Բարսեղ Կեսարացուն, Ներսես կաթողիկոսին, Գրիգոր Աստվածաբանին վերագրված, Երկրորդ Նիկիական, Անտիոքի (Բ), Կարինի ժողովների

---

[1] Նույն տեղում, էջ 60ա. տե՛ս նաև 1916 թ. դեկտեմբերի 10-ի կանոնական կոնդակը նույն խնդրի մասին, ֆ. 57, գ. 1402։ Նույն ֆոնդի 1393 գործում, 1916 թ. ապրիլի 30-ի թվարկությամբ կան մի շարք գրություններ, ուր թույլատրվում է վեցերորդ աստիճանի արդեն կատարված ամուսնությունները, որոնք օրենքով արգելված են, էջ 36, 38—41, 86, 87 և այլն)։

[2] էջ 28։

[3] Այս տեղեկությունը վերցրել ենք Վ. Բաստմյանցի հոդվածից տե՛ս Փորձ, 1880, XI—XII, էջ 157։

[4] Թուղթ ընդհանրական, Էջմիածին, 1865, էջ 84—85։

[5] Ա. Ղլտճյան, Կանոնգիրք Հայոց, էջ 175, Կիրակոս Գանձակեցի, Պատմություն Հայոց, էջ 304—305։

կանոնախմբերի կեղծ լինելը և համոզված ենք, որ այդ հարցում հազիվ թե որևէ տարակույս լինի։ Սակայն կան բնագրեր, որոնք ներկա ձևի մեջ նույնպես կեղծ են, բայց այդ ցույց տալու համար մեր ձեռքի տակ առայժմ բավարար հիմքեր չունենք։ Օրինակ՝ Փիլիպպոս առաքյալի, Եփրեմ Ասորու[1], Կյուրեղ Աղեքսանդրացու, Եպիփան Կիպրացու, Հիպպոլիտի[2], Նեկտարի, Մանուելի, Մելիտոնի, Հովհան Մանդակունու մի քանի կանոնախմբերը և էլի ուրիշներ։ Ի դեպ, կեղծ ասելով պետք չէ հասկանալ հայ եկեղեցու տեսություններին, սահմանումներին ընդհանրապես կամ ծիսական սկզբունքներին և կամ ավատական հասարակության ավանդական սովորույթներին հակասող ինչ որ նոր բան։ Դրանք, կարելի է ասել, կեղծ են որևէ կանոնախմբի հեղինակի վավերականության առումով, իսկ կանոնական բնագիրը ոչ այլ ինչ է, եթե ոչ հեղինակների վավերականությունը կասկած չհարուցող և հայտնի ժողովների կանոնախմբերի ունեցած նյութերի մի նոր տարբերակ, բազմաթիվ դեպքերում վերցըված այս կամ այն հայտնի հեղինակի կամ ժողովի կանոնախմբերից։ Իսկ եթե պատահում է, որ առանձին հոդվածների աղբյուրագիտական հիմքերը պարզ չեն, ապա դրանք էլ, թերևս, սովորութային իրավունքից վերցված լինեն։ Նշված կանոնախմբերը թեև կեղծ են, բայց այդ բանը նրանց մի մասին չի զրկում որպես հասարակության զարգացման պատմական որոշ ժամանակա-

[1] Կանոնագիրք Հայոցի Ա հատորում (էջ XIX) խոսելով «ազատ»-ների իրավական վիճակի մասին գրել էինք. «Այս վիճակը արտահայտված ենք գտնում տակավին IV դարի հեղինակ Եփրեմ Խուրի Ասորու կանոնական մի գրության մեջ, որը հայերեն թարգմանվել է V դարում, իսկ հետագայում՝ Հովհ. Օձնեցուց հետո մուծվել Կանոնագրքում»։ Ինչպես հիմա է մեզ թվում, այդ գրությունը կեղծ է, վերագրված Եփրեմ Ասորուն։ Սակայն այնտեղ քննված հարցի մեր բացատրության համար այս ճշտումը նշանակություն չունի, որովհետև այնտեղ մեզ հետաքրքրում էր ոչ թե հեղինակի հարցը, այլ քննության ենթակա հատվածի միտքը։ Այս կանոնախմբի Բ հոդված մի հատվածի վերաբերյալ ըստ երևույթին ճիշտ է Ակինյանի կարծիքը՝ համապատասխան հատվածը Շահապիվանի ժողովի կանոնախմբից անցել է Եփրեմ Ասորու անունով հայտնի կանոնախմբին («Հանդէս Ամսօրեայ» 1949, № 4—12, էջ 112)։

[2] Սա II—III դարի անձնավորություն է (Ե. Տեր-Մինասյան, Ընդհանուր եկեղեցական պատմություն, հատ. Ա, Էջմիածին, 1908, էջ 138։ Պրոֆ. Ե. Տեր-Մինասյանը «Կանոնագիրք Հայոց»-ի Ա հատորի նյութերի մշակման ժամանակ մեր ուշադրությունը հրավիրեց Ֆ. Լաուխերտի „Die Kanones der wichtigsten altkirchlichen Concilien nebst den apostolischen Kanones“, (Freiburg i[m] B[reisgau] und Leipzig, 1896) գրքի վրա և իր անձնական օրինակը սիրահոժար կերպով տրամադրեց մեզ օգտագործելու, որի համար հայտնում ենք մեր շնորհակալությունը), հետևապես, այդ ժամանակ վեճ գոյություն չուներ Քրիստոսի ծնունդը և մկրտությունը մեկ օրում՝ հունվարի 6-ին, կամ տարբեր օրերում՝ դեկտեմբերի 25-ին և հունվարի 6-ին տոնելու մասին։

Պատասխանելով մեր նամակին, ֆրանսիացի հայագետ հայր Ռընուն 1965 թվականի հունիսի 18-ին մեզ գրած նամակում ահա թե ինչ է գրում Կանոնագրքում մտած Հիպպոլիտի և Մելիտոնի մեկական կանոնների մասին. «Հունական կանոնական այն ժողովածուները, որ ես ուսումնասիրել եմ, չեն պարունակում այս կանոնները։ Նրանք չկան նաև Հիպպոլիտի կանոնների արաբական վերսիայում, որանք իմ բարեկամներից մեկը շուտով հրատարակելու է «Patrologia Orientalis»-ում։ Հայկական այս բնագրերը որոշակիորեն անվավեր են և թխված հայոց պահանջներին բավարարություն տալու նպատակով։ Հայկական եկեղեցին, սերտորեն կապված լինելով Երուսաղեմից ստացած ավանդություններին, ճանաչում է միայն հունվարի 6-ի տոնը, մինչդեռ հունական եկեղեցին ու նրա ազդեցության տակ գտնվող եկեղեցիները աստիճանաբար ընդունում էին [դեկտեմբերի] 25-ի տոնակատարությունը։ Հարց է ծագում, թե արդյո՞ք այս կանոնները մի կեղծարարի գործ չեն, որը ցանկություն է ունեցել հայկական ծիսակատարության սովորույթներին տալ ավելի հին վավերականություն։ Ո՛չ Հիպպոլիտը, ո՛չ Մելիտոնը չէին ճանաչում Հայտնության տոնը»։

*շրջանի սոցիալ-տնտեսական և իրավական հարաբերությունների արտահայտիչ լինելուց (Բարսեղ Կեսարացուն, Ներսեսին վերագրված և այլն)։*

*Սակայն ամենից հետաքրքիրն այն է, որ հայ եկեղեցին դավանանքի և ծիսական հարցերի հետ լծորդվող պարականոն և կեղծ գրվածքների նկատմամբ անհանդուրժող լինելով, արգելում էր դրանց օգտագործումը[1], մյուս կողմից Կանոնագրքում, որը արդեն հանդիսանում է վավերագրերի պաշտոնական հավաքածու, մուտք են գործել նման գրվածքներ։ Ի՞նչով կարելի է բացատրել այս երևույթը։ Նայած պարագաներին, երբ արդեն որևէ խնդրի առնչությամբ անհրաժեշտություն է զգացվել հենվել ոչ միայն ժամանակի աստվածաբանության մակարդակի և սեփական իմացության վրա, այլև ապացուցման համար փնտրել հեղինակություններ և վերջիններիս անուններով հարցի լուծումը սպառված համարել։ Ժամանակակիցները կամ հետագայի անձնավորություններն այդ արել են նրա համար, որ իրենց գրվածքի արժեքը բարձրանա։ Դա միաժամանակ ցույց է տալիս, ոչ միայն որևէ հարցի լուծման քննադատական մոտեցման բացակայությունը, այլև աստվածաբանության մեջ հեղինակությունների առաջ անվերապահ խոնարհվելը միջնադարում։ Նման պայմաններում, ահա պահանջ է զգացվել հորինելու կեղծ գրություններ, որոնք վերագրվել են պատմական և ոչ պատմական անձնավորություններին։*

*Այս նշանակում է, որ հայ եկեղեցին կրոնական իր դրույթները հաստատ ու անսասան պահելու նպատակով շքամուտքից հետ էր դարձնում կեղծ կամ պարականոն գրվածքները, իսկ հետնամուտքից ներս թողնում՝ իրեն ձեռնտու նման գրություններ։*

*Առանձին դեպքերում և ընդհանուր կերպով պարզել ենք նման բնագրերի հորինման մոտավոր ժամանակները, հասկանալի է, դրանց հեղինակների հարցը դարձյալ թողնելով մթության մեջ, որովհետև փաստեր չունենալու պատճառով անկարող ենք որոշել։ Սակայն մի բան պարզ է. դրանց հեղինակները հոգևորականներ լինելով հանդերձ, համենայն դեպս չեն եղել ցածր աստիճանի կրոնավորներ, այլ ժամանակի աստվածաբանության մակարդակին կանգնած, կրթված անձնավորություններ, որոնք և փորձել են իրենց ուժերը նաև այս բնագավառում։*

*Կանոնագրքին ավելացված տարբեր շերտերում կարելի է մի ընդհանուր երևույթ էլ նկատել։ Եթե Հովհ. Օձնեցուց (և ոչ միայն Հովհ. Օձնեցուց) հետո Կանոնագրքում մուծվում էին բնագրեր, որոնց մի մասը կեղծ էր, բայց բոլոր դեպքերում դրանք իրենց բնույթով կանոններ էին և վերաբերում էին ավատական հասարակության անդամներին, հոգևորականության վարքագծին, վարվելակերպին, հայ եկեղեցու ծիսական և իրավաբանական զանազան հարցերին, —օրինակ՝ Թադեոս և Փիլիպպոս առաքյալներին, Բարսեղ Կեսարացուն, Ներսես կաթողիկոսին վերագրված, Երկրորդ Նիկիական, Կարինի ժողովի և ուրիշ կանոնախմբեր,—ապա ավելի ուշ՝ XI դարի խմբագրությանն ավելացված բնագրերն իրենց բնույթով կանոններ չեն, օրինակ՝ «Սրբոյն Դիոնեսիոսի Աթենացւոյ եպիսկոպոսի» բնագրից մինչև վերջ (ԽԵ-ԾԷ կանոնախմբերը)։ Էլ չենք խոսում XVI—XV և XVII դարերի ավելացումների մասին, որոնց զգալի մասը կապ չունի Կանոնագրքի բնույթի հետ։*

---

[1] *Այդպիսի մի շարք գրվածքների ցանկը տե՛ս Հ. Անասյան, Հայկական մատենագիտություն, Երևան, 1959, Ներածություն, էջ XXXIX—XL. տե՛ս նաև, էջ 898—913։*

*Թերևս տեղն է այստեղ քննել Կանոնագրքի և Ճառընտիր կոչվող ժողովածուների բովանդակած առանձին նյութերի լծորդության հարցը։ Ճառընտիրները տարբեր ծավալի ժողովածուներ են, ուր հավաքված են բազմապիսի բովանդակություն ունեցող նյութեր։ Նյութերի ընտրության տեսակետից սրանք միանման չեն։ Վերջիններս բովանդակում են ընդհանուր և ազգային եկեղեցական նշանավոր հայրերի ճառերը, սրանց գրվածքներից առանձին գլուխներ կամ ընդարձակ հատվածներ, վարքագրական, վկայաբանական, մեկնողական, քերականական և նույնիսկ փիլիսոփայական նյութեր[1]։ Այս նյութերի մի մասի վավերականության պարզումը բանասիրության ապագա խնդիրն է։*

*Ճառընտիրների հանդես գալը միջնադարում տվյալ դեպքում կապված է քրիստոնյա հայ համայնքի անդամների դավանաբանական դաստիարակության հարցի հետ։ Սրանք իրենց ներգործության բնույթով խրատական են՝ մարդկանց կրթել, դաստիարակել՝ համոզելու, բացատրելու, օրինակ ծառայեցնելու և ոչ թե կանոնական կամ կարգադրական միջոցներով։ Այս առումով Ճառընտիրներն ավելի շուտ կապվում են խրատական, քան թե կանոնական կամ դատաստանական գրականության հետ, որովհետև այնտեղ բացառված է ապաշխարության և քրեական պատասխանատվության խնդիրը։*

*Սակայն Ճառընտիրները ժամանակի ընթացքում ճոխացվելով երբեմն ընդգրկել են նաև կանոնական գրվածքներից ընդարձակ քաղվածքներ. օրինակ՝ Բարսեղ Կեսարացու, Սահակ Պարթևի, Հովհ. Մանդակունու, Նիկիայի, կարծեցյալ Կարինի և այլ կանոնախմբերից[2]։*

*№№ 993, 1525 ճառընտիր-ձեռագրերում պահվել է Աբրահամ Մամիկոնեից եպիսկոպոսի կանոնախմբի Ա կանոնը[3]։ Վերջինս նշված ձեռագրերում ունի «Աբրահամու Մամիկոնէից եպիսկոպոսի առ Վաչաքան արքայ Աղուանից վասն տգիտութեան» խորագիրը[4]։ Այս երկու ձեռագրերում եղածը երբ համեմատում ենք Կանոնագրքի համապատասխան կանոնի հետ, նկատում ենք, որ միմյանց միանգամայն ծածկում են[5]։*

*Միևնույն № 993 Ճառընտիրում պահվել է Առաքյալներին վերագրված կանոնախմբի վերջին մի ընդարձակ հատվածը՝ «Վիճակք առաքելոցն Տեառն» խորագրով[6], ուր պատմվում է, թե քարոզելու նպատակով առաքյալները որ երկրները գնացին[7]։*

*Ուսումնասիրելով վերոհիշյալ Ճառընտիրներում և Կանոնագրքում պահված Աբրահամ Մամիկոնեից եպիսկոպոսի և Առաքյալների կանոնախմբերից*

---

[1] *Տե՛ս № 1500 ձեռագիրը։ Այստեղ գտնում ենք Դավիթ Անհաղթի «Սահմանք իմաստասիրութեան» (էջ 1053բ), «Ամելախաւսի իմաստասիրի եւ հռետորի Աթենացո[յ] եպիսկոպոսի լուծմունք Պրոկղի Դիադոխոսի...» (էջ 1068ա), «Ներածութիւն Պորփիւրի» (էջ 1125բ), Արիստոտելի «Ստորոգութիւն» (էջ 1146բ), «Պերիարմենիաս» (էջ 1168բ), «Յաղագս առաքինութեան» (էջ 1184բ), «Յաղագս աշխարհաց» (էջ 1185բ) աշխատությունները, քերականություն (էջ 1121բ) և այլն։*

[2] *Տե՛ս № 933, էջ 71բ—80ա։*

[3] *Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, էջ 501—502։*

[4] *№ 1525, էջ 188բ. հմմտ. № 993, էջ 243ա։*

[5] *Այս բնագիրն առնչվում է ավելի Կանոնագրքի ունեցածի, քան Մովսես Կաղանկատվացու Պատմության պահած (հատ. Ա., գլուխ ԻԵ) բնագրի հետ։ Վերջինիս պահած «զբեռինս» բառը բացակայում է Կանոնագրքի և Ճառընտիրի ունեցած բնագրերում։*

[6] *էջ 643աբ։*

[7] *Կանոնագիրք Հայոց, հատ. Ա, 58-րդ էջի 6-րդ տողից մինչև 63-րդ էջի 5-րդ տողը։*

*բերված ընդարձակ հատվածները՝ կարելի է եզրակացնել, որ վերջիններս Ճառընտիրներին անցել են Կանոնագրքից։ Սակայն կան բնագրեր էլ, որ հակառակ եզրակացության են բերում։ Այսպես. Կանոնագրքի ներկա հատորում 46 (ԽԶ)-րդ համարի տակ նշված Եպիփան Կիպրացու կանոնախմբի Գ կանոնը կանոնագիրք-ձեռագրերի Բ խմբում դրված է որպես նույն հեղինակի մի առանձին գործ, որ Ա խմբի ձեռագրերում միացրել են Եպիփան Կիպրացու անունով հայտնի մի այլ գրվածքի և կազմել այդ կանոնախումբը՝ բաղկացած երեք կանոններից[1]։ Շարունակելով մեր որոնումները՝ № 941 Ճառընտիր-ձեռագրում նկատեցինք, որ մեզ հետաքրքրող Գ կանոնը այստեղ նույնպես բերված է որպես առանձին գործ՝ «Հարցումն Թէոդոսի քահանային ընդ երանելին Եպիփան վասն քառասնորդաց պահոց» վերնագրով[2]։ Այս և Կանոնագրքի համապատասխան բնագրերի համեմատությունը ցույց տվեց, որ Ճառընտիրում պահվածը բավականին ընդարձակ է[3]։ Այս հանգամանքը եզրակացնել է տալիս, որ այն համառոտվելով և խմբագրվելով Ճառընտիրից (ոչ անպայման № 941 ձեռագրից) անցել է Կանոնագրքին։ Հնարավոր է, սակայն, որ սույն բնագիրը անցել է այս երկուսին մի երրորդ՝ ընդհանուր սկզբնաղբյուրից։*

*Երուսաղեմի Սուրբ Հակոբյանց վանքի մատենադարանի Ճառընտիրներից մեկում[4] գտնվում են XI դարի խմբագրության ժամանակ Կանոնագրքում մուծված կանոնախմբերից մի քանիսը։ Ձեռագրաց Ցուցակում բերված և Կանոնագրքի նույն կանոնախմբերի համապատասխան հատվածների համեմատությունը ցույց տվեց, որ Ճառընտիրում գտնում ենք Հիպպոլիտի, Նեկտարի, Մելիտոնի և Աթանաս Աղեքսանդրացու կանոնախմբերը[5], որոնք Կանոնագրքի ներկա հատորում համապատասխանաբար ունեն ԽԸ, ԽԹ, Ծ և ԾԱ համարները։*

*Քանի որ այս գրվածքներն իրենց բնույթով կանոնական բնագրեր չեն, այլ դավանաբանական, և ավելի հարմար են Ճառընտիրի կամ դավանաբանական նման մի գրվածքի, քան թե կանոնական ժողովածուի համար, ուստի կարող ենք եզրակացնել, որ այդ գրվածքները եղել են որևէ Ճառընտիրում և հետագայում՝ XI դարում Կանոնագրքին նոր ավելացումներ կատարելիս մուծվել են այնտեղ։*

*Ինչպես տեսանք, Կանոնագրքի XI դարի խմբագրության վերջին 13 գրվածքները (ԽԵ—ԾԷ համարների տակ եղածները) Ճառընտիրներից կամ ինչ-ինչ գրվածքներից վերցված քաղվածքներ և կամ առանձին գլուխներ են, օրինակ՝ Ղուկասի Ավետարանի մեկնությունից (Սեբերիանոս, ԾԲ) և այլն. երբեմն էլ՝ առասպելախառն պատմություններ (հիշենք թեկուզ Եպիփան Կիպրացուն վերագրված՝ ԽԶ համարի տակ գտնվող բնագիրը)։ Այս գրությունները առանձին-առանձին վերցրած բանասիրական կամ աղբյուրագիտական առումով կարող են այն նշանակությունը չունենալ, ինչ որ Կանոնագրքի տար-*

---

1 *Տե՛ս սույն հատորի 268—280 էջերը։*

2 *Էջ 224ա. ամբողջ բնագիրը 224ա—225բ էջերում։*

3 *Պատկերացում կազմելու համար նշված բնագիրն ամբողջությամբ բերել ենք «Ծանոթագրություններ» բաժնի համապատասխան տեղում, տե՛ս ներքևում 388—390 էջերը։*

4 *Արտավազդ արքեպիսկոպոս Սիրմէեան, Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Երուսաղէմի սրբոց Յակոբեանց վանքի, Ա հատոր, Ս. Ղազար, 1948, էջ 3—50, 1419 թվի ընդօրինակություն։*

5 *Նույն տեղում էջ 5։*

քեր խմբագրությունների հետ լծորդվելիս, այդ պատճառով էլ փորձ չարինք դրանք դուրս հանելու ներկա հատորի հրատարակությունից։

## Զ. «ԿԱՆՈՆԱԳԻՐՔ ՀԱՅՈՑ»-Ը ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Վերևում կանոնագիրք-ձեռագրերի խմբերը, նրանց առնչությունները, Կանոնագրքին հետագայում ավելացված շերտերը և վերջիններիս հետ լծորդվող այլևայլ հարցերը քննելուց հետո, այնուամենայնիվ մեզ դարձյալ հետաքրքրում են հետևյալ երկու հարցերը. նախ՝ Կանոնագրքի օգտագործման ժամանակագրական սահմանները և երկրորդ՝ այն, թե երբևէ օգտագործվե՞լ են վերևում նշված կանոնական կեղծ բնագրերը։ Մեզ հայտնի են փաստեր, երբ այդ բնագրերի վկայությունները, որպես պաշտոնական վավերագրերի հեղինակություն, օգտագործվել են և՛ մատենագրական տարբեր բնույթի երկերում և՛ հայ եկեղեցու իրավասության տակ գտնվող հարցերի վերջնական լուծման կարգադրություններում։ Անցնելով նշված հարցերի քննությանը՝ նպատակ չունենք ցույց տալ Կանոնագրքի որպես սկզբնաղբյուրի օգտագործման փաստերը Մխիթար Գոշի և Սմբատ Սպարապետի դատաստանագրքերում։ Բանասիրությունն այդ խնդրում արդեն մեծ գործ է արել[1] և իր ջանքերն այս ուղղությամբ տակավին կարող է շարունակել։ Այստեղ կնշենք այլևայլ առիթներով միջնադարում և ավելի ուշ շրջանում Կանոնագիրքն ընդհանրապես և նրա կեղծ կանոնախմբերը մասնավորապես օգտագործելու մեզ հայտնի փաստերը։

Վերևում ցույց ենք տվել, որ X դարի կեսերին Անանիա Մոկացին իր թղթերում քաղվածաբար օգտվել է Կանոնագրքի տարբեր կանոնախմբերից՝ Առաքելական, Կղեմեսի, Հարանց հետևողաց, Անկյուրիայի, Կ. Պոլսի, Եփեսոսի, Բարսեղ Կեսարացու, Սահակ Պարթևի և Շահապիվանի[2]։ Սրանց հետ մեկտեղ նա միաժամանակ բերում է Երկրորդ Նիկիական կանոնախմբի ԻԱ կանոնը այսպիսի նշումով. «Կարճառոտ ի կանոնաց որ եւ այն կոչի Նիկիայի ԻԱ գլխոյն»[3]։

Մխիթար Գոշի կողմից Կանոնագրքի օգտագործված լինելը, որպես ընդհանուր ճանաչում գտած փաստ, չենք քննի։ Սակայն կանգ կառնենք նրա կատարած աշխատանքի մի այլ կողմի վրա։ Գոշը թեև կասկածանքով է վերաբերվել Կանոնագրքի այս հատորում տեղ գտած՝ Բարսեղ Կեսարացու անունով հայտնի կանոնախմբի վավերականությանը[4], բայց այդ չի խանգարել, որ նա

---

[1] Տե՛ս Մխիթար Գոշի Դատաստանագրքի հրատարակիչ Վ. Բաստամյանցի մանրամասն ծանոթագրությունները հրատարակության զուգահեռ, Ս. Տիգրանյանի վերևում նշված աշխատությունը և այլն։

[2] «Արարատ, 1897, Հավելված, էջ 278—279, 281—282, 284—285, 287—288։ Թղթերի հրատարակիչ Գալուստ Տեր—Մկրտչյանը տողատակին նշել է վերևում բերված կանոնների մեծ մասի համապատասխան կարգահամարները և ներկայացրել կանոնները։

[3] Նույն տեղում, էջ 281։

[4] Մխիթարայ Գօշի Դատաստանագիրք Հայոց, էջ 187 (մասն Ա)։ Ի դեպ նշենք, որ բացի Կանոնագրքից, ժամանակին օգտագործվել են կանոնական առանձին բնագրեր, որոնք չեն մտել Կանոնագրքում։ Այս դեպքում արդեն, դեր է խաղացել հեղինակության ուժը։ Առողիկը պատմելով Սևանի կղզում, Կամրջաձորում, Հաղբատում և Սանահինում հիմնադրված վանական միաբանությունների մասին գրում է, որ դրանք կազմակերպվել են «ըստ... ։ կանոնին

օգտագործի այն։ Եվ ոչ միայն վերջինս, այլ մի շարք կեղծ կանոնախմբերից, որոնց իսկության վրա չի կասկածել, վերցրել է երբեմն ընդարձակ նյութեր և օգտագործել Դատաստանագրքի տարբեր հոդվածներում, տալով դրանց օրենքի պատշաճությանը հասնող ուժ. օրինակ՝ Երկրորդ Նիկիական կանոնախմբի Զ և ԶԹ կանոնները նա արտահայտել է Դատաստանագրքի Ա մասի Հ և ՀԱ հոդվածներում, Բարսեղ Կեսարացու կանոնախմբի ԽԴ, ԶԴ, ՄԸ, ՄԹ, ՄԺ, ՄԺԱ, ՄԺԹ կանոնները՝ համապատասխանաբար ԶԳ, ԶԴ, ՂԶ, Ղէ, ՂԸ, Ղ, ՂԱ հոդվածներում, Թադեոս առաքյալի ԼԱ կանոնը՝ ՂԲ հոդվածում, դարձյալ Բարսեղ Կեսարացու կանոնախմբի Իէ, ԶԸ, Ղէ, ՃԱ, ՃԵ, ՄԱ, ՄԲ կանոնները համապատասխանաբար արտահայտել է Դատաստանագրքի Բ մասի ՂԳ, ՂԴ, ՃԺէ, ՂԵ Ճ, ՃԱ հոդվածում, Թադեոս առաքյալի ԼԳ կանոնը՝ ՃԲ հոդվածում և այլն։

XIII դարի մատենագիր Հովհաննես Երզնկացու «Խրատ հասարակաց քրիստոնէից՝ քահանայից եւ ժողովրդոց...»[1] աշխատության մեջ «ծաղկաքաղ արարեալ» բերված են Կանոնագրքի մի շարք կանոնախմբերից բավականին նյութեր. օրինակ՝ Առաքելական, Գրիգոր Լուսավորչի, Սահակ Պարթևի, Բար-

---

սահմանադրութեանն սրբոյն Բարսղի», օրինակ, Սևանում «միացեալ ժողովեցան եղբարց բազմութիւն, կանոնադրութեան սահմանաւ սրբոյն Բարսղի, միակրօնք ի տան Աստուծոյ եղեալ...» (Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական, հրատ. Ստ. Մալխասյանց, Ս. Պետերբուրգ, 1885, էջ 181, տե՛ս նաև էջ 160, 173—174)։ Մի այլ տեղ անդրադառնալով Սարգիս Ա Սևանեցի կաթողիկոսի ապրելակերպին գրում է. «Ժրաջան աղօթիւք ի տուէ և ի գիշերի կատարէր զկանոն կարգի կրօնաւորական սահմանին, պնդութեամբ վարեցեալ և պահոցն սրբութեամբ և ձևով մարմնոյ որգունակ սրբոյն Բարսղի յաստուածաբանէն ներբողեալ» (Նույն տեղում, էջ 260, ամենուր ընդգծումը մերն է—Վ. Հ.)։ Ասողիկի հավաստումները, թե վանական միաբանությունները իբր կազմվել են ըստ Բարսեղ Կեսարացու կանոնական սահմանման, կարող են կասկածելի լինել, որովհետև չորս դեպքում տեղեկությունները միանման ձևով է հաղորդում, կարևորն այն է, որ Ասողիկը փորձում է այդ գործողությունները հիմնավորել Բարսեղ Կեսարացու նշված կանոնական սահմանումով։

Մեր Մատենադարանի № 3031 ձեռագրում, որը հայտնի է Սանահինի քյոթուկ անունով, ևս գտնում ենք նշում Բարսեղ Կեսարացու այդ բնագրի մասին. «...զՍիմէաւն քաջ քարտուղարն Սանահնու, որ զՍրբուհոյ Աստուածածնիս հիմնարկութեանն և աւարտմանն ականատես էր եղեալ, որ ի ժամուն յայնմիկ գրել (sic) զգիրս Բարսղի Կեսարացւոյ յաղագս ճգնաւորաց...» էջ 19բ)։ Կանոնագրքում նման կանոնախումբ չենք գտնում ո՛չ Բարսեղ Կեսարացու և ո՛չ էլ մեկ ուրիշի անուններով։ Սակայն Կանոնագրքից դուրս մեզ հայտնի է նրա մի կանոնախումբը, որի հայերեն հնագույն թարգմանությունը պահվել է մեր Մատենադարանի մեզ հայտնի մի քանի ձեռագրերում (№№ 659, 822, 1500 և այլն)։ Այս բնագրի հունարենը մեզ հասել է։ Բարսեղ Կեսարացու նամակների նոր հրատարակության առաջին հատորի 52—57 էջերում (Saint Basilae Lettres, t, I, par Yves Courtonne, Paris, 1957) գտնվում է սույն բնագրի հունարենը Περὶ τελειότητος βίου μοναχῶν (Վանականների կատարյալ վարքի մասին) խորագրով։ № 822 ձեռագրում խորագիրը պահվել է այսպես. «Նորին սրբոյ Բարսղի եպիսկոպոսի թուղթ առ սուրբն Գրիգոր Աստուածաբան եպիսկոպոս Նազիազու յաղագս կրոնական վարուց» (էջ 188ա)։ Սույնի վերջին հատվածը բավական մոտ է հունարենի վերնագրին։ Այստեղ խոսվում է այն մասին, թե ինչպես պետք է վանականը պահի իրեն իր կենցաղավարության մեջ։ Ասողիկի քանիցս հիշատակությունը արդյո՞ք սույն բնագիրն է ակնարկում, որոշակի և անվերապահ պատասխանել դժվարանում ենք։ Սակայն այն փաստը, որ այս կանոնախումբը վանականների կենցաղավարության մասին է, և այդ հարցի մասին Բարսեղ Կեսարացուց մեզ այլ բան հայտնի չէ, ենթադրում ենք, որ Ասողիկը ակնարկել է սույն կանոնախմբին։

[1] Նշում ենք Մատենադարանում պահվող այս գործի բազմաթիվ ձեռագրերից միայն մեկը՝ № 581, էջ 178ա—262բ։

սեղ Կեսարացու, Ներսես Բ Բագրեվանդացու, Հովհ. Օձնեցու, կեղծ Ներսեսի և այլ կանոնախմբերից[1]։ Նույն աշխատության Սիրո մասին գլխում[2] հեղինակը բերում է Բարսեղ Կեսարացու ԾԹ կանոնը։

Գրիգոր Տաթևացին «Գիրք հարցմանց» աշխատության[3] իններորդ հատորի 52-րդ պրակում «Վասն է՞ր ազգն Ցռանկաց զերկու օր պահոցն լուծանէ» հարցին պատասխանելիս հիշելով Նիկիայի և Բարսեղ Կեսարացու կանոնները. մեջ է բերում Եփրեմ Ասորու կանոնախմբի Բ և Գ կանոնները[4]։

Քրիստոսի ծնունդը և մկրտությունը մի օրում՝ հունվարի 6-ին, թե տարբեր օրերում՝ դեկտեմբերի 25-ին և հունվարի 6-ին տոնելու վերաբերյալ միջնադարում ընթացել են բորբոքված վեճեր։ Այդ վեճերը մասնավորապես սուր բնույթ են կրել, երբ Արևմուտքից հայ եկեղեցուն սպառնում էր եկեղեցական միության խնդիրը։ Այդ վեճերը արտահայտվել են մատենագրական զանազան նյութերում։ Մատենադարանի № 502 ձեռգրում պահվել է այսպիսի մի գործ «Վկայութիւնք վասն ծննդեանն Քրիստոսի եւ մկրտութեան. զի պարտ է տօնել ի միում յաւուր ի յունուարի ի վեցն»[5]։ Այստեղ համառոտ և ընդարձակ քաղվածքներ են բերված Հովհ. Երուսաղեմացու, Նեկտարի, Գրիգոր Աստվածաբանի, Հիպպոլիտի, Սեբերիանոսի, Մանուելի, Մելիտոնի, Կարնո ժողովի[6] Կանոնագրքում գտնված կանոնախմբերից իրենց դրույթների հաստատման և ճշտության մասին։ Նման մի գրվածքի հանդիպում ենք վերևում նշված № 3919 ձեռագիր տոնացույցի տարբեր մասերում, ուր քաղվածաբար և ընդարձակ ձևով բերված են Առաքելական, Նիկիայի, Աթանասի, Սահակ Պարթևի, Եփրեմ Ասորու, Եպիփան Կիպրացու, Սեբերիանոսի, Հիպպոլիտի, Նեկտարի, Մանուելի, Մելիտոնի, Լավոդիկեի և Կարինի ժողովի կանոնախմբերից[7]։

Կանոնագիրքն օգտագործելու հետաքրքիր փաստերի հանդիպում ենք XVIII, XIX և XX դարի առաջին երկու տասնամյակներում։

1781 թ. Ռուսահայ թեմի առաջնորդ Հովսեփ Արղության նորահիմն քաղաքի՝ Նոր Նախիջևանի հոգևոր դատարանի համար կազմում է «Կանոնադր-

---

[1] Նույն տեղում, էջ 202աբ, 204բ, 205ա—207բ, 210աբ, 215բ, 216բ, և շար.։

[2] Նույն տեղում, էջ 198բ։ Այս գտնում ենք նաև № 9063 Ճառընտիրում (1623 թվի ընդօրինակություն), ուր բերված է Բարսեղ Կեսարացու ԾԲ և ԾԹ կանոնները (էջ 8բ)։ Նույն ձեռագրի տարբեր գլուխներում բերված են առանձին կանոններ. օրանակ՝ «Կանոն վասն երդման» գլխում Քրիստոսին ուրանալու դեպքում մատնացույց է արվում Բարսեղ Կեսարացուն վերագրված է կանոնը (էջ 4ա), «Յաղագս պսակի եւ խրատ վասն ամուսնութեան» գլխում՝ Սիոն կաթողիկոսի (Պարտավի) կանոնախմբի ԺԶ կանոնը հետևյալ խմբագրությամբ՝ «Յառաջին ժամանակին սուրբ հարքն արգելին զազատս եւ զանազատս յարեան մերձաւորութենէ, բայց այժմ լուծեալ տեսանեմք զկանոնք սուրբ հարցն՝ մանաւանդ յազատաց, զի անխտիր խառնին յիւրեանց մերձաւորսն անկարգ ամուսնութեամբ, այլ մերով բանիւ, զոր գրեմք ի հրամանաց առաջին սուրբ հարցն մի՛ իշխեսցեն ազգականք ամուսնութեամբ զուգիլ. ապա թէ ոչ՝ նզովեսցին ի մէնջ եւ ի սուրբ [հար]ցն կանոնաց…, (էջ 3բ) և այլն։

[3] Կ. Պոլիս, 1729։

[4] էջ 651։ Նույն աշխատության մի այլ մասում, երբ խոսվում է անապական պատարագի մասին, Գրիգոր Տաթևացին հիշում է Առաքելոց և Կղեմեսի կանոնները (էջ 548), սակայն Տաշյանը նրա բացատրությունը իրավացիորեն համարում է «անճիշտ և կամավոր մեկնություն» (Վարդապետութիւն առաքելոց», էջ 252—253)։

[5] էջ 146ա—162բ. հմմտ. «Արարատ», 1896, Հավելված, էջ 49—52։

[6] Նույն տեղում, էջ 146բ—148ա, 153աբ, 155աբ, Հմմտ. № 4405, էջ 227ա և շար.։

[7] էջ 208ա—217բ։

ԺԸ. Վասն շնացողաց թէ այր է թէ կին։

ԺԹ. Վասն շնացողաց որ զորդէծնութիւնն հեղուցու։

Ի. Վասն սերմերթնութեան։

ԻԱ. Եթէ ո[ք] ընդ արուի պղծիցի։

ԻԲ. Վասն անասնոյ որ շնայցէ։

ԻԳ. Վասն կախարդի ։

ԻԴ. Որ շնայ և զմանուկն սպանանէ։

ԻԵ. Վասն չորեքշաբթի և ուրբաթի պահելոյ։

ԻԶ. Վասն տէրունական տօն կատարելոյ որ շաբաթ մի պահեն։

ԻԷ. Վասն Քառասնորդաց պահոց։

ԻԸ. Վասն անասնագիտի։

ԻԹ. Վասն որ զՔրիստոս ուրանայ։

Լ. Եթէ ոք իւր կամաւ մարդ սպանանիցէ։

ԼԱ. Յաղագս որ մի մօր կաթամբ սնեալ են։

ԼԲ. Վասն ազգականի որ կին արասցէ։

ԼԳ. Որ զսահմանս ընկերին յափշտակէ» (էջ 323բ—324բ)։

№№ 8459, 9311 ձեռագրերում այնուհետև դրված է վերնագիր. «Կանոնք սուրբ առաքելոյն Թադէոսի, հարցմունք և պատասխանիք» (էջ 12ա, էջ 11բ)։ Իսկ № 3369 ձեռագիրը քանի որ ցանկ չունի, ուստի երկրորդ վերնագիրը դրված է առաջաբանից հետո. «Հարցմունք և սահմանք սրբոյ առաքելոյն Թադէոսի ամենայն Հայոց» (էջ 22ա)։

Հոդ. Ա, էջ 20—22։ *Մի քանի ձեռագրեր «ի տեսութեան» փոխարեն ունեն միևնույն բառի մի այլ՝ «ի տեսչութիւն» տարբերակը (№№ 8459, էջ 12ա, 9311, էջ 11բ, 649, էջ 19ա, 648, էջ 1ա, 659, էջ 44աբ, 657, էջ 97բ, 3562, էջ 269ա)։ Իսկ Հարցի վերջում ավելի կա մի բառ՝ «եկեղեցւոյ» (№№ 659, 657, 648, 3562, 8459, 9311), «եկեղեցոյն» (№№ 649, 650, 651, 2964), «սրբոյն եկեղեցոյ» (№ 3369)։ №№ 648, 657, 659, 3562 ձեռագրերի Պատասխանում նման շեղումներ չկան։ Մի քանի ձեռագրերի Պատասխանում կան շեղումներ. այդ ցույց տալու համար կբերենք ամբողջ պատասխանը համաձայն № 8459 ձեռագրի. «Պարտ է եպիսկոպոսին անարատ լինել, պարկեշտ, ուսուցող, մի՛ երկբան, մի՛ արծաթասէր, մի՛ կերող և արբեցող, մի՛ կաշառառու, մի՛ բամբասող (№ 9311-ը՝ չունի մի՛ կաշառառու մի՛ բամբասող), մի՛ հակառակող, այլ հեզ և հանդարտ, որպէս ասաց եղբայրն մեր Պօղոս, եղիցի աւրինակ բարի ամենեցուն (№№ 649, 650, 651, 2964, 3369-ը՝ չունեն որպէս... ամենեցուն* հատվածը) *պահող և տքնող, առեցող զհանգիստ քնոյ, լինել արտասուաց առաւել քան ծաղու, աւրինակ լինել հօտին ամենայն կարգօք առնել ձեռնադրութիւն արժանաւորաց, այնոցիկ որ հաւու և գիտունք են գրոց կարգաց և աւրինաց Աստուծոյ և զտգէտս խոտել մի՛ ձեռնադրեսցէ, քանզի տգիտութիւնն Աստուծոյ խոտելի է, որպէս չարագործ յայսմանէ զգոյշ լեր, քան յամենայն իրաց, քանզի տգէտ քահանայք և սարկաւագունք կամ այլ ով ոք իցէ յառաքելական աստիճանի ի բարկութիւն շարժէ զԱստուած, զի եթէ բերանով ի միտ առնու և աւէ, և սրտիւն ոչ իմանա զասելն՝ բարկացուցանէ զԱստուած և վնասակար լինի ամենայնի։ Եպիսկոպոս այլ զինչ առնէ, կորեաւ այնպիսի հոգին, պարտ է հեռանալ յայսմանէ։ Զուսումնասէրսն և զգիտունսն մեծարէ պատուով, իսկ զտգէտսն մի՛ կացուսցէ առաջնորդս կամ վերակացու ինչ իրաց եկեղեցոյ, իսկ եթէ յանդգնեալ եպիսկոպոսին արասցէ զայս կամ վասն կաշառու կամ վասն բարեխօսաց, այնպիսի եպիսկոպոսն նզովեալ եղիցի և որ ինչ անտի վնասք ծնանին նա ընկալցի վրէժ յաւուրն դատաստանի յանմահ տանջանսն» (№ 8459, էջ 12ա—13բ. հմմտ. №№ 9311 էջ 11բ—13ա, 3369, էջ 22աբ, 649, էջ 19աբ, 650, էջ 22աբ, 651, էջ 12բ—13ա, 2964, էջ 25բ—26բ)։ Բնագրի հոդվածների սկզբի «Դարձեալ սաէ առաքեալն» հատվածը այս ձեռագրերը չունեն։ Այս հոդվածը վերաշարադրված և լրացված է մի քանի տարբեր աղբյուրներից, ինչպես օրինակ, Պողոս առաքյալի երկու նամակներից (Ա. Տիմոթէոս, Գ, 1—4, Տիտոս, Ա, 7—9), Առաքելական կանոնախմբի Ի, ԻԱ, ԻԲ, Կղեմեսի՝ Հ, Նիկիայի՝ Գ, Ժ հոդվածներից։*

Հոդ. Բ, էջ 22—23։ *Առաջին հոդվածի Հարցումից հետո համահավաքի համար օգտագործված ձեռագրերի մեծ մասը, բացառությամբ հինգ ձեռագրերի, չունեն հաջորդ Հարցումները։ Վերջիններս այդ ձեռագրերում դարձյալ վերականգնվում են ԻԸ հոդվածից սկսած։ Մինչդեռ այդպիսիներ պահպանվել են նաև ծանոթագրություններում օգտագործվող ձեռագրերում։ Միօրինակությունը պահպանելու նպատակով հարցերը վերականգնեցինք սույն հրատարակության բնագրում։ Այն դեպքերում, երբ Հարցում բացակայում է մի երկու բառ, միտքը հստակ հա-*

*կանալու համար այդպիսիները ավելացրել ենք ծանոթագրություններում օգտագործված ձեռագրերից մեկից, ամեն անգամ նշելով ձեռագրի համարը։ Հարցում եղած «ունել եպիսկոպոսին» բառերը վերցրել ենք № 8459 ձեռագրից։*

*Պատասխանը ներքևում նշված ձեռագրերում զգալի շեղումներով է։ Այն բերում ենք ըստ № 8459 ձեռագրի «Պարտ է եպիսկոպոսին զամենայն հաւատացեալսն միապէս սիրել՝ զազգս և զօտարս, թէ եղբայր է, թէ քոյր։ Եւ կաշառ ամենևին մի՛ առնիցէ, զինքն մեռեալ համարի յաշխարհի, մի՛ խիստ պճնել և զուարճանալ կամ լրկտի ինչ խօսել կամ հրապարակաւ զոք յանդիմանել առանց երրորդ հարցման՝ նախ առանձին և ապա Բ կամ Գ վկայիւք։ Հեշտական հանդերձիւք մի՛ վարել, մի՛ պճնող։ Առանց ընկերաց հարցման մի՛ ինչ գործել, զի այն է հաճոյ Աստուծոյ։ Կացուցանել ընդ ձեռամբ իւրով տեսուչս գաւառաց և քաղաքաց, վարդապետս հովւել զհօտ Տեառն, և ժողովրդոցն հնազանդել հովուաց. կարգելոցն յեպիսկոպոսէն ի շէնս Բ և Գ քահանայս և սարկաւագ մի, իսկ ի յագարակս քահանայ մի և սարկաւագ մի։ Ջհաշմեալ մի՛զոք ձեռնադրել, զի եթէ զարատաւորն պատարագ ոչ մատուցանել հրամայէր մարգարէն, ո՞րչափ ևս առաւել որ զերկնաւոր պատարագն մատուցանէ, առանց արատոյ լինել։ Առանց վկայից և քննութեան մի՛ զոք ձեռնադրել և առանց հաւանութեան ժողովրդեանն, զի անտի մահաբեր վնասք լինին» (էջ 13բ—15ա, հմմտ. №№ 9311, էջ 13ա—14ա, 3369, էջ 23ա, 651, էջ 13աբ, 650, էջ 22բ—23ա, 649, էջ 19բ—20ա, 2964, էջ 26բ—27ա, 648, էջ 2ա, 3562, էջ 270ա, 659, էջ 46ա, 657, էջ 98ա)։*

Հոդ. Գ, էջ 24: *№№ 8459, 9311 ձեռագրերում Հարցը բավական ընդարձակ է և վերջին մասը դուրս է գալիս հարցի սահմաններից։ Ահա այն. «Որպիսի չափոյ պարտ է ձեռնադրել զքահանայսն Ի ամեան և Լ ամ կացեալ ի կարգին և ապա լռեսցէ, զի այսչափ պարտ է կալ ի կարգին քահանայն և սարկաւագն (էջ 15ա, էջ 14ա)։ Այս նույն ձեռագրերում Պատասխանը զգալի շեղում ունի. «Արժան է եպիսկոպոսին այսպէս ձեռնադրել զքահանայս և զսարկաւագունս, իսկ ի Ծ ամն կամ թէ աւելի մի՛ ձեռնադրել քահանայ կամ սարկաւագ, և մի՛ ամուսնութիւն հրամայել, զի յայսմ վայրի անձինք աղճատին և միտք և ժամանակք զինքն պատրաստել սուրբ պահել և պայծառ զիւր հոգին, զի մի՛ զայլս հոգալով զինքն անփոյթ արասցէ և զրկի ի յաւիտենական կենացն» (№№8459, էջ 15աբ, 9311, էջ 14աբ)։ Իսկ մյուս ձեռագրերից մի քանիսում՝ №№ 651 (էջ 13բ), 650 (էջ 23ա), 649 (էջ 20ա), 2964 (էջ 27աբ), 3369 (էջ 23ա) բնագրի «անփոյթ»-ը փոխարինված է «անհոգ» բառով։ Հոդվածի առաջին մասի միտքը գտնում ենք Հոհան Մանդակունուն վերագրված կանոնախմբի Ա հոդվածում (տե՛ս վերևում, էջ 264)։*

Հոդ. Գ, էջ 24—25: *Հարցի «Ի»-ն վերցրել ենք № 649 ձեռագրից։ Բնագրի «արժան է... հրաժարել» հատվածը մի քանի ձեռագրերում այսպես է «առաւել (№ 651, 649-ում՝ աւելի) հրաժարէ եպիսկոպոսն» (№№ 8459, էջ 15բ, 9311, էջ 14բ, 651, էջ 13բ, 649, էջ 20ա)։ № 3369 ձեռագիրը չունի «առաւել» և «ի ձեռնադրութենէ» բառերը (էջ 23ա), իսկ բնագրի «ի ցոփասրտից»-ը դրված է «ի ցոփամտաց» ձևով, այսպես է նաև «ի վատասրտից»-ը՝ «և վատամտից» նույնը №№ 8459, 9311, 649-ում՝ «և ի վատամտաց», № 651-ում՝ «և ի վատամտից»։ Բնագրի մի այլ՝ «ի վատթարութենէ» բառը №№ 8459, 9311, 651, 649-ում դրված է «ի վատթար գործոց», իսկ № 3369-ում՝ «վատթարագործաց»։ № 650 ձեռագրում թեև Հարցը կա, բայց չունի Պատասխանը, այս հարցի տակ դրված է Ե հոդվածի պատասխանը, առանց համապատասխան հարցի։*

Հոդ. Ե, էջ 25: *«Ջուրբ» բառը վերցրել ենք № 8459 ձեռագրից։ № 650-ում Հարցը չի պահվել, իսկ Պատասխանը դրված է Դ Հարցի տակ։ №№ 649, 651, 2964 ձեռագրերում չի պահվել Հարցի «ղսուրբ», իսկ №№ 651, 2964-ում՝ «և որպէս» բառերը։ Պատասխանում առկա են այսպիսի շեղումներ. բնագրի «խաչին... կատարվք» հատվածը դրված է. «խաչին անշարժ և զնա ծածկեսցեն հանդերձիւք», «խնկոց և լուցմանց» հատվածը՝ «խնգարկութեանն և լոյսն ի ժամու իւրեանց» (№№ 8459, էջ 16բ, 9311, էջ 15ա)։ Մի քանի ձեռագրերում առաջին շեղումը նույնությամբ գտնում ենք, մինչդեռ երկրորդը այսպես է. «ի խնկարկութեան և լուցմանն ի ժամս իւրեանց» (№№ 651, էջ 14ա, հմմտ. №№ 649, էջ 20բ, 650, էջ 23բ, 2964, էջ 28ա), կամ հոդվածը շարունակվում է. «ի ժամս իւրեանց (№ 3369, էջ 23բ)։ Այստեղ չի պահված նաև «և խնկարկութեամբ» բառը։*

Հոդ. Զ, էջ 25—26: *«Առ սուրբ»-ը վերցրել ենք № 8459 ձեռագրից։ Հարցի առանձին բառեր, որոշ ձեռագրերում բացակայում են կամ աղավաղված են և կամ այլ բառով փոխարինված, օրինակ, «զհաց»-ի փոխարեն № 649 ձեռագիրն ունի «զինչ». «պաշտաճեսցուք»-ի փոխարեն № 3369 ձեռագիրն ունի «պաշտեսցուք», № 650-ը՝ «պաշտաճեսցուք», №№ 8459, 9311 ձեռագրերը չունեն «զգինի», № 650-ը՝ «որպէս» բառերը։ Պատասխանում բնագրի «նոյնպէս և*

զգինին... ի սուրբ սեղանն» հատվածը մի քանի ձեռագրերում այսպես է. «նոյնպէս և զգինի (№№ 3369, 8459, 9311-ում՝ զգինին) բաժակոյն (№ 3369-ում՝ բաժակին, №№ 8459, 9311-ում՝ չիf բաժակոյն) ի սուրբ ամանս (№№ 3369, 8459, 9311-ում՝ յամանս) պահել և սուրբ ամանով (№ 3369-ում՝ ամանաւք, №№ 8459, 9311-ում՝ բաժակաւն) հանցեն ի սեղանն սուրբ (№№ 3369, 8459, 9311-ում՝ ի սուրբ սեղանն)» (№№ 651, էջ 14ա, 649, էջ 20բ, 650, էջ 23բ, 2964, էջ 28ա, 3369, էջ 23բ, 8459, էջ 16բ, 9311, էջ 15բ)։ №№ 8459, 9311 ձեռագրերում չի պահվել բնագրի «այլ անագորոյն մտաց» հատվածը»։

Հոդ. Է. էջ 26—27։ Մի քանի ձեռագրերի Պատասխանում մի տեղ կա բառերի եռևառաջություն. «յորժամ զսեղանն հաստատեսցէ եպիսկոպոսն ժողով արասցէ քահանայից աթոռակցաց իւրոց, սարկաւագաց, ժողովրդոց և մատուսցեն...» (№ 659, էջ 47բ, հմմտ. №№ 648, էջ 2բ, 657, էջ 98բ, 3562, էջ 271բ)։

Հոդ. Ը, էջ 27։ «Որպէս»-ը վերցրել ենք №№ 651, 3369 ձեռագրերից։ Հարցի վերջին բառը մի քանի ձեռագրերում փոխարինված է «բարուք» (№№ 651, էջ 14ա, 649, էջ 20բ), կամ «բեբաւք» (№№ 650, էջ 24ա, 2964, էջ 28բ) բառով։

№ 3369 ձեռագրում չեն պահվել Պատասխանի «ի նմին աւուր», «վասն աստուծոյ» բառերը, իսկ «նախագս»-ի փոխարեն պահվել է «զարչաուս» բառը։

Հոդ. Թ, էջ 27—28։ №№ 8459, 9311 ձեռագրերում Հարցի վերջին «յեկեղեցւոջ» բառը փոխարինված է «յարևելս» բառով։ Պատասխանում կան մի քանի էական շեղումներ. օրինակ, բնագրի «ընդ միմեանս» հատվածը մի քանի ձեռագրերում այսպես է. «և մի ընդ միմեանս նայեսցին» (№№ 651, էջ 14բ, 649, էջ 21ա, 650, էջ 24ա, 2964, էջ 29ա), իսկ «մի՛ քրթմնջեսեն ընդ միմեանս»-ը №№ 8459, 9311 ձեռագրերում՝ «մի՛ խօսեսցին ընդ միմեանս և ոչ նայեսցեն ի մարդ» (էջ 17բ, էջ 16բ)։ Ձեռագրերի մի այլ խմբում Պատասխանի սկզբի մեծ մասն ունի այսպիսի շարադասություն. «Յորժամ ժողովին ժողովուրդք հաւատացեալք ի տուն Աստուծոյ մի՛ քրթմնջեսցեն և մի՛ ընդ միմեանս նայեսցեն, զայլ ինչ մի՛ խաւսեսցեն, բայց միայն յաղաւթս Աստուծոյ կացցեն ընդ արևելս» (№ 659, էջ 48ա, հմմտ. №№ 648, էջ 2բ, 657, էջ 99ա, 3369, էջ 24ա, 3562, էջ 271բ)։

Հոդ. Ժ, էջ 28—29։ «Զանարժան ոք» բառերը վերցրել ենք № 3369 ձեռագրից։ Հարցում էական տարբերությունը № 650 ձեռագրում է, ահա այն. «Եթէ ոք տգիտութեամբ ձեռնադրեսցէ քահանայս առնուցու զանթառամ պսակն փառաց» (էջ 24ա)։ Պատասխանը մի քանի ձեռագրում ընդհանուր առմամբ նույնն է, բայց տարբեր է շարադասությունը. բերում ենք ամբողջությամբ. «Եթէ ձեռնադրեսցէ զոք եպիսկոպոսն քահանայ և կամ սարկաւագ և յանցանք լինի նորա շնութիւն կամ գողութիւն կամ սպանութիւն կամ զինչ և է աղտեղութիւն և ի ժամ ձեռնադրութեան ոչ գիտաց եպիսկոպոսն և վկայեաց ոք ոչ փոխանակ անգիտութեան. և ապա յետոյ կամ զղջանայ կամ պատճառօք մի գործքն յայտնի եղև ոչ կարէ նա այլ սպասաւորել սուրբ սեղանոյն և ոչ պատարագել, այլ արտաքոյ եկեղեցոյ ապաշխարել զյանցանս իւր ԺԲ ամ և ապա զոր ինչ արժան է շնորհել նմա ի ներքոյ բեմի սպասաւորութիւն առնել և կալ ի պատուին միայն բեկեալ սրտիւ մինչև ցօր մահուան իւրոյ» (№ 8459, էջ 18ա—19ա, հմմտ. №№ 9311, էջ 17աբ, 649, էջ 21ա, 650, էջ 28աբ, 651, էջ 14բ, 2964, էջ 29աբ)։ № 3369 ձեռագրում չի պահվել բնագրի «որպէս է մարդոյ», «կամ սպանութեամբ» հատվածները, իսկ «պատճառանաւք» և «զԲԺ ամ»-ի փոխարեն համապատասխանաբար ունի «պատմուճանօք» և «բաժանմամբ» (էջ 24բ)։

Հոդ. ԺԱ, էջ 29—30։ Հարցի «զարչեցաւ» բառից առաջ №№ 650, 651, 2964 ձեռագրերում դրված է «զղջեալ» դերբայը։ ԺԲ հոդվածը համահավաքի befgq և ծանոթագրությունների համար օգտագործված ձեռագրերում միացված է սույն՝ ԺԱ հոդվածին։ Այս միացումը թերևս ճիշտ է, որովհետև ԺԲ հոդվածը ԺԱ-ի անմիջական շարունակությունն է։ Այդ պատճառով էլ նշված ձեռագրերում ԺԲ հոդվածի համար Հարց չի պահվել։ Այստեղ այդ միացումը չկատարեցինք, որպեսզի չխախտվի հոդվածների ընդհանուր համարակալումը, որը կապված է «Կանոնագիրք Հայոց»-ի Ա հատորի առարկայական ցանկի (տես էջ 5—17) հետ։

Այստեղ կան նաև շեղումներ. «Եթէ ոք յետ ձեռնադրութեանն մեղոյց՝ այնպիսոյն ամենևին բարձցի քահանայութեան շնորհն և ձեռն և նշանն, քանզի անհնար է նմա քահանայանալ, այլ արտաքոյ եկեղեցոյն ապաշխարեսցէ ԺԷ ամ, ապա եկեղեցոյ արժանանայ և սուրբ հաղորդութեանն ընդ զինուորսն կացցէ յեկեղեցւոջ. զի անհնար է նմա ի բեմ ելանել կամ կարդալ կամ սաղմոս ասել մինչև ցօր մահուան իւրոյ, քանզի պղծեաց զսուրբ ձեռնադրութեանն և առ ոտն կոխեաց, մի՛ոք համարձակեսցէ նմա ի քահանայութիւն, իսկ եթէ եպիսկոպոսն հրաման տացէ նմա քահանայութեան, վասն կաշառու կամ վասն բարեխօսաց՝ կրեսցէ պատուհաս յաւուր դա-

տաստանին յանհերեկի տանջանսն» (№ 8459, էջ 19աբ. Հմմտ. №№ 9311, էջ 18ա, 648, էջ 3ա, 649, էջ 21ա, 650, էջ 24բ, 651, էջ 15ա, 657, էջ 99ա, 659, էջ 44աբ, 2964, էջ 29բ, 3562, էջ 271բ, 3369, էջ 24բ)։ № 3369-ում Պատասխանը ունի շեղումներ, օրինակ, «վատթար գործեաց», «բարձցի ի քահանայական շնորհէն», «յաւր մահուան» հատվածների փոխարեն համապատասխանաբար ունի «վատ գործ գործեաց», «ոչ մնասցին ի կարգ քահանայութեան շնորհքն», «ցվախճան»։

Հոդ. ԺԲ, էջ 30—31։ «Զինքն» բառը վերցրել ենք № 3369 ձեռագրից։ Մի քանի ձեռագրերում Հարցի վերջին երեք բառերը փոխարինված են «առնէ» բառով (№№ 8459, էջ 19բ, 9311, էջ 18բ)։

Պատասխանը այս ձեռագրերում տարբեր շեղումներով է. այսպես №№ 8459, 9311 ձեռագրերում Պատասխանը սկսվում է հետևյալ կերպ. «Ամուսնացեալ քահանայ յորժամ պատարագել կամի Դ աւուրս հրաժարեսցէ յամենայն մեղաց և ապա առնէ պատարագ» (էջ 19բ—20ա, էջ 18բ)։ Ուրիշ ձեռագրեր չունեն Պատասխանի «ամուսնացեալ... մատուցանել կամին» հատվածը, իսկ «ցմատուցման աւրն»-ը փոխարինված է «և ապա մատուցէ պատարագ» բառերով (№№ 651, էջ 15ա, 649, էջ 21բ, 650, էջ 25ա, 2964, էջ 30ա)։ № 3369 ձեռագրում Պատասխանի «զէրէս»-ը փոխարինված է «Խ»-ը բառով և չեն պահվել բնագրի «զառաջաւորութեան», «զայս» բառերը (էջ 24բ)։ Մի այլ խմբում պատասխանի վերջին երկու տողը այլ շարահարում ունի. «պարտ է սուրբ լինել և պատրաստ որպէս Աստուծոյ, իսկ կայ ի սպասու ահիւ և դողութեամբ, զի պսակաց իսկ արժանի լիցի և անմահ կենացն» (№№ 659, էջ 49բ—50ա, հմմտ. №№ 648, էջ 3բ, 657, էջ 99բ, 3562, էջ 271բ)։

Հոդ. ԺԳ, էջ 31։ Հարցի «քահանայ որպէս» հատվածը № 3369-ում աղավաղված ձևով միացրել են միմյանց և ստացվել է. «քահանայապէս» (էջ 25ա) արտահայտությունը։ Մի քանի ձեռագրում էական շեղումն այն է, որ Պատասխանի «խորհրդով առանց» բառերի միջև կա «կատարեալ մտօք», այսպես՝ «սուրբ խորհրդով, կատարեալ մտօք առանց» և այլն (№ 8459, էջ 20բ, հմմտ. №№ 649, էջ 22ա, 650, էջ 25ա, 651, էջ 15բ, 2964, էջ 30աբ, 3369, էջ 25ա, 9311, էջ 19բ)։

Հոդ. ԺԴ, էջ 31—32։ Պատասխանը որոշ ձեռագրերում շեղումներ ունի. օրինակ, № 659 և սրան հարող ձեռագրերում սկիզբն այսպես է. «Նմա չէ արժան կալ ի քահանայութեանն (№№ 648, 3562-ում՝ ի կարգի քահանայութեանն)», իսկ վերջին՝ «արհամարհեաց» բառը փոխարինված է. «անարգեաց» բառով (№№ 659, էջ 50ա, 648, էջ 3բ, 657, էջ 99բ, 2964, էջ 272ա)։ №№ 8459, 9311 ձեռագրերում վերջին շեղումն այսպես է. «հայհոյեաց և անարգեաց» (էջ 20բ, էջ 19բ)։ № 3369-ում Պատասխանն ընդարձակ է. «Նմա չէ արժանի, այլ ի կարգի քահանայութեան է նկեալ, բայց եթէ երբնու զբանն յԱստուծոյ արհամարհէ, որպէս ասէ տեառն մեր, ամենևին մի երդնուլ» (էջ 25ա)։

Հոդ. ԺԵ. էջ 32։ № 3369 ձեռագրում Հարցն այսպիսի տեսք ունի. «Ո՞րպիսի օրինակաւ պարտին ունել զքահանայութիւն» (էջ 25ա. հմմտ. №№ 649, էջ 22ա, 650, էջ 25ա, 651, էջ 15բ, 2964, էջ 30բ)։ Այստեղ բացակայում է նաև Պատասխանի «քահանային» բառը, «աղքատասէր»-ի փոխարեն ունի «աղքատանալ» (վերջին բառը №№ 648, 3562-ում՝ «աղքատ» ձևով, էջ 3բ, էջ 272ա), իսկ «զամենեսեան արքայութեանն արժանացուսցէ» և «զոր անդն է պատրաստեալ» հատվածները համապատասխանաբար գտնում ենք. «արժանաւոր կացուցանել յարքայութեան» և «փառաց» (էջ 25ա) ձևերով։ Պատասխանի վերջին՝ «արքայութեանն... պատրաստեալ» հատվածը №№ 8459, 9311 ձեռագրերում հանդիպում ենք այսպես. «արքայութեան Աստուծոյ արժան առնել և ինքն պսակէ ի Քրիստոսէ» (էջ 21ա, 20ա)։

Հոդ. ԺԶ. էջ 32—33։ Պատասխանում №№ 649, 650, 2964, 3369 ձեռագրերը չունեն «մի՛ արբենալ» բառը, վերջին ձեռագիրը չունի նաև՝ «իսկ ժողովուրդ... կեղծաւորութեան» հատվածը (էջ 25ա)։ №№ 8459, 9311-ում բացակայում է «մի՛ երդնուլ, մի՛ բամբասել» հատվածը (էջ 21բ, էջ 20ա)։ Այս երկու ձեռագրերում «ամենայն» բառը փոխարինված է «արատոյ և» բառով։ Պատասխանի վերջին մասը շեղված է. «իսկ ժողովուրդ առանց աղտո լինել առանց կեղծօորութեան» №№ 651, էջ 15բ, 650, էջ 25բ, 649, էջ 22ա, 2964, էջ 31ա)։

Հոդ. ԺԷ, էջ 33։ Պատասխանը մի քանի ձեռագրերում այլ շարահարում ունի. «Արտաքոյ եկեղեցոյ ապաշխարիցէ Գ ամ պահաւք և աղաւթիւք և տգնութեամբ և լուծումն շաբաթու և կիրակէի և ի տերունեան տաւնս մինչև ի կատարել երից ամացն և յամին չորրորդի հաղորդութեան արժանի լիցի։ Եւ որ զողասցի ոք՝ զնոյն պատուհաս կրեսցէ, ապա թէ ի մեղս յամեալ իցէ՝ կրկին ապաշխարեսցէ» (№ 651, էջ 15բ, հմմտ, №№ 649, էջ 22աբ, 650, էջ 25բ, 2964, էջ 31ա)։ №№ 8459, 9311-ում բնագրի «պատուհաս»-ը փոխարինված է «ապաշխարութիւնդ» բառով

(էջ 21բ, էջ 20բ)։ Մի քանի ձեռագրում էլ չի պահվել «ապա եթէ... ապաշխարեսցեն» հատվածը (№№ 659, էջ 51ա, 657, էջ 99բ)։

Հոդ. ԺԸ, էջ 33—34։ Հարցի «առնել» բառը վերցրել ենք № 3369 ձեռագրից։ №№ 8459, 9311-ում՝ Հարցն այսպես է. «Որ ի շնալն հեղու զորդէծնութիւնն» (էջ 22ա, էջ 20բ)։ № 3369-ում չի պահվել Պատասխանի «թէ ոք ի քրիստոնէից» հատվածը։ Մի քանի ձեռագրերում էլ բնագրի «և զԱստուծոյ երկիւղն ոչ ինչ համարի» հատվածը դրված է. «յայտնեսցի այնպիսին» բառերի միջև (№№ 8459, էջ 22ա, 649, էջ 22բ, 650, էջ 25բ,651, էջ 16ա, 2964, էջ 31ա, 9311, էջ 20բ, հմմտ. № 3369, էջ 25բ)։ Այս նույն ձեռագրերում, բացառությամբ վերջինի, «ոչ»-ը դրված է «առ ոչ» կամ «առ յոչ» ձևով։

Հոդ. ԺԹ, էջ 34։ Հարցի «պարտ է առնել»-ը վերցրել ենք № 3369 ձեռագրից։ Պատասխանը մի քանի ձեռագրերում համառոտ է. «պղծէ զինքն (№№ 649, 650, 651, 2964-ում՝ պիղծ է), այնպիսին ընդ շնացօղսն ապաշխարեսցէ և ձեռնադրութեան արժանի մի՛ լիցի» (№ 3369, էջ 25բ, հմմտ. №№ 651, էջ 16ա, 650, էջ 25բ, 649, էջ 22բ, 2964, էջ 31աբ)։

Հոդ. Ի, էջ 34—35։ Հարցի «այնպիսին» վերցրել ենք № 3369 ձեռագրից։ Այս և №№ 648, 649, 650, 651, 657, 659, 2964 ձեռագրերում չի պահվել Պատասխանի «թէ ոք պղծի... պիղծ է այնպիսին» հատվածը։ № 3369-ը «որոշմանն»-ի փոխարեն ունի «վաղչանի իւրոյ» (էջ 25բ)։ №№ 8459, 9311-ում՝ չի պահվել միայն «պիղծ է» բառը (էջ 22բ, էջ 21բ)։ №№ 648, 657, 659, 3562 ձեռագրերում այս հոդվածը դրված է Կանոնագրքի ունեցած ԻԸ հոդվածի փոխարեն։

Հոդ. ԻԱ, էջ 35։ Պատասխանը մի քանի ձեռագրերում մեզ հասել է երկու խմբագրությամբ. ա. «Արտաքոյ եկեղեցոյ ապաշխարեսցէ Բժ-ան ամ արտասվօք, Զ ամ օրէնս մի՝ առցեն, և զմի մասն կերիցեն զտարոյն՝ զշաբաթ և զկիրակէ և զտէրունեա տօնս. և երիս մասն պահեսցեն, և ապա մտցեն եկեղեցին և հաղորդեսցին» (№ 3369, էջ 25բ—26ա. հմմտ. №№ 649, էջ 22բ, 650, էջ 26ա, 651, էջ 16ա, 2964, էջ 31բ)։ բ. «Եթէ այր կամ կին որ ամուսնացեալ լինի և շնա, ԺԲ ամ արտաքոյ եկեղեցոյ ապաշխարեսցէ արտասուօք, Զ ամ սրբութեամբ պահել զշաբաթ և զկիրակի և զտօնս տէրունականս, այլ աւուրքն ամենայն Զ ամին մի՛ լիցին, իսկ Զ ամն զԳ մասն տարոյն պահեսցէ և զմինն կերիցէ և զշաբաթու և զկիրակէ և զտէրունայն տօնս, և ապա մտցէ յեկեղեցին և հաղորդեսցի» (№ 8459, էջ 22բ—23ա, հմմտ. № 9311, էջ 21բ—22ա)։

Հոդ. ԻԲ, էջ 35։ Հարցը №№ 8459, 9311-ում այսպես է. «Կախարդի զի՞նչ հրաման տացուք» (էջ 23բ, էջ 22ա)։ Այս երկու ձեռագրերում բացակայում է Պատասխանի «կախարդի» բառը, իսկ վերջում՝ «ի վերայ» բառին հաջորդում է «նորա» դերանունը։ Մնացած ձեռագրերի մի մասում Պատասխանն համեմատաբար ընդարձակ է. «Ամենայն աւուրս կենաց իւրոյ ապաշխարեսցէ արտաքոյ եկեղեցոյ և ի վախչանին հաղորդեսցի» (№№ 3369, էջ 26ա, 649, էջ 23ա, 650, էջ 26ա, 651, էջ 16ա, 2964, էջ 31բ—32ա)։ Այս և հաջորդ ԻԳ հոդվածները չեն պահվել №№ 648, 657, 659, 3562 ձեռագրերում։

№№ 649, 651, 2964, 3369, 8459, 9311 ձեռագրերում մնացած հոդվածները ունեն հետևյալ հերթականությունը.

| Կանոնագիրք | Նշված ձեռագրերը |
|---|---|
| ԻԳ . . . . . . . . . | ԻԳ |
| ԻԴ . . . . . . . . . | ԻԴ |
| ԻԵ . . . . . . . . . | ԼԱ |
| ԻԶ . . . . . . . . . | Լ |
| ԻԷ . . . . . . . . . | ԼԲ |
| ԻԸ . . . . . . . . . | ԻԶ |
| ԻԹ . . . . . . . . . | ԻԲ |
| Լ . . . . . . . . . | ԻԵ |
| ԼԱ . . . . . . . . . | ԻԷ |
| ԼԲ . . . . . . . . . | ԻԸ |
| ԼԳ . . . . . . . . . | ԻԹ (հմմտ. Աբէլ Մխիթարեանց, Պատմութիւն ժողովոց Հայաստանեայց եկեղեցւոյ, Վաղարշապատ, 1874, էջ 16—17)։ |

Հոդ. ԻԳ, էջ 36։ Հարցի «արասցուք»-ը վերցրել ենք № 3369 ձեռագրից։ Պատասխանի «որ շնայ... ցաւր մահուան» հատվածի փոխարեն մի քանի ձեռագրեր ունեն «զամենայն աւուրս կենաց» (№ 651, էջ 16բ, հմմտ. №№ 649, էջ 23ա, 650, էջ 26ա, 2964, էջ 32ա, 3369, էջ 26ա), իսկ երկու ձեռագիր՝ «մինչև ցօր մահուանն» (№№ 8459, էջ 23բ, 9311, էջ 22բ)։

Հոդ. ԻԴ. էջ 36։ Հարցի «որպէս»-ը վերցրել ենք № 3369 ձեռագրից։ Հարցը բացակայում է №№ 8459, 9311 ձեռագրերում։ № 3369-ում բացակայում է Պատասխանի «քրիստոնէից... զշո-

բեջչարաթ» հատվածը։ №№ 649, 650, 651, 2964, 3369, 8459, 9311-ում՝ «խոնարհութիւն և «չարչարանաւքն» բառերին նախորդում է «կամաւոր» բառը։

№№ 8459, 9311-ում բացակայում է հոդվածի վերջին՝ «պահել մինչև ցինն ժամն» հատվածը (էջ 25ա, էջ 23բ—24ա)։ Այս հատվածի «պահել» բառին № 3369-ում նախորդում է «ապա պարտ է» բառերը (էջ 26բ)։

Հոդ. ԻԶ, էջ 36—37: Միայն № 649 ձեռագրում Հարցը ունի շեղում. «Ո՞րպէս կատարեսցէ մարդ տանս» (էջ 23բ)։

Պատասխանը այս ձեռագրերում պահվել է երկու խմբագրությամբ. ա. «Նախ պահեսցեն շաբաթ մի ի պատիւ սուրբ տանին և ի սպաս և ապա կատարեսցեն» (№ 651, էջ 16բ, հմմտ. №№ 649, էջ 23բ, 650, էջ 26բ, 2964, էջ 32բ, 3369, էջ 26բ)։ բ. «Յորժամ տօն առնեն քրիստոնեայքն նախ պահեսցեն շաբաթ մի ի պատիւ սուրբ տօնին և ապա կատարեսցեն» (№№ 8459, էջ 25ա, 9311, էջ 23բ)։

Հոդ. ԻԷ, էջ 37: Հարցը № 3369-ում այսպես է. «Զսուրբ Քառասնորդսն պահեսցեն քրիստոնեայքն սրբութեամբ որպէս արժան է պահել» (էջ 26բ—27ա)։ Պատասխանի սկզբից մինչև «և ապա»-ն № 3369-ում ունի այսպիսի շարադասություն. «զսուրբ Քառասնորդսն պահել ամենայն քրիստոնեայք սրբութեամբ, որ սոյն շաբաթ և կիրակէ է. և յորժամ չարչարանաց տեառն մերոյ օրք կան՝ մի՛ ոք իշխեսցէ ժպտել, այլ տրտում ընդ տեառն մերոյ տգնութեամբ անդադար աղօթիւք» (էջ 27ա)։ Բնագրի «հաւատացեալքն» բառը №№ 8459, 9311-ում փոխարինված է «ամենայն քրիստոնեայք» բառերով, իսկ №№ 649, 650, 651, 2964-ում՝ «քրիստոնեայքն» բառով։ №№ 8459, 9311-ում՝ բնագրի «ուրոյն»-ը փոխարինված է «որ ոչ»-ով։

Հոդ. ԻԸ, էջ 38: Հարցը № 3369-ում այսպես է. «Թէ զանսասուն ոք պղծեսցէ զի՞նչ արասցուք» (էջ 26ա)։ Այս ձեռագրում Պատասխանն այսպես է. «Որչափ ամս կենաց մարդոյ են ապաշխարեսցեն և ի վախճանին հաղորդեսցին»։ Մի քանի ձեռագրերում չի պահվել Պատասխանի «Որ ընդ անասնոյ պղծի» հատվածը (№№ 649, էջ 24ա, 650, էջ 27ա, 651, էջ 17ա, 2964, էջ 33ա, 8459, էջ 24ա, 9311, էջ 22բ)։ Այս հոդվածը չի պահվել № 659 ձեռագրում։

Հոդ. ԻԹ, էջ 38: № 3369-ում Հարցը շարունակվում է. «Նմա առնել» (էջ 26ա), իսկ Պատասխանը մի փոքր այլ է, «Ունկնդիրս կացցէ ի մէջ եկեղեցոյ ժե ամ և զայլ ժամանակս ընդ ձեռամբ. և յելս անձին իւրոյ հաղորդեսցի» (էջ 26ա)։

Հոդ. Լ, էջ 39: Պատասխանի «սնուցող» բառը № 8459-ում դրված է «ըստընդուն» (էջ 24ա), իսկ № 9311-ում՝ «ըստ ընդունօղն (էջ 23ա) ձևով։ Վերջին ընթերցումը ակներև սխալ է։

Հոդ. ԼԱ, էջ 39: Պատասխանի «յարակայ» բառը №№ 649, 650, 651, 2964, 3369 ձեռագրերում փոխարինված է «հանապազ»-ով։

Վերջաբան, էջ 39—40: Բնագրի «զայս»-ի փոխարեն № 3369-ում՝ «զայս կանոնս» (էջ 27ա), «յինէն»-ի՝ «յիսնէն» (№№ 650, էջ 27ա, 651, էջ 17ա, 3369, էջ 27ա), «և այլ որ յետ ձեր»-ի՝ «և օրէնք ձեզ» (№ 3369, էջ 27ա), «յաղաւթս»-ի՝ «յաղագս» (№ 650, էջ 27ա, 649, էջ 24ա, 651, էջ 17ա), «կարգեցին»-ի՝ «հաստատեցին» (№№ 649, 650, 651, 2964, 3369), «լուաւ»-ի՝ «թուեալ է» (№ 8459, էջ 26բ, 9311, էջ 25ա), «տեառն»-ի՝ «մեր» (№ 3369), «գրեց»-ի՝ «իմով ձեռամբս գրեցի» (№ 3369), վերջինս չունի նաև «ըստ» (սահմանս) բառը։ «Զաքարիայ» անունը №№ 649, 650, 651, 2964, 3369 ձեռագրերում դրված է «Զաքէ», իսկ №№ 8459, 9311-ում՝ «Աղդէ» ձևերով։

# ՓԻԼԻՊՊՈՍ ԱՌԱՔՅԱԼԻՆ ՎԵՐԱԳՐՎԱԾ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

**Վերնագիր, էջ 41:** *Ծանոթագրություններում օգտագործված ձեռագրերը վերնագրում ունեն առանձին շեղումներ. օրինակ՝ «Կանոնք սուրբ և մաքուր առաքելոյն Փիլիպպոսի» (№ 3369, էջ 27բ), «Կանոնք Փիլիպպոսի առաքելոյն ունելով Խ տունս» (№№ 8459, էջ 27ա, 9311, էջ 25ա), «Կանոնք Փիլիպպոսի առաքելոյն, Յաղագս քառասունս առնելոյ» (№ 649, էջ 24ա, Համտ. №№ 650, էջ 27բ, 651, էջ 17բ, 2964, էջ 33բ, 648, էջ 5ա, 3562, էջ 273բ)։* kmps *ձեռագրերում առաջաբանին նախորդում է կանոնախմբի հոդվածների ցանկ։ Այն բերում ենք ըստ* k *ձեռագրի.*

*«Ա. Նախ թէ պարտ է քառասունք կատարելոյ* (sic)*։*

*Բ. Վասն ամուլ կանանց։*

*Գ. Վասն թէ ոչ է պարտ զշուն ընդ ոչխարի փոխանակել՝ զոչխարն պատարագ մատուցանել։*

*Դ. էշ փոխանակեալ ընդ ոչխարի և վաճառեալ արծաթի՝ պատարագեսցի։*

*Ե. Վասն ոչ զենլոյ զանսուրբ կենդանիսն և առնուլ զմորթսն։*

*Զ. Վասն որ զսուրբ կենդանիսն որսան և առանց զենման ուտեն և զմեռելոտոյ զմորթսն կորզեն։*

*Է. Վասն կանանց որ ապարահ իցեն՝ ոչ մերձենան։*

*Ը. Վասն կանանց որ ապարահ իցեն՝ մի՛ արգելցին յաղաւթից ժամուն։*

*Թ. Վասն այնոցիկ որք խափանեն ի ժամու աղաւթիցն»* (k*, էջ 32ա, Համտ.* m*, էջ 44ա,* p*, էջ 36 բ,* s*, էջ 39բ)։*

*Ցանկի մեջ մուծված է նաև Քառասունքի վերաբերյալ հատվածի առաջին մասի (տող 2—7) բովանդակությունը (առաջին վերնագիրը), այդ պատճառով էլ ցանկը բաղկացած է 9(Թ) վերնագրից, մինչդեռ կանոնախումբն ունի 8 հոդված։*

O *ձեռագրում ցանկն ունի հետևյալ պատկերը.*

*«Ա. Վասն կնոջ որ ամուլ դիպի։*

*Բ. Շուն եթէ փոխանակեսցի ընդ ոչխարի։*

*Գ. Վասն իշու որ փոխանակեսցի ընդ ոչխարի։*

*Դ. Վասն զենման անսուրբ գազանաց և վերարկուս վաճառեն։*

*Ե. Վասն որսորդաց որ մաքուր անասուն որսան։*

*Զ. Վասն տեատեսս կնոջ որ այրն իւր մերձենայ։*

*Է. Վասն տեոատես կնոջ որ խափանէ զաղօթսն։*

*Ը. Վասն ամենայն հաւատացելոց որ խափանեն զաղօթսն այգուն և երեկունն ոչ գնան» (էջ 329բ)։*

**Քառասունքի մասին, էջ 41—42:** *Այս բնագիրը աննշան տարբերություններով գտնում ենք № 3369 ձեռագրում (էջ 27բ)։ Այստեղ չի պահվել «եւ մարգարէականք» բառը, իսկ մի քանի բառեր էլ փոխարինված են այլ կամ հոմանիշ բառերով, օրինակ, «Թողութեան»-ը՝ «քաւութեան և թողութեան», «մեռելոց»-ը՝ «ննջեցելոց», «սակաւաւորք»-ը՝ «սակաւ աւուրք։ Ձեռագրերի մյուս խումբն ունի այլ շարադասությամբ և մի փոքր էլ ընդարձակ առաջաբան։ Վերջինս կբերենք ամբողջությամբ. «Տեառն Փիլիպ[պ]ոսի (№№ 8459, 9311-ը՝ Փիլիպոսի առաքելոյն) հրամայեալ է (№№ 8459, 9311-ը՝ զոր հրամայել է) ունել (№№ 8459, 9311-ը՝ չիf ունել) Քառասունս (№№ 8459, 9311-ը՝ Խ տունս), զոր կարգեաց (№№ 8459,9311-ը՝ կարգեցաք, № 650-ը՝ կատարեաց, № 651-ը՝ զարգեաց) հրամանաւք (№№ 8459, 9311-ը՝ հրամանաւ) նորա Յոհան-*

*նէս (№№ 649, 650, 651, 2964-ը՝ Յոհանէս աւետարանիչ (№№ 8459, 9311-ը՝ աւետարանիչն) մաւր (№№ 648, 3562-ը՝ մօր, 8459, 9311-ը՝ և մայր) տեառն բարեխաւսել (№№ 648, 3562, 8459, 9311-ը՝ բարեխօսել) նմա. նախ առաջին (№№ 8459, 9311-ը՝ ի յառաջ) յաղագս (№№ 8459, 9311-ը՝* չիք *յաղագս) ինքեան թողութեան (№№ 8459, 9311-ը՝ թողութիւն առ Փիլիպոս) որ զանհաւատ քաղաքն կործանեաց Փիլիպպոս (№№ 8459, 9311-ը՝* չիք *Փիլիպպոս) և յանդիմանեցաւ ի տեառնէ վասն բարկացողութեան (№№ 648, 3562-ը՝ բարկացողութեանն)։ Եւ ի նմանէ ընկալան մանկունք եկեղեցոյ երիցս անգամ (№№ 8459, 9311-ը՝ միանգամ) արժան է և աւելի ոչ հրամայեմք, բայց զսահմանեալ (№№ 8459, 9311-ը՝ սահմանել) աղաւթսն (№№ 648, 3562-ը՝ աղոթսն, 8459, 9311-ը՝ աղօթս) անխափան կատարեսցէ մատուցողն (№№ 649, 650, 651, 2964-ը՝ մատուցանողն, 8459, 9311-ը՝ զմատուցողսն) և ի մէջ կանոնացն կարդացմունք (№№ 8459, 9311-ը՝ կարդացմունս եղիցի) առաքելականը (№№ 649, 650, 651, 2964-ը՝ առաքելական, 8459, 9311-ը՝ առաքելականս) և խունկս արկանել ի մէջ կանոնացն և յամենայն (№№ 649, 650, 651, 2964-ը՝ ամենայն) աւուր (№ 650-ը՝ յորոյ) սպասք (№№ 8459, 9311-ը՝ սպաս) առնել եկեղեցոյն (№№ 8459, 9311-ը՝ եկեղեցւոյ) և յամենայն (№№ 649, 650, 651, 2964-ը՝ ամենայն) ժամանակ (№№ 649, 650, 651, 2964-ը՝ տասնակ, 8459, 9311-ը՝ ժ օր) գիշերապաշտաւն (№№ 8459, 9311-ը՝ գիշերապաշտօն) առնել և սաղմոսել ընձայիւք (№№ 8459, 9311-ը՝ ընծայիւք, 649-ը՝ ընձայնիւք)։ Իսկ զՔառասունսն (№№ 648, 3562-ը՝ զխ-ուն, 8459-ը՝ զխ-ունս, 9311-ը՝ զխ-տունս) հրամայեաց ունել (№№ 8459, 9311-ը՝ առնել) զաւուրս խԸ (№№ 649-ը՝ քառասու[ն] և ութ) վասն թողութեան մեղաց մեռելոց և կենդանեաց (№№ 8459, 9311-ը՝ կենդանեաց և մեռելոց) ըստ №№ 8459, 9311-ը՝* չիք *ըստ) խԸ (№№ 649, քառասուն և ութ, 8459, 9311-ը՝ զխԸ) քաղաքաց (№№ 8459, 9311-ը՝ քաղաքացն) Յեսուայ, որով (№№ 648, 3562-ը՝ որովք) ապրէին մահապարտքն (№№ 8459, 9311-ը՝ մահապարտեալքն) ի նոսա ապաստանեալք (№ 650-ը՝ ըսպաս տանեալք)։ Իսկ զհասն (№ 651-ը՝ զհարկսն) հրամայեալ է (№№ 8459, 9311-ը՝ հրամայեաց) խԸ երկդրամեան (№№ 8459, 9311-ը՝ երկդրամեանն) տալ յեկեղեցին ըստ կատարման աւուրցն խորհրդոց (№№ 8459, 9311-ը՝ խորհրդոյ), զոր անդրանկացն (№№ 649, 650, 651, 2964-ը՝ յանդրանկացն, 8459, 9311-ը՝ ի յանդրանկաց) պահանջէր Աստուած տալ քահանայական ազգին Ղևտացոցն (№№ 8459, 9311-ը՝ Ղևտացւոց), զոր իւր անուանեաց փոխանակ եգիպտացոցն (№№ 650, 651, 2964-ը՝ եգիպտացն, 8459, 9311-ը՝ եգիպտացւոց) անդրանկացն (№№ 8459, 9311-ը՝ անդրանկաց) կործանելոցն (№№ 649, 650, 651, 2964, 8459, 9311-ը՝ կործանելոց), զի սակաւաւորք (№№ 649, 648, 3562-ը՝ սակաւ աւուրք, 8459, 9311-ը՝ սակաւորք) էին։ Իսկ եթէ յաղագս (№ 649-ը՝ յաղաքս) աղքատութեան (№ 649-ը՝ աղքատութեամբ) պակաս իցէ քան զխԸ (№ 9311-ը՝ խԸ) երկդրամեան (№№ 8459, 9311-ը՝ երկդրամեանն) հաւանութեամբ (№ 649, 8459, 9311-ը՝ հաւանութեան,* այս բառը *№ 8459-ում* նաև կրկնված է) *քահանային արժան է, քանզի մեծ հնարաւոր է (№№ 8459, 9311-ը՝ զօրաւոր է, 648, 3562-ը՝* չի՛ *է) ուխտս այս առ մեռեալս և առ կենդանիս (№№ 648, 3562-ը՝ կենդանիսն)։ Քանզի այսպէս հաւատա (№№ 8459, 9311-ը՝ հաւատաց) եկեղեցի Աստուծոյ, եթէ (№№ 649, 650, 651, 2964-ը՝ թէ) յանդունդս (№№ 649, 650, 651, 2964-ը՝ անդունդս) տարտարոսաց լինիցի (№№ 8450, 9311-ը՝ լինել) գրաւեալ (№№ 8459, 9311-ը՝* չիք *գրաւեալ) ոգին (№№ 8459, 9311-ը՝ հոգին) և ժ կնքով (№№ 648, 3562-ը՝ կնքող) կնքեալ իցէ, զի մի՛ ոք կարասցէ (№№ 8459, 9311-ը՝ կարիցէ) յիշատակել առաջի Աստուծոյ ի փրկութիւն։ Բայց որք սրբութեամբ և աղաւթիւք (№№ 648, 3562, 8459, 9311-ը՝ աղօթիւք) կատարին զուխտս զայս, կարեն փրկել (№№ 649, 650, 651, 2964-ը՝ փրկեն) զմեռեալսն (№№ 8459, 9311-ը՝ զմբռնեալսն) և կարեն (№№ 8459, 9311-ը՝ կարէ) փրկել (№№ 649, 650, 651, 2964-ը՝ խզել, 8459, 9311-ը՝ փշրել) զժ կնիքս (№№ 8459, 9311-ը՝ կնիքն) Աստուծով (№№ 9311-ը՝ Աստուծոյ) զներքին (№№ 8459, 9311-ը՝ ի ներքին) դժոխոցն ի վեր յերկինս թռուցանէ (№№ 8459, 9311-ը՝ թռուցանել) զհոգին, եթէ ի հաւատս (№№ 649, 650, 651, 2964-ը՝ զհաւատս) միայն իցէ վաղճանեալն (№№ 8450, 9311-ը վախճանել) և ոչ յանաստուածութեան (№№ 8459, 9311-ը՝ յանաստուածութիւն) և ի հայհոյութեան (№№ 8459, 9311-ը՝ ի հայհոյութիւն)։ Վասն որոյ և ամենայն գունդք հրեշտակաց բազմութեան այսպիսի անուշահոտ (№№ 8459, 9311-ը՝ անուշահոտութեան) ցանկութեանց վարդագոյն արեանն Քրիստոսի սուրբ (№№ 8459, 9311-ը՝ զԲ) զենմանն դոռթ (№№ 649-ը՝ գոռհթ, 8459, 9311-ը՝ գրոհ) տուեալ ի վերուստ խուափելով անդ հասանեն ի սպասաւորութիւն. և լինի յայնմ (№№ 8459, 9311-ը՝ յայն) աւուր (№№ 650, 651, 2964-ը՝* չիք *աւուր) տօն (№№ 648, 3562, 650, 651, 2964-ը՝ տուն) պատարագին, տուն (№№ 8459, 9311-ը՝ և տուն) Աստուծոյ և բնակութիւն (№№ 8459, 9311-ը՝ բնակարան) հրեշտակաց» (№№ 648, էջ 5ա—6ա, 3562,*

էջ 273բ—274բ, 649, էջ 24ա—25ա, 650, էջ 27բ—28բ, 651, էջ 17բ—18ա, 2964, էջ 33բ—35ա, 8459, էջ 27ա—29բ, 9311, էջ 25ա—27բ)։

№ 659 ձեռագրում Փիլիպպոս առաքյալի կանոններին նախորդում են նույն հեղինակին վերագրված երկու գրություններ. ա. «Սահմանք Փիլիպպոսի առաքելոյ յաղագս Քառասունս ունելոյ և պատարագաց» (էջ 53բ—56ա). սկ. «Անգիտաբար ոմանք ասեն. եթե Քրիստոսի պատարագելոյն արդ ոչ ևս պիտոյ իցեն վասն մեղաց պատարագ...» (էջ 53բ)։ բ. «Յեկեղեցական պատմութենէ վասն Փիլիպպոսի առաքելոյ» (էջ 56ա—59բ). սկ. «Զայս ուսաք մեք վասն սրբոց առաքելոցն Քրիստոսի՝ զՔառասունս նախ Փիլիպպոս առաքեալ կարգեաց...» (էջ 56ա)։

Պետք է նաև նշել, որ Փիլիպպոսի անունով Կանոնագրքում եղած այս երկու բնագրերը տարբեր գրություններ են։

№ 657 ձեռագրում չի պահվել Քառասունքի մասին հատվածը։

Հոդ. Ա, էջ 42—43: №№ 649, 650, 651, 2964, 8459, 9311 ձեռագրերում այս կանոնախմբի հոդվածները չեն պահվել։ №№ 648, 3562 ձեռագրերում հոդվածները էական տարբերություն չունեն։ №№ 659, 657 ձեռագրերում բնագրի «զվայրենանալն» բառը դրված է «զվերանալն» ձևով (էջ 60ա, էջ 124բ)։ № 3369 ձեռագրում բնագրի «պարտապան» բառը փոխարինված է «պարտական» բառով (էջ 28ա)։ № 657 ձեռագրում «է ամ»-ի փոխարեն «Ե ամ» (էջ 124բ)։

Հոդ. Բ, էջ 43: № 3369 ձեռագրում չի պահվել բնագրի «զի զինք չան են» հատվածը։

Հոդ. Գ, էջ 43—44: № 3369 ձեռագրում կան մի երկու էական շեղումներ. օրինակ՝ երկիցս գործածված «զվերարկու», «զվերարկուս» բառը համապատասխանաբար հանդիպում ենք «զվերակացու», «վերակացուս» սխալ ձևերով (էջ 28ա), իսկ «զարծաթն» բառը՝ «զարդարն» ձևով (էջ 28ա)։ №№ 659, 657 ձեռագրերը բնագրի «է թէ» բառերի միջև ունեն «որպէս» բառը, այսպէս՝ «այնպէս է, որպէս թէ» (է« 60ա, էջ 124բ)։ Այստեղ չի պահվել «նոցա» բառը։

Հոդ. Ե, էջ 44: Բնագրի «եւ վիրաւորեալ» հատվածը № 3369 ձեռագրում «և եթէ լինի վիրաւորեալ» ձևով է (էջ 28ա)։

Հոդ. Զ, էջ 44: Բնագրի «սահմանացն լինիցի» բառերի միջև №№ 659, 657 ձեռագրերում պահվել է «ծորումն» բառը, այսպես «սահմանացն ծորումն լինիցի» (էջ 61ա, էջ 125ա)։ Իսկ № 3369 ձեռագրում բնագրի «ապականածնութեան» բառի փոխարեն գրված է «ապականութեան» (էջ 28ա)։

Հոդ. Ը, էջ 45: №№ 3369 ձեռագրում բնագրի «ժամանելով» բառը փոխարինված է «մտանելով» բառով (էջ 28բ), իսկ «ունկն դնելով»-ը «ունկնդրութեան» բառով (էջ 28բ)։ Այս նույն ձեռագրում պահվել է 9-րդ հոդված. «Թ. Իսկ եթէ յանդգնեալ եպիսկոպոսին վասն կաշառոյ կամ վասն բարեխօսութեան և կամ վասն մերձաւորութեան հրաման տացէ՝ վրէժս աւուրն դատաստանին աններելի տանջանս» (էջ 28բ)։ Այս հոդվածն ավելացրել են հետագայում։ Փիլիպպոս առաքյալի անունով հայտնի կանոնախմբի հնագույն ձեռագրերն այս հոդվածը չունեն։ Թադէոս առաքյալի անունով հայտնի 11-րդ հոդվածի վերջին մասն է այն, տե՛ս վերևում՝ էջ 30, տող 6—9։

## ԱՅՍՊԵՍ ԿՈՉՎԱԾ ԵՐԿՐՈՐԴ ԱՆՏԻՈՔԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Վերնագիր, էջ 46։ *Մի քանի ձեռագրերում վերնագիրն այսպես է. «Նորին կանոնք երկրորդ» (№№ 3562, էջ 295բ, 648, էջ 23բ), «Դարձեալ (№ 649-ում՝ չիք՝ դարձեալ) նոցին կանոնք երկրորդ (№№ 649, 650-ում՝ երրորդ)» (№№ 651, էջ 35բ, 649, էջ 45ա, 650, էջ 48բ, 2964, էջ 65ա), «Դարձեալ նոցին երկրորդ կանոնք» (№ 3369, էջ 62բ)։ Այս ձեռագրերում վերնագիրը սկսվում է «նորին, «նոցին» և «դարձեալ նոցին» բառերով, որովհետև սույն կանոնախմբին անմիջապես նախորդում է 25 հոդվածից բաղկացած՝ Անտիոքի կանոնախումբը, որը մտել էր Կանոնագրքի Հովհաննես Օձնեցու ժողովածուի մեջ (տես «Կանոնագիրք Հայոց», հտ. Ա, էջ 202—223)։*

*№ 657 ձեռագրում չի պահվել այս կանոնախումբը։ Հինգ ձեռագրերում պահվել է հոդվածների բովանդակության ցանկը, որ այստեղ բերում ենք ըստ* k *ձեռագրի.*

*«.Ա. Վասն եպիսկոպոսի չիշխել այլոց վիճակի։*

*Բ. [Վասն] ոչ նստելոյ սարկաւագի ընդ իրիցու։*

*Գ. Վասն որ եկեղեցիս հաց ուտեն։*

*Դ. Վասն արանց չղաւղել ընդ կանայս։*

*Ե. Վասն որ ի հարսանիս կաքաւեն։*

*Զ. Վասն ժառանգաւորաց որ ի խաղս և ի հրապարակս գնան։*

*Է. Վասն մեղաց և արդարութեան և ապաշխարելոյ։*

*Ը. [Վասն] ի սուրբ գրոց վկայութեան պատուիրանացն Աստուծոյ։*

*Թ. Վասն աստուածաշունչ գրոց» (էջ 186բ, տե՛ս նաև* m, *էջ 190բ—191ա,* p, *էջ 204բ—205ա,* s, *էջ 234ա—234բ)։*

*Իսկ* O *ձեռագրի ցանկը այսպիսին է.*

*«Ա. Վասն եպիսկոպոսի մի՛ իշխեսցէ յայլոց վիճակի քահանայ ձեռնադրել։*

*Բ. Վասն սարկաւագի մի՛ նստցի ընդ իրիցու ի սեղան։*

*Գ. Վասն ի մէջ եկեղեցոյ ոչ ճաշակել հաց։*

*Դ. Վասն քահանայի և սարկաւագաց և ժողովրդոց ի հետ կանանց մի՛ մտցեն ի բաղանիսն։*

*Ե. Վասն քահանայի ոչ գնալ ի հարսանիս և կաքաւել։*

*Զ. Վասն քահանայից և յուխտէ մանկանց մի՛ գնալ տեսանել խաղ ի հրապարակս։*

*Է. Վասն զաւհմանադրեալ կանոնս և զօրէնս պահեսցեն։*

*Ը. Վասն լսելոյ զլեզու իւր ի չար և ի սուտ խօսելոյ և յերդնելոյ։*

*Թ. Վասն պաշտելոյ զԱստուածաշունչ գիրք՝ զՀին և զՆորս» (էջ 331աբ)։*

*Հոդվածների ուշադիր քննությունը ցույց տվեց, որ դրանք քաղված են մեզ հայտնի կանոնախմբերից և աղբյուրներից. այդ մասին տե՛ս վերևում՝ էջ XLVI։ Առաջաբանը և Ը հոդվածը ավարտվում է «ողջ լերուք ի Տէր» արտահայտությամբ, որը ցույց է տալիս, որ գրվածքը ուղղված է մեկին և խրախատական նամակի բնույթ ունի, թեև իրականում կարող էր որևէ մեկին ուղղված չլինել։*

Առաջաբան, էջ 46—47։ *№№ 648, 649, 650, 651, 2964, 3369, 3562 ձեռագրերը չունեն առաջաբան։ № 659 ձեռագրում չի պահվել առաջաբանի սկզբի «Որպէս ասէ՝ յերկուց... ասիցեն լերինս փոխեաց՝ փոխեսցի» և վերջին՝ «խաղաղութիւն ձեզ բազմասցի, ողջ լերուք ի Տէր» հատվածները։*

Հոդ. Ա, էջ 47։ *№№ 648, 649, 650, 651, 2964, 3369, 3562 ձեռագրերում չի պահվել այս հոդվածը։ Այս ձեռագրերում պահվել են Բ, Գ, Դ, Ե, Զ, հոդվածները, թվով հինգ։*

Հոդ. Բ, էջ 47: *Նախորդ ծանոթ. մեջ նշված յոթ ձեռագրերում այս հոդվածը դրված է Գ հոդվածի տեղը, իսկ Գ-ն՝ Բ-ի։*

Հոդ. Գ, էջ 47: *№ 650 ձեռագրում չի պահվել սկզբի «Կամ եղև մեծ և սուրբ ժողովոյն» հատվածը։ Հոդվածի վերջում №№ 649, 650, 651, 2969, 3369 ձեռագրերն ունեն «ըստ առաքելոյն»։ Իսկ բնագրի «ունիցին» բառը № 3369 ձեռագրում փոխարինված է «ուտիցին» բառով (էջ 62բ)։*

Հոդ. Դ, էջ 47—48: *Բնագրի «երէց» բառը №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում դրված է հոգնակի «քահանայից» (№№ 648, էջ 23բ, 3562, էջ 296ա), «սարկաւագ»-ը՝ «սարկաւագաց», «ղուղել»-ը՝ «լաւղել» (№ 650-ում՝ լօղեալ. №№ 649, էջ 45ա, 650, էջ 49ա, 651, էջ 35բ, 2964, էջ 65բ)։ Հոդվածի վերջում №№ 649, 650, 651, 2964, 3369 ձեռագրերում կարդում ենք նաև «ընդ նոսա»։*

Հոդ. Ե, էջ 48. *№№ 648, 3562 ձեռագրերում սկիզբը մի փոքր այլ շարադասություն ունի. այսպես՝ «Կամ եղև մեծ ժողովոյն թէ քահանայից իսկ և ամենայն ուխտի» (էջ 23բ, 296ա)։ Հոդվածի վերջին՝ «վայել է» բառին №№ 648 (էջ 23բ), 649 (էջ 45ա), 650 (էջ 49ա), 651 (էջ 36ա), 2964 (էջ 65բ), 3562 (էջ 296ա) ձեռագրերում հաջորդում է «քահանայից», իսկ № 3369 (էջ 62բ) ձեռագրում՝ «քրիստոնէից» բառը։*

Հոդ. Զ, էջ 48: *Բնագրի «երգոց և փողոց» հատվածը №№ 649, 650, 651, 2964, 3369 ձեռագրերում այսպես է՝ «երգաց (№ 3369-ում՝ երգուց) և պարուց և փողոց»։ Այս ձեռագրերը չունեն նաև «քո», «զտուն իւր» բառերը։ Վերջինս չունի նաև № 659 ձեռագիրը (էջ 103բ)։ №№ 648, 649, 650, 651, 659, 2964, 3369, 3562 ձեռագրերում բնագրի «առնել» բառը փոխարինված է «լինել» բառով։ Բնագրի «Աստուծոյ քանզի» բառերի միջև կարդում ենք. «զիտաւջիր զի հեռանան (№ 659-ում՝ հեռանայ) շնորհք (№№ 659-ում՝ շնորհեն, 648-ում՝ շնորհքն) տեառն (№ 659-ում՝ աստուծոյ)» (№№ 648, էջ 23բ—24ա, 649, էջ 45ա, 650, էջ 49ա, 651, էջ 36ա, 659, էջ 103բ, 2964, էջ 65բ, 3369, էջ 62բ, 3562, էջ 296ա)։*

Հոդ. Է—Թ, էջ 48—54: *№№ 648, 649, 650, 651, 2964, 3369, 3562 ձեռագրերում այս երեք հոդվածները չեն պահվել։*

*№ 659 ձեռագրում մինչև Է հոդվածի պատգամների թվարկումը կա վերնագիր՝ «Ժ պատգամք» (էջ 103բ, հմմտ. 1բ էջը)։ Առանձին շեղումներ կան պատգամների մեջ. օրինակ՝ ա-ում «ձեզ»-ի փոխարեն կա «քեզ» (էջ 103բ). ահա նաև մյուսները, որոնք խիստ համառոտ են.*

*«բ. Եւ մի՛ արասցես զնմանութիւն տեառն Աստուծոյ քո ի վերայ երկրի։*

*գ. Սիրեսցես զտէր Աստուած քո։*

*դ. Պատուեայ զաւր շաբաթուն։*

*ե. Եւ զհայր և զմայր քո պատուեայ» (էջ 103բ—104ա)։ Սրա տակ գրված է. «Այս ի մի տախտակին գրեալ կայր, և ի միւսն» (էջ 104ա), և թվում է հաջորդ զ—ժ պատգամները, ուր համառոտ են թ-ն և ժ-ն.*

*«թ. Մի՛ սուտ վկայեր։*

*ժ. Մի՛ ցանկայր ամենայնի որ ինչ ընկերին է» (էջ 104ա)։*

Հոդ. Ը, էջ 50—52: *№ 659 ձեռագրում այս հոդվածը միացված է նախորդին։ Այստեղ չեն պահվել հոդվածի վերջին մասի «որ կամիցի», «զԱստուած» և «ողջ լերուք... ուխտի եկեղեցւոյ» բառերը և հատվածը, ինչպես նաև Թ հոդվածը։*

## ԵՓՐԵՄ ԱՍՈՐՈՒՆ ՎԵՐԱԳՐՎԱԾ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Վերնագիր, էջ 55: *№№ 648, 3562 ձեռագրերում չի պահվել բնագրի «գլուխք Ը» հատվածը (էջ 165բ, էջ 261ա)։ Երկու ձեռագրեր միայն վերջին մասում ունեն բառերի եռևառաջություն. «ի կուսութեան ճառէն, զոր սնուցանէր անապատն» (№№ 659, էջ 311ա, 657, էջ 123բ)։ № 657 ձեռագրում նշված է «տուն ԻԸ», մինչդեռ ձեռագրում բերված են Կանոնագրքից արդեն հայտնի ութ հոդվածները։ Այս կանոնախմբի վավերականության մասին խոսելիս Հ. Տաշյանը այն իրավացիորեն համարում է կեղծ (Վարդապետութիւն առաքելոց, էջ 148)։ Եփրեմ Ասորու մատենագրության մեջ (Սրբոյն Եփրեմի մատենագրութիւնք, հտ. Ա, Բ, Գ. Վենետիկ, 1836) մեր որոնումներն այս կանոնախմբի վավերականությունը հաստատող որևէ հետք գտնելու համար՝ իզուր անցան։*

*Հոդվածների բովանդակության ցանկերը մի քանի ձեռագրերում տարբեր են, օրինակ,* kmps*-ինն այսպես է (ըստ* k *ձեռագրի).*

*«Ա. Վասն ժառանգաւորաց որ կամակոր մտաւք ընկենուն զպատիւն։*

*Բ. Որք ճաշակեցին ի մոռացութեան ի մսոյ կամ ամբարտաւանութեամբ։*

*Գ. Վասն քահանայի որ լուծանէ զպահս։*

*Դ. Վասն որ մեռելոտի ուտեն կամ զհեթանոսաց զենեալ։*

*Ե. Քահանայ որ յանուրջս պոռնկեսցի գիճութեամբ։*

*Զ. Վասն Աստուածայայտնութեան պահոց ժառանգաւորաց և աշխարհականաց։*

*Է. Վասն յիշատակաց մարտիրոսաց։*

*Ը. Վասն տէրունական պատարագի մատուցանելոյ» (էջ 116բ, հմմտ.* m *էջ 124բ—125ա,* p*, էջ 125բ—126ա,* s*, էջ 146բ)։*

O *ձեռագրում ցանկն այսպիսին է.*

*«Ա. Վասն քահանայի և կրօնաւորի և սարկաւագի որ կամակոր մտօք զինքն ընկենուն։*

*Բ. Վասն որք ի մոռացութենէ զշորեքշաբթի և ուրբաթի միս ուտէ։*

*Գ. Վասն քահանայի որ ի նոյն արասցէ։*

*Դ. Որք մեռելոտի ուտեն կամ զհեթանոսի զենեալն։*

*Ե. Վասն քահանայի որ յանուրջս պոռնկի։*

*Զ. Վասն Աստուածայայտնութեան պահոցն։*

*Է. Վասն յիշատակ մարտիրոսաց առնելոյ։*

*Ը. Վասն տէրունական տօնի և կիրակէի պատարագ անխափան մատուցանելոյ» (էջ 324աբ)։*

*№ 657 ձեռագրում ցանկն այսպիսին է.*

*«Ա. Վասն կարգաւորաց ընկենուլ զպատիւն։*

*Բ. Վասն մոռացմամբ ճաշակել։*

*Գ. Վասն քահանայ ի նոյն գտեալ։*

*Դ. Վասն մեռելոտոյ ուտելոյ։*

*Ե. Վասն քահանայի [որ] յանուրջս պոռնկի։*

*Զ. Վասն Աստուածայայտնութեան պահոցն։*

*Է. Վասն զմարտիրոսաց փոխել։*

*Ը. Վասն տէրունական պատարագին» (էջ 123ա)։*

*Սրանից հետո, որով ավարտվում է սույն կանոնախմբի ցանկը, որպես շարունակություն նշված են մի քանի կանոնախմբերի վերնագրեր.*

*«Թ. Վասն Կիւրղի Աղէքսանդրացւոյն։*

*Ժ. Աթանասի սասցեալ։*

*ԺԱ. Յոհաննու Մանդակունոյ։*

*ԺԲ. Փիլիպոսի առաքելոյն։*

*ԺԳ. Եպիփանու (էջ 123ա)։*

*Ձեռագրում այս հերթականությամբ էլ դասավորված են վերոհիշյալ կանոնախմբերը։ Ցանկին նայելով ընթերցողը կարող է այն սխալ տպավորությունը ստանալ, թե Եփրեմ Ասորու կանոնախմբի № 657-ի տարբերակը ունի ութից ավելի հոդվածներ։*

Հոդ. Ա, էջ 55—56: *№ 643-ում չի պահվել է թիվը։ Բնագրի «ի հաղորդութիւն»-ը №№ 648, 3562-ում գրված է «ի հաղորդութեան» ձևով (էջ 166ա, էջ 261ա)։*

Հոդ. Բ, էջ 56: *Այս հոդվածի նյութն ընդգրկող և միևնույն հեղինակի անունով մի այլ գրվածք գտնում ենք № 391 Ճառընտիրում (էջ 297բ—300բ), «Սրանելոյն Եփրեմի Խորին Ասորոյ վասն ոչ լուծանելոյ զպահս չորեք[շ]աբաթին եւ ուրբաթի» խորագրով։ Այս բնագիրը բավական ընդարձակ է և ոչ մի նմանություն չունի սույն հոդվածի հետ։ Նման մի բնագիր տես նաև Բ. Սարգիսյանի Ցուցակում։ Ըստ վերջինիս՝ «Հետնագույն և հետեակ գրչէ մը հերյուրված կամ թարգմանված կ'երևի» (Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վենետիկ, հատ. Բ, Վենետիկ, 1924, էջ 585)։*

Հոդ. Դ, էջ 57: *Բնագրի «ապաշխարեսցեն եւ դարձցին» հատվածը №№ 648, 3562-ում գրված է «դարձցին և ապաշխարեսցեն» ձևով (էջ 166բ, էջ 261բ), իսկ վերջին՝ «ապաշխարութեան» բառը երկու ձեռագրում էլ չի պահվել։*

Հոդ. Զ, էջ 57—58: *№№ 648, 3562-ում հոդվածն սկսվում է այսպես. «Քահանայք Աստուածայայտնութեան այսպէս կարգեցաւ այրեաց և կրօնաւորաց և ապաշխարողաց» (էջ 166բ, էջ 261բ)։ Այս ձեռագրերում չեն պահվել նաև երկրորդ «կարգեցան» և «ութաւրեայ» բառերը։ №№ 657, 659 ձեռագրերում բնագրի «Ծ»-ի փոխարեն նշված է. «Խ» (էջ 123բ, էջ 312բ)։*

Հոդ. Է, էջ 58: *№№ 657, 659-ում չի պահվել բնագրի «յիշատակս» բառը (էջ 124ա, էջ 312բ)։*

# ԿՅՈՒՐԵՂ ԱՂԵՔՍԱՆԴՐԱՑՈՒՆ ՎԵՐԱԴՐՎԱԾ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Վերնագիր, էջ 59: *№№ 659, 657 ձեռագրերը բնագրի «գլուխք Ե»-ի փոխարեն ունեն «սասացեալ» (էջ 310ա, էջ 124ա)։*

*Պահվել է երկու ցանկ։* kmps *ձեռագրերի ունեցածը բերում ենք ըստ* k-*ի։*

*«Ա. Վասն կուսակրաւն և այրի քահանայից զառնել քահանայագործութիւն։*

*Բ. Վասն քահանայի որ կին ունի և շնացաւ։*

*Գ. Վասն որ ամուսնացան ընդ հեթանոսս։*

*Դ. Վասն որք զժառանգս հեթանոսաց սնուցանեն։*

*Ե. Վասն որ զմկնանկն ուրհնեն և զայլ գարշելիս» (էջ 155ա, հմմտ.* m, *էջ 160ա,* p, *էջ 168ա,* s, *էջ 193աբ)։*

*Իսկ* O-*ինն այսպիսին է.*

*«Ա. Վասն կրօնաւորի կամ այրի քահանայի աշխարհի քահանայութիւն արասցէ։*

*Բ. Վասն քահանայի որ ի շնութիւն անկանի։*

*Գ. Վասն որք ամուսնացեալ են ընդ հեթանոսաց։*

*Դ. Վասն որք զժառանգս հեթանոսաց առնուն ի սնունդս։*

*Ե. Քահանայ (բն. վահանայ—Վ. Հ.) որ ուրհնէ զմթեր, այսինքն՝ մկնընկեաց աման» (էջ 335բ)։*

Հոդ. Ա, էջ 59: *Բնագրի «նաեւ ժողովուրդքն» բառերի միջև №№ 648, 3562 ձեռագրերը ունեն «իւր» (էջ 165ա, էջ 266բ)։*

Հոդ. Գ, էջ 59—60: *Հոդվածի վերջում՝ «այպ յետին» բառերի միջև №№ 648, 3562 ձեռագրերը ունեն «թէ» (էջ 165բ, էջ 266ա)։ Բնագրի «թոշակին» բառից մինչև կանոնախմբի վերջը չի պահվել № 3562 ձեռագրում, հավանաբար, ընդօրինակությունն ընդհատվելու պատճառով, որովհետև ձեռագրի հաջորդ 267, 268 թերթերը դատարկ են։*

Հոդ. Դ, էջ 60: *№ 648-ում չի պահվել բնագրի «ըստ» բառը (էջ 165բ)։ №№ 648, 657, 659 ձեռագրերում բնագրի «կրեսցեն» բառի փոխարեն գրված է «ընկալցին» (էջ 165բ, էջ 124ա, էջ 311ա)։*

Հոդ. Ե, էջ 60—61: *№№ 657, 659 ձեռագրերում չի պահվել սույն հոդվածը, իսկ № 648-ը չունի միայն «ինչ» բառը (էջ 165բ)։*

## ԵՊԻՓԱՆ ԿԻՊՐԱՑՈՒՆ ՎԵՐԱԳՐՎԱԾ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

**Վերնագիր**, էջ 62: *№№ 648, 3562-ում չեն պահվել «գլուխք Ե» բառերը: № 657-ում այս կանոնախումբը առանց խորագրի միացված է Փիլիպպոս առաքյալի կանոնախմբին, սակայն այդ շփոթը ուղղելու նպատակով գրիչն Ա հոդվածի դիմաց, աջ լուսանցքում, կարմիր մելանով գրել է. «Եպիփանուն է» (էջ 125ա), որը և նկատվում է որպես վերնագիր:*

*Պահվել են մի քանի տեսակ ցանկեր, օրինակ, №№ 648, 3562-ում հետևյալ կերպ է.*
*«Ա. Վասն եպիսկոպոսաց և երիցանց և սարկաւագաց ոչ է պարտ տանտիկին ունել:*
*Բ. Վասն որք ուլունս արկանեն:*
*Գ. Վասն Յարութեան զերիս աւուրս ոչ ընթեռնուլ կաթողիկէ:*
*Դ. Վասն որք պատահական մահուամբ մեռանի:*
*Ե. Վասն զի ոչ է պարտ ի Զատկէն մինչև ի Պեն[տ]եկոստէն պըսակ դնեն (№ 648, էջ 164բ. հմմտ. № 3562, էջ 266ա):*

kmps-*ում այսպես է. «Ա. Վասն ժառանգաւորաց որ տանտիկին ունին հեթանոսաբար:*
*Բ. Վասն որ ուլունս կապեն և գրպարութիւն անեն:*
*Գ. Վասն թէ զկնի Յարութեան զերիս աւուրս ոչ ընթեռնուն կաթուղիկեք:*
*Դ. Վասն որք յանկարծակի չար մահուամբ մեռան:*
*Ե. Վասն որք ի տէրունի աւուրն պսակ դնեն»* (k, *էջ 153ա,* m, *էջ 158ա,* p, *էջ 166ա,* s, *էջ190բ—191ա):*

*Ահա և* O-*ի ունեցածը. «Ա. Վասն եպիսկոպոսի և քահանայ[ի] որ տանտիկին ի տան ունիցի[ն]:*
*Բ. Վասն որք ի կախարդս երթան:*
*Գ. Զկնի Յարութեան զերիս աւուրս ոչ ընթեռնուն կաթուղիկեայքն:*
*Դ. Վասն որք ի ծովու և ի չար գազանէ մեռանին:*
*Ե. Ի Զատկէն մինչև ցՊենդակոստն և յամենայն կիրակէի պսակ չանեն» (էջ 336բ):*

**Հոդ. Ա**, էջ 62: *№ 657 ձեռագրի բնագիրն էական տարբերություն չունի: Հոդվածի վերջին «ի քերց» բառը միայն № 648-ում գրված է «ի քեռ նոցա» ձևով (էջ 164բ):*

**Հոդ. Գ**, էջ 63: *Նկատելի տարբերությունն այն է, որ բնագրի «ի գետոյ» բառը №№ 648, 3562 ձեռագրերում գրված է հոգնակի «ի գետոց» ձևով, իսկ «և ի սրոյ» հատվածը երկու ձեռագրերում էլ չի պահվել (հմմտ. էջ 165ա, էջ 266բ):*

# ԱՅՍՊԵՍ ԿՈՉՎԱԾ ԱՆՏԻՈՔԻ ԺՈՂՈՎԻ ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹՅՈՒՆ

**Վերնագիր, էջ 65:** *Ծանոթագրություններում օգտագործված ձեռագրերից միայն № 659-ը առանց խորագրի, ունի այս բնագիրը (էջ 204ա—208ա)։ Վերջինս անմիջապես հաջորդում է Բարսեղ Կեսարացու մի նամակին, ուղղված Անտիոքի եպիսկոպոս Դիոդորին (տե՛ս «Կանոնագիրք Հայոց», հտ. Ա, էջ 620—621)։*

kmps *ձեռագրերում մյուս կանոնախմբերի նման, այս բնագիրը ևս ունի բովանդակության ցանկ. ահա այն ըստ* k *ձեռագրի.*

*«Ա. Երեք հարիւր և ԺԸ որ ի Նիկիայ, ՃԾ, որ ի Կոստանդնուպօլիս, Մ որ յԵփեսոս։*

*Բ. Որ ոչ հաւատայ գընութիւն դէութիւն միութեանն բանին։*

*Գ. Որ ոչ խոստովանի զՅիսուս Աստուած։*

*Դ. Որ ասէ թէ յերկնից կամ յայլմէ բնութենէ։*

*Ե. Որ զմարմինն Աստուծոյ ապականացու ասէ։*

*Զ. Որ ասեն Բ բնութիւն։*

*Է. Որ ասեն զմահն Տեառն և զչարչարանսն ապականացու։*

*Ը. Որ ասեն զմարմինն Տեառն ի միաւորութենէն մինչև յարութիւն» (էջ 139ա, հմմտ.* m, *էջ 144բ,* p, *էջ 150ա,* s, *էջ 173բ)։*

*№ 659 ձեռագրում, ինչպես ասացինք, պակասում է վերնագիրը, հետևապես չի իմացվում, թե այն ում է վերագրված։*

*Այժմ մի քանի նշում № 659 ձեռագրի պահած շեղումների և ընթերցումների մասին։ Բնագրի մինչև «Նզովեմք և զՓլաբիանոս եպիսկոպոս» (էջ 66, տող 12) հատվածը № 659 ձեռագրում կարդում ենք. «Նզովեմք և զՄանի և զՄարկիոն և զԲարդուծան և զԵւտիքոս որ ասաց եթե յերկնից եբեր զմարմինն Յիսուս» (էջ 204բ, հմմտ. «Գիրք թղթոց», էջ 66, «Կնիք հաւատոյ», էջ 370)։ Մի այլ տեղ բնագրի «Նզովեմք և զԹէոդորոս… զԲարա ի Մծբնայ» հատվածի (էջ 67, տող 6) փոխարեն կարդում ենք «Նզովեմք և զԹէոդորոսն և զԴիոգորոս և զԲայ և զԿակ և զԲարայ ի Մծբնայ» (էջ 205ա)։ Այսպես աղավաղված է նաև բնագրի «խաչին» (էջ 68, տող 5) բառը «խաղի» ձևով (էջ 205բ)։ Մինչև 69-րդ էջի առաջին տողը, որտեղ «Գիրք թղթոց»-ում սկսվում է Աբդիշո եպիսկոպոսի երկրորդ նամակը, № 659 ձեռագրում գտնում ենք վերնագիր՝ «Ցանկ նզովելոյ զԱրիոս և զայլ հերձուածս» (էջ 206ա), որին հետևում է հետևյալ ցանկը.*

*«Ա. Բնութեան։*

*Բ. Խոստովանութեան։*

*Գ. Որ յերկնից բերեալ ասեն զմարմինն Քրիստոսի։*

*Դ. Որք ապականացու ասեն զմարմինն Քրիստոսի։*

*Ե. Երկուց բնութեանց։*

*Զ. Որ ասեն զչարչարանս փրկարար ապականացու։*

*Է. Որ զմարմինն տեառն ապականացու ասեն մինչև ցՅարութիւնն (էջ 206աբ)։*

*Այս բնագիրը պահվել է նաև մեր Մատենադարանի №№ 859 (էջ 194բ—199ա), 5182 (էջ (133ա—136բ) և 8463 (էջ 134բ—139բ) ձեռագրերում։ Նկատելի է, որ վերջիններիս ունեցածը քաղված է Կանոնագրքի բնագրից, եթե բացառենք մի-երկու բառերի սխալ ընդօրինակությունը կամ բաց թողումը, որոնք արդյունք են անուշադիր ընդօրինակության, մնացածը նույնն է։ Միայն № 859 ձեռագրում չի պահվել ժողովի մասնակիցների ցանկը (էջ 199ա)։*

*№ 659 ձեռագրում մի փոքր ընդարձակ է ե հատվածը (էջ 70). «Որ ասէ զկարգ միութեանն բաժանել յերկուս բնութիւնս ի Քրիստոս կամ երկուս դէմս և երկու կերպարանս, և յայն մուծանեն զչորրորդութիւնն, այսպիսիքն նզովեալ լիցին» (էջ 207ա)։*

*Ժողովի մասնակիցների ցուցակում, բնագրի «Դեմատրոս, Բարսոս»-ի (էջ 72) փոխարեն № 659 ձեռագիրն ունի «Դեմատ ոս (մեկ տառի տեղ բաց է թողնված—Վ. Հ.), Բասոս» (էջ 208ա), իսկ«Պատակիոս» (էջ 72) անունը դարձել է «Պատարակիոս» (էջ 208ա)։ № 659-ում չեն պահվել վերջին՝ «ԼԴ եպիսկոպոսք» բառերը։*

*Բնագրի բ հատվածի «որ ոչ» բառերի վրա (էջ 69, տող 3) F ձեռագրում կա նշան և 162ա էջի աջ լուսանցքում գրիչը գրում է. «Յայլ օրինակէ այս տօնս այսպէս է. «որ ոչ խոստովանի զՅիսուս Աստուած որ համբերեաց խաչի կամօրութեամբ վասն մեր՝ մին ի դիմաց երրորդութեան և ի բնութենէ Աստուծոյ Հօր. այլ փոխանակ այդորիկ ասէ, թէ մարդ է բնութեամբ, և այր է արարած, և Աստուած է շնորհօք, և որդի է ընտրութեամբ և ապականացու մարմնով, և չարչարելի և մահկանացու բնութեամբ մարդկայնով՝ եղիցի նզովեալ»։ Այս մեջբերումը ճիշտ և ճիշտ «Գիրք թղթոց»-ի ունեցածն է (էջ 68)։ Այն արդյոք քաղված է վերջինից, թե՞ մի այլ կանոնագիրք ձեռագրից։*

# ԵՐԿՐՈՐԴ ՆԻԿԻԱԿԱՆ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Վերնագիր, էջ 73: №№ 657, 8459, 9311 ձեռագրերում չի պահվել այս կանոնախումբը։ Իսկ մյուս ձեռագրերում վերնագիրը ունի տարբեր շեղումներ, օրինակ, № 3369 ձեռագրում պահվել է «Կանոն երկրորդ Նիկիոյ, որք եղան ՅԺԸ եպիսկոպոսունս կրկնաբանելով կարճ ի կարճոյ» (էջ 36ա) ձևով։ № 659 ձեռագրում չեն պահվել Կանոնագրքի ունեցած «երկրորդ» բառը և վերջին՝ «կրկնաբանելով կարճ ի կարճոյ գլուխք ԺԴ» հատվածը (էջ 85բ)։ Իսկ մնացած՝ №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում այս կանոնախումբը քանի որ գտնվում է Նիկիայի առաջին տիեզերական ժողովի կանոնախմբից հետո, ուստի այս կանոնախմբի վերնագիրը ենթարկված է նախորդին, այսպես. «Այլ կանոնք Նիկիայ (№№ 650, 651, 2964 ձեռագրերում՝ Նիկիական)» (№№ 648, էջ 11բ, 649, էջ 31ա, 650, էջ 34բ, 651, էջ 23բ, 2964, էջ 44ա, 3562, էջ 281ա). այսինքն, այս կանոնները ևս Նիկիայի առաջին տիեզերական ժողովի մի այլ որոշումներն են։

Ծանոթագրություններում օգտագործված մյուս ձեռագրերի ունեցած տարբերակների մասին խոսելիս պետք է նշել, որ №№ 648, 649, 650, 651, 2964 և 3562 ձեռագրերում 114 հոդվածներից պահվել են 25-ը, որոնք ունեն ոչ թե հերթական՝ Ա, Բ, Գ, Դ, Ե և այլն համարներ, այլ Կանոնագրքի ունեցած համարները, օրինակ, այստեղ առաջին տեղում դրված է ԻԱ հոդվածը՝ ԻԱ համարով, երկրորդ տեղում ԼԸ հոդվածը՝ ԼԸ համարով, երրորդ տեղում ԼԹ հոդվածը՝ ԼԹ համարով և այլն։ Ի դեպ սա ցույց է տալիս, որ այս տարբերակների սկզբնական բնագիրը կազմվել է Կանոնագրքի բնագրից և պետք է ունենա ամենայն հավանականությամբ XV—XVI դարի հնություն։ № 3369 ձեռագրի տարբերակում սկզբի 25 հոդվածները նույնն են, ինչ որ № 648 և սրան հարող ձեռագրերում, բայց հոդվածների համարակալումը վերջիններիս նման չէ, այլ փոփոխված և հաջորդական՝, Ա, Բ, Գ, Դ, Ե և այլն։ Այնուհետև այս 25 հոդվածներին հաջորդում է վերևում նշված (էջ LXII—LXIII) Ա—ԾԲ հոդվածների խումբը՝ այս կանոնախմբի սկզբնական բնագիրը 47 հոդվածով, սկզբում հաջորդականությունը մի փոքր խախտված, դրված է իր հերթական ԻԶ—ՀԲ համարների տակ։ Ապա սրան հաջորդում են կանոնախմբի մնացած հոդվածները։

Յուրաքանչյուր հոդվածի մասին իր տեղում կխոսվի անհրաժեշտության չափով։

Այս բոլոր ձեռագրերից միայն № 659-ի տարբերակն է, որ ունի հոդվածների բովանդակության այբբենական ցանկ՝ ինչպես մի քանի ուրիշ կանոնախմբեր։ Ցանկը արված է խնդրո առարկա հանդիսացող հոդվածը հեշտությամբ գտնելու համար, թեև որոշ տեղերում հոդվածների համարները ճիշտ չեն նշված։ Բերում ենք այդ ցանկն ամբողջությամբ։ Ցանկի ձախ կողմում, կլոր փակագծերում, նշում ենք ձեռագրի հոդվածների այն համարները, որոնք շեղվում են ցանկում նշված համարներից, իսկ այնպիսիները, որոնք համապատասխանում են ցանկի նշումներին, բաց ենք թողնում։

### Ցանկ Նիկիոյ

[Ա]մուսնացողաց ընդ հերցուածողս—Հ
(ՂԳ) Այրի մարդոց—ՂԴ
Աղաւթից—ՁԲ, ՁԳ
Ամուսնացելոց—Թ, ԽԶ
Արհամարհելոց—ԺԶ
Արհամարհողաց—ԽԹ, Ծ
(Ղ) Ագաբաց—ԾԲ, ՂԱ
Ամբարտաւանից—ԾԹ
Առժամայն մկրտելոց—ՀԲ, Ճ
(ՂԵ) Աղաւթելոց—ՃԺԶ
Բորոտաց—ԻԷ
Բազմամուսնաց—ԼԵ
(ՁԸ) Գրակարդացաց—ՁԹ
(ՂԹ) Եպիսկոպոսաց—Դ, Ե, Կ, ԿԳ, ՂԸ
Երպիսկոպոսաց—Է, ԺԵ, ԻԸ, ԿԴ, ԿԵ
(ՂԱ) Եկեղեցականաց—ԻԵ, ԿԹ, ՂԲ
Երիցանց մեղուցելոց—ԽԱ, ԽԲ, ԽԴ, ԿԲ
(ՀԷ) Եպիսկոպոսաց—ԿԸ, Հ, ՀԵ, ՃԺԲ

(ՁԹ) Երդմնացողաց—Վ
Երիցու ի բեմ ելանել—ՃԺԱ
Ձոհողաց—ԻԱ, ԻԲ
Ջանազան մեղուցելոյ—ՀԱ
Ընչից եկեղեցւոյ—ՇԱ
Թողացելոց զորդիս—ՇԵ
(ՂՁ) Թովչաց—ՃԺԵ
Ժառանգաւորաց—Ժ
(ՁԷ) Ժառանգաւորաց—ԺԷ, ԼԸ, Խ, ՁԸ, ՃԹ
Ժողովրդականաց—ՀԹ, ՁԱ, ՁԴ
Լուծողաց զպահս—ՇԸ
Խորողաց—ԽԸ
Ծառայից—ԽԷ
Ծափս հարկանողաց—ՃԸ
Կրճատելոց—Ա
(ՂԲ) Կիրակէի—Ի, ՇԷ, ՂԳ
Կուսանաց—ԻԹ, ԼԳ
Կանանց ամուսնացելոց—ԼԴ
Կանանց—ՇԳ, ՇԴ, ՁԵ
(Ճ) Կէսսարկաւագաց—ՂԹ
Հանկանակողաց—ՃԺ
Հեթանոսաց—Բ
Հաւատացելոց—ԺԴ
Հերձուածողաց—ԺԹ
Հիւանդաց—ԽԳ
Հերձուածողաց դառց—ՀԴ, ՀԳ
Հիւանդաց մկրտելոց—ՃԳ, ՃԴ
Ձեռնադրելոց—Ը, ԿԶ, ԿԷ
(ՂԴ) Ճաշել ընդ հերձուածողս—ՂԵ
Միաշաբաթի—Զ
(ՂԷ) Մսակերաց—ՂԶ
Մկրտելոց—ՃԱ, ՃԲ
Յափրշտակողաց—ԻԳ
Յղի կանանց—ԼԷ
Ննջելոյ ընդ կանայս—ԼԶ
Շնացելոց—Լ, ԼԹ
Շինական տանց—ՃԺԳ
Ուրացողաց—ԺԱ, ԺԲ
Որդոց զհայր թողուլ—ՇԶ
Ուխտաւորաց—ԿԱ
Պղծելոց—ԻԴ
Պոռնկաց—ԻԶ
Պառաւանց—ՀԶ
Սովորութեանց—Զ
(ՁԵ) Սարկաւագաց—ԺԸ, ԽԵ, ՁԶ
Սպանողաց զմանուկ—ԼԱ, ԼԲ
Սրբութեանց—**ՀԸ**
(ՁԶ) Սպասաւորաց—ՁԷ
Վիճակելոց—Գ
Վախճանելոց—ԺԳ
(ՂԸ) Տամաւղաց ընթերայս (իմա՛ ընդ Հրէ-այս—Վ. Հ.)—ՂԷ
Քառասնորդաց—ՃԵ, ՃԶ, ՃԷ, ՃԸ (էջ 84բ—85բ)։

Ցանկի վերնագրերից երկուսը՝ «Աղաւթելոց—ՃԺԶ» և «Թովչաց—ՃԺԵ» գրչի կողմից ավելացվել են տողամեջ, հետագայում էլ նշված են այնպիսի համարներ, որպիսի համարներով ձեռագրում հոդվածներ չկան. վերջին հոդվածը կրում է ՃԺԴ համարը։ Մի այլ՝ «Կանանց» վերնագրում նշված են ՇԳ, ՇԴ, ՁԵ համարները։ Վերջին՝ ՁԵ համարը ճիշտ չէ նշված։ Ձեռագրի հոդվածների շարքում, ՁԴ և ՁԵ հոդվածների միջև կա մի հոդված՝ կանանց բեմ չբարձրանալու մասին, որը համարակալում չունի։ Ցանկում խոսքը թերևս սրա մասին է։ Ճիշտ չի նշված վերջին՝ «Քառասնորդաց» վերնագրի վերջին՝ ՃԸ համարը, որի ներքո գտնվող հոդվածը վերաբերում է հարսանիքներում ծափ, պար և անպատեհ երգեր արգելելուն։ Գիտա-քննական բնագիրը կազմելու համար օգտագործված ձեռագրերից kmps-ն ունեն միևնույն ցանկը։ Այն բերում ենք ըստ k ձեռագրի.

Ա. Վասն որ կրճատեն զինքեանս։
Բ. Վասն նորատունկ և նոր ուսումն հեթանոսաց որ խնդրեն ձեռնադրութիւն։
Գ. Վասն վիճակաւորաց որ ունին տնտես։
Դ. Վասն եպիսկոպոս ձեռնադրելոյ։
Ե. Վասն որոշելոց յեպիսկոպոսէ։
Զ. Վասն զսովորութիւն ոչ նորաձևել։
Է. Վասն ի մայրաքաղաքն մի եպիսկոպոս լինել։
Ը. Վասն զնաւատիկոսն ձեռնադրելոյ։
Թ. Վասն երկրորդ ամուսնացելոց։
Ժ. Վասն ժառանգաւորաց որ զմեղս ոչ խոստովանին։
ԺԱ. Վասն ուրացողաց և անցաւորաց ի ժառանգութիւն ոչ ածելոյ։
ԺԲ. Վասն ուրացողաց, թէ որպէս շնորհին արժան առնել։
ԺԳ. Վասն վախճանելոյ շնորհին արժան առնելոյ։
ԺԴ. Վասն թէ զնոր հաւատացեալս որպէս պարտ է մկրտել։
ԺԵ. Վասն եպիսկոպոսաց քաղաքէ ի քաղաք չփոխել։
ԺԶ. Վասն ժառանգաւորաց որ զեկեղեցիսն արհամարհեն։
ԺԷ. Վասն ժառանգաւորաց որ տոկոսիս առնուն։

ԺԸ. Վասն սարկաւագի՝ աւրէնս ոչ տալ։
ԺԹ. Վասն զհերձուածողսն մկրտելոյ։
Ի. Վասն կիրակէի ծոմբ ոչ կրկնել։
ԻԱ. Վասն ժառանգաւորաց որ զոհեցին և ապա դարձան։
ԻԲ. Վասն որք վտանգիւ և բռնութեամբ զոհեցին։
ԻԳ. Վասն որ բռնութեամբ զխօսեցեալ աղջկունս յափշտակեն։
ԻԴ. Վասն ուխտաւորաց որ ոչ կամին ճաշակել ի մսոյ։
ԻԵ. Վասն եկեղեցոյ ստացուածոյն որ վաճառեն։
ԻԶ. Վասն պոռնկացելոց ընդ անասունս ապաշխարելոյ։
ԻԷ. Վասն բորոտաց և դիւահարաց, թէ որպէս պարտ է աղաւթել։
ԻԸ. Վասն եպիսկոպոսաց որ ոչ ընկալան։
ԻԹ. Վասն որ կուսութիւն խոստացան և արհամարհեցին։
Լ. Վասն շնացողաց։
ԼԱ. Վասն թէ մայր զմանկունսն սպանանէ։
ԼԲ. Վասն որ ընդ երկու քեռսն ապականութիւն գործէ։
ԼԳ. Վասն կնոջ որ երկու եղբարց ամուսնացի։
ԼԴ. Վասն որք ի բազում ամուսնութիւնս անցան։
ԼԵ. Վասն որք ցանկան ձեռն արկանել կնոջ և ոչ կարացին։
ԼԶ. Վասն երախայից որ ոչ դադարեն ի մեղանչելոյ։
ԼԷ. Վասն մկրտելոյ զյղիսն։
ԼԸ. Վասն զշնացեալսն ոչ մատուցանել ի քահանայութիւն։
ԼԹ. Վասն քահանայից ոչ երթալ յերկրորդ հարսանիսն։
Խ. Վասն նախ քան զձեռնադրութիւնն մեղուցեալ ժառանգաւորաց։
ԽԱ. Վասն կանանց քահանայից որ շնացան յառաջ կամ յետոյ քան զկարգ։
ԽԲ. Վասն երեսնամեայ ձեռնադրելոյ զքահանայս։
ԽԳ. Վասն որք ի հիւանդութեան մկրտեցան և խնդրեն ձեռնադրութիւն։
ԽԴ. Վասն քահանայից որ յանդիման եպիսկոպոսաց աղաւթս կատարեն։
ԽԵ. Վասն սարկաւագաց յեկեղեցիս լինել։
ԽԶ. Վասն որք զամուսնութիւն արհամարհեն։
ԽԷ. Վասն ծառայից, որ ի ծառայս աստուածպաշտութեան ելանել կամին ի տերանց։
ԽԸ. Վասն որ զարշին ի մսակերաց։
ԽԹ. Վասն որ յամուսնացեալ իրիցուէ խորշի։
Ծ. Վասն որ զխորհուրդ եկեղեցւոյ ի տան գործեն։
ԾԱ. Վասն որ զեկեղեցոյ պտուղն ծախեն։
ԾԲ. Վասն որ զարշին ագապաց։
ԾԳ. Վասն քահանայից որ ի կապեղայս մտանեն։
ԾԴ. Վասն սարկաւագաց և այլ ուխտի մանկանց որ զհաց և զգինի աւրհնեն։
ԾԵ. Վասն որ յեպիսկոպոսէն կարգացն երդմնեցուցանել զերախայս։
ԾԶ. Վասն քահանայից որ մասունս բաշխան յագապաց։
ԾԷ. Վասն որք յեկեղեցիս ճաշ ուտեն։
ԾԸ. Վասն որք ի կիրակէի և ի շաբաթու հրէանան։
ԾԹ. Վասն որ այր և կին ի միասին ի բաղանիս մտանեն։
Կ. Վասն որ ընդ հերետիկոսսն հաղորդին։
ԿԱ. Վասն որք աղաւթս առնեն առ յարարածս։
ԿԲ. Վասն թովչաց և կախարդաց։
ԿԳ. Վասն որք ընդ Հրէայս և ընդ հերձուածողս և ընդ հեթանոսս հաղորդին։
ԿԴ. Վասն եպիսկոպոսի որ ոչ գա ի կոչեցեալ ժողովն։
ԿԵ. Վասն կանանց որ փոքրեն զգլուխս և առնացի զգենուն։
ԿԶ. Վասն զաւակաց որ ի պատճառս աստուածպաշտութեան թողու[ն] զծնաւղս։
ԿԷ. Վասն որ թողու զիւր զաւակսն յաղագս ճգնութեան։
ԿԸ. Վասն որ ի կիրակէի կամ յաւուրս Պենտակոստէից պահեն։
ԿԹ. Վասն որք զեկեղեցական պահս լուծանեն։
Հ. Վասն որք ի ժողովոց մարտիրոսաց զարշին։
ՀԱ. Վասն լուծեալ ժառանգաւորաց որ ի ժողովս գան։
ՀԲ. Վասն որ զօտար արսն առանց թխթոյ քահանայ ձեռնադրեն։

ՀԳ. Վասն իրիցանց որ կանոնական թուխթ տան։
ՀԴ. Վասն գաւառաց եպիսկոպոս եպիսկոպոսին կարգել։
ՀԵ. Վասն եպիսկոպոսաց որ յայլում գաւառ ձեռնադրութիւն առնել։
ՀԶ. Վասն եպիսկոպոսաց որ զմիմեանց սահմանս լուծանեն։
ՀԷ. Վասն այնոցիկ որ ոչ ընկալան զձեռնադրութիւն՝ մի՛ հաղորդեսցին։
ՀԸ. Վասն ձեռնադրեալ եպիսկոպոսաց որ ոչ ընկալան ժողովուրդն։
ՀԹ. Վասն եպիսկոպոսաց որ փոխանորդ կացուցանեն։
Զ. Վասն եպիսկոպոսաց գիտուն և իշխան լինի և զիւր ինչսն առանձին։
ԶԱ. Վասն եպիսկոպոսաց ամենայն իրաց իշխանութիւն ունել յեկեղեցիսն և ընչիցն։
ԶԲ. Վասն որք յազգի յազգի ի մեղս անկանին։
ԶԳ. Վասն որ զառժամայն մկրտեալսն ի քահանայութիւն մատուցանեն։
ԶԴ. Վասն հերետիկոսաց ընդ ուղղափառսն ոչ աղաւթեալ։
ԶԵ. Վասն որ ի հանգստարանս և ի վկայարան հերետիկոսաց երթան։
ԶԶ. Վասն որ ընդ հերետիկոսսն ամուսնութիւն առնեն։
ԶԷ. Վասն պառաւանց որ յառաջոյ նստին։
ԶԸ. Վասն ընտրութեամբ առնել եպիսկոպոսն։
ԶԹ. Վասն զսրբութիւնսն յայլ տեղիս ոչ առաքել։
Ղ. Վասն ժողովրդականաց որ եկեղեցւոյ գիրս կարդան կամ սաղմոս ասեն։
ՂԱ. Վասն սաղմոս ասել և գիրս կարդալ։
ՂԲ. Վասն ամենայն ժողովս պաշտաւն լինել։
ՂԳ. Վասն զկնի վարդապետութեան երախայից աղօթս առնել։
ՂԴ. Վասն ապաշխարողաց և հաւատացելոց նոյնպէս։
ՂԵ. Վասն աշխարհականաց որ ի բեմս ելանէ։
ՂԶ. Վասն կէսսարկաւագաց որ զսարկաւագաց տեղիս կամին ունել։
ՂԷ. Վասն ուրարի, թէ ո՞րպէս պարտ է ունել։
ՂԸ. Վասն կէսսարկաւագաց ոչ թողուլ զդրունս։
ՂԹ. Վասն որ յետ երկուց շաբաթուց Քառասնորդացն ի մկրտութիւն գան։
Ճ. Վասն որք կամին գալ ի մկրտութիւն։
ՃԱ. Վասն Աւետարան կարդալոյ։
ՃԲ. Վասն որք ի հիւանդութեանն մկրտին։
ՃԳ. Վասն զմկրտեալսն աւծանելոյ։
ՃԴ. Վասն թէ ի Քառասնորդսն շաբաթ և կիրակէ պատարագ մատուցանել և ոչ յամենայն աւուր։
ՃԵ. Վասն զմեծ ի հինգշաբաթին ոչ լուծանել։
ՃԶ. Վասն հարսանեաց ի Քառասնորդս և ի Պենտակոստն և ի կիրակէսն ոչ առնել։
ՃԷ. Վասն ըսպասոյ և երգոց հարսանեաց։
ՃԸ. Վասն քահանայից ըստահակ տեսիլս տեսլեան։
ՃԹ. Վասն հանգանակողաց։
ՃԺ. Վասն քահանայից որ յառաջ քան զեպիսկոպոսն ի սեղանն նստին։
ՃԺԱ. Վասն եպիսկոպոսաց յազարակս և ի գեւղս ոչ նստել։
ՃԺԲ. Վասն եպիսկոպոսաց և քահանայից որ ի շինական տունս պատարագս մատուցանեն։
ՃԺԳ. Վասն ի յեկեղեցիս զկանոնեալ գիրսն կարդան։
ՃԺԴ. Վասն ոչ լուծանելոյ զնիկիական կանոնս» (էջ 46ա—48բ, հմմտ. m, էջ 57բ—60ա, p, էջ 51ա—53բ, s, էջ 58ա—61ա)։

Հոդ. Ա, էջ 73։ №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում այս հոդվածից մինչև Ի հոդվածը չի պահվել։ № 3369 ձեռագրում այս հոդվածը դրված է ԻԶ համարի տակ (էջ 37ա)։

Հոդ. Բ, էջ 73։ № 3369 ձեռագրում այս հոդվածը դրված է ԻԷ համարի տակ։ Այստեղ էական տարբերություն չկա, եղածը ուղղագրական կամ քերականական տարբերություն է, օրինակ, այս տարբերակում մի հատվածը կարդում ենք այսպես. «զնոր տունկս և նոր յուսմունսն» կամ «ածել յեպիսկոպոսութիւն», ուր չի պահվել բնագրի «յառաջ» բառը (էջ 37ա)։ Երկու հոդվածում էլ «և» շաղկապի փոխարեն № 659 ձեռագրում դրված է «կամ» (էջ 85բ—86ա), իսկ «զնորուսումնս»-ը՝ «նոր ուսումնս» ձևով (էջ 86ա)։

Հոդ. Գ, էջ 73։ № 3369-ում այս հոդվածը տես ԻԸ համարի տակ։ № 659-ում տարբերությունը այսպիսին է. «բայց ի մարէ և ի հանոյ և ի քեռէ» (էջ 86ա)։ № 3369-ում չի պահվել

«ի հանւոյ» բառը, իսկ «ի ներքս ածական»-ը պահվել է «ի ներքսականս» (էջ 37ա) ձևով, որը պետք է ուղղել «ի ներքս [ած]ականս»։

Հոդ. Դ, էջ 73: № 3369-ում այս և հաջորդ հոդվածները սխալմամբ դրված են «ԻԳ» և «ԻԴ» համարների տակ (էջ 37ա), մինչդեռ իր՝ ձեռագրի հերթականության համապատասխան, պետք է լինեն «ԻԹ» և «Լ» համարները։ № 659-ում վերջին հատվածը այսպես է. «Եպիսկոպոսաց մերձակայութեան ի վտանգի» (էջ 86ա)։

Հոդ. Ե, էջ 74: № 659-ում չի պահվել «զատ» բառը։

Հոդ. Զ, էջ 74: № 3369-ում այս հոդվածը տես ԼԱ համարի տակ (էջ 37ա)։ Տարբերությունը №№ 659, 3369 ձեռագրերում միևնույն բառերի մեջ է, երկուսն էլ չունեն բնագրի երկրորդ «զատոի» բառը. «սովորութիւն» բառի փոխարեն № 3369-ում դրված է «ի սպասաւորութիւն», № 659-ում՝ «սովորութիւնսն», իսկ վերջին բառը, այսպես է. «ձևել նորա» (№ 3369, էջ37ա) և «նորոգաձևել» (№ 659, էջ 86ա)։

Հոգ. Է, էջ 74: № 3369-ում այս հոդվածը տե՛ս ԼԸ համարի տակ (էջ 37բ)։ Տարբերությունը № 659-ում այսպես է. «Երուսաղէմացւոյ» և «զմայրաքաղաքացն» (էջ 86ա), իսկ № 3369-ում «Երուսաղէմի» տեղանունը դրված է «մի» ձևով, որը հասկացվում է «[Երուսաղէ]մի»։ Ճիշտ այդպիսի ձևով է գրված համահավաքի համար օգտագործված acdkmprstv ձեռագրերում (տե՛ս վերևում, էջ 74)։ Սրանից թերևս ենթադրենք, որ № 3369-տարբերակը առաջ է եկել այս խմբի ձեռագրերի որևէ մի օրինակից։

Հոդ. Ը, էջ 74: № 3369-ում այս հոդվածը տե՛ս ԼԹ համարի տակ (էջ 37բ)։ Բնագրի «աւծանել» բառից առաջ №№ 659, 3369 ձեռագրերը ունեն «և» այսինքն «և ածանել»։ Հոդվածի սկզբի մի հատվածը № 3369-ում այսպես է. «զայնոսիկ որ ի հաւատա[ց]ելոց ժառանգութենէ են գրեալք» (էջ 37բ), իսկ բնագրի «եկեալքն» բառի փոխարեն այս ձեռագրում կարդում ենք «քաղաքն» (էջ 37բ)։ Տե՛ս Խ համարի տակ (էջ 37բ)։

Հոդ. Թ, էջ 74: № 3369-ում այս հոդվածը տես Խ համարի տակ (էջ 37բ)։ Միակ ձևական տարբերությունը № 659-ում՝ «յետ» բառի փոխարեն դրված է «զկնի» (էջ 86բ)։

Հոդ. Ժ, էջ 74: № 3369-ում այս հոդվածը տե՛ս ԽԱ համարի տակ (էջ 37ա)։ № 659-ը ունի «յանդիմանել ոչ» ձևով (էջ 80բ)։

Հոդ. ԺԱ, էջ 74: № 3369-ում ԼԲ (էջ 37ա)։

Հոդ. ԺԲ, էջ 75: № 3369-ում այս հոդվածը տես ԽԲ համարի տակ, բայց սխալմամբ նշված է «ԻԲ»(էջ 37բ)։ Այս ձեռ-ում էական տարբերությունն այն է, որ «իրաց» բառը ունի «իւրեանց», իսկ մյուս երկու բառերը՝ «ապաշխարեալ» և «հաղորդեալ» ձևերով։ № 659-ում հոդվածի մի հատվածը այսպես է. «յամենայն աշխարհասիրացս Դ ամս արտաքսեալք և մտերմութեամբ ապաշխարել և ճգնութեամբ» (էջ 86բ). իսկ «հաղորդել» բառի փոխարեն այստեղ կարդում ենք «հաւասարել»։

Հոդ. ԺԳ, էջ 75: № 3369-ում ԽԳ (էջ 37բ)։ Այստեղ չի պահվել «արժանի» և «իսկ կեցեալք արգելուլ» բառերը. «անարժանք» բառն էլ փոխարինված է «արժանի» բառով։ «Արժանի առնել»-ը № 659-ում փոխարինված է «հաղորդել» բառով։ «Իսկ կեցեալք արգելուլ» հատվածը այստեղ ևս չի պահվել (էջ 87ա)։

Հոդ. ԺԴ, էջ 75: № 3369-ում ԽԴ (էջ 37բ)։ Բնագրի «զերեամ մի» հատվածը № 659-ում դրված է «զերիս ամս» (էջ 87ա), իսկ № 3369-ում՝ «զերկամ մի» ձևերով, «մկրտել» բառը՝ «մկրտիլ»։

Հոդ. ԺԵ. էջ 75: № 3369-ում ԼԳ (էջ 37ա)։ Այստեղ հոդվածի վերջին հատվածը այսպես է. «յայլ քաղաքս փոխել խռովութեանն»։ № 659-ում եղածը՝ բնագրի «յայլմէ»-ի փոխարեն ունի «յիւրմէ» (էջ 87ա), ավելի ճիշտ է, իսկ «յաղագս»-ը փոխված է «վասն»-ով։

Հոդ. ԺԶ, էջ 75: № 3369-ում ԽԵ (էջ 37բ)։ № 659-ի հոդվածը բերում ենք ամբողջությամբ. «Պարտ է զարհամարհողսն ժառանգաւոր իւրեանց եկեղեցաց, յայլ ուրեք ոչ պաշտել» (էջ 87ա)։

Հոդ. ԺԷ, էջ 75: № 3369-ում ԼԴ (էջ 37ա)։ Այստեղ հոդվածը շարունակվում է. «Եթէ առցէ նզովեալ եղիցի»։ Բնագրի «տոկոսիս» բառը № 659-ում դրված է «վաշխ» ձևով, իսկ հոդվածի վերջն այսպես է. «կամ կիսամուսնութիւնն՝ շահի յաղագս» (էջ 87ա)։ Վերջին երկու բառերը թերևս պետք է լինի «շահի աղագաւ» կամ «յաղագս շահի» շարադասութեամբ։

Հոդ. ԺԸ, էջ 75: № 3369-ում ԼԶ (էջ 37բ)։ Բնագրի «նստել» և «երիցու» բառերն այստեղ համապատասխանաբար կարդում ենք «նստիլ» և «քահանայից»։ № 659-ում հոդվածի վերջն այսպես է. «և ոչ ընդ նոսա նստել» (էջ 87ա)։ Ուրիշներ «նոսա» բառը ուղղել են «երիցու»։

Հոդ. ԺԹ, էջ 76: № 3369-ում ԽԶ (էջ 37բ)։ Այստեղ «որք»-ը փոխարինված է «ոք»-ով և

*չի պահվել բայը՝ «մկրտել»։ № 659-ում հոդվածի սկիզբը ունի շեղում. «պարտ է զհերձուածողս դարձեալս Պաւղիանոսս կոչեցեալս Մանտանացիս մկրտել» (էջ 87ա)։*

Հոդ. Ի, էջ 76: *№ 3369-ում ԼԵ (էջ 37աբ)։ Բնագրի «կիւրակէի» բառին նախորդում է «յաւուր»։ № 659-ի ունեցածը բերում ենք ամբողջությամբ։ «Ոչ է պարտ կիւրակէին աղաւթելով ծունր կրկնել և յաւուրս Պէնտակոստէից» (էջ 87ա)։*

Հոդ. ԻԱ, էջ 76: *№№ 648, 649, 650, 651, 2964, 3562, 3369 ձեռագրերում այս հոդվածը տե՛ս Ա համարի տակ։ Դրանցում չեն պահպանվել «խոստովան եղեն» բառերը, իսկ «առնել» բառի փոխարեն դրված է «լինել» բառը. №№ 649, 650, 651, 2964-ում չի պահվել նաև «վասն» բառը, որը № 648, 3562-ում փոխարինված է «առ» բառով։ Հոդվածի վերջը № 3369-ում այսպես է. «Բայց եթէ յոյժ կեղծաւոր և երկիւղածութեամբ եպիսկոպոսին հրամայիցէ» (էջ 36ա)։ Բնագրի «և ոչ ի խաւսան»-ը այստեղ պահված է «ի խօսն», իսկ «սարկաւագին» բառը՝ հոգնակի «սարկաւագունք» ձևերով։ № 659-ում տարբերությունը ցույց տալու համար հոդվածը բերում ենք ամբողջությամբ. «Պարտ է որ զոհեցին երիցունք, իսկ ապա ի բաց դարձան և կացին ի խոստովանութիւն ոչ ամենևին լուծանել, այլ աթոռոյն միայն արժանի լինել, ոչ մատուցանել պատարագ նոցա և ոչ ի խաւսս կալ և ոչ այլ ինչ այսպիսի պաշտել զքահանայութիւնն։ Նմանապէս և սարկաւագաց նմին պատուի արժանի լինել, բայց ոչ քարոզել և ոչ սպասաւորել, բայց եթե վասն երկիւղածութեան նոցա եպիսկոպոսն հրամայեսցէ» (էջ 87աբ)։*

Հոդ. ԻԲ, էջ 76: *№ 3369-ում ԽԷ (էջ 38աբ)։ №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում ԻԲ—ԼԷ հոդվածները չեն պահվել։ № 659-ի այս հոդվածը բերում ենք լրիվ. «Պարտ է ըստ վտանգին և բռնութեան բազմին զոհեալս, բայց խոստովանեալս զինքեանս միշտ քրիստոնեայս Գ ամս ապաշխարեալս և այնպէս շնորհին արժանի լինել» (էջ 87բ)։*

Հոդ. ԻԳ, էջ 77: *№ 3369-ում ԽԹ (էջ 38ա)։ Այստեղ չի պահվել հոդվածի վերջին՝ «թէպէտ և բռնազբաւեցան» հատվածը։ Այս հոդվածը № 659-ում այսպես է «Զխաւսեցեալ աղջկունս յայլոց յափշտակե[ա]լ պարտ է նախկին խաւսելոյն ի բաց ուալ, զի թեպէտ և բռնաբարեցան» (էջ 87բ—88ա)։*

Հոդ. ԻԴ, էջ 77: *№ 3369-ում Ծ (էջ 38ա)։ Այս հոդվածը քանի որ № 659-ում խիստ համառոտ է, իսկ № 3369-ում զգալի չափով տարբեր, այդ պատճառով այս երկու ձեռագրերի ունեցածը բերում ենք ամբողջապես. «Թէ ոք պղծէ զբանչար՝ ընդ մսոյ ուտել՝ որոշեսցի» (№ 659, էջ 88ա)։*

*«Որք ուխտին անտի իցեն երիցունքն և սարկաւագունք և հեռի իցեն ի մսոյ կամ զի ճաշակեսցեն և կամիցին պահեսցեն ի մսոյ. ապա թէ պղծեսցին կամ արհամարհեսցին մինչև զբանջարն, այսինքն ընդ մսոյն անկանիցի կամ պահիցի, ի միսն չուտիցեն և ոչ անսայցեն կանանց, լաւ լիցին ի յաստիճանէ քահանայութենէն» (№ 3369, էջ 38ա)։*

Հոդ. ԻԵ, էջ 77: *№ 3369-ում ԼԷ (էջ 37բ)։ Այստեղ հոդվածի միտքը փոխված է, ահա վերջինս. «Ոչ է պարտ զեկեղեցեանց (sic) երիցանց վաճառանոց նստիլ և զատ վաճառել»։ № 659-ում «երիցու»՝ եզակի ձևով։*

Հոդ. ԻԶ, էջ 77—78: *№ 3369-ում ԽԸ (էջ 38ա)։ Այստեղ երկու տարբերություն կա. բնագրի «յետ» և «ապաշխարել» բառերը դրված են «զհետ» և «ապաշխարեալ» ձևերով։ № 659-ում բնագրի «կենդանիսն» և «ապա» բառերը համապատասխանաբար փոխարինված են «անասունս» և «իսկ» բառերով։ Այստեղ չի պահվել նաև երկրորդ «այսպէս»-ը, իսկ վերջին բառը դրված է «հաղորդել» անորոշ ձևով։*

Հոդ. ԻԷ, էջ 78: *№ 3369-ում ԾԱ (էջ 38ա)։ № 659 ձեռագրում բնագրի «դիւահարաց» բառից հետո մի փոքր ընդարձակ է. «դիւահարաց հաւատացելոց աղաւթակից լինել մինչև ի ժամանակ սրբելոյ» (էջ 88ա)։*

Հոդ. ԻԸ, էջ 78: *№ 3369-ում ԾԲ (էջ 38ա)։ Բնագրի «եպիսկոպոսունս» և «զայլոց» բառերն այստեղ տրված են «յեպիսկոպոսութիւնս» և «զայլ» ձևերով։ № 659-ի ունեցածը բերում ենք լրիվ. «Ոչ է պարտ կացելոց եպիսկոպոսաց և ընկեցելոյ, զայլ եկեղեցիս նեղել» (էջ 88ա)։*

Հոդ. ԻԹ, էջ 78: *№ 3369-ում ԾԳ (էջ 38ա)։ Բնագրի «ամուսնացելոցն»-ն այստեղ դրված է «ամուսնացեալսն»։ № 659-ում հոդվածը այսպես է. «Որք զկուսութիւն խոստացան և արհամարհեն՝ զերկամուսնացելոցն կալցին զսահման» (էջ 38ա)։*

Հոդ. Լ, էջ 78: *№ 3369-ում ԾԴ (էջ 38ա)։ Այստեղ հոդվածը շարունակվում է. «և ապա հաղորդեսցի»։ № 659-ում կարդում ենք. «շնացաւ ոք» և «լինել» (էջ 88ա) ձևերով։*

Հոդ. ԼԱ, էջ 78: *№ 3369-ում ԾԵ (էջ 38ա)։ Սկզբի տողը այստեղ այսպես է. «Եթէ մայր զմանուկ իւր սպանցէ զամենայն»։ Հոդվածի վերջին մասը մի փոքր այլ է. «Իսկ եթէ ոչ սպանճութիւնս առնեն կամ սատանայի որոգայթիւք եղիցի՝ Է ամ ապաշխարեսցեն» (էջ 38աբ)։*

*№ 659-ում այս հոդվածը բաժանված է երկու մասի և դրված ԼԱ, ԼԲ համարների տակ։ Ահա վերջիններս. «ԼԱ. Եթէ մայր սպանցէ զմանուկ՝ զամենայն ժամանակս իւր ապաշխարեսցէ և ի վախճանին հաղորդեսցի. և որք զկամաւոր սպանութիւնն գործեն նմանապէս։ ԼԲ. Որք զակամայ սպանութիւնս առնեն՝ է ամ ապաշխարեսցեն» (էջ 88բ)։*

Հոդ. ԼԲ, էջ 78—79: *№ 3369-ում ԾՁ (էջ 38բ), № 659-ում ԼԳ (էջ 88բ)։ Վերջում հոդվածն այս շարադասությունն ունի. «Եթե ուրուք զխաւսեալ զկոյս (վերջին բառը ձախ լուսանցքում— Վ. Հ.) ապականեսցի ընդ քեռ նորա և դարձեալ ընդ խաւսեկոյն ամուսնասցի՝ և՛ ինքն և՛ գիտակիցք նորա ժ ամ ապաշխարեսցեն և այսպէս հաղորդեսցի աւրինացն» (№ 659)։*

Հոդ. ԼԳ, էջ 79: *№ 3369-ում Ծէ (էջ 38բ), № 659-ում ԼԴ (էջ 88բ)։ Առաջինում բացակայում է «երկուց» բառը, իսկ հոդվածի վերջում շարունակվում է. «եկեղեցւոյն կամ ի հաղորդութենէ»։ Վերջին ձեռագրում ունի այսպիսի տարբերություն. «Կին ոք եթե» և «մինչև ցմահ որոշեալ կացցէ»։*

Հոդ. ԼԴ, էջ 79: *№ 3369-ում ԾԸ (էջ 38բ), № 659-ում ԼԵ (էջ 88բ)։ Վերջինում հոդվածն այսպես է. «Եթե ոք բազում ամուսնութեամբ վարեցաւ՝ ի վախճանին շնորհին արժանի լիցին»։ Իսկ առաջինում «շնորհին» բառը դրված է «շնորհացն» ձևով։*

Հոդ. ԼԵ, էջ 79: *№ 3369-ում ԾԹ (էջ 38բ)։ № 659-ում ԼՁ (էջ 88բ—89ա)։ Առաջինում՝ «ընդ ննջել կնոջ», իսկ «արկեալ» բառը դրված է «արկցէ» ձևով։ № 659-ում հաջորդ՝ ԼՁ հոդվածի առաջին՝ «երախայն» բառը դուրս է ընկել և մնացածը միացրել են այս հոդվածին՝ այսպես. «Եթե ոք ցանկասցի ընդ կնոջ ննջել և ձեռն ոչ արկցէ՝ անպարտ լիցի, իսկ ձեռն արկեալ և ոչ կարացեալ՝ պարտաւոր լիցի ապաշխարութեան, կա՛մ դադարեսցէ ի մեղանչելոյն կա՛մ ընկեսցի արտաքս»։*

Հոդ. ԼՁ, էջ 79: *№ 3369-ում Կ (էջ 38բ)։ Այստեղ հոդվածը աղավաղվել է. «Երեխայն կամ դարանեալ մեղանչէ ի բաց մերժեսցի»։*

Հոդ. Լէ, էջ 79: *№ 3369-ում ԿԱ (էջ 38բ)։ Այստեղ «է»-ն փոխարինված է «և»-ով։ Իսկ № 659-ում բացակայում է «արժան է» բառը։ Հոդվածի սկիզբն էլ այսպէս է. «պարտ է և» (էջ 89ա)։*

Հոդ. ԼԸ, էջ 79: *№ 3369-ում Բ (էջ 36ա), № 659-ում ԼԹ (էջ 89ա)։ №№ 648, 649, 650, 651,2964,3562 ձեռագրերում պահվել է Կանոնագրքի ունեցած՝ ԼԸ համարը։ Այսպես գրեթե մյուս դեպքերում։ Այս և № 3369 ձեռագրերում հոդվածը շարունակվում է. «և եթէ իցեն քահանայք դադարեսցեն (№ 3369-ում՝ դատապարտեսցեն) ի քահանայութենէն (№№ 648, 3369, 3562-ում՝ ի քահանայութենէ» (№№ 648, էջ 11բ, 649, էջ 31ա, 650, էջ 35ա, 651, էջ 23բ, 2964, էջ 44ա, 3562, էջ 281ա)։ Այս շարունակությունը № 659-ում դրված է որպես առանձին հոդված՝ Խ համարի տակ, միայն թե «քահանայք» բառը փոխարինված է «ժառանգաւորք» բառով։*

Հոդ. ԼԹ. էջ 79: *№№ 3369-ում Գ (էջ 36ա), № 659-ում ԼԸ (էջ 89ա)։ № 648 ձեռագրում այս հոդվածը միացված է նախորդ՝ ԼԸ հոդվածին (էջ 11բ), իսկ № 3265-ում գրված է աջ լուսանցքում, դարձյալ ԼԹ համարի տակ (էջ 281ա)։ Չորս ձեռագրերում բնագրի «յերկրորդ» բառը գրված է «երրորդ» (№№ 649, էջ 31ա, 650, էջ 35ա, 651, էջ 24ա, 2964, էջ 44ա)։*

Հոդ. Խ, էջ 79—80: *№№ 3369-ում՝ Դ (էջ 36ա), № 659-ում ԽԱ (էջ 89ա)։ Տարբեր ձեռագրերում հոդվածի սկզբի մասը ունի բառերի եռևառաջություն, այսպես. «Ոչ է պարտ նախ քան զձեռնադրել (№ 3369-ում՝ զձեռնադրեալ) զերիցունսն պատարագ մատուցանել մեղուցելոցն (№ 3369-ում զմեղուցեալսն)» (№№ 651, էջ 24ա, 650, էջ 35ա, 649, էջ 31ա, 2964, էջ 44ա). «Ոչ է պարտ զերիցունսն նախ քան զձեռնադրութիւնսն մեղուցեալս մատուցանել պատարագ» (№№ 648, էջ 11բ, 3562, էջ 281ա), «Ոչ է պարտ երիցանց մեղուցելոց յառաջ քան զձեռնադրութիւնն պատարագ մատուցանել» (№ 659, էջ 89ա)։ Այնուհետև ինչպես բնագրում։*

Հոդ. ԽԱ, էջ 80: *№ 3369-ում ԿԲ (էջ 38բ)։ №№ 648, 649, 650, 651, 659, 2964, 3562 ձեռագրերում այս հոդվածը չի պահվել։ № 3369 ձեռագրում կան այսպիսի շեղումներ. 1. «գտցի» բառի փոխարեն կարդում ենք «գտցեն»։ 2. «և ոչ է արժան»-ին նախորդում է «ոչ կարէ»-ին, այսպես՝ «ոչ կարէ և ոչ է արժան»։ 3. Այստեղ չի պահվել բնագրի «յետ» բառը։ 4. «մատուցանել» բառը փոխարինված է «մերձուցանել» բառով։ 5. երկու տեղ հանդիպում ենք բառերի եռևառաջության, այսպես. «արժան է արձակել» և «քահանայ լինել»։*

Հոդ. ԽԲ, էջ 80: *№ 3369-ում Ե (էջ 36ա)։ Այստեղ «քահանայ»-ի փոխարեն կարդում ենք «զոք երէց», իսկ №№ 648, 659, 3562-ում միայն «երէց» (էջ 12ա, էջ 89ա, էջ 281բ)։ №№ 651, 650, 649 և 2964 ձեռագրերում այս հոդվածը համար չունի։*

Հոդ. ԽԳ, էջ 80: *№ 3369-ում ԿԳ (էջ 38բ)։ № 659 հոդվածը այսպիսին է. «Եթե ոք ի հի-*

ւանդութեան մկրտեսցի՝ մի՛ եկեսցէ յառաջ ի ժառանգութիւնն, զի ոչ յաւժարութեամբ հաւատաց, բայց եթէ երկիւղած իցէ կամ հարկ ինչ լիցի» (էջ 89աբ)։ №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում չի պահվել այս հոդվածից մինչև ԾԹ հոդվածը ներառյալ։

Հոդ. ԽԴ, էջ 80։ № 3369-ում ԿԴ (էջ 38բ)։ Այստեղ մի հատվածը այսպես է. «եպիսկոպոսին յաղօթս չէ»։ Ահա № 659-ի նույն հոդվածը. «Որք գիւղից երիցունք են ի քաղաքս կամ յանդիման եպիսկոպոսին աղաւթս ոչ կատարեսցեն» (էջ 89բ)։

Հոդ. ԽԵ, էջ 81։ № 3369-ում ԿԵ (էջ 39ա)։ Վերջին հատվածը այսպես է. «որ ի Գործս առաքելոցն գործեն»։ № 659-ում այլ դասավորություն ունի հոդվածի սկիզբը. «Սարկաւագունք եւթն պարտին լինել» (էջ 89բ)։

Հոդ. ԽԶ, էջ 81։ № 3369-ում ԿԶ (էջ 39ա)։ Այստեղ ավելի է մեկ բառ. «արհամարհիցէ կամ մեղադրիցէ»։ № 659-ում «որպէս» բառը փոխարինված է «որ» բառով, իսկ «Աստուծոյ»-ն չի պահվել (էջ 89բ)։

Հոդ. ԽԷ. էջ 81։ № 3369-ում ԿԷ (էջ 39ա)։ № 659-ում հոդվածն այսպես է. «Եթէ ոչ ծառայ պատճառաւ բարեգործութեան գնասցէ ի տէրանց իւրոց ոչ ինչ ի նոցանէ խափանել՝ նզովեսցի» (էջ 89բ)։

Հոդ. ԽԸ, էջ 81։ № 3369-ում ԿԸ (էջ 39ա), № 659-ում ՂԷ (էջ 93ա)։ Վերջին ձեռագրում այս հոդվածն այսպիսի ձև ունի. «Եթէ ոք պիղծ վարկցի զմսակերն՝ նզովեալ լիցի»։

Հոդ. ԽԹ, էջ 81։ №№ 3369-ում ԿԹ (էջ 39ա), № 659-ում ԽԸ (էջ 89բ)։ Միակ էական տարբերությունն այն է, որ № 659 ձեռագրում բնագրի «խղճիցէ»-ն փոխարինված է «խտրեսցէ» բառով։ Այստեղ ԽԹ համարի տակ նշված է մի հոդված, որ մյուսները չունեն. «Եթէ ոք արհամարհեսցէ զտուն Աստուծոյ դիւր (sic) արհամարհելի լինել՝ նզովեսցի» (էջ 89բ)։

Հոդ. Ծ, էջ 81։ № 3369-ում Հ (էջ 39ա)։ Հմմտ. № 659-ի ունեցածը. «Եթէ ոք արհամարհեսցէ զեկեղեցեաւն Աստուծոյ և զեկեղեցական խորհուրդ ի տան կամիցի գործել՝ նզովեսցի» (էջ 90ա)։

Հոդ. ԾԱ, էջ 81։ № 3369-ում ՀԱ (էջ 39ա)։ № 659-ում տարբերությունը մի հատվածում է. «զեկեղեցական պաղաքերութիւնս առանց կամաց վերակացուին» (էջ 90ա)։

Հոդ. ԾԲ, էջ 82։ № 3369-ում ՀԲ (էջ 39ա)։ № 659-ում տարբեր է հոդվածի սկզբի մասը. «Եթէ ոք պիղծ վարկցի, զոր հաւատով» (էջ 90ա)։

Հոդ. ԾԳ, էջ 82։ № 3369-ում ՀԳ (էջ 39ա), № 659-ում ՁԷ (էջ 92ա)։ Վերջին ձեռագրում «քահանայից» բառը փոխարինված է. «ժառանգաւորին» բառով։

Հոդ. ԾԴ, էջ 82։ № 3369-ում ՀԵ (էջ 39ա), № 659-ում ՁԸ (էջ 92բ)։ Հմմտ. № 3369 ձեռագրում հոդվածի սկիզբը, «Ոչ է պարտ գրակարդացաց կամ կէսսարկաւագաց հացի օրհնութիւն տալ»։ № 659-ը բնագրի «կամ գինի աւրհնել»-ի փոխարեն ունի «կամ բաժակ աւրհնեալ»։ Ձեռագրում այս երեք բառի վրա դրված է հանելու նշան։

Հոդ. ԾԵ, էջ 82։ № 3369-ում ՀԶ (էջ 39ա), № 659-ում ՁԹ (էջ 92բ)։ Էական տարբերությունը № 659-ում է. ահա նրա ունեցածը. «Ոչ է պարտ ումեք երդեմնեցուցանել, բայց զորս կարգեալ է եպիսկոպոսին»։

Հոդ. ԾԶ, էջ 82։ Այս հոդվածը № 3360-ում չի համարակալված, իսկ № 659-ում դրված է Ղ համարի տակ (էջ 92բ)։ Այստեղ «քահանայից» բառը դարձյալ փոխարինված է «ժառանգաւորաց» բառով։ Իսկ № 3369-ում բնագրի «յագապս մասունս»-ը փոխարինված է «յաղաքս» բառով։

Հոդ. ԾԷ, էջ 82։ № 3369-ում ՀԷ (էջ 39ա), № 659-ում ՂԱ (էջ 92բ)։ Վերջին բառը № 3369-ում «ճաշ ուտել», իսկ № 659-ում «հաց ուտել» ձևերով։

Հոդ. ԾԸ, էջ 82։ № 3369-ում ՀԸ (էջ 39ա), № 659-ում ՂԲ (էջ 92բ)։ Վերջին՝ «հրէանայ» բառը № 3369-ում «նման հրէի» ձևով։

Հոդ. ԾԹ, էջ 82։ № 3369-ում ՀԹ (էջ 39բ), № 659-ում ՂԳ (էջ 92բ)։ Ահա վերջին ձեռագրի ունեցածը. «Ոչ է պարտ այրամարդոյն բաղանեաւք վարիլ»։

Հոդ. Կ, էջ 83։ № 3369-ում Զ (էջ 36ա), № 659-ում՝ ՂԴ (էջ 92բ)։ Բնագրի «ճաշել» բառը №№ 651, 650, 2964, 3369 ձեռագրերում դրված է «ճաշակել» ձևով (էջ 24ա, 35ա, 44ա)։

Հոդ. ԿԱ, էջ 83։ № 3369-ում Ը (էջ 36բ), № 659-ում ՂԵ (էջ 92բ), 651-ում ԿԲ (էջ 24ա)։ №№ 648, 3369, 3562-ում չեն պահվել բնագրի «ոք» (էջ 12ա, 36բ, 281բ), № 3369-ում՝ նաև «կամ առ»բառերը (էջ 36բ), այստեղ կրկնված է «յաղօթս» բառը։ № 659-ում հոդվածը այսպես է. «Եթէ ոք հրեշտակաց կամ այլում արարածոց աղաւթս մատուցանէ՝ նզովեալ լիցի»։ Բացի վերևում նշվածից № 3369-ում այս հոդվածը պահվել է նաև ՁԱ համարի տակ այս

ձևով. «Եթէ ոք ընդ Հրե[շ]տակս յաղօթս կացցէ և կամ առ այլ ոք արարածոց՝ նզովեալ եղիցի» (էջ 39բ)։

Հոդ. ԿԲ, էջ 83: №№ 648, 649, 650, 651, 2964, 3369, 3562 ձեռագրերում չի պահվել այս հոդվածը։ № 659-ում այն պահվել է ՂԶ համարի տակ, ուր բնագրի «թով իցէ», «կախարդ իցէ»-ն դրված են «թովեսցէ», «կախարդեսցէ» բայական ձևով (էջ 93ա)։

Հոդ. ԿԳ, էջ 83: № 3369-ում Է (էջ 36ա), № 659-ում ՂԸ (էջ 93ա)։ Բնագրի «աւրհնել» բառը №№ 648, 649, 650, 651, 659, 2964, 3369, 3562 ձեռագրերում փոխարինված է «տաւնել» (տօնել) բառով։ № 659-ում հոդվածի վերջին մասը շեղվում է այսպես. «կամ զատկական նուէրս ի նոցանէն առնուլ»։

Հոդ. ԿԴ, էջ 83: № 3369-ում Ձ (էջ 39բ), № 659-ում ՂԹ (էջ 93ա)։ № 3369-ում հոդվածի մի հատվածը այսպես է. «ի ժողովս արհամարհելով ի կոչելոցն»։ № 659-ում ընդարձակ է հոդվածի վերջին մասը. «Բայց վասն հիւանդութեան ներումն կալցին»։ ԿԴ—ԿԷ հոդվածները չեն պահվել №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում։

Հոդ. ԿԵ, էջ 83: № 3369-ում ՁԲ (էջ 39բ), № 659-ում ԾԴ (էջ 90ա)։ Վերջին ձեռագրում բնագրի մի հատվածը կարդում ենք այսպես. «յաղագս կարծեցեալ ճգնութեան»։ Այստեղ «փոքրիցէ» բառը փոխարինված է «կորեսցէ» բառով և չի պահվել «իւր» բառը։ Իսկ ԾԴ համարի տակ բերված է Գանգրայի կանոնախմբի ԺԴ հոդվածի համառոտ բովանդակությունը, որը բացակայում է մյուս տարբերակներում. «Եթե ոք կին յաղագս պարկեշտութեան թողցէ զիւր այրն՝ նզովեալ լիցի» (№ 659, էջ 90ա)։

Հոդ. ԿԶ, էջ 83: № 3369-ում ՁԳ (էջ 39բ), № 659-ում ԾԶ (էջ 90աբ)։ Այս երկու ձեռագրում գրեթե միանման են հոդվածի սկզբի մասը. «եթէ ուրուք (№ 3369-ում՝ ոք) որդիք թողցեն զհաւատացեալ հայրս (№ 3369-ում՝ ծնողս) պատճառաւ բարէպաշտութեան (№ 3369-ում՝ պատճառանաւ աստուածպաշտութեան)»։ № 659-ում չի պահվել «իբրև» բառը։

Հոդ. ԿԷ, էջ 84: № 3369-ում ՁԴ (էջ 39բ), № 659-ում ԾԵ (էջ 90ա)։ Վերջին ձեռագրում բնագրի մի հատվածը շարադրված է այսպես. «յաղագս կարծեցելոյ ճգնաւորութեան»։

Հոդ. ԿԸ, էջ 84: № 3369-ում Թ (էջ 36բ), № 659-ում ԾԷ (էջ 90բ)։ № 3369-ում չեն պահվել «յաւուր» և «յաւուրս» բառերը։ №№ 648, 3369, 3562 ձեռագրերում «և»-ը փոխարինված է «կամ»-ով (№№ 648, էջ 12ա, 3562, էջ 281բ)։ Համտ. № 659-ի ունեցածը. «Եթե ոք յաղագս կարծելոյ ճգնութեան ի կիւրակէի պահեսցէ կամ յաւուրս Պենտակոստէից՝ նզովեալ լիցին»։

Հոդ. ԿԹ, էջ 84: № 659-ում ԾԸ (էջ 90բ)։ № 3369-ում չի պահվել այս հոդվածը։

Հոդ. Լ, էջ 84: № 3369-ում ԼԳ (էջ 39ա), № 659-ում ԾԹ (էջ 90բ)։ Էական տարբերությունն այն է, որ «զարշեսցի» բառը № 659-ում փոխարինված է «պիղծ վարկցի» բառերով, իսկ «ժողովոց»-ը՝ «ժողովս»։

Լ—ՁԴ հոդվածները չեն պահվել №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում։

Հոդ. ԼԱ, էջ 84: № 3369-ում ՁԵ (էջ 39բ), № 659-ում Կ (էջ 90բ)։ «Ի վիճակելոցն» բառը № 3369-ում պահվել է «ի վիճակաց» ձևով, իսկ № 659-ում փոխարինվել է «ի ժառանգաւորաց» բառով։ Այստեղ «իշխեսցէ» բառն էլ փոխարինված է «յանդգնեսցի» բառով։

Հոդ. ԼԲ, էջ 84: № 3369-ում ՁԶ (էջ 39բ), № 659-ում ԿԱ (էջ 90բ)։ Բնագրի «յաւտարաց»-ը № 659-ում փոխարինված է «զոք յուխտաւորաց», իսկ վերջին երկու բառը՝ «ի ժառանգութիւն ընդունել»։ № 3369-ում գրված է «ածել» փոխանակ «մատուցանել»։

Հոդ. ԼԳ, էջ 84: № 3369-ում ՁԸ (էջ 39բ), № 659-ում ԿԲ (էջ 91ա)։ Միայն վերջին ձեռագրում կա մի ավելացում. «երիցու ումեք»։

Հոդ. ԼԴ, էջ 84: № 3369-ում ՁԷ (էջ 39բ), № 659-ում ԿԳ (էջ 91ա)։ № 659-ում հոդվածը ավելի պարզ է շարադրված. «Պարտ է մայրաքաղաքաց եպիսկոպոսին ամենեցուն եկեղեցական իրաց ունել հոգս և առանց նորա եպիսկոպոսք մի՛ լինել»։

Հոդ. ԼԵ, էջ 85: № 3369-ում ՁԹ (էջ 39բ), № 659-ում ԿԴ (էջ 91ա)։ Բնագրի երկրորդ հատվածը № 659-ում այսպես է. «յիւրմէ իշխանութենէ ի միւս փոխել և ձեռնադրել»։ Իսկ № 3360-ում «փոփոխիլ» բառի փոխարեն «փախչիլ կամ փոփոխիլ»։

Հոդ. ԼԶ, էջ 85: № 3369-ում Ղ (էջ 39բ), № 659-ում ԿԵ (էջ 91ա)։ Հոդվածի վերջին երեք բառը № 659-ում եռեառաչութիւն ունի. «այլոց եպիսկոպոսաց լուծանել»։

Հոդ. ԼԷ, էջ 85: № 3369-ում ՂԱ (էջ 39բ), № 659-ում ԿԶ (էջ 91ա)։ Բնագրի «ձեռնադրեալ ոչ ընկալցի» հատվածը № 659-ում այսպես է. «ձեռնադրել ոչ հաւանեսցի», իսկ «եղիցի» բառը նույն ձեռագրում փոխարինված է «կացցէ» բառով. № 3369-ում՝ «նզովեալ եղիցի»։

Հոդ. ԼԸ, էջ 85: № 3369-ում ՂԲ (էջ 39բ), № 659-ում ԿԷ (էջ 91ա)։ Բնագրի սկզբի հատ-

վածը № 659-ում ունի այսպիսի շարադրություն. «Պարտ է ձեռնադրելոյ եպիսկոպոսին և ոչ կացելոյ ի ժողովրդենէն»։

Հոդ. ՀԹ, էջ 85: № 3369-ում ԴԳ (էջ 40ա), № 659-ում ԿԸ (էջ 90ա)։ Վերջին ձեռագրում այս հոդվածը հետևյալ կերպ է. «Ոչ է պարտ եպիսկոպոսի զայլս փոխանակ իւր նստուցանել առանց ժողովոյն»։

Հոդ. Ձ, էջ 85: № 3369-ում ԼԴ (էջ 40ա), № 659-ում ԿԹ (էջ 91ա)։ Այս երկու ձեռագրերում էլ շեղումներն զգալի են, ուստի հոդվածները բերում ենք լրիվ. «Պարտ է և արժան ամենայն եպիսկոպոսաց եկեղեցեաց անիրաւաց ունել իշխանութիւն և երիցանցն, իսկ որ առանձինն ինչ է եպիսկոպոսին ի դէպէ եպիսկոպոսին, որոց կամի թողուլ» (№ 3369)։ «Պարտ է գիտութիւն ունիլ եկեղեցականացն, իսկ որ առանձին ինչ է եպիսկոպոսին, ի դէպէ եպիսկոպոսին, որոց կամիցի թողուլ» (№ 659)։

Հոդ. ՁԱ, էջ 85—86: № 3369-ում ԴԵ (էջ 40ա), № 659-ում Հ (էջ 91ա)։ Բնագրի երեք բառերի եռևառաչություն կա № 3369-ում. «ունել ամենայն իրաց»։ Հոդվածի շարադասությունը մի փոքր այլ է № 659-ում, ահա այն. «Պարտ է եպիսկոպոսին ամենայն եկեղեցական իրաց ունել իշխանութիւն և որպէս կամիցի ի կարաւոեալս տնաւրինել, ապա եթե և ինքն կարաւտ իցէ ի հարկաւոր պէտս՝ վարեսցէ, ոչ ինչ այպանել»։

Հոդ. ՁԲ, էջ 86: № 3369-ում ԴԶ (էջ 40ա), № 659-ում ՀԱ (էջ 91բ)։ Վերջին ձեռագրում հոդվածը հետևյալ կերպ է շարադրված. «Պարտ է զանազան մեղսն անկելոցն ապաշխարել մտերմութեամբ՝ շնորհին արժանի լինել»։

Հոդ. ՁԳ, էջ 86: № 3369-ում ԴԷ (էջ 40ա), № 659-ում ՀԲ (էջ 91բ)։ Բնագրի վերջին բառի փոխարեն № 659-ում կարդում ենք. «յառաջ մեզ աղաւթակից լինել»։ Սակայն, ուշադիր քննությունը ցույց տվեց, որ բնագրի ՁԳ հոդվածի առաջին՝ «Ոչ է պարտ հերետիկոսաց» հատվածը դուրս է ընկել, իսկ երկրորդ՝ «ընդ մեզ յաղաւթս կալ» հատվածը միացվել է ՁԳ հոդվածին։ Այսպիսով, բնագրի վերջին «մատուցանել» բառի փոխարեն ՁԳ հոդվածին կցել են ՁԴ հոդվածի երկրորդ մասը և այն դարձրել անհասկանալի, մյուս կողմից № 659-ում չի պահվել ՁԴ հոդվածը։ Այս նույն ձեռագրում ՀԳ համարի տակ պահվել է մի հոդված, որը բացակայում է մյուս տարբերակներում, ահա այն. «Պարտ է զդարձեալսն ի հերձուածոց ածմանն արժանի լինել» (էջ 91բ)։

Հոդ. ՁԴ, էջ 86: № 3369-ում Ժ (էջ 36բ)։ Այստեղ բնագրի «մեզ»-ը փոխարինված է «հայսն» բառով, այսինքն ավելի որոշակի են դարձել «մեզ»-ի իմաստը, իսկ վերջին երկու բառը այսպես է. «կալ յաղօթս»։

Հոդ. ՁԵ, էջ 86: № 3369-ում ԺԲ (էջ 36բ), № 659-ում ՀԴ (էջ 91բ)։ Վերջին ձեռագրում չի պահվել բնագրի «կամ ի վկայարանս» հատվածը, իսկ «հերետիկոսաց»-ի փոխարեն գրված է հերձուածողաց»։

Հոդ. ՁԶ, էջ 86: № 3369-ում ԺԳ (էջ 36բ), № 659-ում ՀԵ (էջ 91բ)։ Հոդվածի վերջին մասը № 659-ում այսպիսի շարադասություն ունի... «ամուսնանալ ընդ հերձուածողս»։ Բնագրի «հերետիկոսաց» բառը №№ 648, 3562-ում գրված է եզակի ուղղական՝ «հերետիկոս» (էջ 12ա, 281բ)։

Հոդ. ՁԷ, էջ 86: № 3369-ում ԺԴ (էջ 36բ), № 659-ում ՀԶ (էջ 91բ)։ Հմմտ. № 659-ի ունեցածը. «Ոչ է պարտ պառաւանց առաջի նստիլ»։ №№ 649, 650, 651, 2964 ձեռագրերում չի պահվել այս հոդվածը։

Հոդ. ՁԸ, էջ 86: № 659-ում ՀԷ (էջ 91բ)։ Նախորդ՝ ՁԷ հոդվածը №№ 648, 3562 ձեռագրերում միացված է ՁԸ-ին և դրված ԾԸ համարի տակ։ №№ 650, 649-ում չի պահվել բնագրի «եպիսկոպոս» բառը (էջ 35բ, էջ 31բ), իսկ №№ 648, 651, 2964, 3562-ում կա երկու բառի եռևառաչություն «եպիսկոպոսաց ընտրութեամբ» (էջ 12ա, էջ 24ա, էջ 45ա, էջ 281բ)։ Հմմտ. № 659-ի ունեցածը. «Պարտ է եպիսկոպոսաց ընդրութեամբ եպիսկոպոսաց յառաջ գալ»։

Հոդ. ՁԹ, էջ 87: № 3369-ում ԺԵ (էջ 36բ), № 659-ում ՀԸ (էջ 91բ)։ Մի քանի ձեռագրերում սույն հոդվածն ունի այսպիսի այլընթերցումներ. «Ոչ է պարտ և արժան զսրբութիւնսն (№ 3369-ում՝ սրբութիւնս, №№ 648, 3562-ում՝ զսրբութիւնս) յաւրհնութենէ (№ 3369-ում՝ օրհնութենէ, №№ 648, 650, 2964, 3562-ում՝ յաւրհնութեան, № 649-ում՝ յաւրհնութեամբն) բանի (№№ 3369, 651-ում՝ բնի, № 649-ում՝ չիք բանի) ըստ (№ 3369-ում՝ ընդ) Զատկի յայլ (№ 3369-ում՝ այլ) տեղիս առաքել (№ 3369-ում՝ առնել առաքել)» (№№ 648, էջ 12ա, 649, էջ 31բ, 650, էջ 35բ, 651, էջ 24ա, 2964, էջ 45ա, 3369, էջ 36բ, 3562, էջ 281բ)։ № 659-ում. «Ոչ է պարտ զսրբութիւնսն յաւրհնութեան կարգի ըստ Զատկի յայլ եկեղեցիս առաքել» (էջ 91բ)։

Հոդ. Ղ, էջ 87: № 3369-ում ԺԶ (էջ 36բ), № 659-ում ՀԹ (էջ 91բ)։ Բնագրի «սաղմոսա-

սացի» բառը № 659-ում դրված է «սաղմոսաց» ձևով, իսկ «առանձինն... յեկեղեցւոջ» հատվածը՝ «սաղմոսել առանձին յեկեղեցւոջ»։

Հոդ. ՂԱ, էջ 87: № 3369-ում ԺԷ (էջ 36բ), № 659-ում ՁԱ (էջ 92ա)։ №№ 648, 649, 650, 651, 2964, 3369, 3562 ձեռագրերում չի պահվել հոդվածի վերջին՝ «այլ ի միջին գրակարգացումն առնել» հատվածը։ Բնագրի «յարել» բառը №№ 650, 3369-ում դարձել է «յարկել» (էջ 35բ, էջ 36բ, իսկ № 651-ում՝ «արկել» էջ 24բ)։ № 659-ում շեղվում է «ի միջին գրակարգացումն» հատվածը, այստեղ այդ այսպես է. «ի միջոցին կարդացմունս» (էջ 92ա)։

Հոդ. ՂԲ, էջ 87: № 3369-ում ԺԸ (էջ 36բ), № 659-ում ՁԲ (էջ 92ա)։ Բնագրի «յամենայն» բառը № 659-ում փոխարինված է «ի»-ով։

Հոդ. ՂԳ, ՂԴ, ՂԵ, էջ 87: № 3369-ում՝ ԺԹ, Ի, ԻԱ (էջ 36բ), № 659-ում՝ ՁԳ, ՁԴ (էջ 92ա)։ Այս երեք հոդվածները Լավոդիկեի կանոնախմբի ԺԹ հոդվածն են։ Բնագրի ՂԴ հոդվածը առանձին անիմաստ է և խիստ աղավաղված, այն կազմում՝ է նախորդի՝ ՂԳ-ի շարունակությունը, ինչպես № 659 ձեռագրում է։ Բնագրի «վարդապետութեանն երախայի» (ՂԳ) հատվածը №№ 649, 650, 651, 2964, 3369 ձեռագրերում դրված է հոգնակի՝ «վարդապետութեանցն երախայից» (№ 3369-ում՝ երեխայից. էջ 32ա, էջ 35բ, էջ 24բ, էջ 45բ)։ Իսկ «գնացելոց»-ը (ՂԴ) № 3369-ում՝ «գնացողաց»։ Ահա և № 659-ի ունեցածը. «Պարտ է քան զխաւսսն նախ երախայից աղաւթս մատուցանել, իսկ ապա այնոցիկ որ յապաշխարութեանն են և գնացելոց նոցա և ապա հաւատացելոցն»։ Այստեղ բերում ենք այդ երկու (ՂԳ, ՂԴ) հոդվածները միասին, միաժամանակ երկրորդ հոդվածում կատարելով որոշ փոփոխություն՝ միտքը հասկանալի դարձնելու համար. «Պարտ է զկնի վարդապետութեանն՝ երախայի յաղաւթս լինել. իսկ ապաշխարողաց և յետ գնալոյ սոցա՝ հաւատացելոցն»։ Բնագրում այդպիսի փոփոխություն չկատարեցինք, որովհետև կխախտվեր հոդվածների ընդհանուր համարակալումը, որը կապված է «Կանոնագիրք Հայոց»-ի Ա հատորի ընդհանուր ցանկի հետ (տե՛ս էջ 5—17)։ Այս նույն ձեռագրում (№ 659) բնագրի ՂԵ հոդվածից անջատել են վերջին՝ «և ոչ արանց ի բեմ ելանել» հատվածը և դարձրել առանձին հոդված, որը առանց համարակալման հաջորդում է ՁԴ հոդվածին։ Ահա այդ հոդվածը. «Ոչ է պարտ կանանց ի բեմ ելանել»։ Վերևում նշված մի քանի ձեռագրերում այդ հոդվածը նույնն է, ինչ Կանոնագրքի ունեցածը (ՂԵ) միայն մի բառի շեղում կա, բնագրի «արանց» բառը այս և № 659 ձեռագրերում փոխարինված է «կանանց» բառով (№№ 648, էջ 12ա, 649, էջ 32ա, 650, էջ 35բ, 651, էջ 24բ, 2964, էջ 45բ, 3369, էջ 36բ, 3562, էջ 282ա)։

Կանոնագրքի Լավոդիկեի կանոնախմբի ԽԱ (հմմտ. հուն. 44-րդ) հոդվածում արգելվում է կնոջը բեմ հանել, բայց Երկրորդ Նիկիական կանոնախմբում այս հոդվածը չի պահվել։ ՂԵ հոդվածը, ինչպես ցույց ենք տվել վերևում, Լավոդիկեի կանոնախմբի 19-րդ հոդվածի վերջին մասն է։ Կանոնագրքում այդ հոդվածի բնագրում կարդում ենք. «իբրեւ միայն քահանայիցն արժան է եւ որ յաշտիճանին, և ոչ եթէ կէսսարկաւագաց թէ սաղմոսողոգ ի բեմ ելանել եւ ի սեղանոյն աւրէնս առնուլ» (հտ. Ա, էջ 233—234)։ Ինչպես տեսնում ենք այս մեջբերման համաձայն բեմ բարձրանալ թույլատրվում է միայն քահանաներին և մերժում ինչպես քահանայից ցածր աստիճան ունեցող եկեղեցական պաշտոնյաներին, այնպես էլ ընդհանրապես աշխարհականներին։ Նույն հոդվածի հունարեն բնագրում այդ հատվածում գրված է. „καὶ μόνοις ἐξὸν εἶναι τοῖς ἱερατικοῖς εἰσιέναι εἰς θυσιαστήριον καὶ κοινωνεῖν„ (Պիտրա, էջ 498։ Եվ միայն հոգևորականներին է թույլատրվում մտնել բեմ և հաղորդվել)։ Այս վկայությամբ էլ բեմ մտնել թույլատրվում է միայն հոգևորականությանը։ Տարբերակներում եղած «կանանց» ընթերցումը սխալ է, իսկ բնագրի «արանց» բառի տակ պետք է հասկանալ միայն աշխարհականներին, մանավանդ հոդվածի սկզբում այդ ակնարկվում է՝ «ժողովրդականաց»։ Այս ասումով սույն հոդվածը ևս ավելի մոտ է Լավոդիկեի կանոնախմբի հունարեն բնագրին, քան Կանոնագրքինը։

Հոդ. ՂԶ, էջ 87: № 3369-ում ԻԲ (էջ 36բ), № 659-ում ՂԵ (էջ 92ա)։ Վերջին ձեռագրում հոդվածը հավանաբար աղավաղված է և մնում է անիմաստ։ Ահա ամբողջը. «Ոչ է պարտ սարկաւագացն ի սարկաւագանոցին տեղի որոշեալ ունել»։ Ինչպես վերևում նշել ենք, այստեղ տրված է Լավոդիկեի կանոնախմբի հունարեն բնագրի 21-րդ հոդվածի առաջին մասը, իսկ Կանոնագրքի նույն կանոնախմբի համապատասխան հոդվածում (ՀԱ) երկրորդ մասը։ № 659 ձեռագրում «զկէսսարկաւագաց»-ը փոխարինված է «սարկաւագացն»-ով, իսկ «ի սարկաւագաց»-ը՝ «ի սարկաւագանոցին»։ Հակառակ № 659-ի ունեցածի, և՛ Կանոնագրքի և՛ հունարենի բնագրերում միտքը պարզ է՝ կեսսարկավագները պաշտամունքի արարողության ժամանակ պետք է զբաղեցնեն իրենց տեղը և ոչ թե սարկավագների։

Հոդ. ԴԷ, էջ 88: № 3369-ում ԻԴ (էջ 37ա), № 659-ում ԴԶ (էջ 92ա)։ №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում բնագրի «պարանոց և»-ի միջև կա «ունել» բառը, այսպես՝ «պարանոց ունել և»։ Այս երկու բառը № 3369-ում աղավաղվելով դարձել է «պարարեցուցանել», իսկ «այսպէս»-ը փոխարինված է «ապա» բառով։ № 659-ում հոդվածը ընդարձակ է, ահա այն. «Ոչ է պարտ սպասաւորացն և կամ գրակարդացացն օրարիովն ունել և այսպէս կարդալ կամ սաղմոսել կամ զայլ պաշտամանն յեկեղեցւոջն օրարիովն առնել»։ Ուրիշներ վերջին բառը, տողամեջ, ուղղել են «ունի»։

Հոդ. ԴԸ, էջ 88: № 3369-ում ԴԸ (էջ 40ա), № 659-ում Ճ (էջ 93ա)։ № 3369-ում չի պահվել միայն երկրորդ «ոչ»-ը։ № 659-ում «և ոչ»-ը փոխարինված է «գոնէ թէ»-ով։ Գրչական սխալի հետևանքով «զգրունսն» գրվել է «գրունս», իսկ վերջին երկու բառը այսպես է. «և աղաւթից պարապել»։ №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում չեն պահվել ԴԸ—ՃԴ հոդվածները։

Հոդ. ԴԹ, էջ 88: №№ 3369-ում ԴԹ (էջ 40ա), № 659-ում ՃԱ (էջ 93ա)։ Միայն № 659 ձեռագրում «յետ»-ը գրված է «զկ[ն]ի»։

Հոդ. Ճ, էջ 88: № 3369-ում Ճ (էջ 40ա), № 659-ում ՃԲ (էջ 93ա)։ № 3369-ում չի պահվել միայն «որք մկրտին»։ № 659-ում հոդվածը համառոտ է. «Պարտ է մկրտելոցն ասել զհաւատն ի մեծի հինգշաբաթւոջն»։

Հոդ. ՃԱ, էջ 88: № 659-ում Զ (էջ 92ա)։ Այս հոդվածը այստեղ այսպես է. «Պարտ է և ի միաշաբաթու կարդալ Աւետարան»։

Հոդ. ՃԲ, էջ 88: № 3369-ում ՃԱ (էջ 40ա), № 659-ում ՃԳ (էջ 93ա)։ № 659-ում չի պահվել բնագրի «որք»-ը, իսկ «մկրտեցան զՀաւատն ասել» հատվածի փոխարեն ունի «մկրտելոցն պատմել զՀաւատն»։

Հոդ. ՃԳ, էջ 88: № 3369-ում ՃԲ (էջ 40ա), № 659-ում ՃԴ (էջ 93ա)։ Միակ տարբերությունն այն է, որ № 659 ձեռագիրը բնագրի «պարգև ի» փոխարեն ունի «ազատութեան» բառը (էջ 92աբ)։

Հոդ. ՃԴ, էջ 88: №№ 3369-ում ՃԳ (էջ 40ա), № 659-ում ՃԵ (էջ 93բ)։ № 659 ձեռագրում չի պահվել բնագրի «Թէպէտ եւ մարտիրոսաց յիշատակ իցեն» հատվածը։ Այս երկու ձեռագրում էլ հոդվածը շարունակվում է՝ № 659-ում. «եթե և վկայաբանութիւն ուրեք կատարեսցի», № 3369-ում. «լիցի պատարագ»։

Հոդ. ՃԵ, էջ 89: № 3369-ում՝ ԻԴ (էջ 37ա), № 659-ում՝ ՃԶ (էջ 93բ), №№ 648, 3562-ում՝ ԴԸ (էջ 12բ, էջ 282ա), իսկ № 649 (էջ 32ա), 650 (էջ 35բ), 651 (էջ 24բ), 2964 (էջ 45բ) ձեռագրերում՝ ԴԹ։ №№ 650, 651, 2964, 3369-ում բնագրի «զքառասներորդս» բառին ավելացված է «պահսն» բառը՝ «ի քառասներորդաց պահսն»։ Այս ձեռագրերում չի պահվել հոդվածի վերջին՝ «այլ չորակեր լինել» մասը։ № 659-ում հոդվածի վերջում ավելացված է «սակաւ ինչ»։

Հոդ. ՃԶ, էջ 89: № 3369-ում՝ ԻԵ (էջ 37ա), № 659-ում՝ ՃԷ (էջ 93բ), №№ 648, 3562-ում՝ ԴԹ (էջ 12բ, էջ 282ա), №№ 649, 650, 651, 2964-ում՝ Ճ։ № 659-ը բնագրի «հարսանիս կատարել» բառերի միջև ունի. «առնել կամ ծնունդս»։

Հոդ. ՃԷ էջ 89: № 3369-ում՝ ՃԴ (էջ 40ա), № 659-ում՝ ՃԸ (էջ 93բ)։ № 3369-ում հոդվածի վերջին երկու բառը այսպես է. «անպատհեալ (հապաված՝ անպտլ) առնել»։ № 659-ը բնագրի «ի հարսանիս» բառից հետո ունի այլ շարունակություն. «ծափս հարկանել կամ կաքաւել կամ երգս անպատեհս ասել»։ №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում չի պահվել ՃԷ հոդվածից մինչև կանոնախմբի վերջը։

Հոդ. ՃԸ, էջ 89: № 3369-ում՝ ՃԶ (էջ 40բ), № 659-ում՝ ՃԹ (էջ 93բ)։ № 659-ում «քահանայից»-ի փոխարեն դրված է. «ժառանգաւորացն» բառը։ № 3369-ում բնագրի «տեսիլ» և «տեսանել» բառերը համապատասխանաբար փոխարինված է. «տեսնել» և «տանել» բառերով։

Հոդ. ՃԹ, էջ 89: № 3369-ում՝ ՃԵ (էջ 40բ), № 659-ում՝ ՃԺ (էջ 93բ)։ № 659-ում «հանկանակս տանել»-ը դրված է բնագրի «հանգանակաւք գինարբուաց վարել» հատվածի փոխարեն։

Հոդ. ՃԺ, էջ 89: № 659-ում՝ ՃԺԱ (էջ 93բ)։ Այստեղ հոդվածը այսպիսի շարադասություն ունի. «Ոչ է պարտ երիցու առանց եպիսկոպոսի ի բեմ ելանել նախ քան զեպիսկոպոսին ելանել»։ № 3369-ում չի պահվել այս հոդվածը։

Հոդ. ՃԺԱ, էջ 89: № 3369-ում՝ ՃԷ (էջ 40բ), № 659-ում՝ ՃԺԲ (էջ 94աբ)։ Բնագրի «տեսուչք շրջել»-ը № 659-ում արտահայտված է մեկ բառով «խնամակալուս»։

Հոդ. ՃԺԲ, էջ 90: № 3369-ում՝ ՃԸ (էջ 40բ), № 659-ում՝ ՃԺԳ (էջ 94ա)։ № 3369-ում բնագրի «ի շինական»-ը դարձել է «իշխանական»։ Մեզ թվում է այս փոփոխությունն արդյունք

է գրչագրական սխալ։ Բայց հետաքրքիրն այն է, որ հունարեն բնագրում (Լավոդիկեի կանոնախումբ, հոդ. 58) չի նշված ոչ «ի շինական տունս» և ոչ էլ «իշխանական տունս», այլ ուղղակի ἐν τοῖς οἴκοις (տներում) ընդհանուր ձևով։ Մոտավորապես նույն բովանդակությամբ մի հոդված գտնում ենք Սահակ Պարթևի կանոնախմբում։ Վերջինիս ԻԵ հոդվածում քահանաներին պատվիրում է եկեղեցուց դուրս «մի՛ իշխեսցեն աւրէնս ի տունս շինականաց առնել և անդ տալ զսրբութիւնն, բայց հիւանդաց» (հտ. Ա, էջ 381), իսկ Ներսեսի և Ներշապուհի կանոնախմբում՝ «ի տունս շինականացն քահանայք մկրտութիւն մի՛ իշխեսցեն առնել» (էջ 485)։ Հունարենում և Երկրորդ Նիկիականի բնագրում խոսքը նվերի մասին է προσφορὰ (=պատարագ), Սահակ Պարթևի մոտ ավելի շուտ հաղորդության, իսկ երրորդում՝ մկրտության։ Թեև այս երեքն էլ վերաբերում են ծիսակատարության տարբեր հարցերին, բայց բոլոր դեպքերում արգելվում է դրանք կատարել մասնավոր տներում։ Ավելի որոշակի նշում են Սահակ Պարթևը և Ներսեսը, առանձնացնելով շինականներին։ Երկրորդ Նիկիականի ԾԺԲ հոդվածը լինելով հունարենի բառացի թարգմանություն, ավելի ունի միայն «շինական» բառը, որը մեր համոզմամբ Սահակ Պարթևի վերևում նշված հոդվածից է անդրադարձվել այստեղ։ Այս հանգամանքը նաև ցույց է տալիս, որ մինչև Երկրորդ Նիկիական կանոնախմբի հանդես գալը գոյություն ուներ Սահակ Պարթևի կանոնախումբը։

Հոդ. ԾԺԳ, էջ 90։ № 3369-ում՝ ԾԹ (էջ 40բ), № 659-ում՝ ԾԺԴ (էջ 94ա)։ Վերջին ձեռագրում այս և հաջորդ՝ ԾԺԴ հոդվածները միացված են միմյանց։ Այստեղ կբերենք № 659-ի հոդվածի առաջին մասը. «Ոչ է պար[տ] ոգիտական սաղմոսս կամ անկանոնականս յեկեղեցւոջ ասել կամ անկանոնական գիրս կարդալ, այլ զկանոնեալսն՝ Նոր և Հին Կտակարանաց, որպէս և սարագրեալս է»։

Այնուհետև հաջորդում է բնագրի ԾԺԴ հոդվածը։ Վերջինիս էլ հաջորդում է թույլատրելի գրքերի ցանկը. «Իսկ կարգեալ գիրքն այսոքիկ են» խորագրով։

«Մովսիսի Ե գիրք.

Ա. Ծնունդք.
Բ. Ելք Իսրաէլի.
Գ. Ղևտականք.
Դ. Թիւք.
Ե. Երկ[ր]որդ աւրէնք.
Զ. Յեսու.
Է. Դատաւորք.
Ը. Հռութ.
Թ. Թագաւորք առաջին.
Ժ. Թագաւորք երկրորդ.
ԺԱ. Թագաւորք երրորդ.
ԺԲ. Թագաւորք չորրորդ.
ԺԳ. Մնացորդք առաջին.
ԺԴ. Մնացորդք երկրորդ.
ԺԵ. Դաւիթ մարգարէ.
ԺԶ. Առակք Սողոմոնի.
ԺԷ. Առակք երկրորդ.
ԺԸ. Առակք երրորդ.
ԺԹ. Ժողովողն.
Ի. Երգ երգոցն.
ԻԱ. Իմաստութիւն Սողոմոնի.
ԻԲ. Յոբ.
ԻԳ. Եսայի.
ԻԴ. Երեմիայ.
ԻԵ. Բարուք.
ԻԶ. Ողբք Երեմիայի.
ԻԷ. Եզեկիէլ.
ԻԸ. Դանիէլ.
ԻԹ. Երկոտասան մարգարէքն.
Լ. Եզր առաջին.
ԼԱ. Եզր երկրորդ.
ԼԲ. Բան Նեեմայ.
ԼԳ. Եսթեր.
ԼԴ. Յուդիթ.
ԼԵ. Տուբիթ.
ԼԶ. Մակաբայեցիք առաջին.
ԼԷ. Մակաբայեցիք երկրորդ.
ԼԸ. Մակաբայեցիք երրորդ.
ԼԹ. Մակաբայեցիք չորրորդ.
Խ. ՝Յեսու Սիրաքայ.

Այս է չափ և կարգ Հին Կտակարանացն։

Նոր Կտակարանք.

Ա. Աւետարան Մատթէոսի.
Բ. Մարկոս.
Գ. Ղուկաս.
Դ. Յոհաննէս.
Ե. Պաւղոս Հռոմայեցւոց թուղթն.
Զ. Կորընթացւոց թուղթն.
Է. Կորընթացւոց երկրորդ թուղթն.
Ը. Երրորդ Կորընթացի.
Թ. Գաղատացւոց.
Ժ. Եփեսացւոց.
ԺԱ. Փիլիպեցի.
ԺԲ. Կողոսացի.
ԺԳ. Առաջին Թեսաղոնիկեցւոց.
ԺԴ. Երկրորդ Թեսաղոնիկեցւոց.
ԺԵ. Եբրայեցւոց թուղթ.

*ԺԶ. Տիմոթէոս առաջին.*
*ԺԷ. Երկրորդ Տիմոթէոս.*
*ԺԸ. Տիտոս.*
*ԺԹ. Գործք առաքելոցն.*
*Ի. Թուղթ Յակոբու.*
*ԻԱ. Պետրոսի առաջին թուղթ.*
*ԻԲ. Պետրոսի երկրորդ թուղթ.*
*ԻԳ. Յո[վ]հաննու առաջին թուղթ.*
*ԻԴ. Յովհաննու երկրորդ թուղթ.*
*ԻԵ. Յովհաննու երրորդ թուղթ.*
*ԻԶ. Յայտնութիւն Յովհաննու» (էջ 94ա—95ա)։*

Հոդ. ՃԺԳ, էջ 90: *№ 3369-ում՝ ՃԺ (էջ 40բ), № 659-ում՝ ՃԺԳ (էջ 94ա)։ Բնագրի «սրբոյ ժողովոյս», «ի Նիկիայ ժողովեցաւ» հատվածների փոխարեն № 3369-ում համապատասխանաբար դրված է «սրբոց ժողովոցս», և «ի Նիկիոյ ժողովոցն». իսկ այնուհետև մնացած մասն այստեղ ընդարձակ է. «յառաջի ՝ աստուածապսակեալ սուրբ թագաւորին Կոստանդիանոսի նզովեալ եղիցի, իսկ կատարիչք սահման սրբոյ կանոնացս այնպիսին օրհնեալ է և օրհնեալ եղիցի ի յԱստուծոյ և ի մարդկանէն»։ Ահա և № 659-ի ունեցած ՃԺԳ հոդվածի շարունակությունը. «Եթե ոք յանդգնեսցի լուծանել զսահման սրբոյ ժողովոյն, որ ի Նիկիայ ժողովեցան՝ առաջի բարեպաշտ թագաւորին Կոստանդիանոսի, նզովեալ լիցի»։ Սրան ձեռագրում, այնուհետև հաջորդում է Հին և Նոր Կտակարանի գրքերի ցանկը, որոնք թույլատրվում է կարդալ (էջ 94ա—95ա, տես վերևում)։ Այս ցանկը Լավոդիկեի կանոնախմբի հունարեն 60-րդ հոդվածն է, որը Կանոնագրքի մեջ միացված է ԾԵ հոդվածին (հա. Ա, էջ 241—242)։ Ինչպես երևում է Երկրորդ Նիկիական կանոնախմբի վերջին հոդվածը ստեղծվել է հետագայում, այս կանոնախմբի ձոխացման ժամանակներում։*

# ՎԱՉԱԳԱՆ ԱՂՎԱՆԻՑ ԱՐՔԱՅԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Վերնագիր, էջ 91: *Միայն № 3276 ձեռագրում են պահվել այս կանոնախմբի մի քանի՝ Բ, Գ, ԺԳ, ԺԴ հոդվածները։ Այստեղ վերնագիրը հետևյալ տեսքն ունի. «Սահմանադրութիւն Վաչագա[նա]յ Աղուանից արքայի» (էջ 180բ)։ Այս կանոնախումբը պահվել է նաև Մովսես Կաղանկատվացու «Պատմութիւն Աղուանից աշխարհի» աշխատության մեջ (էջ 97—103), ուր վերնագիրը այսպիսին է. «Սահմանադրութիւն կանոնական ի Վաչականայ Աղուանից արքայէ եղեալ ի ժողովն, որ յԱղուէնն եղև» (էջ 97)։ Ուսումնասիրողներից մի մասը՝ Կ. Շահնազարյան, Գ. Զարբհանալյան, Ղ. Ալիշան, Վ. Հացունի և ուրիշներ գտնում է, որ Աղվանից պատմության հեղինակ Մովսես Կաղանկատվացին VII դարի հեղինակ է, որի գործը շարունակվել է X դարում Մովսես Դասխուրանցու կողմից, մյուս մասը՝ Ք. Պատկանյան, Հ. Աճառյան, Հ. Մանանդյան, Ն. Ադոնց, Մ. Աբեղյան և ուրիշներ՝ X դարի։ Ավելի ուշ Ն. Ակինյանը ի մի բերելով բոլոր ուսումնասիրողների կարծիքները, մանրամասն քննելով մատենագրական առկա վկայությունները որոշ վերապահությամբ պաշտպանեց ուսումնասիրողների երկրորդ մասի կարծիքը, ցույց տալով, որ աշխատության հեղինակը Մովսես Դասխուրանցին է և վերջինիս աշխատությունը չէր կարող 1003 թ. առաջ հանդես գալ («Հանդէս Ամսօրեայ», 1953 թ., էջ 32։ Ակինյանի ամբողջ հոդվածը տե՛ս նույն տեղում, 1953 թ., էջ 1—32, 161—175, 321—349, 552—596, 1955 թ. 309—329)։ Մի կողմ թողնելով Ակինյանի վարկածի առանձին հակասությունները, օրինակ՝ Աղվանից պատմությունը եթե 1003 թ. առաջ չէր կարող հանդես գալ, ապա ինչպես է որ X դարի կեսերին Անանիա Մոկացին հիշում է այդ աշխատությունը և կարդացել այն («Արարատ», 1897, Հավելված, էջ 135—136). տվյալ դեպքում մեզ հետաքրքրում է այն հարցը, թե սույն կանոնախմբի՝ Կանոնագրքում եղած բնագիրը «Աղվանից պատմություն»-ից անկա՞խ է մտել Կանոնագրքում, թե այն վերցրել են վերջինիցս և մուծել Կանոնագրքում։ Սույն կանոնախումբը Կանոնագրքի Ա խմբի ձեռագրերում դրված է ԼԵ (35) համարի տակ (տե՛ս Կանոնագիրք Հայոց, հտ. Ա, էջ 4), իսկ Բ խմբի՝ ԼԸ (38) (տե՛ս նույն տեղում, էջ XXXIII)։ Երկու դեպքում էլ Հովհաննես Օձնեցու կանոնախմբից՝ Օձնեցու կազմած Կանոնագրքի վերջին կանոնախմբից հետո։ Նշանակում է՝ այն Կանոնագիրք է մուծվել Օձնեցուց՝ VIII դարից հետո։ Եթե սրա հետ մեկտեղ նկատի ունենանք, ինչպես ճիշտ նշում է Ակինյանը, որ Միքայել Աղվանից կաթողիկոսի 705 թ. ժողովում, երբ քննվում էր մերձավորության հարցը (հմմտ. նաև 768 թ. Պարտավի ժողովի ԺՁ հոդվածը) այս կանոնախմբի ԺԷ հոդվածը չի վկայակոչվել՝ նշանակում է VIII դարում «տակաւին հրապարակի վրայ մատչելի չէին այս կանոնները։ Ուստի անոնք գտնուած ըլլալու են Ը դարու երկրորդ կէսին կամ Թ դարուն որևէ վանքի մը խուլ անկիւնը» («Հանդէս Ամսօրեայ», 1953, էջ 563)։*

*Ավելին. ինչպես ցույց ենք տվել Ներածությունում (էջ LXIV—LXV) Երկրորդ Նիկիական կանոնախումբը Անանիա Մոկացու կաթողիկոսության ժամանակ (941—965թթ. ըստ Գալուստ Տեր-Մկրտչյանի, տե՛ս Արարատ, 1897, էջ 91ա) արդեն մուծված էր Կանոնագրքում, ուր Երկրորդ Նիկիական կանոնախմբին հաջորդում է սույն կանոնախումբը։ Այն հարցին, թե Անանիա Մոկացու ժամանակ վերջինս մուծվա՞ծ էր Կանոնագրքում, հաստատ պատասխան չենք կարող տալ։ Վերևում տեսանք, որ Անանիա Մոկացին ոչ միայն գիտի «Պատմութիւն Աղուանից աշխարհի» գիրքը, այլև կարդացել է։ Սակայն այդ փաստը հիմք չի տալիս պնդելու, թե այդ ժամանակ էլ այս կանոնախումբը նշված գրքից անցել է Կանոնագրքին։ Բոլոր դեպքերում այս անցումը չէր կարող X դարի 90-ական թվականներից հետո կատարվել (հմմտ. Ակինյանի կարծիքն այս մասին, Հանդէս Ամսօրեայ, 1953, էջ 560), որովհետև Կանոնագրքի X դարի վերջերի խմբագրության մեջ այն արդեն գտնվում էր և դրված էր 35 (ԼԵ)-րդ տեղում, հաջորդելով*

անմիջապես Երկրորդ Նիկիական կանոնախմբին։ Հնարավոր է, որ սույն կանոնախումբը Կանոնագիրք է մուծվել «Պատմութիւն Աղուանից աշխարհին» աշխատությունից և կամ վերջինիս աղբյուրից։ Թերևս հավանական է առաջին ենթադրությունը։

Իսկ թե ինչո՞ւ Հովհ. Օձնեցին սույն կանոնախումբը չի մուծել Կանոնագրքի իր հավաքման մեջ, կարելի է պատասխանել ենթադրաբար. այն հավանաբար ծանոթ չէր Հովհ. Օձնեցուն, որովհետև, ինչպես վերևում տեսանք, այս կանոնախումբը պարունակող գրքի մասին հաղորդում են միայն X դարից։

Առաջաբան, էջ 91—93: № 3276 ձեռագրում առաջաբանը չի պահվել։ Այստեղ նշված մի շարք անձնանունների և տեղանունների ուղղագրությունը շեղվում է Մովսես Կաղանկատվացու ունեցածից։ Որպեսզի ուսումնասիրողներին հնարավորություն տանք համեմատելու այդ երկու բնագրերում տվյալ անունների ունեցած շեղումները, նպատակահարմար գտանք Մովսես Կաղանկատվացու Պատմության սույն կանոնախմբի առաջաբանի ժողովի մասնակիցներին վերաբերող հատվածը այստեղ բերել. «Ես Վաչական՝ Աղուանից արքայ, և Շուփհաղիշայ արքեպիսկոպոս Պարտաւայ, Մանասէ Կապաղայ եպիսկոպոս, Յոնան Հաշուայ եպիսկոպոս, Անանիա և Սահակ և Ռստոյ քորեպիսկոպոսք, Յովսէփ Կաղանկատուց երէց, Մաթէ Պարտաւայ երէց, Թումայ Թագաւորի դրան երէց, Պօղոս Գեգաճայ երէց, Շմաւոն Յուսյ քորեպիսկոպոս, Մաթէ Դաբահոճոյ երէց, Աբիկազ Բեթայ երէց, Ուրբաթ Այրմանուշայ երէց, Յովէլ և Պարզ և Միքէ և Յակոբ երիցունք, և ազատ մարդիկ և նահապետք Արցախայ, և Բակուր Կաղանկատուց նահապետ, և այլք բազումք, որք միաբան առաջի իմ եկին ի հանդէս ի հովոցի տեղւոջն յԱղուէնն» (էջ 98)։

Կանոններից առաջ kmps ձեռագրերում պահվել է դրանց ցանկը, որ բերում ենք համաձայն k ձեռագրի.

«Ա. Վասն քահանայից որ ի շէնս են երկիցս ի տարին երկիր պագցեն եպիսկոպոսին։

Բ. Հաս քահանայից և սարկաւագաց։

Գ. Նուէրք Թագաւորի և ազատ ազգի իւր ձեռօք տայցէ։

Դ. Ժողովրդոց նուէրք առ երիցունս։

Ե. Ոչխարաց և ձիոց նուէրք ի ժողովրդէնէ առ քահանայս։

Զ. Վասն ազատի և շինականի մեռելոց յիշատակ մի՛ խափանեսցեն ի տարին։

Է. Վասն վանականաց եթէ ազալանս գացի և յայտ լիցի։

Ը. Վասն վանաց երիցանց ըստ պիտոյից տալ զժողովուրդն։

Թ. Վասն քրիստոնէի որ ի մարտս արիւն հեղու։

Ժ. Վասն քահանայի որ հովէ զգեօղս կամ զագարակս։

ԺԱ. Վասն որ զազգական կին առասցէ։

ԺԲ. Վասն կնաթողի։

ԺԳ. Վասն որ ի վերայ մեռելոյ կոծ դնեն։

ԺԴ. Վասն որ զմեռելոտի ուտէ կամ ի Քառասնորդս միս ուտէ։

ԺԵ. Վասն որ ի չորեքշաբթի կամ ուրբաթի միս ուտէ։

ԺԶ. Վասն որ զքահանայ կամ զսարկաւագ բամբասէ։ .

ԺԷ. Վասն որ ընկերք և աշակերտք մեղս դնեն ի վերայ երիցու։

ԺԸ. Ի շէնս որ բազում են եկեղեցիք զպտուղ և զհաս աւագ եկեղեցին տացեն։

ԺԹ. Վասն ազատաց տասանորդաց։

Ի. Ջերիցունս առանց հրամանաց եպիսկոպոսին մի՛ հանցեն եկեղեցւոյն։

ԻԱ. Վասն ազատաց առանց հրամանի եպիսկոպոսին ․եղան մի՛ կանգնեսցէ։

ԻԲ. Վասն պայմանի եպիսկոպոսաց քահանայից և ազատաց» (էջ 206աբ. հմմտ. m, էջ 209աբ, p, էջ 227աբ, s, էջ 259բ—260ա)։

Դ հոդվածը սույն ձեռագրերում բաժանված է երկու մասի։ Այս հոդվածի երկրորդ մասը՝ սկսած «Եւ այր ոչխար է՝ ...»-ից մինչև վերջ գրված է իբրև առանձին հոդված՝ Ե համարի տակ։ Այդ պատճառով այս չորս ձեռագրերի ցանկում առաջ է եկել նոր վերնագիր։ Ցանկի Դ վերնագիրը վերաբերում է Դ հոդվածի առաջին մասին, իսկ Ե վերնագիրը՝ Դ հոդվածի վերջին մասին, որը նշված չորս ձեռագրերում գրված է Ե համարի տակ։

O ձեռագրերում ցանկն այսպիսին է.

«Ա. Վասն երիցանց որ ի շէնս լիցին ի տարւոջն երկիցս անգամ ընծայ տայցեն եպիսկոպոսին։

Բ. Վասն քահանայի և սարկաւագի. յորժամ ձեռ[ն]ադրեն՝ դրամ տայցեն եպիսկոպոսին։

Գ. Վասն ազատ մարդոյ և թագաւոր[ի] որ ինչ հոգոյն մասն է տայցէ ի վանսն։

Դ. Թէ ազատ և թէ շինական ի տարուոջն Ա անգամ պատարագ արասցեն։

Ե. Վանաց Էրէց կամ վանական գայթանք առնեն։

Զ. Վասն վանից երիցանց որ բազում են և ժողովուրդքն սակաւ և այլ վանաց ժողովուրդք բազում են և երիցունք սակաւ, թէ զինչ առնեն։

Է. Վասն քրիստոնէի որ մարդ սպանանէ։

Ը. Վասն երիցու որ Բ չէն պահէ։

Թ. Վասն ազգի որ կին արասցէ։

Ժ. Վասն որ զկին թողու և առանց պոռնկի կին առնէ։

ԺԱ. Վասն որք զկոծ դնիցեն։

ԺԲ. Որ զմեռելոտի ուտէ և ի Քառասներորդսն միս ուտէ։

ԺԳ. Վասն չորեքշաբաթի և ուրբաթի որ միս ուտէ։

ԺԴ. Վասն աշխարհականի որ քահանայի և սարկաւագի վերայ բամբասանս դիցէ։

ԺԵ. Վասն քահանայի որ քահանայի վերայ բամբասանս դիցէ։

ԺԶ. Վասն եպիսկոպոսաց և Երիցանց ազատ արանց առաջի արքայի եղեն։

ԺԷ. Եւ որ տասանորդ տան ազատ մարդիք։

ԺԸ. Վասն ազատ արանց որչափ իւրեանց դաստակերտքն են։

ԺԹ. Վասն ազատ մարդո որ իւր եկեղեցւոյ սեղան կանգնէ։

Ի. Վասն պայման[ա]ց որ արարին եպիսկոպոսունք և երիցունք և ազատ մարդիկ առաջի արքային» (էջ 345բ—346ա)։

Հոդ. Ա, էջ 93: № 3276 ձեռագրում չի պահվել այս հոդվածը։

Հոդ. Բ, էջ 93: № 3276 ձեռագրում միակ տարբերությունը այն է, որ «Դ դրամ»-ի փոխարեն ունի «Գ դրամ» (էջ 180բ)։

Հոդ. Գ, էջ 93: № 3276 ձեռագրում էական տարբերությունն այն է, որ «կարողութիւնն իւր»-ի փոխարեն ունի «ի կարողութիւնն է իւր» (էջ 180բ)։

Հոդ. Դ, էջ 94: № 3276 ձեռագրում առկա են հետևյալ շեղումները. «Գ գրիւ» փոխանակ «Դ գրիւ», «ոգւոյ»՝ «ոգեաց», «յաւանակ»՝ «յովանակ», չունի (ոչխար) «է» օժանդակ բայը (էջ 180բ—181ա)։ Այս հոդվածում մեզ հետաքրքրում է հեղուկի չափ «փաս»-ը։ Նոր հայկազյան բառարանի հեղինակներն այն նույնացնում են փարչի կամ թասի հետ (հտ. Բ, էջ 935)։ Փասը որպես փարչ կամ քասա է բացատրում Աճառյանը (Հայերէն արմատական բառարան, հտ. Զ, էջ 1404—1405։ Սասանյան Շապուհ Ա-ի Նաքշ-ի-Ռուստեմի արձանագրության մեջ գինու համար երիցս գործածված է չափի մի միաւոր, կոչված ἡ πασάτη այսպես, οἴνου πασατας τέσσερας (էջ 16), οἴνου πασσους τέσσαρας (էջ 16) և οἴνου πασασους τέσσαρες (էջ 18). տե՛ս Recherches sur les Res Gestae divi Saporis, par Er. Honigmann et An. Maricq, Bruxelles, 1953)։ **Մեզ հետաքրքրող բառն ծագման իմաստով արդյո՞ք չի կապվում Նաքշ-ի-Ռուստեմի արձանագրության մեջ գործածված վերոհիշյալ բառի հետ։**

Հոդ. Ե—ԺԲ, էջ 94—96: Այս ութ հոդվածները չեն պահվել № 3276 ձեռագրում։

Հոդ. ԺԳ, էջ 96: № 3276-ում առկա են այսպիսի շեղումներ. «մեռելոտի», չունի «ի» (Քառասներորդսն) և «հանդերձ ժողովրդեամբն» (էջ 181ա)։

Հոդ. ԺԴ, էջ 96: Բնագրի «կալցի» բառի փոխարեն № 3276 ձեռագրում պահվել է «կալցէ» (էջ 181ա)։

Հոդ. ԺԵ—ԻԱ, էջ 97—99: Այս յոթ հոդվածները № 3276 ձեռագրում չեն պահվել։

Վերջաբան, էջ 99—100: № 3276 ձեռագրում ևս չի պահվել վերջաբանը։ Համահավաք բնագրի կազմման համար օգտագործված ձեռագրերից ոչ մեկը, ինչպես և Մովսես Կաղանկատվացու Պատմության համապատասխան բնագիրը չեն պահել վերջում ուղղանկյուն փակագծերում առնված «հաստատութեան» բառը։ Միտքն հասկանալի դարձնելու համար Մովսես Կաղանկատվացու Պատմության հրատարակիչ Մ. Էմինը նշված բառը ավելացրել է կլոր փակագծերում։ Այդպես վարվեցինք նաև մենք՝ այն վերցնելով ուղղանկյուն փակագծերում, ի նշան մեր կողմից բնագրին կատարված ավելացման։

# ԲԱՐՍԵՂ ԿԵՍԱՐԱՑՈՒՆ ՎԵՐԱԳՐՎԱԾ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

**Վերնագիր, էջ 101։** *Այս կանոնախումբը պահվել է վերևում բազմիցս նշված ձեռագրերից մի քանիսում՝ №№ 657, 659, 8459։ Սրանց պետք է ավելացնել նաև №№ 835, 837 ձեռագրերը։*

*№ 657 ձեռագրում վերնագիրն ընդարձակ է. «Կանովնք սրբոյն Բարսեղի սահմանադրութիւնք նմանապէս և բիւրապատիկ ախտից և յանցանաց, գլուխք ՄՀ, զոր սակաւ իմն ի յայժմն գիծ տառիս դրոշմաք» (էջ 115բ)։ Սրա վերջին հատվածը ցույց է տալիս, որ սույն կանոնախմբի հոդվածները, որոնք Կանոնագրքի XI դարի խմբագրության մեջ բաղկացած են 272 հոդվածներից, այստեղ լրիվ չեն բերված. բերված են ընտրությամբ 111 հոդվածներ։ Այսպես է բերված նաև №№ 659, 835, 837, 8459 ձեռագրերում, սակայն սրանցից յուրաքանչյուրում հոդվածների տարբեր քանակությամբ։ № 659 ձեռագրի 140ա էջում թեև գրված է «Ցանկ Բարսղի», բայց սա ոչ թե տվյալ կանոնախմբի վերնագիրն է, այլ վերջինիս հոդվածների բովանդակության ցանկի։*

*№№ 657, 659 ձեռագրերը մինչև բուն հոդվածներն ունեն վերջիններիս բովանդակությունը արտահայտող ցանկ։ № 659 ձեռագրում ցանկը կազմված է այբբենական կարգով, իսկ № 657-ում՝ ըստ հոդվածների հաջորդականության։ Այսպիսի ցանկ, բայց տարբեր, գտնում ենք Կանոնագրքի գիտաքննական բնագրի կազմման համար օգտագործված* kmps *ձեռագրերում։ Այստեղ կբերենք այդ ցանկերը։ Սկսենք № 659 ձեռագրից։ Այստեղ վերնագրերի ձախ կողմում նշված են հոդվածների համարները։ Այդ համարները համեմատեցինք ձեռագրի բուն հոդվածների համարների հետ և նկատեցինք 2—4 համարների շեղում։ Այդ շեղումները ցույց տալու նպատակով ցանկի վերնագրերի աջ կողմում կլոր փակագծերում նշում ենք № 659 ձեռագրի հոդվածների ստույգ համարները։*

«**Թ, ՃԽԵ** *Արուագիտաց։ (Թ, ՃԽԲ)*
**ԺԱ** *Ազգականաց։ (ԺԱ)*
**ԻԵ** *Ամբարտաւանից։ (ԻԴ)*
**ԻԷ** *Անհնազանդելոց ծնաւղաց։ (ԻՁ)*
**ԼԸ** *Անարժան հաղորդողաց։ (ԼԷ)*
**ԽՁ** *Արուագիտաց ընդ կնոջ։ (ԽԵ)*
**ԾԱ** *Ամուսնացելոց ընդ անաւրինի։ (Ծ)*
**ԾԲ** *Առևանկաց։ (ԾԱ)*
**ԿԹ** *Այր որ թողու զկին իւր վասն Աստուծոյ։ (ԿԸ)*
**ՀԴ** *Անարգողաց զքահանայս։ (ՀԲ)*
**ՁԱ** *Անժամ ուտելոյ կիրակէի։ (ՀԸ)*
**ՃԵ** *Արուեստաւորաց գողոց։ (ՃԲ)*
**ՃԽԳ** *Արգելողաց զպտուղս քահանայից։ (ՃԼԹ)*
**ՃԾԴ** *Ակամայ ըմբռնելոյ յանաւրինաց։ (ՃԾ)*
**ՃԾԵ** *Անհաւատ կնոջ։ (ՃԾԱ)*
**ՃՀԳ** *Ագարաց։ (ՃԿԹ)*
**ՄԱ** *Արուեստաւորի վաճառելոյ։ (ՃՂԷ?)*
**ՄԺԱ** *Արատաւորի։ (ՄԷ)*
**ՄԺԴ** *Անզաւակաց։ (ՄԺ)*
**ՄԽՁ** *Ամուսնացելոց այսահարաց։ (ՄԽԳ)*
**ՄԽԳ** *Այսահարի։ (ՄԽ)*

ՄԽԷ Այսահարութիւն զոր քաջ անուանեն։ (ՄԽԴ)
Ա Բռնադատողաց։ (Ա)
ԼԲ Բորոտաց քահանայից։ (ԼԱ)
ԾԳ Բռնադատողաց։ (ԾԲ)
ՃՀԲ Բեմ ելանելոյ կանանց։ (ՃԿԸ)
ՃՁԱ, ՃՁԲ Բանադրողաց։ (ՃՀԷ, ՃՀԸ)
ՄԳ Բամբասողաց։ (ՃՂԹ)
ՄԻԱ Բռնաբար պսակողի։ (ՄԺԷ)
ՀԹ Գերեզման բացողաց։ (ՀԶ)
ՁՁ Գազանաբեկի։ (ՁԳ)
ՃՀ Գաղտ պսակի։ (ՃԿԶ)
ՃԺԷ Գիտողաց առեւանկաց։
ԾԷ Դստերաց և ուստերաց քահանայից։ (ԾԶ)
Ղ Դիւթից։ (ՁԷ)
ՃԽԴ Դատարկաբանից։ (ՃԽ)
ՃՀԵ Դպրաց։ (ՃՀԱ)
ՃՁԹ Դարձողաց ի մեղս։ (ՃՁԵ)
ԺԶ Եպիսկոպոսաց երկրորդ ձեռնադրելոյ։ (ԺԶ)
ԺԸ, ՃԼԴ, ՃԼԶ Եկեղեցւոյ։ (ԺԹ, ՃԼԲ, ՃԼԳ)
ՁԴ Եկեղեցւոյ իրաց։ (ՁԱ)
ՃԺԵ Եկեղեցւոյ ընչից գողանալոյ։ (ՃԺԳ)։
ՃԼ Եղբաւր ընդ քեռ ննջելոյ։ (ՃԻԷ)
ՃԼԲ Երկուց քուերց առնլոյ։ (ՃԻԸ)
ՃԼԷ Եկեղեցւոյ։
ՃՁԳ Երեք կնոջ կամ չորից։ (ՃԽԹ)
ՃՁ Երդման։ (ՃՀԶ)
ՄԻԸ Երախայի մեռելոյ։ (ՄԻԴ)
ՄԻԹ Երախայի կենդանւոյ։ (ՄԻԵ)
ՄԼԲ, ՄԼԳ Երախայի մկրտելոյ։ (ՄԻԸ, ՄԻԹ)
ՄԼԷ Երկրորդ ամուսնացելոց։ (ՄԼԳ)
ՄԼԸ Երրորդից և չորրորդից։ (ՄԼԴ)
ԺԲ Քրիստոս ուրացողաց։ (ԺԲ)
ԿԱ Զաւշաքաղ քահանայից։ (Կ)
ՁԹ Զդիս կողոպտողաց։ (ՁԶ)
ՃԻԸ Զարդարելոց կանանց։ (ՃԻԵ)
ՃՁԸ Զգուշութեան հաւտի։ (ՃՁԴ)
ՄԺԸ Զայրս ատեցողաց կանանց։ (ՄԺԴ)
ՄԻԶ Զատկի Աւետարանի։ (ՄԻԲ)
ՄԽԸ Զատկոյ աւուր։ (ՄԽԵ)
ՃԿԲ Ընկերի մեռանելոյ։
ՃՀԴ Ընտանեաց քահանայից ի բեմ ելանելոյ։ (ՃՀ)
ՂԹ Թէ ոք պոռնկի և մեռանի։ (ՂԶ)
Ճ Թէ ի ձեռն առաջնորդաց մեռանի։ (ՂԷ)
ՃԻԵ Թատերաց։ (ՃԻԲ)
ՃՁԳ Ժողովոց։ (ՃՀԹ)
ՂԶ Իգացելոց։ (ՂԳ)
ՄԻԲ Իշխանի անարգողաց զքահանայս։ (ՄԺԸ)
ԻԸ Լուծելոց քահանայից։ (ԻԷ)
ՃՀԱ Լուծողաց զպատուիրանս։ (ՃԿԷ)
ԻԳ Խլից և համարից քահանայից։ (ԻԳ)
ՃՂԳ Խղճիւ զենման։ (ՃՁԹ)
ՃՂԹ Խոստացեալ անասնոյ։ (ՃՂԵ)
ՄԴ, ՄԵ Խոստովանողի կրաւնաւորի։ (Մ, ՄԱ)
ՄԶ Խոստովանութեան ամենայն մարդոյ։ (ՄԲ)
ՄԺԲ Խաւսեալ կնոջ։ (ՄԸ)

ՀԱ Մերձաւորաց զուգելոց։ (Հ)

ՂԳ Մեռելն թէ պատուիրէ լալ։ (Ղ)

ՃԺԳ Մկրտելոց։ (ՃԺԱ)

ՃԻԲ Մանկանց անհաւատից մնուցողաց։ (ՃԺԹ)

ՃԼԹ Մկրտելոց անհաւատից։ (ՃԼԵ)

ՃԾԱ Մեքենայից սատանայի։ (ՃԽԷ)

ՃԿ Մեռելոց ի վաստակս իւրեանց։ (ՃԾԸ)

ՃՀԹ Մտողաց ի տունն պոռնկաց։ (ՃՀԵ?)

ՃՂԲ Մեռելոտոյ։ (ՃՁԸ)

ՃՂԶ Մատաղ ի որսոյ։ (ՃՂԲ)

ՁԷ Յափըշտակեալ անասնոյ։ (ՁԴ)

ՂԱ, ՃԺԹ Յղի կանանց։ (ՁԸ, ՃԺԷ)

ՃԿԳ Յուսալոյ ի յինչս։ (ՃԿ)

ՄԻԳ Յայտնելոյ զշարիս ուրուք։ (ՄԺԹ)

ՄԽԲ Յիշատակի մեռելոց։ (ՄԼԹ)

ԽԴ Ներքինեաց։ (ԽԳ)

ԽԵ Ննջողաց ընդ զոքանչի։ (ԽԴ)

ԼԱ Շաբաթոյ և կիրակէի պահոց։ (Լ)

ԼԶ Շնացողաց ընդ ուրուկս։ (ԼԵ)

Է Ուրացողաց երդման։ (Է)

Ժ Որ ընդ եղբաւր պոռնըկի։ (Ժ)

ԻԹ Ուրուկաց։ (ԻԸ)

Լ Ուխտաւորաց քահանայից։ (ԻԹ?)

ԼԹ Որք զանձինս նզովեցին (զուցե նուիրեցին)։ (ԼԸ)

ՀԲ Որ զամուսնութիւն անարգեն։ (ՀԱ)

ՀԳ Որք վասն յաճախ պղծելոյ ոչ ամուսնանան։

ՂԸ Որոգայթից։ (ՂԵ)

ՃԲ Որդիք որ ոչ պատուեն զծնաւղս։ (ՂԹ)

ՃԻԴ Որ ընդ անհաւատից ճաշակէ։ (ՃԻԱ)

ՃԽ Որ խառնեն զսուրբ արիւնն։ (ՃԼԶ)

ՃԽԸ Որ պոռնըկեցաւ և կին արար։ (ՃԽԴ)

ՃՀԸ, ՃՀԷ Ուխտաւորի աւրէնս մի՛ տալ։

ՃՂԵ Որսոյ։ (ՃՂ)

ՄԸ Որդոց և թոռացն։ (ՄԳ)

ՃԶ Զամուսնանալ ի Քառասներորդսն։ (ՃԳ)

ՄԷ Զամուսնանալ Կ ամեայ։ (ՄԲ)

Բ Պատերազմողաց։ (Բ)

ԺԳ Պոռնըկողաց ի տան Աստուծոյ։ (ԺԳ)

ԼԷ Պոռնըկողաց ճարտարաց։ (ԼԶ)

Զ Պենտակոստէի և կիրակէի պահողաց։ (ՀԷ)

ՁԳ Պատարագողաց անխտիր։ (Ձ)

ՁԵ Պեղծ կերողաց։ (ՁԲ)

ՂԴ Պոռնըկողաց։ (ՂԱ)

ՂԷ Պատերազմողաց։ (ՂԴ)

ՃԻ Պոռնըկաց։ (ՃԺԸ)

ՃԽԱ Պոռնկողաց ընդ կնոջ իշխանի։ (ՃԼԷ)

ՃԽԶ Պոռնըկողաց ընդ [ու]ստեր։ (ՃԽԲ)

ՃԽԷ Պոռնըկողի ընդ երկուց քերց։ (ՃԽԳ)

ՄԼԹ Պոռնըկաց։ (ՄԼԵ)

ՄԽԱ [Պ]ատանաց մեռելոց։ (ՄԼԷ)

ՃԾ Պոռնըկելոց բազում անգամ։ (ՃԽԶ)

ՃԾԶ Պոռնիկ քահանայի։ (ՃԾԲ)

ՃԾԷ Պոռնկողաց խեղդեցելոյ։ (ՃԾԳ)

ՃԾԸ Պոռնիկ կնոջ որ ի ծնունդս վտանգի։ (ՃԾԴ)

ՃՁԷ Պտղոց անաւրինաց։ (ՃՁԳ)

**ՃՂԷ** Պատարագաց։ (ՃՂԳ?)
**ՄԻ** Պսակի տղայոց։ (ՄԺՁ)
**ՄԾ** Սարկաւագի այսահարութեան։ (ՄԽՁ)
**ԺԴ** Սարկաւագաց։ (ԺԴ)
**ԼԵ** Սերմանցողաց։ (ԼԴ)
**ՃԺ, ՃԺԱ** Սարկաւագաց։ (ՃԷ, ՃԸ)
**ՃԽԹ** Սրբութիւն խոստացելոյ անձին։ (ՃԽԵ)
**ՃԿԱ** Սրոյ։ (ՃԾԷ)
**ՄԲ** Սուտ երդմանց։ (ՃՂԸ)
**ՃԱ** Վախճանելոյ ի ձեռն ծնաւղաց։ (ՂԸ)
**ՃԴ** Վարդապետ որ զաշակերտս ակնառու ուսուցանէ։ (ՃԱ)
**ՃԺԸ** Տեռատեսից։ (ՃԺՁ)
**ՃԼԱ** Տղայոց պղծելոց։ (ՃԻԷ)
**ՃՂԸ** Տարաժամ մահու։
**Մ** Տնականի։ (ՃՂՋ)
**ՄԽԴ** Տղայոց այսահարի։ (ՄԽԱ)
**ԺԵ, ԺԹ** Քահանայից։ (ԺԴ, ԺԵ?)
**ՃԷ** Քահանայից կուրացելոց։ (ՃԸ)
**Ի, ԻԱ** Քահանայից։ (Ի, ԻԱ)
**ԻԲ** Քահանայութիւն որ ոչ է Աստուծոյ։ (ԻԲ)
**ԾԵ, ԾՁ** Քահանայից կանանց պոռնըկելոց։ (ԾԴ, ԾԵ)
**ԾԸ** Քահանային կին որ փոքրէ զգլուխս։ (ԾԷ)
**Կ** Քահանայ որ զսպաս եկեղեցւոյ վաճառէ։ (ԾԹ)
**ԿԲ** Քահանայ որ զխոստովանութիւնն յայտնէ։ (ԿԱ)
**ԿԳ** Քահանայ որ զեղխի գինով։ (ԿԲ)
**ԿԴ** Քահանայ որ ոչ պատարագէ։ (ԿԳ)
**ԿԵ** Քահանայ որ զդատաստանն թիւրէ։ (ԿԴ)
**ԿՁ** Քահանայ որ երդումն տայ մարդոյ։ (ԿԵ)
**ԿԷ** Քահանայ որ առանց խոստովանութեան աւրէնս տայ։ (ԿՁ)
**ՀԷ** Քահանայ որ յանասուն պղծի։ (ՀԵ)
**ՁԲ** Քառասնորդաց լուծելոց։ (ՀԹ)
**ՃԸ** Քահանայ որ բանադրէ։ (ՃԵ)
**ՃԹ** Քահանայից բամբասողաց։ (ՃՁ)
**ՃԺԲ** Քահանայից ուրուկաց։ (ՃԹ)
**ՃԺԳ** Քահանայ ձէթ արկանելոյ չերախայս։ (ՃԺ)
**ՃԺՁ** Քահանայից տեսլեանց։ (ՃԺԴ)
**ՃԼԸ** Քահանայից արիւնահեղաց։ (ՃԼԴ)
**ՃԾԲ** Քահանայից պոռնկաց։ (ՃԽԸ)
**ՃԿԹ, ՄԼԴ** Քահանայ ի ճանապարհի։ (ՃԿԵ, ՄԼ)
**ՄՀՁ** Քահանայ ի հրապարակ չճաշակել։ (ՃՀԲ)
**ՃՋԴ, ՃՋԵ** Քահանայի ապաշխարելոյ։ (ՃՋ, ՃՋԱ)
**ՄԻԷ** Քահանայի ժողովրդով և խաչով։ (ՄԻԳ)
**ՄԼՁ** Քահանայ որ առանց քննելոյ աւրէնս տայ (ՄԼԲ)
**ՄԽ** Քահանայ որ խ ունի։ (ՄԼԷ)
**ՄԽԹ** Քահանայից այսահարութեան» (ՄԽՁ) (էջ 140ա—144ա)։

Այսպիսով, 231 վերնագրերի դիմաց գրված են 249 հոդվածների համարներ, թեև վերջին հոդվածը կրում է ՄԿԷ (267) համարակալումը և հիշատակարանում էլ նշված է միևնույն թիվը. «Կատարեցաւ կանոն սրբոյն Բարսղի հայրապետին Կեսարոյ, տունք ՄԿԷ...» (էջ 184բ)։ Ցանկում այբբենական կարգը խախտված է մեկ անգամ, «Ք»-ով սկսվող մի հոդվածը՝ «Քրիստոս ուրացողաց» վերնագրով դրված է «Ե» և «Ձ» տառերի միջև։ Ընդհանուր առմամբ ցանկի վերնագրերը ճիշտ են արտահայտում հոդվածների բովանդակությունը, բայց առանձին մի քանի դեպքերում վերնագրերի դիմաց, աջ մասում, համարակալումներ չեն նշված կամ նշված համարակալումների մոտ դրված է հարցական, որ նշանակում է թե ցանկի վերնագրի և նշված հոդվածի բովանդակության միջև շեղում կա։ Ցանկի վերնագրերում առկա են կրկնություններ, օրինակ, «Պ» տառի տակ երկու անգամ գրված է «Պատերազմողաց» վերնագիրը Բ և ՂԷ (ՂԴ)

*համարների նշումով. այսպես երկու անգամ են նշված «Եկեղեցւոյ», «Սարկաւագաց», «Քահանայից» վերնագրերը։ Վերջիններիս դիմաց թեև նշված են տարբեր հոդվածների համարներ, բայց երբեմն հոդվածներն էլ են կրկնված։ Կանոնագրքի ՄԺԶ (№ 659-ում՝ ՄԺԳ) հոդվածը ցանկում չի արտահայտված, այսպես է № 659-ի ՄԼԶ հոդվածը, որը չի պահվել Կանոնագրքի բնագրում։ Իսկ Կանոնագրքի ՀԳ հոդվածը թեև № 659-ում չի պահվել, բայց այն հիշվում է ցանկում (տես «Ո»-ի տակ)։*

*Սույն կանոնախմբի № 659 ձեռագրի տարբերակի և Կանոնագրքի բնագրի համապատասխան հոդվածների համեմատությունը երևան հանեց այլ կարգի շեղումներ։ № 659 ձեռագրում չեն պահվել Կանոնագրքի սույն բնագրի ԺԴ, ՀԳ, ՀԸ, ՃՂԳ, ՃՋԸ, ՄԻ հոդվածները (ԺԴ, ՀԳ, ՀԸ հոդվածները չեն պահվել նաև № 657 ձեռագրում, հիշենք, որ այստեղ բերված են հոդվածների կեսից պակասը, տե՛ս ներքևում)։ Մի քանի դեպքերում երկու հոդվածները միացված են և տրված՝ մեկ հոդվածով. օրինակ՝ ԻԲ և ԻԳ հոդվածները միացված և դրված են ԻԲ համարի տակ, ՃԼ և ՃԼԱ-ն՝ ՃԻԷ, ՃԿԸ և ՃԿԹ-ն՝ ՃԿԶ, ՄԻԴ և ՄԻԵ-ն՝ ՄԻ, ՄԺԵ և ՄԾԶ-ն՝ ՄԾԱ։ Պատահում է և այնպես, որ մի հոդվածը բաժանված է երկու մասի և դրված որպես առանձին հոդվածներ, առանձին համարներով, օրինակ՝ ԺԳ հոդվածը բաժանված է երկու մասի և դրված ԺԳ ու ԺԴ համարների ներքո, ՃԾԲ-ն՝ ՃԽԸ և ՃԽԹ, ՄՋ-ն՝ ՄԲ և ՄԳ։ Այս շեղումներն էլ արտահայտված են ցանկում։*

*Հետաքրքիր է մի այլ երևույթ։ Ցանկի վերնագրերի ձախ կողմում նշված հոդվածների համարները որպես կանոն համապատասխանում են կամ մեկ և մասամբ երկու համարի շեղումով համընկնում են ոչ թե № 659 ձեռագրի հոդվածներին, այլ սույն կանոնախմբի Կանոնագրքի բնագրի համապատասխան հոդվածներին։ Այս բանը մեզ ենթադրել է տալիս, որ ցանկը կազմված է համապատասխան Կանոնագրքի և ոչ թե միայն № 659 ձեռագրի։*

*№ 657 ձեռագրում ցանկը հետևյալ կառուցվածքն ունի։*

*«Ա. Վասն որ զէգ ապականէ։*
*Բ. Վասն պատերազմի արիւն հեղելոյ։*
*Գ. Վասն հարկանելոյ զընկերս։*
*Դ. Վասն կնաթողաց անզաւակի։*
*Ե. Վասն աղախնոյ ի տե[ա]ռնէ պոռնկեալ։*
*Զ. Վասն կուսի պոռնկելոյ։*
*Է. Վասն [որ] ուրանայ և երդնու։*
*Ը. Վասն կախարդաց ի յապաշխարութիւն դառնալն։*
*Թ. Վասն զառականս ընդ արուի։*
*Ժ. Վասն պոռնկելոյ ընդ եղբօրն։*
*ԺԱ. Վասն որ զազգական ապականէ։*
*ԺԲ. Վասն ուրանալոյ զՔրիստոս։*
*ԺԳ. Վասն պոռնկելոյ ի տան Աստուծոյ։*
*ԺԴ. Վասն քահանայի և սարկաւագի պոռնկեալ ի նոյն։*
*ԺԵ. Վասն քահանայի և սարկաւագի ի շնութեան և ի գողութեան։*
*ԺԶ. Վասն եպիսկոպոսի և երիցու երկրորդ ձեռնադրութեան։*
*ԺԷ. Վասն եպիսկոպոսի և երիցու պահք լուծանել։*
*ԺԸ. Վասն կարգաւոր[ի] որ կուրանայ։*
*ԺԹ. Վասն եկեղեցի սրբել յետ Խ աւուր։*
*Ի. Վասն քահանայի որ աշխարհական գործով [դրաղի]։*
*ԻԱ. Վասն քահանայի որ արտաքս եկեղեցւոյ է։*
*ԻԲ. Վասն քահանայի [որ] յԱստուծոյ և ոչ ի սատանայէ։*
*ԻԳ. Վասն համրից (բն. համերց) և խլից։*
*ԻԴ. Վասն անբարտաւանաց և փառասիրաց։*
*ԻԵ. Վասն անհնազանդ ծառայից։*
*ԻԶ. Վասն անհնազանդ որդւոց։*
*ԻԷ. Վասն քահանայի որ լուցեալ է։*
*ԻԸ. Վասն ուրկունից թէ այր թէ կին։*
*ԻԹ. Վասն աբեղայից հրաժարելոյ աշխարհէ։*
*Լ. Վասն շաբաթ և կիրակի և Պենտեկոստէն։*
*ԼԱ. Վասն կարգաւորաց բորոտիլ։*

ԼԲ. Վասն մոնոզոնաց կին առնել։

ԼԳ. Վասն կողոպտողաց զդիս։

ԼԴ. Վասն որ սերմանցութիւն լինի։

ԼԵ. Վասն շնալոյ ընդ ուրուկս։

ԼԶ. Վասն ճարտար պոռնկութեանն։

ԼԷ. Վասն անարժան յօրէնս մատչիլ։

ԼԸ. Վասն որ նուիրին Աստուծոյ և շնանան։

ԼԹ. Վասն կնոջ [որ] առանց ընկերի ի ճանապարհ [երթայ]։

Խ. Վասն կնոջ ի յանասնէ պղծիլ։

ԽԱ. Վասն որ ծածկէ զչարիս առն։

ԽԲ. Վասն որ ծնողք (բն. ծնողք որ) ծածկեն զչարիս որդոյն։

ԽԳ. Վասն ներքինին կին առնէ կեղծաւոր։

ԽԴ. Վասն ննջելոյ ընդ զոքանչի։

ԽԵ. Վասն որք ընդ կնոջ իւրում ննջէ արուագիտութեամբ։

ԽԶ. Վասն շնալոյ ընդ անօրինի։

ԽԷ. Վասն կնոջ ընդ եղբօր առն շնալոյ։

ԽԸ. Վասն որ ընդ խորթն շնայ։

ԽԹ. Վասն կուսի շնալոյ ի տան։

Ծ. Վասն ամուսնանալոյ ընդ անօրինի։

ԾԱ. Վասն անգեառ (իմա՛ առեանգ) արասցէ։

ԾԲ. Վասն կնոջ [որ] առանց կամաց օրինաց։

ԾԳ. Վասն կնոջ շնալոյ ընդ ուխտականի։

ԾԴ. Վասն [որ] քահանայանալոյ յօժարի։

ԾԵ. Վասն կնոջ քահանայի պոռնկելոյ։

ԾԶ. Վասն քահանայի ուստր կամ դուստր պոռնկելոյ։

ԾԷ. Վասն կնոջ քահանայի որ փոքրէ զհերս։

ԾԸ. Վասն քահանայի որ կաշառ առնու։

ԾԹ. Վասն վաճառելոյ զսպաս խորհրդոյ։

Կ. Վասն քահանայի զօշա[քա]ղութեամբ։

ԿԱ. Վասն խոստովանութեան յայտնելոյ։

ԿԲ. Վասն քահանայի որ ի գինոյ զեղխի։

ԿԳ. Վասն ոչ մատչելոյ ի սուրբ խորհուրդն։

ԿԴ. Վասն դատաստանի թիւրելոյ։

ԿԵ. Վասն որ քահանայ երդումն տայ։

ԿԶ. Վասն [որ] առանց խոստովանելոյ զետին թոշակն [տայ]։

ԿԷ. Վասն ծննդականի։

ԿԸ. Վասն կնաթողաց Աստուծոյ համար։

ԿԹ. Վասն մսահատի պղծութեան։

Հ. Վասն կին առնելոյ ի մերձաւորաց։

ՀԱ. Վասն որ զամուսնութիւն անարգէ։

ՀԲ. Վասն որ արհամարհէ զքահանայս։

ՀԳ. Վասն [որ] զօր կիրակէի ոչ պատուէ։

ՀԴ. Վասն զհեթանոսաց բարս ունելոյ։

ՀԵ. Վասն քահանայի որ պղծի։

ՀԶ. Վասն որ ըստ փափագի զգերեզմանս բանայ։

ՀԷ.Վասն որ զկ[ի]րակի պահօք պահէ։

ՀԸ. Վասն անժուժիչ կատարեալ հասակաւ։

ՀԹ. Վասն [որ] ի սուրբ Քառասունսն յազեսցի։

Ձ. Վասն [որ] անխտիր մատուցէ զպատարագ։

ՁԱ. Վասն որ ուտէ զեկեղեցւոյ իրս։

ՁԲ. Վասն յազելոյ կերակուս պղծէ։

ՁԳ. Վասն գազանաբեկի։

ՁԴ. Վասն հրդեհելոյ զարդար վաստակ։

ՁԵ. Վասն զդիսն կողոպտելոյ։

ՁԶ. Վասն դիւթից և ոչ կախարդք։

ՁԷ. Վասն յղեաց սպանելոյ։
ՁԸ. Վասն կոծողաց զմեռեալս։
ՁԹ. Վասն մեռելոց պատուիրելոյ կոծել։
Ղ. Վասն պոռնկութեան ընդ կնոջ։
ՂԱ. Վասն քահանայի վատ գնացիւք։
ՂԲ. Վասն իգացելոց։
ՂԳ. Վասն ի պատերազմ արիւն հեղուլ։
ՂԴ. Վասն յայլ որոգայթ դիպելոյ։
ՂԵ. Վասն պոռնկի և այլ չարագործի։
ՂԶ. Վասն ի ձեռն առաջնորդին։
ՂԷ. Վասն [որ] ի ծնողացն սպանաւ աստուածային։
ՂԸ. Վասն ոչ պատուելոյ զծնօղսն։
ՂԹ. Վասն որք զորդիս ակնառութեամբ սնրեն։
Ճ. Վասն ուսուցանելոյ զաշակերտաց։
ՃԱ. Վասն արուեստաւորաց։
ՃԲ. Վասն ամուսնացելոց զշաբաթ և զկիրակի։
ՃԳ. Վասն զկիրակի պատուելոյ որ ոչ գործեն։
ՃԴ. Վասն քահանայի [որ] վայրապար ընդ բանիւ [արասցէ]։
ՃԵ. Վասն զքահանայս բամբասելոյ։
ՃԶ. Վասն [որ] սարկաւագ ոչ [է] հաւասար քահանայի։
ՃԷ. Վասն [որ] մի՛ իշխեսցէ [ճաշակել] սարկաւագ ընդ քահանայի։
ՃԸ. Վասն ուրկանալոյ քահանայ և սարկաւագ։
ՃԹ. Վասն քահանայի՝ մի՛ իշխեսցէ ձէթ արկանել։
ՃԺ. Վասն մկրտելոյ ոչ թողուլ կինս։
ՃԺԱ. Վասն քահանայի՝ մի՛ պայծառ զգեստիւ [զգենուլ]։
ՃԺԲ. Վասն դպրաց և ուխտի մանկա[ն]ցս» (էջ 115բ—116բ)։

Կանոնագրքի սույն կանոնախմբի ՃԺԷ հոդվածից սկսած շարունակությունը № 657 ձեռագրում չի պահվել։ Ի դեպ, № C57 ձեռագրում ցանկի վերնագրերի և հոդվածների հաջորդականությունը համապատասխանում է միմյանց, միայն ՃԶ վերնագրից սկսած մինչև վերջ՝ ՃԺԲ, ցանկի վերնագրերը հոդվածների համեմատությամբ մեկով ավելի են, որովհետև ՃԶ հոդվածի համար ցանկում դրված են երկու՝ ՃԶ և ՃԷ վերնագրերը։ Վերևում բերված ցանկի վերնագրերի և հոդվածների հաջորդական համարակալումը 2—4 համարով տարբերվում է ներկա բնագրի հոդվածների հերթական համարակալումից, որովհետև այդ հերթականությունը մի քանի դեպքերում խախտված է. այսպես՝ ԺԴ, ՀԳ և ՀԸ հոդվածները դուրս են ընկել № 657 ձեռագրի բնագրից, հետևապես սրանց համապատասխան վերնագրերը ցանկում բացակայում են։ ՂԲ հոդվածը թեև այս ձեռագրում չի պահվել, սակայն ցանկում պահվել է դրան համապատասխան վերնագիր՝ ՁԸ համարի տակ։ Մի այլ դեպքում ձեռագրում թեև հոդվածը (ՁԷ) գտնում ենք (№ 657 ձեռագրում այս հոդվածը դրված է ՁԴ համարով), սակայն ցանկում սրան համապատասխան վերնագիր բացակայում է։ Երրորդ դեպքում այս բնագրի ԻԲ, ԻԳ և ՃԺ, ՃԺԱ հոդվածները № 657 ձեռագրում միացված են և դրված մեկական՝ ԻԲ և ՃԶ համարների տակ, մինչդեռ ցանկում, մի դեպքում ԻԲ և ԻԳ (№ 657-ում՝ ԻԲ) հոդվածների համար դրված է մեկ վերնագիր՝ ԻԲ համարով, իսկ մյուս դեպքում ՃԺ և ՃԺԱ (№ 657-ում՝ ՃԶ) հոդվածների համար երկու վերնագիր՝ ՃԶ և ՃԷ համարներով։ № 657 ձեռագրի և ցանկի վերնագրերի և սրանց հոդվածների մի քանիսը Կանոնագրքի ունեցած բնագրի համապատասխան հոդվածների հետ համեմատած ունեն ետևառաջություն. № 657-ում այսպես է. Դ և Գ, Ի և ԻԱ, Կ և ԿԱ, Ղ և ՂԱ. Կանոնագրքում այդ նույն հոդվածներն ունեն հետևյալ հաջորդականությունը՝ Դ և Գ, ԻԱ և Ի, ԿԱ և Կ, ՂԱ և Ղ (Կանոնգրքի համարակալմամբ Գ և Դ, Ի և ԻԱ, ԿԱ և ԿԲ, ՂԴ և ՂԵ)։

kmps ձեռագրերում ցանկն ունի հետևյալ պատկերը (բերում ենք ըստ k ձեռագրի)։
«Եր[ր]որդ ցանկ կանոնաց սրբոյն Բարսեղի։
Ա. Վասն որ բռնութեամբ ապականէ զէգք յանկարծակի։
Բ. Վասն որ արիւն հեղու ի պատերազմի։
Գ. Վասն որ արձակէ զկին վասն զաւակի։
Դ. Վասն որ հարուածովք սպանանէ զ[ը]նկեր կամ զծառայ։
Ե. Վասն աղախնաց որ ի տերանց իւրեանց պսակին։

Զ. Վասն որ կուսութիւն խոստանայ և պոռնկի։
Է. Վասն որ երդնու ուրացութեամբ։
Ը. Վասն կախարդաց և դեղատուաց որ գան յուղղութիւն։
Թ. Վասն արուագիտաց։
Ժ. Վասն որ ընդ եղբօր պոռընկի։
ԺԱ. Վասն որ զազգային ապականէ։
ԺԲ. Վասն որ զՔրիստոս ուրանայ։
ԺԳ. Վասն որ պոռնկի ի տան Աստուծոյ։
ԺԴ. Վասն որ զինքն կրճատէ։
ԺԵ. Վասն ժառանգաւորաց որ ի շնութիւն կամ ի կողութիւն կամ ի զուր վկայութիւն գտցին։
ԺԶ. Վասն որ Բ ձեռնադրութիւն ընդունին։
ԺԷ. Վասն ժառանգաւորաց որ զպահս լուծանեն։
ԺԸ. Քահանայ կամ սարկաւագ թէ կաղանայ կամ կուրանայ։
ԺԹ. Վասն եկեղեցւոյ որ այլազգի մտանէ։
Ի. Քահանայ որ առանց աղօթից և առանց խորհրդոյ յամէ։
ԻԱ. Վասն քահանայի որ աշխարհական գործով սպաղի։
ԻԲ. Քահանայութիւն որ ի սատանայէ է։
ԻԳ. Քահանայութիւն որ ի յԱստուծոյ է։
ԻԴ. Վասն քահանայի որ խուլ է և համր։
ԻԵ. Վասն անբարտաւանաց և փառասիրաց։
ԻԶ. Թէ ծառայ անհնազանդ լինի ի տեառնէ։
ԻԷ. Որդիք որ ոչ հնազանդին ծնօղաց իւրեանց։
ԻԸ. Վասն քահանայի որ լուծեալ է ի կարգէն։
ԻԹ. Վասն կանանց և արանց որ ուրկանան։
Լ. Վասն ուխտաւորաց որ ի կանայս յարին կամ քահանայագործութիւն առնեն։
ԼԱ. Վասն որ զշաբաթ և զկիրակէ և զՊենտակոստէն պահօք անցուցանեն։
ԼԲ. Եւ որ յառաջ քան զՅայտնութիւնն ծնունդ առնեն։
ԼԳ. Էրէց կամ սարկաւագ թէ բորոտի կամ ուրկանայ։ Սիւնականի որ վախճանի։
ԼԵ (sic). Որ մոնոզոնութիւն խոստանայ և կին առնու։
ԼԶ. Վասն որ զդիս կողոպտեն։
ԼԷ. Վասն սերմներթութեանց։
ԼԸ. Վասն որ ընդ ուրուկս շնայ։
ԼԹ. Եթէ ոք պոռնկի ճարտարութեամբ առն։
Խ. Վասն որ անարժան հաղորդի։
ԽԱ. Վասն որ զանձինս իւրեանց նուիրեցին Աստուծոյ և ի մեղս անկան։
ԽԲ. Կին որ առանց ընկերի ճանապարհ երթայ։
ԽԳ. Կին որ յանաստուն մատչի։
ԽԴ. Կին որ գիտէ զ[չ]արիս առն։
ԽԵ. Վասն ծնօղաց որ զպղծութիւն զաւակին ծածկեն։
ԽԶ. Վասն ներքինեաց և մարմնազեղծ կեղծաւորաց։
ԽԷ. Վասն որ ննջէ ընդ զոքանչի կամ ընդ քեռ կնոջ իւրոյ։
ԽԸ. Վասն որ արուագիտութեամբ ննջէ ընդ կնոջ։
ԽԹ. Վասն կնոջ որ շնայ ընդ յանաւրէնս։
Ծ. Վասն կնոջ որ շնայ ընդ եղբօր առն իւրում։
ԾԱ. Վասն որ շնայ առ մերձաւորս իւր։
ԾԲ. Վասն կուսի որ շնայ ընդ արամբոյն։
ԾԳ. Վասն որ ամուսնանայ ընդ անաւրինի։
ԾԴ. Վասն առևանկի։
ԾԵ. Կին որ շնայ ընդ ուխտականս։
ԾԶ. Վասն որ կամի քահանայ լինել և կին նորա շնացեալ է։
ԾԷ. Վասն կնոջ քահանայի որ պոռընկի։
ԾԸ. Ուստր կամ դուստր քահանայի թէ պոռնկի։
ԾԹ. Կին քահանայի թէ այլակերպի։
Կ. Քահանայ որ կաշառ առնէ։
ԿԱ. Քահանայ որ զսպաս խորհրդոյն յափշտակէ։

ԿԲ. Քահանայ որ զխոստովանութիւն հրապարակէ։
ԿԳ. Քահանայ որ ցոփ է և զաւշաքաղ։
ԿԴ. Քահանայ որ զեխի զինով։
ԿԵ. Քահանայից սրբութեամբ մատչել ի խորհուրդն։
ԿԶ. Քահանայ որ զարդար դատաստանս թիւրէ։
ԿԷ. Քահանայ որ երդումն տայ մարդոյ։
ԿԸ. Քահանայ որ առանց խոստովանութեան զյետին ճաշակն տայ։
ԿԹ. Վասն յղի կանանց որ յաւուրս պահոց տկարանան։
Հ. Վասն որ թողուն զկինս պատճառաւ աստուածպաշտութեան։
ՀԱ. Վասն որ մսահատի պիղծ համարելով։
ՀԲ. Վասն որ կին առնու յարեան մերձաւորէ։
ՀԳ. Վասն որ զամուսնութիւնն անգոսնեն։
ՀԴ. Որ վասն յաճախ պտղոյ արգիլէ զամուսնութիւն։
ՀԵ. Վասն որ արհամարհեն զամուսնացեալ քահանայն։
ՀԶ. Վասն որ զօր կիրակէին ոչ պատուեն կամ ի թատերս երթան։
ՀԷ. Վասն որ զօրս և զժամս և զլուսնի խտրեն։
ՀԸ. Վասն որ զաւուրս և զշաբաթս պահէ որպէս Հրեայ։
ՀԹ. Վասն ժառանգաւորաց թէ անասնապիղծ գտցին։
Ձ. Վասն որ փոփոխեն զոսկերս մարտիրոսաց։
ՁԱ. Վասն որ առ փափագ զգերեզմանս բանան։
ՁԲ. Վասն որ զկիրակէ կամ զՊենտակոստէ ընդ պահաւք արկանէ։
ՁԳ. Վասն որ յառաջ քան զարձակել ժողովրդեանն ճաշակեցէ։
ՁԴ. Վասն որ աղուհացս յանգէտ յաղեցաւ։
ՁԵ. Վասն քահանայից անխտիր մատուցանելոյ զպատարագս որպէս ի Զատիկ։
ՁԶ. Վասն որ ուտէ ի տեղւոջ։
ՁԷ. Վասն որ յաղեցի կերակուր ի պիղծ անասնոց։
ՁԸ. Վասն զազանաբեկի։
ՁԹ. Վասն յափշտակեալ անասնոյ ընուիրել Տեառն։
Ղ. Վասն որ հրդեհեն զվաստակս։
ՂԱ. Վասն որ զդիս կողոպտեն։
ՂԲ. Վասն դիւթաց։
ՂԳ. Վասն որ զյղի կին զան հարկանէ։
ՂԴ. Վասն որ ի վերայ մեռելոյ կոծ դնէ։
ՂԵ. Վասն որ պատուիրէ մեռեալ, թէ զիս կոծով լացէք։
ՂԶ. Վասն քահանայի որ լուծեալ է եպիսկոպոսէն։
ՂԷ. Վասն որ ընդ կնոջ ցանկայ պոռնկութեան և ցանկութիւն նորա ոչ եկեսցէ յայտ։
ՂԸ. Վասն իգացելոց։
ՂԹ. Վասն որ ի պատերազմն արիւն հեղու։
Ճ. Վասն ակամայ սպանողաց։
ՃԱ. Վասն որ չոգան ի պոռնկութիւն և վախճան եհաս անդ։
ՃԲ. Վասն որ ի ձեռն առաջնորդին խրատուն վախճանի։
ՃԳ. Վասն որ ի ձեռն ծնողաց հանդիպի վախճան վասն խրատու։
ՃԴ. Որդիք որ ոչ պատուեն զծնաւղս։
ՃԵ. Վասն ծնաւղաց որ զորդիսն ակնառութեամբ սիրեն։
ՃԶ. Վասն վարդապետաց որ զաշակերտսն ակնառութեամբ ուսուցանեն։
ՃԷ. Վասն արուեստաւորաց որ զայլոց ինչս յափշտակեն։
ՃԸ. Վասն ամուսնացելոց զսուրբ Քառասունսն և զկիրակէսն սուրբ պահել։
ՃԹ. Վասն զկիրակէսն չգործել։
ՃԺ. Վասն քահանայից վայրապար զոք մի՛ նզովել։
ՃԺԱ. Վասն աշխարհականաց որ զքահանայսն բամբասեն։
ՃԺԲ. Սարկաւագ ոչ է հաւասար քահանայի։
ՃԺԳ. Սարկաւագի ոչ ճաշակել ընդ քահանայի։
ՃԺԴ. Վասն քահանայից և սարկաւագաց որ ուրուք լինի կամ բորոտ։
ՃԺԵ. Քահանայ որ ձէթ արկանէ ի մկրտելն։
ՃԺԶ. Վասն ժամ մկրտութեանն մերձ աւազանն մի՛ կալ կնոջ։

ՃԺԷ. Քահանայ մի՛ իշխեսցէ երևելի յերիվար նստել կամ բոկ ի սեղանն մատչել։
ՃԺԸ. Վասն ժառանգաւորաց որ զինչս եկեղեցոյ յափշտակեն։
ՃԺԹ. Վասն քահանայից և սարկաւագաց որ ի տեսեալն լինին։
ՃԻ. Վասն ի սուրբ խորհուրդն սրբութեան մատչել։
ՃԻԱ. Վասն կանանց որ տեռատես լինին։
ՃԻԲ. Վասն յղի կանանց եկեղեցի մտանել։
ՃԻԳ. Վասն պոռնկաց որ զմանկունս սպանանեն։
ՃԻԴ. Վասն որ մանկանց անհաւատից ըստինըս տան։
ՃԻԵ. Կին մի՛ իշխեսցէ հանդերձս առն զգենուլ։
ՃԻԶ. Վասն հաւատացելոց որ ընդ անհաւատսն հաղորդին։
ՃԻԷ. Վասն կանանց որ այլուր աւթեակս առնեն։
ՃԻԸ. Վասն կանանց չհայել ի խառնակումն անասնոց։
ՃԻԹ. Վասն կանանց որ հուպ լինին ի գինէմոլսն։
ՃԼ. Վասն կանանց որ յաւուրս տօնի այլակերպին։
ՃԼԱ. Վասն կանանց որ անասուն գենուն կամ հնձան հարկանեն կամ որս առնեն։
ՃԼԲ. Վասն ոչ ննջելոյ եղբօր ընդ քեռ իւրում։
ՃԼԳ. Վասն մանկանց որ մեղանչեն։
ՃԼԴ. Վասն որ ամուսնանան նախանձու առ մերձաւոր արեան։
ՃԼԵ. Վասն որ ելանեն յանկողինս մերձաւորի։
ՃԼԶ. Վասն ի տան Աստուծոյ ոչ ճաշել և ոչ ննջել և ոչ շատ խօսել։
ՃԼԷ. Վասն որ զմեռեալս մերձ եկեղեցին թաղեն։
ՃԼԸ. Վասն որ զեկեղեցիս բշտեմարան կերակրոյ առնեն։
ՃԼԹ. Վասն թէ ի ժամ աղաւթից յեկեղեցւոջ մատուցանեն։
ՃԽ. Վասն քահանայից որ զեմմունս առնեն և առանց աղօթից կենան։
ՃԽԱ. Վասն որ գան ի մկրտութիւն և ամուսինս ունին։
ՃԽԲ. Վասն որ զզաւակս վասն ընչից ի յուրուկս կամ անարժանս տայ։
ՃԽԳ. Վասն [որ] պոռընկի ընդ կնոջ իշխանի։
ՃԽԴ. Վասն այրի քահանայից և կանանց քահանայից։
ՃԽԵ. Վասն որ արգելում զպտուղ և զհաս քահանայից։
ՃԽԶ. Վասն [որ] ցոբաբանեն բանիւք։
ՃԽԷ. Վասն որք յօժարեցան յարուագիտութիւն և չանկան ի գործն։
ՃԽԸ. Վասն որ պոռնկի ընդ գողի և ընդ ուրուկ։
ՃԽԹ. Վասն որ պոռնկի ընդ երկուց քերց։
ՃԾ. Վասն որ պոռնկեցան և դարձեալ կին արարին։
ՃԾԱ. Վասն որ հաւանութեամբ միմեանց ամուսնանան։
ՃԾԲ. Վասն որ բազում անգամ պոռնկեցան։
ՃԾԳ. Վասն շնացողաց առ արեան մերձաւորսն։
ՃԾԴ. Վասն ժառանգաւորաց որ պոռնկին։
ՃԾԵ. Վասն որ ակամայ ըմբռնեցաւ յանաւրինաց ի պոռնկութիւն։
ՃԾԶ. Վասն որ յանհաւատից կին առնու։
ՃԾԷ. Վասն պոռնկորդաց որ քահանայութիւն խնդրեն։
ՃԾԸ. Վասն որ պոռնկեցան և առ նախատինս զինքեանս կորուսին։
ՃԾԹ. Վասն զպոռնկորդիսն մկրտելոյ։
ՃԿ. Վասն որք գերի վարին և ուրանան։
ՃԿԱ. Վասն որ յանկարծակի յորոգայթ մահու անկանին։
ՃԿԲ. Վասն որք ճոխաբար ընթանան ընդդէմ որոգայթից մահու։
ՃԿԳ. Վասն որ դնէ զյոյսն ի մարդ։
ՃԿԴ. Վասն որ անփոյթ առնեն զաղաւթս վասն երկրաւոր ըստացուածոյ։
ՃԿԵ. Վասն որ զինչս իւրեանց այլոց տան և ոչ զաւակաց։
ՃԿԶ. Վասն հաւասարելոյ զինչս եղբարց և քըւէրց որ ի ծնաւղէն։
ՃԿԷ. Վասն կտակաց ննջեցելոց։
ՃԿԸ. Վասն որ յաւուր կիրակէի զձայն Աւետարանի ոչ լսեն։
ՃԿԹ. Վասն որ ի պանդխտութիւնս երթան և ոչ գնան յեկեղեցին։
ՃՀ. Վասն քահանայի որ արտաքոյ եկեղեցւոյն պսակ դնէ կամ աղ աւրհնէ։
ՃՀԱ. Վասն քահանայից որ զսուրբ խորհուրդն արտաքոյ եկեղեցւոյն տան։

ՃՀԲ. Վասն քահանայից որ լուծանեն զօրէնս և անարժանից տան զսուրբ խորհուրդն։
ՃՀԳ. Վասն ոչ ելանել ի բեմն և ոչ լուցանեն ճրագք՝ որ ոչ ունին զաստիճանն։
ՃՀԴ. Վասն որ զագապս ի տունս առնեն և ոչ յեկեղեցի տան։
ՃՀԵ. Վասն ընտանեաց քահանայից որ ի բեմս ելանեն և շնորհս ընդունին։
ՃՀԶ. Վասն որք ոչ ունին զաստիճանն և առաջնորդին ժողովրդեանն։
ՃՀԷ. Վասն ժառանգաւորաց որ ի հրապարակս ուտեն և ըմպեն։
ՃՀԸ. Վասն որ այսահարի օրէնս տան։
ՃՀԹ. Վասն այսահարաց որ զմեղս իւրեանց խոստովանին։

ՃՂ. Վասն քահանայից որ մտանեն ի տուն կնոջ որ ունի այր <վասն> անհաւատ կամ քահանայագործութիւն առնէ։

ՃՂԱ. Վասն քահանայից որ երդումն տան։
ՃՂԲ. Վասն քահանայից որ վայլոց բանադրածն լուծանեն։
ՃՂԳ. Վասն քահանայից որ վայրապար բանադրեն։

ՃՂԴ. Վասն [որ] եկեղեցիս ժողով առնեն քահանայից ըզվասն (sic) կուսանսն և ուսուցանեն։

ՃՂԵ. Վասն քահանայից յուսադրելոյ զմեղաւորսն։
ՃՂԶ. Վասն ապաշխարողաց որ ի մէջ ապաշխարութեան մեռանին։
ՃՂԷ. Վասն կերակրոյ որ յաղեալ է յանասնոց։
ՃՂԸ. Թէ չէ արժան հաղորդիլ յանասնոց կամ վիճել վասն հաւատոց։
ՃՂԹ. Վասն քահանային զգուշ կալ հաւտին։
ՃՂ. Վասն որ հնարիւք զմանկունս սպանեն զայր և զկին։
ՃՂԱ. Վասն [որ] խողխողեն վասն յաճախ պոռնկութեան։
ՃՂԲ. Վասն զհիւանդս սուրբ դեղովք բժշկել։
ՃՂԳ. Վասն որ ուտեն զզենեալն յանասնոց։
ՃՂԴ. Վասն որ զմեռելոտի վաճառեն։
ՃՂԵ. Վասն զենմանց որ ոչ յորդէ արիւնն հանդերձ շնչովն։
ՃՂԶ. Վասն զկիսասուրբ կենդանիս ոչ ուտել։
ՃՂԷ. Վասն որսորդաց թէ որպէս պարտին ուտել։
ՃՂԸ. Վասն որսոյ ձկանն։
ՃՂԹ. Վասն որսոյ թէ զորս պարտ է մատաղ առնել։
Մ. Վասն որ զյափշտակեալ և զխեղ անասուն մատաղ առնեն։
ՄԱ. Վասն մատաղ ոչ առնել յերկիր թշնամեաց։
ՄԲ. Վասն որ մատաղ խոստանան անխափան հատուցանել։
ՄԳ. Վասն նուէր Տեառ[ն]. յաւուր յայնմիկ բաշխել աղքատաց։
ՄԴ. Վասն որ զինչս իւրեանց զարատաւոր վաճառեն նենգութեամբ։
ՄԵ. Վասն սուտ վկայից։
ՄԶ. Վասն անիծանողաց և բամբասողաց։
ՄԶ (sic). Վասն զզջացելոց հասիցն և թէ յետ կարգին պղծին։
ՄԷ. Վասն խոստովանողաց առանց հրամանի վարդապետին չգործել գործ ինչ։
ՄԸ. Վասն ծերոց և պառաւաց որ Կ ամեան։
ՄԹ. Վասն այրեաց անկարգ ամուսնութեան։
ՄԺ. Վասն որ մինն կուսան և միւսն այրի և մինն վախճանի։
ՄԺԱ. Վասն որ զխօսեցեալն ի կնութիւն և զհաստատեալն ոչ առնու վասն պղծութեան։
ՄԺԲ. Վասն որ ցաւագար է կամ չարագործ և կամի ամուսնանալ։
ՄԺԳ. Վասն որ խօսեցեալ է և գան ի դուռն եկեղեցւոյն և չար գործքն յայտնի։
ՄԺԴ. Վասն կնոջ որ ի ծնունդն վատնի և ճարտարք զմանուկն սպանանեն։
ՄԺԵ. Վասն կնոջ որ ոչ ծնանի և ընդ այլ ոք պղծի։
ՄԺԶ. Վասն անասնագիտաց։
ՄԺԷ. Վասն որ ի մերձաւորէ արեան կին առնու։
ՄԺԸ. Վասն առևանկաց։
ՄԺԹ. Վասն կանանց որ զայրս իւրեանց ատեն և այլոյ ամուսնանան։
ՄԻ. Վասն որ զկին իւր արձակէ։
ՄԻԱ. Վասն որ տղայոց պսակ դնէ։
ՄԻԲ. Վասն որ զհաստատեալ կին ի քահանայէ այլոյ տան։

ՄԻԳ. Վասն որ զզաւակս իւր առանց հաւանութեան առն տայ կամ վասն ընչից ծերոց տայ։
ՄԻԴ. Վասն որ զքահանայս անարգեն։
ՄԻԵ. Վասն քահանայից որ զչարիս ուրուք ծածկեն պատճառանօք։
ՄԻԶ. Վասն խաչ աւրհնելոյ։
ՄԻԷ. Վասն որ զխաչ յափշտակեն կամ վաճառեն։
ՄԻԸ. Վասն որ զխաչ ի գերութիւն տեսանեն։
ՄԻԹ. Վասն Զատկի և տաւնի ի տունս ժողովրդեան աւետարանել։
ՄԼ. Վասն խաչիւ ելանել ի սահմանս և աւետարանել։
ՄԼԱ. Երեխայ որ մեռեալ ծնանի։
ՄԼԲ. Վասն երեխայի որ հիւանդ ծնանի և անփոյթ առնեն։
ՄԼԳ. Երեխայից որ հիւանդ է և գիտաց քահանայն։
ՄԼԴ. Թէ քահանայ ի մեծի խորհրդեան է և բերեն մանուկ երեխայ առ նա։
ՄԼԵ. Քահանայ որ մկրտութեան սկիզբն արարեալ և երախայն վախճանի։
ՄԼԶ. Վասն երեխայն Ը- աւրեայ մկրտեն։
ՄԼԷ. Քահանայ որ ի ճանապարհ <որ> գնայ և ժողովուրդն առանց հովիւի մնայ։
ՄԼԸ. Վասն հիւանդաց յեր[ր]որդ աւուր կոչել զքահանայս և խոստովանել։
ՄԼԹ. Վասն քահանայի որ առանց խոստովանութեան հաղորդ տա կամ պսակ դնէ։
ՄԽ. Վասն երկրորդ ամուսնացելոց։
ՄԽԱ. Վասն եր[ր]որդ և չոր[ր]որդ ամուսնացելոց։
ՄԽԲ. Վասն Քառասունս կատարելոյ։
ՄԽԳ. Վասն պոռնկաց ամուսնացելոց։
ՄԽԴ. Վասն որ զդիս բազում կտաւաւք պատեն։
ՄԽԵ. Վասն կատարելոյ զյիշատակ ննջեցելոց։
ՄԽԶ. Վասն այսահարաց բազում է եղանակ։
ՄԽԷ. Վասն կուսից որ այսահար լինին և ամուսնանալ կամին։
ՄԽԸ. Վասն կանամբեաց որ այսահար լինին։
ՄԽԹ. Վասն զանազան հնարից չար դիւին։
ՄԾ. Վասն աւուրս սուրբ Զատկի և կիրակէի լուծանել զպահողս։
ՄԾԱ. Վասն ժառանգաւորաց որ հանդիպին պիղծ այսոյն։
ՄԾԲ. Քահանայ որ այսահարի թէ որպէս ապաշխարէ։
ՄԾԳ. Վասն որ մաքառին ընդ քահանայս և ընդ ուխտի մանկունս։
ՄԾԴ. Վասն որք գնան ի գէտս։
ՄԾԵ. Վասն որ կախարդաց գիտութեանն ցանկան։
ՄԾԶ. Վասն այսահարութեան թէ որպէս հանդիպի։
ՄԾԷ. Վասն այսահարից որ ի սիրոյն Քրիստոսի խրատին։
ՄԾԸ. Վասն այսահարից որ վասն մեղաց։
ՄԾԹ. Վասն այսահարի որ ի ծուլութենէ առաքինութեան։
ՄԿ. Վասն այսահարից որ անզեղջ են և փառասէր։
ՄԿԱ. Վասն լրբութեան դիւին։
ՄԿԲ. Վասն դիւին որ քաշակալ անուանեն և կերպարանս կերպարանս երևին։
ՄԿԳ. Վասն որ յարակայ մոլին և լուսնահարս կոչին։
ՄԿԴ. Վասն որ գաղտնի լլկէ և հոգէգէշ կոչի։
ՄԿԵ. Վասն որ զանազան կերպիւ լլկին ի դիւէն։
ՄԿԶ. Վասն կոչելոյ զանազան աղտոն այսահարութիւն։
ՄԿԷ. Վասն թէ որպէս պարտ է կարգաւորել զայսահարն։
ՄԿԸ. Վասն որ դառնան ի մեղաց և գան ապաշխարութիւն։
ՄԿԹ. Վասն որ բանիւ Աստուծոյ դաշինս հաստատեն և ստեն։
ՄՀ. Որք գնան ի լրտեսութիւն ճշմարտութեամբ կամ դաւաճանութեամբ։
ՄՀԱ. Վասն թէ զայլոյ բանադրած վարդապետ կամ եպիսկոպոս մի՛ լուծցէ։
ՄՀԲ. Վասն [որք] դատարկաբանութեամբ պղծին։
ՄՀԳ. Վասն որ հրաժարին ի դատարկաբանութենէ և դարձեալ անդէն դառնան։
ՄՀԴ. Վասն որ զուգաւորին ընդ կնոջ եղբաւր կամ ընդ քերց» (էջ 87ա—93ա. հմմտ. m, էջ 96ա—102բ, p, էջ 96բ—102ա, s, էջ 111ա—118)ա։

Այս ցանկում թեև նշված է 274 վերնագիր, բայց իրականում այն համապատասխանում է ներկա բնագրի 272 հոդվածներին։ Հոդվածները և ցանկի վերնագրերը համեմատելիս նկա-

*տեցինք որոշ շեղումներ, այսպես, ցանկում սխալմամբ կրկնված է ՄՁ համարը, ԾԴ հոդվածը չի արտահայտված ցանկում, որովհետև* km *ձեռագրերում այն միացված է նախորդ ԾԲ հոդվածին, իսկ* ps *ձեռագրերում չի պահվել։ Մեկ դեպքում ցանկի վերնագրերի հաջորդականությունը չի համապատասխանում հոդվածների հաջորդականությանը՝ ՄԽԲ և ՄԽԳ վերնագրերը պետք է դրվեին ըստ հոդվածների հաջորդականության նախ ՄԽԳ (հոդված ՄԽ), ապա ՄԽԲ (հոդված ՄԽԱ)։ Կան այլ կարգի շեղումներ, երբեմն երկու հոդվածին ցանկում դրված է մեկ վերնագիր. օրինակ, ՄԽԴ, ՄԽԵ հոդվածները համապատասխանում են ցանկի ՄԽԶ վերնագրին։ Հինգ դեպքում մեկ հոդվածին ցանկում դրված է երկու վերնագիր՝ ԼԱ հոդվածը ցանկում ունի ԼԱ և ԼԲ վերնագրերը, ՀԶ-ն՝ Հէ և ՀԸ, ՃՁԸ-ն՝ ՃՂ և ՃՂԱ, ՄՀԱ-ն՝ ՄՀԲ և ՄՀԳ վերնագրերը, իսկ ԼԲ հոդվածը ցանկում թեև դրված է ԼԳ վերնագրի տակ, բայց ԼԴ համարակալումը բաց են թողել և հաջորդ վերնագիրը նշել ԼԵ համարի ներքո։* mps *ձեռագրերում ԼԳ վերնագրի վերջին՝ «սիմնականի որ վախճանի» հատվածի սկզբում ավելացրել են «վասն» և նշել ԼԴ համարի տակ։*

*Այս շեղումների պատճառով էլ վերոբերյալ ցանկի վերնագրերի և հոդվածների հաջորդական համապատասխանությունը տատանվում է 2—3 համարի տեւեռաչությամբ։*

*Ներքևում նշում ենք ծանոթագրություններում օգտագործված ձեռագրերի էական տարբերությունները։*

Հոդ. Ա, էջ 101: *Բնագրի «յանկարծաւրեայ» բառը №№ 835, 837, 8459 ձեռագրերում դրված է «յանկարծօրէն» ձևով։ «Բ մահ համարեալ լիցի եւ» հատվածի փոխարեն նշված ձեռագրերն ունեն «այնպիսին», իսկ «վարդապետն իշխան» բառերի միջև՝ «ի ճշմարիտ հաւատն» բառերը (№№ 835, էջ 126աբ, 837, էջ 66աբ, 8459, էջ 91ա)։ №№ 659, 657 ձեռագրերն ունեն զգալի շեղումներ, ուստի հոդվածը բերում ենք լրիվ. «Որ զէգ սպականէ բռնաբար յանկարծաւրէն յղի, մահապարտութեան դատաստան ընկալցի, այնպիսին այրեսցի։ Հայելով վարդապետին ի ճշմարիտ հաւատսն կարճել զկարգն իշխան է» (էջ 144ա, էջ 116բ)։ Կանոնագրքում թեև նշվում է. «Բ մահ համարեալ լիցի», բայց չի հասկացվում, թե ինչու երկու մահ համարել, մինչդեռ №№ 659, 657-ում նշվում է հղի ժամանակ կնոջ բռնադատողը (հարվածողը) երկու մահ է գործում՝ մեկ ծնողին, մյուսը պտուղին։*

Հոդ. Գ, էջ 101: *Բնագրի «զաւակի» փոխարեն №№ 659, 657 ձեռագրերում պահվել է «անզաւակութեան» (էջ 114բ, էջ 116բ)։ № 657-ում այս հոդվածը դրված է Դ-ի տեղը, իսկ Դ-ն՝ Գ-ի։*

Հոդ. Դ, էջ 102: *№№ 835, 837, 8459 ձեռագրերը չունեն բնագրի «տարապարտուց» բառը։ Առաջին երկու ձեռագրերում որոշ բառեր դրված են այսպես. «զընկերն», «սպանէ», «անկանի», «իշխանաց»։ Այս երեք ձեռագրերում էլ հոդվածի վերջին մասը խմբագրվել է այսպես. «և զգող ոք մատնէ մահապարտ է» (№№ 837, էջ 66բ, 835, էջ 126բ, 8459, էջ 91ա)։*

Հոդ. Զ, էջ 102: *Երեք ձեռագրերում չի պահվել սույն հոդվածը և Զ համարի դիմաց նշված է. «Գրած է» (№№ 837, էջ 67ա, 835, էջ 126բ, 8459, էջ 91ա)։*

Հոդ. Է, էջ 102: *Բնագրի «հաղորդեսցի ութինաց» բառերի փոխարեն №№ 837, 835 ձեռագրերը ունեն «ապա մտեալ հաղորդեսցի» (էջ 67ա, էջ 127ա)։*

Հոդ. Ը, էջ 102: *Բնագրի «արժան է յորդորել» բառերի միջև երեք ձեռագրերում պահվել է «տալ նոցա և» (№№ 837, էջ 67ա, 835, էջ 127ա, 8459, էջ 91ա)։ №№ 837, 835 ձեռագրերում նաև կարդում ենք. «զարհուրին և անդրէն դառնան», իսկ «չարիս»-ի փոխարեն ունեն «գործն»։*

Հոդ. Թ. էջ 103: *Բնագրի մի հատվածը №№ 837, 835 ձեռագրերում կարդում ենք այսպես. «ընդ արուսն անցուցանեն (վերջին բառը տե՛ս նաև №№ 657, 659 ձեռագրերում) եղիցի ի վերայ նոցա այն ժամանակն որ ի շնութեան զանաւրէնութիւն գործէ» (էջ 67աբ, էջ 127ա)։ Հոդվածի վերջին «Գ ամ... ընդ ձեռամբ» հատվածը չի պահվել №№ 657, 659 ձեռագրերում։ Այս հոդվածը քաղված է Բարսեղ Կեսարացու մի այլ կանոնախմբից (տե՛ս Կանոնագիրք Հայոց, հտ. Ա, էջ 351, հոդ. ԼԲ, և համապատասխան ծանոթ. էջ 618)։*

Հոդ. Ժ, էջ 103: *Վերջին «սպանողի ընկալցի» բառերի փոխարեն №№ 837, 835 ձեռագրերն ունեն «սպանողսն դատեսցի» (էջ 67բ, էջ 127բ), իսկ №№ 659, 657-ը՝ «սպանողի ապաշխարութիւն կրեսցէ» (էջ 145ա, էջ 117ա)։*

Հոդ. ԺԱ, էջ 103: *Բնագրի «պատուհաս» բառի փոխարեն №№ 659, 657 ձեռագրերում պահվել է «երկրորդ պատիժս» բառերը (էջ 145ա, էջ 117ա)։*

Հոդ. ԺԲ, էջ 103: *Բնագրի «ժամանակսն լալով» բառերի փոխարեն երեք ձեռագրերում պահվել է. «աւուրս կենաց իւրոց» (№№ 837, էջ 67բ, 835, էջ 127աբ, 8459, էջ 92ա)։*

Հոդ. ԺԳ, էջ 103—104: *Այս հոդվածը №№ 657, 659 ձեռագրերում բաժանված է երկու*

*առանձին հոդվածների՝ ԺԴ և ԺԴ համարներով։ Բաժանումը սկսվում է «Թէ քահանայ կամ սարկաւագ» հատվածից (էջ 145բ, էջ 117ա)։ Բնագրի որոշ հատվածներ №№ 835, 837-ում նշված են շեղումներով. այսպես՝ այստեղ կարդում ենք. «ի տուն», «լիցի տեսանել միայն զհաւատացելսն». մի ընդարձակ հատված՝ «արժանի լիցի ընդ հաւատացեալս կալ՝ Ե ամ ընդ ունկընդիրս» չի պահվել այստեղ, իսկ մի այլ հատված այսպես է. «Ժ ամ ապա յետ Ժ ամ և Ա ամ ընդ ապաշխարողսն ընդ ձեռամբ մտցէ և\ապա արժան լիցի աւրինաց» (այս հատվածը տե՛ս նաև № 8459-ում, էջ 92ա)։ № 835-ը չունի «հանդիպեցին» բառը, իսկ № 837-ում այդ բառը փոխարինված է «դիպեցի» բառով (№№ 835, էջ 127բ, 837, էջ 68ա)։*

**Հոդ. ԺԴ, էջ 104:** *Սույն հոդվածը չի պահվել № 657, 659 ձեռագրերում։*

**Հոդ. ԺԵ, էջ 104:** *№№ 837, 835 ձեռագրերում հոդվածն այսպիսին է. «Քահանայ կամ սարկաւագ կամ ուխտական թէ ի գողութիւն կամ ի շնութիւն կամ (№ 835-ում՝ չիք կամ) ի սուտ խօսութիւն և ի զուր վկայութիւն իցեն՝ լուծցին ի կարգէն և ապաշխարհեսցեն ըստ գործոյն» (էջ 68ա, էջ 127բ, հմմտ. № 8459, էջ 93ա)։ №№ 659, 657 ձեռագրերում՝ բնագրի «ի զուր վկայութեան» հատվածը դրված է «ի սուտ վկայութիւն» (էջ 145բ, էջ 117ա) ձևով, իսկ հոդվածի վերջին հատվածը այդ ձեռագրերում այսպես է. «և ապաշխարեսցէ որպէս և կամի առաջնորդն» (№№ 659, էջ 146ա, էջ 117ա)։*

**Հոդ. ԺԶ, էջ 104:** *Բնագրի «երկու» բառը №№ 659, 657 ձեռագրերում դրված է «երկրորդ» ձևով (էջ 146ա, էջ 117ա)։ №№ 837, 835-ում՝ բնագրի «ինքեանք» բառը դրված է «նոցա» ձևով, իսկ «խրատուն... յիւր»-ը՝ «խրատեալ լին[ին] (№ 835-ում՝ են) և արգելեալ ի յիւր» (էջ 68ա, էջ 128ա)։*

**Հոդ. ԺԸ, էջ 105:** *№№ 837, 835 ձեռագրերում հոդվածի սկիզբն այսպիսի եռևառաջութիւն ունի. «Քահանայ կամ սարկաւագ որ կուրանայ կամ կաղանայ» (էջ 68բ, էջ 128ա), իսկ «յաշտիճանի» բառը №№ 659, 657-ում փոխարինված է «ի քահանայութիւն» բառով (էջ 146ա, էջ 117ա)։*

**Հոդ. ԺԹ, էջ 105:** *Հոդվածը №№ 837, 835 ձեռագրերում այսպես է շարադրված. «Եկեղեցի յետ Խ աւուր արժան է այլ սրբել և եթէ ոք յանաւրինաց (№ 835-ում՝ ի յանօրինաց) մտեալ է՝ եթէ ոչ աւթէ՝ քահանայն սրբէ, ապա եթէ աւթէեակս առնէ՝ եպիսկոպոսին հրաման լիցի» (էջ 68բ, էջ 128ա)։*

**Հոդ. Ի, էջ 105:** *№№ 659, 657 ձեռագրերում այս հոդվածը դրված է ԻԱ հոդվածի տեղը և ընդհակառակը։ Բնագրի «կալ բայց» բառերի միջև №№ 837, 835, 8459-ում՝ գտնվում են «ի սուրբ պատարագէն» բառերը (էջ 68բ, էջ 128բ, էջ 93բ)։*

**Հոդ. ԻԲ, էջ 105—106:** *Էական տարբերությունն այն է, որ բնագրի «արիմահեղ կամ» բառերի միջև №№ 837, 835, 8459-ում գտնվում են «կամ թշնամանող» բառերը (էջ 69ա, էջ 128բ, էջ 94ա)։*

**Հոդ. ԻԳ, էջ 106—107:** *№№ 659, 657 ձեռագրերում այս հոդվածը միացված է նախորդին՝ ԻԲ համարի նշումով։ Էական տարբերությունն այն է, որ «խորհել» բառի փոխարեն №№ 837, 835, 8459-ում պահվել է «կանխեալ» բառը (էջ 69աբ, էջ 128բ, էջ 94բ)։ Այստեղ բնագրի մի այլ հատվածն (տող 8—9) այսպես է. «Այլ արդ արժան է ճշմարտապէս և հաւաստեաւ քննել եպիսկոպոսին զանարատն»։*

**Հոդ. ԻԴ, էջ 107:** *Էական տարբերությունն այն է, որ «իշխեսցէ» բառը №№ 837, 835 ձեռագրերում փոխարինված է «կարասցէ» բառով, իսկ «համր» բառը № 837-ում՝ «խամր» (էջ 69բ, էջ 129ա)։*

**Հոդ. ԻԵ, էջ 107:** *Բնագրի «լաւ» բառի փոխարեն №№ 659, 657-ում պահվել է «շահ» (էջ 147բ, էջ 117բ), իսկ №№ 847, 835, 8459-ում չեն պահվել «ապաշխարեաց» և «իւրոց» բառերը (էջ 70ա, էջ 129բ, էջ 94բ)։*

**Հոդ. ԻԶ, էջ 107:** *№№ 659, 657-ում չեն պահվել «կամ աղախին» և «ի խրատուէն» բառերը։ Իսկ մյուս երեք ձեռագրերում հոդվածի երկրորդ մասը՝ սկսած «մի՛ պահեսցէ ի տան իւրում...»-ից մինչև վերջ այսպէս է. «պարտ է արտաքսել, ի խրատելն [թէ] մահ լինի՝ և մահապարտ լինի տէրն և տիկինն» (№№ 837, էջ 70ա, 835, էջ 129բ, 8459, էջ 95աբ)։ Հոդվածը №№ 659, 657-ում շարունակվում է՝ «տէր նորա և տիկինն» (էջ 147բ, էջ 117բ)։*

**Հոդ. ԻԷ, էջ 107:** *Բնագրի «տացեն սիրով.... չար հանդիպի» հատվածը №№ 837, 835-ում այսպես է. «տացեն նմա և որոշեսցեն, զուցէ (№ 835-ում՝ չիք զուցէ) որ իրք չար հանդիպի (№ 835-ում՝ չհանդիպի) նոցա» (էջ 70ա, էջ 129բ)։*

**Հոդ. ԻԹ, էջ 108:** *№№ 837, 835-ում չի պահվել «ի բաց», իսկ №№ 659, 657-ում՝ «զի զոր Աստուած զուգեաց» բառերը։ №№ 837, 835-ում կան այլ կարգի շեղումներ, օրինակ,*

*«ունել»-ի փոխարեն ունեն «պահել», «ամուսնանալ մինչ»-ի՝ «կին առնուլ քան որ», «զըր-կեալն»-ի՝ «թողեալն», «զի մի մարմին են»-ի՝ «հետ այն ցեղին» (էջ 70բ, էջ 130ա. հմմտ. № 8459, էջ 96ա)։*

Հոդ. Լ, էջ 108: *№№ 659, 657-ում շեղումն այն է, որ «ուխտաւոր» բառի փոխարեն ու-նեն «աբեղայի» (էջ 148ա, էջ 118ա)։ № 8459-ը չունի «ի տեղիս» բառը (էջ 96բ), իսկ № 837-ը՝ «երթալ» (էջ 70բ)։ № 835-ում նախավերջին հատվածն (տող 9—10-րդ) այսպես է. «ի տեղիս իւրեանց երթիցեն» էջ 130ա)։*

Հոդ. ԼԲ, էջ 108—109: *№№ 659, 657-ում «ուրկանայ»-ի փոխարեն պահվել է «զողենայ»։ Բնագրի «սիւնական»-ը №№ 837, 835, 8459-ում փոխարինված է «ուխտական» (էջ 71ա, էջ 130բ, էջ 96բ), իսկ №№ 659, 657-ում՝ «միայնակայն» բառերով (էջ 148բ, էջ 118ա)։ №№ 837, 835, 8459-ում չեն պահվել «ելցէ ի վեր», «զի այն է արժանն» հատվածները, իսկ «նորա ի նմին»-ի միջև ունեն «ամ յամէ» բառերը, այսպես «նորա ամ յամէ ի նմին» (էջ 71ա, էջ 130բ, էջ 96բ)։*

Հոդ. ԼԳ, էջ 109: *Միակ տարբերությունն այն է, որ «մոնողոնութիւն» բառի փոխարեն №№ 837, 835, 8459-ում գրված է «աբեղայութիւն» (էջ 71ա, էջ 130բ, էջ 97ա)։*

Հոդ. ԼԴ, էջ 109: *№№ 659, 657-ում այս հոդվածը մի փոքր ընդարձակ է. «Որ զդիս կո-ղոպտեն և ի մեղին դիպիցին, արիւն իւրեանց ի գլուխս իւրեանց կոտեսցին, սպանողքն ապաշխարեսցեն սակաւ ինչ» (էջ 148բ—149ա, էջ 118ա)։*

Հոդ. ԼԵ. էջ 109: *№№ 837, 835-ում չի պահվել հոդվածի վերջին «և հարկ է անցանել» հատվածը (էջ 71բ, էջ 130բ—131ա)։ №№ 659, 657-ում եղածն այսպես է. «Սերմանցութիւն որ ընդ քուն անցանէ որ խոտելին է և մեղադրելին, թէ ի մտի եդեալ է պոռնկել ընդ կնոջ ումեք և կամ մաքաուին ընդ իւրեանց մարմինսն և ապա ընդ քունն անցանէ՝ հաւասար է պոռ-նըկութեան։ Ապա եթէ յանհոգս է և անցանէ, զի սովորութիւն մարմնոյ է և հարկ է անցանել» (էջ 145ա, էջ 118ա)։*

Հոդ. ԼԶ, էջ 109—110: *Բնագրի «մարմնազեղծս» բառին* F *ձեռագրի 171ա էջի աջ լու-սանցքում, հավանաբար ուրիշի կողմից, տրված է հետևյալ բացատրությունը. «Վասն կանանց ասէ, որ արական նիւթ գործեն և պղծեն զմիմեանս»։ Բնագրի «որպէս ընդ անասնոյ է, նոյն-պէս որ ընդ արս ուրուք շնայ» հատվածի փոխարեն №№ 837, 835-ն ունեն «որպէս զանաս-նապեղծն է և ընդ այրն նոյնպէս է» (էջ 71բ, էջ 131ա)։ №№ 659, 657-ում հոդվածի շարա-դասությունն այսպիսին է. «Որ ընդ կանայս ուրուք և ընդ յիմարս շնան, որպէս թէ ընդ ա-նասուն պղծի, որպէս թէ ընդ արուս շնայ, որպէս թէ ընդ մեռելոյ շնայ, նոյնպէս և որ ընդ այսահարն և ընդ մարմնազեղծն» (էջ 149ա, էջ 118բ)։*

Հոդ. ԼԷ, էջ 110: *Բնագրի «ճարտարութեամբ»-ի փոխարեն №№ 837, 835 ձեռագրերը ու-նեն «աւտարութիւն»։ Այս և № 8459 ձեռագրերը չունեն բնագրի «ապաշխարութիւն նոյն եղիցի» հատվածը (էջ 71բ, էջ 131ա, էջ 97բ)։ №№ 659, 657-ում հոդվածն այսպիսին է. «Եթէ ոք պոռնըկեսցի ճարտարութեամբ առն սերմ զսերմ հարկանէ՝ ապաշխարութիւն արիւնահեղի դիք ի վերայ» (էջ 149ա, 118բ)։*

Հոդ. ԼԸ, էջ 110: *«Հանդիպի» բառը №№ 837, 835-ում գրված է «դիպի» ձևով։ Այս և № 8459 ձեռագրերում չի պահվել «և որպէս հուր կիզու զամենայն ինչս իւրեանց» հատվածը (էջ 72ա, էջ 131ա, էջ 97բ)։ №№ 659, 657 ձեռագրերում «հանդիպի» և «հանդիպին» բառերի փոխարեն գրված է «դիպի» բառը։ Այստեղ չի պահվել «մուրացութիւն» բառը, իսկ հոդվածի վերջին հատվածն այսպես է. «և հուր կերիցէ զստացուածս նոցա» (էջ 149բ, էջ 118բ)։*

Հոդ. ԼԹ, էջ 110: *№№ 837, 835, 8459 ձեռագրերում այս հոդվածը չի պահվել, այլ նշված է. «գրած է» (էջ 72ա, էջ 98ա, այս նշումը բացակայում է № 835-ում)։*

Հոդ. Խ, էջ 110—111: *Բնագրի «անկանի» բառը №№ 837, 835, 8459 ձեռագրերում փո-խարինված է «դիպի» բառով (էջ 72ա, էջ 131ա, 98ա)։*

Հոդ. ԽԱ, էջ 111: *Բնագրի «մատչի պղծիլ ի նմանէ» հատվածը №№ 837, 835, 8459 ձե-ռագրերում գրված է այսպես. «կամի պղծիլ» (էջ 72ա, էջ 131ա, էջ 98ա), իսկ №№ 659, 657-ում «անասնազանցի» բառը՝ «անասնապղծի» (էջ 149բ, էջ 118բ)։*

Հոդ. ԽԲ, 111: *Բնագրի «ծածկիցէ ևս-ի միջև №№ 837, 835, 8459-ում գտնվում են «զյան-ցանս նորա» բառերը, իսկ պատժաչափը նշված է «է ամ» (էջ 72ա, էջ 131բ, էջ 98բ)։ Հոդ-վածի վերջին մասը №№ 659, 657-ում այսպես է. «նոյնպէս և այրն և որ գիտեն զչարիս նո-րա» (էջ 149բ, էջ 118բ)։*

Հոդ. ԽԳ, էջ 111: *№№ 837, 835, 8459-ում մի փոքր շեղվում են հոդվածի սկիզբը և վերջը. ահա այդ հատվածները. «Ոնաւզք եթէ գիտեն զչարիս զաւակաց իւրեանց և ծածկեն», «բայց*

*վարդապետն իշխան է ըստ չարեացն զկարգն ուղղել և արժան լինին (№ 835-ում՝ լինի) ւորինաց» (էջ 72աբ, էջ 131բ, էջ 98բ)։ Հոդվածի վերջին հատվածը №№ 659, 657-ում այսպես է. «գիտակ լիցի քահանայն զկարգն ուղղել և հաղորդ տալ» (էջ 150ա, էջ 118բ)։*

Հոդ. ԽԴ, էջ 111—112: *Բնագրի «և կնոջն հասեալ... առն լիցի» հատվածը №№ 837, 835, 8459-ում այսպես է. «և գիտացեալ կնոջն արժան է քակտիլ և ում որ կամի լինիցի» (էջ 72բ, էջ 131բ, էջ 99ա)։*

Հոդ. ԽԵ, էջ 112: *№№ 837, 835, 8459-ում չեն պահվել «կացցէ» և «ելցէ» բառերը (էջ 72բ—73ա, էջ 132ա, էջ 99ա)։*

Հոդ. ԽԶ, էջ 112—113: *№№ 837, 835, 8459-ում չի պահվել «ըստ առաքելոյն որ ասէ... ի պէտս անբնականս» հատվածը։ Այս ձեռագրերում պատժաչափը «Ա ամ» է փոխանակ «Ե ամ»-ի։ Առաջին երկու ձեռագրերը չունեն «տնանկաց» բառը, իսկ* ***«հայելով ի վարսն...*** *կարճել զպատիժն» հատվածի փոխարեն ունեն «հայի ի վարսն կարճէ զպատիժն» (№№ 837, էջ 73ա, 835, էջ 132ա, 8459, էջ 99բ)։ №№ 659, 657-ում չեն պահվել երկու հատված. «բոր-բոքեցան ի պէտս անբնականս» և «տնանկաց և արտասուաւք» (էջ 150բ, էջ 118բ—119ա)։*

Հոդ. ԽԷ, էջ 113: *№№ 837, 835, 8459 ձեռագրերը չունեն «և ելցէ», «հայելով ի վարսն» բառերը, իսկ «ունկնդիրս կացցէ»-ի փոխարեն ունեն «աւրինաւք», «բազում տրաւք... հաղոր-դեսցի աւրինաց»-ի փոխարեն՝ «բազում տրաւք տնանգաց արժանի լիցի» (էջ 73աբ, էջ 132ա, 99բ)։ Հոդվածի վերջին մասը №№ 659, 657-ում համառոտ է. «բայց վարդապետն մի՛ արգելցէ զողորմութիւն» (էջ 150բ, էջ 119ա)։*

Հոդ. ԽԸ, էջ 113: *Պատժաչափը №№ 659, 657-ում տարբեր է՝ «է ամ»-ի փոխարեն նշված է «Զ ամ»։ Տարբեր է նաև հոդվածի վերջին մասը. «բայց կամք առաջնորդին եղիցի» (էջ 151 ա, էջ 119ա). «և ողորմութեամբ հայելով վարդապետն ի վարսն արժան առնէ աւրինացն» (№№ 837, էջ 73բ, 835, էջ 132բ, 8459, էջ 100ա)։*

Հոդ. ԽԹ, էջ 113: *№№ 837, 835, 8459-ում չեն պահվել «կացցէ», «և ելցէ» բառերը, այստեղ պատժաչափը նշված է «է ամ» փոխանակ «Ե ամ»-ի։ №№ 659, 657-ում չի պահվել «և ի զղջումն եկեսցէ» հատվածը (էջ 151ա, էջ 119ա)։*

Հոդ. Ծ, էջ 114: *№№ 659, 657-ում մի փոքր տարբեր է հոդվածի սկիզբը. «Կուսան եթէ շնայցէ անդ ի տան իւրում» (էջ 151ա, էջ 119ա)։ №№ 837, 835, 8459 ձեռագրերում չեն պահ-վել «եկեսցէ», «և ելցէ», «ընդ ապաշխարողս» բառերը (էջ 74ա, էջ 132բ—133ա, էջ 100բ)։*

Հոդ. ԾԱ, էջ 114—115: *№№ 659, 657-ում չի պահվել «թէ թողցէ... յապաշխարութիւն եկեսցէ» հատվածը, իսկ պատժաչափը Գ, Բ, Ա-ի փոխարեն համապատասխանաբար նշված է Զ, Ե, Բ տարի (էջ 151բ, էջ 119ա)։ №№ 837, 835, 8459-ում չի պահվել «թէ որ դարձուցանէ զմոլորեալն» հատվածը, իսկ առաջին երկու ձեռագրերը «Բ ամ ընդ ձեռամբ... տրաւք և ար-տասուաւք» հատվածի փոխարեն ունեն «և Ա ամ ընդ ձեռամբ, Բ ամ մտեալ յեկեղեցի ար-տասուաւք և ողորմութեամբ» (էջ 74աբ, էջ 132բ—133ա, էջ 100բ)։*

Հոդ. ԾԲ, էջ 115: *Բնագրի «անվաւեր» բառը №№ 837, 835, 8459-ում պահվել է աղավաղ-ված՝ «աւեր» ձևով (էջ 74բ, էջ 133ա, էջ 101ա)։ «Առնւանկ» բառը №№ 659, 657-ում պահ-վել է «անգ և առ» ձևով։ Այստեղ չի պահվել «եւ կինն ում կամիցի առն լիցի», «և եթէ բա-ժանեսցի» հատվածները (է 151բ, էջ 119ա)։*

Հոդ. ԾԳ, էջ 115: *Բնագրի «եղիցի... երեքկնոյն» հատվածը, №№ 837, 835, 8459-ում դրված է «ապաշխարութիւն նորա Գ է քան զայլոցն» ձևով (էջ 74բ, էջ 133բ, էջ 101բ)։*

Հոդ. ԾԶ, էջ 115: *«Ի քահանայութենէն»-ի փոխարեն №№ 837, 835, 8459-ում կարդում ենք «ի կարգէն» (էջ 74բ, էջ 133բ, էջ 101բ)։*

Հոդ. ԾԸ, էջ 116: *Տարբեր է միայն պատժաչափը՝ «Ա ամ» (№№ 659, էջ 152ա, 657, էջ 119բ, 837, էջ 75ա, 835, էջ 133բ, 8459, էջ 101բ)։*

Հոդ. ԾԹ, էջ 116: *№№ 837, 835, 8459-ում չեն պահվել «և կանոնս լուծանէ», «և եղիցի նզովեալ» հատվածները (էջ 75ա, էջ 133բ, էջ 101բ)։*

Հոդ. Կ, էջ 116: *Եկեղեցու սպասների հափշտակման են վերաբերում նաև ԾԺԶ և ՄԻԵ հոդվածները։ Թե ի՞նչ չափով էր կյանքում տարածված այս երևույթը, որի պատճառով անհրաժեշտություն էր զգացվել նման սահմանումների, հաստատ բան դժվար է ասել. սակայն XVIII դարի մի հիշատակարանում, գրված Կարսում, պատմվում է տեղի քահանաներից մեկի նման արարքի մասին։ Բերում ենք այդ հիշատակարանը. «Փառք... յանկ ելեալ կատարեցաւ սուրբ մատեանս որ կոչի Մաշթոց, ձեռամբ յոգնամեղ Երեմիայ սեթևեթ քաչի... ի քաղաքս Ղարս կոչեցելոյ, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս, ի թվականիս Հայոց ՌՃԿԳ (1714), ի մայիսի ԺԵ (15)..., ի հայրապետութեան տեառն Աղէկսանդր սրբազան կաթողիկոսի սուրբ*

*իշման տեղւոյն և առաջնորդութեան սուրբ վանացն Յով[հ]աննու, որ այժմ ասի Ղօշավանք, խաչատուր վարդապետի, և ծերումս քաղաքիս եկեղեցի, որ յանուն Սուրբ Աստուածածնի կառուցեալ կայ ի վերայ Ախուր[ե]ան գետոյ։ Եւ էաք միաբան ի մէջ Սուրբ Աստուածածնիս քահանայք և բազում սարկաւագունք, զարդարեալ եկեղեցիս մեր ամենայն զարդուց՝ պայծառ զգեստուց և զանազան խաչերովք և նազելի սկիհներով, և ուրախ լինէաք հանապազ և գոհութեամբ փառաւոր առնէաք զԱստուած ի վերայ զարդուցն և պայծառութեան սուրբ եկեղեցոյն։ Եւ վասն բազում ծովացեալ մեղաց իմոց մինն ի քահանայիցն օցտեալ ի դասուցն քահանայական և եղև սատանայ որպէս Կայեն եղբայրասպան և որպէս Յուդայն տիրասպան և հայրասպան, որպէս Քրիստոս ինքն ասաց սուրբ առաքելոցն, թէ «Դուք ամենեքեանդ սուրբ էք, բայց ոչ ամենեքեանդ. զի մինդ ի ձէնջ սատանայ է» [Յովհ. Զ, 71]։ Որպէս Յուդայ ի մէջ սուրբ առաքելոցն որոշեցաւ և գնացեալ մատնեաց զվարդապետն և զտէրն իւր Հրէից վասն Լ արծաթի վաճառեաց։ Սոյն ի սմին Յուդային նմանեալ զԾզեկկիէլ չքահանայ անուն ձեռս արկեալ սուրբ եկեղեցոյն և բազում պատուական խաչեր և զանազան սկիհք գողացեալ անօրէնն և տիրասպան աւազակն այն և արար դասք քահանայիցն որպէս մի ումն ի յաւազակաց։ Եղաք ծաղր և նախատինք միջի ժողովրդեանն և ի մէջ հեթանոսաց։ Այսպիսի խոր խոցեաց զմեզ, և ինքն կորեաւ, որպէս սատանայ և երբմանի կայ որպէս Կայեն և ոչ ունի դադարումն մինչև վրէժն առցէ ի տեառնէն Աստուծոյ։ Բայց գոհութիւն Աստուծոյ որ կրկին խայտառակեցաւ և յայտնեաց Աստուած իւր չարութիւնն, զոր գործեաց և զերծեալ անմեղքն ազատեցան։ Այս ամենայն որ եղև, եղբայր, վասն ծովացեալ մեղաց իմոց էր, որ այսպիսի բան տեսի աչօք իմօք, որք կարգաւորքս ծաղր և նախատինք եղաք ի մէջ հերձուածողաց թշնամեաց մերոց։ Եւ յետ այսր ամենայնի եղեալ մեծ նշանք ի քաղաքիս մերում, վասն չարութեան մարդկան, որպէս ժամանակին Նոյեան արդարոյն՝ որ ջրհեղեղաւ ապականեաց զաշխարհս ամենայն։ Նոյն նշանն ցոյց ետ Աստուած քաղաքիս, վասն անդարձ մեղաւորաց, թէ այսպէս յական թօթափելն կորուսանեմ զաշխարհս ամենայն, վասն մեղաց մարդկան, որպէս և եղև իսկ, որ յարուցմունք հեղհեղաց և անչափ բարձրացեալ գետն Ախուր[ե]ան, որ Բ կամուրջն հիմն ի արեգակն թաւալեցուցեալ և բազում ջրաղացք յաղօրիսն ի հիմանց քանդեալ, որպէս և նշմարանք տեղացն ոչ երևէր։ Եւ ի բազմութենէ հեղեղին ելեալ շրջեալ ջուրն ի վերայ պարսպի քաղաքիս և մտեալ ի ներս՝ բազում տունս աւերեաց մինչև ԴԾ տուն և խանութք բազում։ Շատ մեծ աւերումն եղև, վասն մեղաց իմոց։ Այս եղև թվին ՌՃԿԳ (1714) ամին, ամսեանն ապրիլի երեքն յաւուրն...» (№ 4608, էջ 114բ—117ա)։*

Ծնթ. ԿԱ, էջ 116: *№№ 837, 835, 8459-ում չի պահվել «հրապարակէ եւ» հատվածը (էջ 75ա, էջ 133բ, էջ 102ա)։ №№ 659, 657-ում այս հոդվածը դրված է հաջորդի տեղը և ընդհակառակը։*

Ծնթ. ԿԲ, էջ 116: *№№ 837, 835, 8459-ում չի պահվել «վիճակս» բառը։ Բնագրի «ի տունս»-ի փոխարեն №№ 659, 657-ում պահվել է «ի պատիւս» (էջ 152ա, էջ 119բ)։*

Ծնթ. ԿԳ, էջ 116: *Պատժաչափը №№ 659, 657-ում պահվել է «Լ աւր» (էջ 152բ, էջ 119բ)։ №№ 837, 8459-ում վերջին՝ «Աւետարան... խորհուրդն» հատվածի փոխարեն պահվել է «ոչ իշխէ Աւետարան կարդալ կամ պատարագել» (էջ 75ա, էջ 133բ, էջ 102ա)։*

Ծնթ. ԿԷ, էջ 117: *№№ 837, 835, 8459-ում հոդվածի սկիզբն ունի այլ շարադասություն. «Քահանայ որ զխոստովանութիւն մարդոյ չէ առեալ» (էջ 75բ, էջ 134ա, էջ 102բ)։*

Ծնթ. ԿԸ, էջ 117: *Բնագրի «վարանի» բառի փոխարեն այստեղ օգտագործած ձեռագրերն ունեն «վատնի» (№№ 837, էջ 75բ, 835, էջ 134ա, 8459, էջ 102բ) և «վտանգի» (№№ 659, էջ 153ա, 657, էջ 119բ)։*

Ծնթ. ԿԹ, էջ 118: *Այս հոդվածը չի պահվել №№ 837, 835, 8459-ում և նշված է «գրած է» (էջ 75բ, էջ 134ա, էջ 103ա)։ Հոդվածն այսպիսի տեսք ունի №№ 659, 657-ում. «Այր որ թողու զկին իւր վասն Աստուծոյ կամ վասն կրանաւորութեան՝ նզովեալ է» (էջ 153ա, էջ 119բ)։*

Ծնթ. Հ, էջ 118: *№№ 837, 835, 8459-ում կարդում ենք «մսատի» և «հաւատոյ պահէ ընդունելի է» փոխանակ «մսահատի» և «հաւատոց է պահեսցէ» (էջ 75բ—76ա, էջ 134աբ, էջ 103ա)։*

Ծնթ. ՀԱ, էջ 118: *№№ 837, 835, 8459-ում բնագրի «Զ-երորդն»-ի փոխարեն կարդում ենք «Զ պորտն», իսկ «տուգանս տացէ... զինչ կամեսցի» փոխարեն՝ «եկեղեցւոյն տուգանս տացէ և Դ ամ ապաշխարէ, բայց վարդապետն գիտէ» (էջ 76ա, էջ 134բ, էջ 103ա)։ №№ 659, 657-ում չի պահվել «Զ-երորդն և» բառը։*

Ծնթ. ՀԳ, էջ 119: *№№ 837, 835, 8459-ում բացակայում է «յարդար» բառը։ №№ 659, 657-ում չի պահվել այս հոդվածը։*

Հոդ. ՀԴ, էջ 119: №№ 837, 835, 8459-ում այս հոդվածը դրված է ՀԵ հոդվածի տեղը և ընդհակառակը: Բնագրի «անգոսնեսցէ» բառը նշված ձեռագրերում փոխարինված է «անարգէ» բառով (էջ 76բ, էջ 134բ, էջ 103բ): №№ 659, 657-ում չի պահվել «յուխտէ եկեղեցւոյ» հատվածը: Այս ձևով հոդվածը ավելի է մոտենում Գանգրայի կանոնախմբի Դ հոդվածին:

Հոդ. ՀԵ, էջ 119: Բնագրի «քահանային» բառը №№ 837, 835-ում փոխարինված է «պատարագին» բառով (էջ 76աբ, էջ 134բ):

Հոդ. ՀԶ, էջ 119: №№ 659, 657-ում բնագրի «և զաւուրս և զշաբաթս» բառերը դրված են այսպես. «և զուրբաթ և զշաբաթ», իսկ «և ոչ գործէ յաւուր շաբաթու» հատվածը նշված ձեռագրերում չի պահվել (էջ 153բ, էջ 119բ):

Հոդ. ՀԸ, էջ 120: №№ 659, 657 ձեռագրերում այս հոդվածը չի պահվել: №№ 837, 835, 8459-ում բնագրի «մարտիրոսաց» բառը փոխարինված է «մեռելոց» բառով (էջ 76բ, էջ 135ա, էջ 104ա):

Հոդ. Ձ, էջ 120: №№ 837, 835, 8459-ում այս հոդվածը չի պահվել և նշված է. «գրած է» (էջ 77ա, էջ 135ա, էջ 104ա):

Հոդ. ՁԱ, էջ 120: №№ 837, 835, 8459-ում հոդվածն այսպիսի շարադասություն ունի. «Որ առողջ է մարմնով [և] յաւուր կիրակէի յառաջ քան զարձակիլ ժամուն ճաշեսցէ՝ նզովեալ լիցի և Ա ամ ապաշխարէ» (էջ 77ա, էջ 135ա, էջ 104աբ):

Հոդ. ՁԲ, ՁԳ, ՁԴ, էջ 120—121: Այս հոդվածները չեն պահվել №№ 837, 835, 8459 ձեռագրերում, այլ նշված է «գրած է» (էջ 77ա, էջ 135ա, էջ 104բ): ՁԳ հոդվածի «ի Զատկին»-ի միջև №№ 659, 657-ում պահվել է «մեծի», այսպես «ի մեծի Զատկին»: Նույն ձեռագրերում պահվել է ՁԴ հոդվածի պատժաչափը՝ «Ա ամ» (էջ 154բ, էջ 120ա):

Հոդ. ՁԵ, էջ 121: Բնագրի «կայտառն» բառը չի պահվել №№ 837, 835, 8459 ձեռագրերում, իսկ «գողոնաբար» բառը դրված է «գաղանաբար» ձևով (էջ 77ա, էջ 135բ, էջ 104բ). այս բառը №№ 659, 657 ձեռագրերում դրված է «գաղանաբեկ» ձևով (էջ 154բ, էջ 120ա):

Հոդ. ՁԷ, էջ 122: Այս հոդվածը №№ 837, 835, 8459-ում դրված է ՁԸ հոդվածի տեղը և ընդհակառակը: Բնագրի «անասուն մատուցանել ի նուէր Տեառն» հատվածը №№ 837, 835, 8459-ում դրված է «յանասնոց նուէրս տալ Աստուծոյ» (էջ 77բ, էջ 135բ, էջ 105ա) ձևով:

Հոդ. ՁԸ, էջ 122: №№ 837, 835, 8459 ձեռագրերում չի պահվել «տուժեսցի» բառը, իսկ «հրդեհիցէ» բառը փոխարինված է «այրէ» բառով (էջ 77բ, էջ 135բ, էջ 105ա):

Հոդ. ՁԹ. էջ 122: Այս հոդվածը չի պահվել №№ 837, 835, 8459-ում և նշված է «գրած է» (էջ 77բ,էջ 135բ, 105ա):

Հոդ. Ղ, էջ 122: №№ 837, 835, 8459-ում չի պահվել «ընդ ունկնդիրս» հատվածը, «խանձել» բառը այս ձեռագրերում պահվել է «խուզել» ձևով (էջ 77բ, էջ 135բ, էջ 105ա): Պատժաչափը առաջին դեպքում №№ 659, 657-ում նշված է երկու տարի (էջ 155ա, էջ 120ա):

Հոդ. ՂԱ, էջ 122—123: №№ 837, 835, 8459-ում չի պահվել «զան» և «կացցէ» բառերը, իսկ «լինիցի յղի յանէ» հատվածը դրված է «յղի է յամուսնոյ» ձևով, «սպասեսցէ»-ն՝ «սպասաւորէ», «ըստ խստութեան»-ը՝ «խստութեամբ», «հաւասարեալ աղաւթից»-ը՝ «տրաւք տնանգաց և աղաւթիւք (№ 835-ը չունի աղաւթիւք)» (էջ 77բ—78ա, էջ 136ա, էջ 105աբ):

Հոդ. ՂԲ, էջ 123: Այս հոդվածը չի պահվել №№ 837, 835, 8459-ում և նշված է «գրած է» (էջ 78ա, էջ 136ա, էջ 105ա):

Հոդ. ՂԴ, էջ 123: Հոդվածի շարադասությունը №№ 837, 835, 8459 ձեռագրերում մի փոքր այլ է. ահա այն. «Քահանայ որ վասն իւր վատ գործոցն յեպիսկոպոսէն հալածեալ երթայ յայլ վիճակ և անդ քահանայութիւն առնէ՝ զմկրտեալն և զպսակեալն ի նմանէ ընդունել արժան է, և զնա յԱստուծոյ թողուլ» (էջ 78ա, 136ա, 105բ—106ա): №№ 659, 657 ձեռագրերում հոդվածի վերջին մասը՝ բոլորովին տարբեր է եղածից, ահա ամբողջ հոդվածը. «Քահանայ յաղագս վատ գնացիւք հալածեալ յեպիսկոպոսէն և յայլ վիճակ զքահանայութիւնն առնիցէ՝ զմկրտեալն և զպսակեալն արժան է նորոգել և զվրէժխնդրել» (էջ 155բ, էջ 120բ):

Հոդ. ՂԶ, ՂԷ, էջ 124: ՂԶ հոդվածի «իգացեալսն» բառին F ձեռագրի 174ա էջի աջ լուսանցքում տրված է հետևյալ բացատրությունը. «Վասն կանանց ասէ, որ շօշափմամբ զիրեարս ախտից հոսումն և գիջութիւնս գործեն»: Այս երկու հոդվածները չեն պահվել №№ 837, 835, 8459 ձեռագրերում և նշված է «գրած է» (էջ 78բ, էջ 136բ, էջ 106ա):

Հոդ. ՂԸ, էջ 124—125: №№ 837, 835, 8459-ում մի փոքր տարբեր է հոդվածի սկզբի մասը. «Իսկ եթէ մահ հանդիպի ոչ կամաւ մարդոյ և ոչ ոխակալութեամբ» (էջ 78բ, էջ 136բ, էջ 106ա), իսկ №№ 659, 657-ում չի պահվել «և ի զղջումն գայ» հատվածը (էջ 156ա, էջ 120բ):

№№ 837, 835 ձեռագրերում ՂԸ համարի տակ նշված է «գրած է» բայց թե ի՞նչ հոդված, համարը չի բերված, մեզ համար չպարզվեց, որովհետև ՂԸ հոդվածը բերված է։

Հոդ. ՂԹ, էջ 125: Հոդվածի սկիզբը № 837, 835, 8459-ում այսպես է «Իսկ ոմանք եթէ երթան», իսկ հոդվածի վերջին՝ «իսկ պոռնիկն յուրկանոց... արժանի յետին թոշակին» հատվածը չի պահվել (էջ 78բ, էջ 136բ, էջ 106բ)։

Հոդ. ԾԱ, էջ 126: №№ 837, 835, 8459 ձեռագրերում չի պահվել «կացցէ» բառը, իսկ «տրաւք և արտասուաւք»-ի փոխարեն ունեն «արտասուօք և ողորմութեամբ» (էջ 79ա, էջ 137ա, էջ 107ա)։

Հոդ. ԾԳ, էջ 126: Հոդվածը №№ 837, 835, 8459 ձեռագրերում այսպես է. «Ծնօղք որ ոչ խրատեն զորդիս իւրեանց երկիւղիւն Աստուծոյ, այլ ակնառութեամբ սիրեն՝ նզովեալ եղիցին» (էջ 79ա, էջ 137ա, էջ 107ա)։

Հոդ. ԾԴ, էջ 126: Բնագրի «ակնառութեամբ» բառը №№ 659, 657-ում փոխարինված է «ըստ երեսաց» բառերով (էջ 156բ, էջ 120)։

Հոդ. ԾԵ, էջ 126: Բնագրի «յափշտակեն» և «հրամանաւ» բառերը №№ 837, 835, 8459 ձեռագրերում համապատասխանաբար դրված է «գողանան» և «իշխանութիւն եղիցի» բառերով։ (էջ 79աբ, էջ 137ա, էջ 107ա)։

Հոդ. ԾԸ, էջ 127: Հոդվածի սկզբի շարադասությունը №№ 837, 835, 8459 ձեռագրերում այսպես է. «Քահանայ մի՛ վայրապար ընդ բանիւ արասցէ զոք» (էջ 79բ, էջ 137բ, էջ 107բ)։

Հոդ. ԾԹ. էջ 127: №№ 659, 657-ում չի պահվել «աշխարհական» բառը, իսկ «ապտակէ» բառի փոխարեն՝ ունեն «անարգէ» (էջ 157ա, էջ 121ա)։ №№ 837, 835, 8459-ում էական տարբերությունն այն է, որ «եթէ Բ» բառերի միջև ունեն «վնաս լիցի ժողովրդեանն» բառերը (էջ 79բ, էջ 137բ, էջ 108ա)։

Հոդ. ԾԺԱ, էջ 127: №№ 659, 657-ում չի պահվել հոդվածի վերջին՝ «եւ մի՛ դպիրն ընդ սարկաւագին» հատվածը (էջ 157ա, էջ 121ա)։ № 657-ում այս հոդվածը միացված է ԾԺ հոդվածին և այստեղ էլ չի պահվել «սարկաւագն» բառը։

Հոդ. ԾԺԲ, էջ 128: №№ 837, 835, 8459-ում չի պահվել հոդվածի վերջին՝ «այլ պարապել իւրեանց անձանց» հատվածը (էջ 80ա, էջ 137բ, էջ 108ա)։

Հոդ. ԾԺԳ, էջ 128: Բնագրի «իշխեսցէ ձէթ» բառերի միջև №№ 837, 835, 8459-ում պահվել է «ի մկրտութեան» բառը։ Այս ձեռ-երում չի պահվել հոդվածի վերջին «այլ մկրտել... հանդիպի» հատվածը (էջ 80ա, էջ 137բ, էջ 108ա)։

Հոդ. ԾԺԴ, էջ 128: Հոդվածի շարադասությունը №№ 837, 835, 8459-ում շեղվում է եղածից. «Քահանայ մի՛ իշխեսցէ զկինն կնքաւոր առնել կամ թողուլ տեսանել զմկրտութիւնն» (էջ 80ա, էջ 137բ—138ա, էջ 108աբ)։

Հոդ. ԾԺԶ, էջ 128: №№ 659, 657-ում հոդվածը շարունակվում է «տուժեսցի երեքկին» բառերով (էջ 157բ, էջ 121ա)։

Հոդ. ԾԺէ, էջ 128—129: №№ 837, 835, 8459 ձեռագրերում այս հոդվածի համար նշված է «գրած է» (էջ 80ա, էջ 138ա, էջ 108բ), և թվում է թե, մյուս դեպքերի նման այդ գրելուց հետո, հոդվածը չի բերվելու, սակայն բերվում է։ Նշված ձեռագրերում չի պահվել «կամ ի սարկաւագաց» հատվածը։

Սկսած այս հոդվածից բնագիրն ընդհատված է և մինչև վերջ չի պահվել № 657 ձեռագրում։

Հոդ. ԾԺԸ, էջ 129: № 659-ի հոդվածում առկա են զգալի շեղումներ, այն բերում ենք ամբողջությամբ. «Այր կամ կին երկու աւրեայ սուրբ յանկողնոց անմեղութեամբ մերձեսցին ի սուրբ խորհուրդն, ապա եթէ անապաշխար և անսուրբ [իցէ] և յանդգնեսցի՝ եղիցի նզովեալ և զՅուդայի պատիժսն կրեսցէ» (էջ 157բ—158ա)։ № 8459-ում չի պահվել «Քրիստոսի... Յուդայի» հատվածը (էջ 108բ)։

Հոդ. ԾԺԹ, էջ 129: Հոդվածի շարադասությունը №№ 847, 835, 8459-ում տարբեր է եղածից. «Կին տեռատես կամ ծնեալ մի՛ իշխեսցէ մերձենալ ի սուրբ խորհուրդն կամ յեկեղեցի մինչև սրբեսցին» (էջ 80բ, էջ 138բ, էջ 109ա)։

Հոդ. ԾԻ, էջ 129: № 659-ում չի պահվել բնագրի «մտցէ ի սուրբ եկեղեցի և համարձակ» հատվածը (էջ 158ա), իսկ №№ 837, 835, 8459-ում «եւ համարձակ... անխտիր» վերջին հատվածի փոխարեն գրված է «և հաղորդի արժան է» (էջ 81ա, էջ 138բ, էջ 109բ)։

Հոդ. ԾԻԱ, էջ 129: №№ 837, 835, 8459-ում չի պահվել «ժամանակին» բառը, իսկ «զկարգ»-ի փոխարեն ունեն «զմեղս» բառը (էջ 81ա, էջ 138բ, էջ 109աբ)։

Հոդ. ՃԻԲ, էջ 130: Էական տարբերությունն այն է, որ «ի ստինս» բառը № 659-ում փոխարինված է «ի սնունդ»բառով (էջ 158ա)։

Հոդ. ՃԻԳ, էջ 130: № 659-ում չի պահվել «եւ ելանել ի հրապարակս» հատվածը (էջ 158բ)։

Հոդ. ՃԻԵ, էջ 130: №№ 837, 835, 8459-ում սկիզբը պահվել է այսպես. «Ոչ է արժան կնոջ աւթեակս առնել», իսկ «յանդգնի» բառն այստեղ դրված է «ոչ լսէ» ձևով (էջ 81աբ, էջ 139ա, էջ 109բ—110ա)։

Հոդ. ՃԻԶ, էջ 130: Հոդվածի սկիզբը №№ 837, 835, 8459-ում այսպես է «Չէ աւրէն կնոջ նայել յանասունս», իսկ «ոք համարձակի»-ի փոխարեն ունեն «ոչ լսէ» (էջ 81բ, էջ 139ա, էջ 110ա)։ № 659-ում «մատչել և նայել... կամ համբուրել» հատվածի փոխարեն կարդում ենք. «հայել ի խառնակութիւն անասնոց» (էջ 158բ)։

Հոդ. ՃԻԷ, էջ 130: Բնագրի «ուրոյն» բառի փոխարեն №№ 837, 835, 8459-ում դրված է «ի զատ»։ Այստեղ հոդվածի վերջին մասը մի փոքր այլ է. «և ցած կալ և հարկիս առնել հիւրիցն և եթէ լրբէ (№ 835-ում, լրբի) չի (№ 835-ում՝ ոչ, № 8459-ում՝ չը) լսէ նզովեսցի (№ 8459-ում՝ նզովեալ լինի)» (էջ 81բ, էջ 139ա, էջ 110ա)։ № 659-ում «պատս ունել եկեղեցւոյն» հատվածի փոխարեն կարդում ենք «աղաւթել» (էջ 158բ)։

Հոդ. ՃԻԸ, էջ 131: Մի փոքր տարբեր է շարադասությունը. «Ոչ է արժան կնոջ այլակերպել զինքն յաւուր տօնի և ապա երթալ յեկեղեցի, որպէս ի պոռընկանոց. և եթէ յանդգնի ոք՝ նզովեսցի, և քահանայն արգելցէ զնա ի մարմնոյ Տեառն» (№№ 837, էջ 81բ, 835, էջ 139ա, 8459, էջ 110ա)։ № 659-ում չի պահվել «որպէս ի պոռնկոց» հատվածը։

Հոդ. ՃԻԹ, էջ 131: № 8459-ում «հնձան» բառը դրված է «հեծան» ձևով (էջ 110բ)։ Այս և №№ 837, 835 ձեռագրերում չի պահվել բնագրի «կամ առնապէս վարել ի վար եւ ի հունձ» հատվածը (էջ 81բ, էջ 139ա)։

Հոդ. ՃԼԱ, էջ 131—132: №№ 837, 835, 8459-ում բնագրի «յանցեաւ»-ի փոխարեն կարդում ենք. «մեղանչէ», այստեղ չի պահվել «իմոյ եւ զանգիտութեան իմոյ մի' յիշէր» հատվածը, իսկ վերջին հատվածն այսպես է. «ապա թէ ոչ լսեն պարտ է (№ 835-ում՝ պարտապան է) յեպիսկոպոսէն նոքա պատիժս կրել» (էջ 82ա, էջ 139բ, էջ 111ա)։ № 659-ում այս հոդվածը միացված է նախորդին։ Այստեղ չի պահվել «առաջի Տեառն... իմոյ մի յիշէր» հատվածը, իսկ հոդվածի վերջին մասը բավական տարբեր է. «և ծնաւղքն որ ոչ զգուշացան մի' թողցէ քահանայն առանց պատժոց» (էջ 159ա)։

Հոդ. ՃԼԲ, ՃԼԳ, ՃԼԴ, ՃԼԵ, էջ 132—133: №№ 837, 835, 8459-ում այս հոդվածները չեն պահվել և նշված է «գրած է» (էջ 82ա, էջ 139բ, էջ 111ա)։ №№ 837, 835-ում միայն ՃԼԵ հոդվածի համար չի նշված «գրած է»։ ՃԼԲ հոդվածի «երկկնոյն» բառը № 659-ում փոխարինված է «երեքկնոյ» բառով, իսկ «եւ սրբեալ ի մեղաց... արասցեն կանայս» չի պահվել (էջ 159բ)։ ՃԼԵ հոդվածի «թաղել զդիս... ի քայլ» հատվածը № 659-ում դրված է այսպես «ի հին դիրս թաղել զմեռելս» (էջ 159բ)։

Հոդ. ՃԼԶ, էջ 133: №№ 837, 835, 8459-ում բնագրի «մեղու» բառը դրված է «մեղրոյ» ձևով, «կտակարանացն»-ը՝ «ի սուրբ գրոցն», «ձիթոյ»-ն՝ «ի մեռոնէն», իսկ «խորհրդոյն» բառը չի պահվել (էջ 82ա, էջ 139բ, էջ 111ա)։

Հոդ. ՃԼԷ, էջ 133—134: № 659-ում չի պահվել «գլարակայս» բառը, իսկ մեջբերումը համառոտ է։ №№ 837, 835, 8459-ում բնագրի «աշխարհիս գնել» բառերի միջև պահվել է «ի հունձս ի (№ 8459-ում՝ չիք ի)», իսկ «ի զուր»-ը փոխարինված է «սուտ է» բառով (էջ 82բ, էջ 140ա, էջ 111բ)։

Այս հոդվածը վերաշարադրումն է Հովհ. Մանդակունու կանոնախմբի Դ հոդվածի (տե՛ս և հմմտ. վերը, էջ 264—265)։

Հոդ. ՃԼԸ, էջ 134: №№ 837, 835, 8459-ում հոդվածը բավական համառոտ է. «Չէ արժան քահանայի հեղուլ զարիւն մարդոյ և կամ (№ 835-ում՝ չիք կամ) զանասնոյ» (էջ 82բ, էջ 140ա, էջ 112ա)։ Հմմտ. վերևում Հովհ. Մանդակունու կանոնախմբի Ե հոդվածի հետ (էջ 265)։

Հոդ. ՃԼԹ, էջ 134—135: Բնագրի «և ապա աւրհնել... յորդորել ի հաւատս» հատվածը №№ 837, 835, 8459-ում դրված է այսպես. «և մկրտել զնոսա և աւր ըստ աւրէ ի հաւատսն յորդորել» ձևով (էջ 83ա, էջ 140բ, էջ 112բ)։

Հոդ. ՃԽ, էջ 135: Այս հոդվածը № 659-ում պահվել է այսպես. «ՃԼԶ. Թէ ոք վասն ընչից ամուսնանայ ընդ ուրուկս կամ ընդ մարմնաղեղծի՝ նզովեալ լիցի» (էջ 160բ)։

Հոդ. ՃԽԲ, էջ 135: Հոդվածի առաջին տողը №№ 837, 835, 8459-ում այսպես է. «Կին քահանային եթէ Կ ամաց ի վեր վախճանի», իսկ «երթալ առ ուխտականս... մինչև ցվախճան»

հատվածը՝ «չէ արժան կալ յաշխարհական կարգի, այլ պարտ է երթալ ի վանս և անդ աղաւթել մինչ ի վախճան» (էջ 83բ, էջ 140բ, էջ 112բ—113ա)։

Հոդ. ՃԽԳ, էջ 135—136: Բնագրի «հաս սուրբ» բառերի միջև №№ 837, 835, 8459-ում գտնում ենք «քահանայի և կամ» հատվածը (էջ 83բ, էջ 140բ, էջ 113ա)։

Հոդ. ՃԽԴ, էջ 136: Բնագրի «ի մարդն նոքա... պղծեն և անասնիւ» հատվածը №№ 837, 835, 8459-ում պահվել է այսպես. «ի մարդս նոքա բերանով հայհոյեն և պղծեն զմարդ և զանասուն» (էջ 83բ—84ա, էջ 141ա, էջ 113ա)։ № 659-ում հոդվածի «նոքա եւ զմարդ պղծեն և անասնիւ» հատվածի փոխարեն նշված է «և անասնանման թշնամանեն», իսկ վերջին մասն այստեղ պահվել է այսպես. «բայց կամք առաջնորդին եղիցի» (էջ 161ա)։

Բնագրի «եւ անասնիւ» բառը իմաստային առումով այստեղ անհարիր է, մանավանդ, որ հոդվածի վերջում դարձյալ ասվում է, «կցորդ են այնոցիկ որ ընդ անասունս պղծեցան»։ Այս հոդվածը համառոտված և վերաշարադրված է Հովհ. Մանդակունու ԽԴ կանոնախմբի Զ հոդվածից (տե՛ս վերևում, էջ 265—266), ուր բավական պարզ է ասված։ «Եւ անասնիւ» բառը թե ինչպես է ընկել բնագրում, դժվար է ասել։ Գիտա-քննական բնագրի կազմման համար օգտագործված բոլոր ձեռագրերն ունեն այն։ Թուցե այդ սկզբնապես գրված է եղել լուսանցքում, համապատասխան հատվածին որպես բացատրություն, իսկ հետագայում՝ նոր ընդօրինակությունների ժամանակ անցել է բնագրին։

Հոդ. ՃԽԵ, էջ 136: № 659-ում չի պահվել «եւ ոչ անկան ի գործն» հատվածը։ Մյուս երեք ձեռագրերում հոդվածն ունի այսպիսի ձև. «Որ յաւժարեն յարուագիտութեան (№ 835-ում՝ յարուագիտութիւն) և խրատով այլոց զերծան նոքա՝ կցորդ են գործելոցն, ապաչ վասն այն որ չարն ոչ կատարեցաւ է ամ ընդ ունկնդիրսն և Ա ամ ընդ ձեռամբ։ Նոյն կանոն և նոցա է որ ընդ անասունսն կամեցան պղծել» (№№ 837, էջ 84ա, 835, էջ 141ա, 8459, էջ 113բ)։

Հոդ. ՃԽԶ, էջ 136: Այս հոդվածը № 659-ում գրեթե տարբեր բան է. «Որք պոռընկին ընդ ուուրս ապաշխարութիւն զանհաւատին դիցեն» (էջ 161բ)։ №№ 837, 835-ում բացակայում է «և ընդ ուրուկս» հատվածը (էջ 84ա, էջ 141ա)։ № 8459-ում այսպիսին է հոդվածը. «Որ պոռընկի ընդ գողոյ կցէ այնոցիկ որ ընդ անասունսն պոռնկին (էջ 113բ)։

Հոդ. ՃԽԷ, էջ 137: №№ 837, 835, 8459-ում չի պահվել այս հոդվածը և նշված է «գրած է» (էջ 84ա,էջ141ա, էջ 113բ)։

Հոդ. ՃԽԸ, էջ 137: № 659-ում չի պահվել «վասն առաջնորդին յորդորելոյ» (էջ 161բ), իսկ №№ 837, 835, 8459-ում՝ «եւ հարումն» հատվածները։ Վերջին երեք ձեռագրերում բնագրի «առաջնորդին յորդորելոյ» հատվածը պահվել է «խրատի առաջնորդաց» (№ 835-ում՝ յառաջնորդաց)» (էջ 84ա, էջ 141աբ, էջ 113բ—114ա)։

Հոդ. ՃԽԹ, էջ 137: Բնագրի «Այր թէ յարեցաւ... տանել ի գլուխ զգործն» հատվածը № 659-ում պահվել է համառոտ. «Այր և կին որ երդնուն առ միմեանս» (էջ 161բ)։ №№ 837, 835, 8459-ում «գիտելոյ» բառը դրված է բնագրի «իւր» (ծնուղացն) բառի փոխարեն (էջ 84բ, էջ 141բ, էջ 114ա)։ №№ 837, 835-ում նշված է. «ՃԽԹ գրած է», բայց բնագրի ՃԽԹ և ՃԾ հոդվածների միջև այլ հոդված չկա։

Հոդ. ՃԾ, էջ 137—138: № 659-ում չի պահվել բնագրի «երկիցս եւ երիցս եւ» հատվածը (էջ 162ա)։ №№ 837, 835, 8459-ում բնագրի «սրտին» բառի փոխարեն դրված է «սէրն» բառը, այստեղ չի պահվել նաև «յաւժարութիւն» բառը (էջ 85ա, էջ 141բ, էջ 114բ)։

Հոդ. ՃԾԱ, էջ 138: Բնագրի մինչև «կամ հայր ընդ դստեր» հատվածը № 659-ում կարդում ենք «թէ պոռընկի որդի ընդ մաւր» (էջ 162ա), իսկ պատժաչափը «Ե ամ»-ի փոխարեն նշված է. «Զ ամ» (էջ 162բ)։ Մյուս երեք ձեռագրերում տարբերությունը զգալի է, ուստի հոդվածը բերում ենք ամբողջությամբ. «Բազում են փորձանք (№ 8459-ում՝ փորձ) և խաբեութիւնք սատանայի և բազմադիմի կորուսանէ զմարդն, եթէ ոք պոռնկի ընդ մօր կամ հայր ընդ դստեր կամ քոյր ընդ եղբօր, զայնպիսին առաջին աւրէնքն այրել հրով հրամայեաց, բայց յաղագս մարդասիրութեանն Աստուծոյ, խիստ և դառնութեամբ առ գողիսն երթալ և անդ ապաշխարել մինչև ի վախճան» (№№ 837, էջ 85ա, 835, էջ 142ա, 8459, էջ 114բ—115ա)։

Հոդ. ՃԾԲ, էջ 138—139: Այս հոդվածը №№ 659, 837, 835, 8459-ում բաժանված է երկու մասի և դրված առանձին համարների տակ՝ № 659-ում ՃԽԹ, իսկ մյուսներում՝ ՃԾԳ։ Այս բաժանումը սկսվում է բնագրի «երեքկին եւ չորեքկին» հատվածից։ Բնագրի «պոռնկի»-ն №№ 837, 835, 8459-ում փոխարինված է «ըմբռնի» բառով։ «Ամուսնանալ եւ յարակայ պոռնկել» հատվածը №№ 837, 835-ում դրված է. «Կին առնուլ և յերկար պոռնկել» ձևով (էջ 85ա, էջ 142ա)։ Այս երեք ձեռագրերում մի փոքր այլ է շարադրված բնագրի «երեքկին և չորեքկին... գալ ապաշխարութեամբ» հատվածը. «երեք և Դ անգամ լաւ էր պոռընկել նոցա և ապա ապաշխա-

*րութեամբ ի կարգ գալ» (էջ 85բ, էջ 142ա, էջ 115ա)։ № 659-ում չեն պահվել «միանգամ», «ի կարգ» բառերը, իսկ մի երկու տեղ էլ կան այլ ընթերցումներ, օրինակ, բնագրի «թէ պոռնկի յախտ ցանկութեան» և «քան պղծել... զարդարութեան պսակն» հատվածներն այստեղ համապատասխանաբար դարձել են «ըմբռնեցաւ ի ցանկութիւն» և «քան յար պղծեն զիւրեանց ոգիսն» (էջ 162բ)։*

Հոդ. ՃՄԳ, էջ 139: *№№ 837, 835, 8459 ձեռագրերում չեն պահվել բնագրի «յայտ է թէ» «ընդ ձեռամբ եւ մտեալ յեկեղեցի», «ուրինաց», իսկ № 659-ում՝ «և առանց...յայտ է», «թէ՛ այր և թէ՛ կին» և «եթէ ընդ իւր... մտեալ յեկեղեցի» հատվածները։*

Հոդ. ՃՄԴ, էջ 139—140: *№ 659-ում առկա են զգալի շեղումներ. «ՃՄԱ. Եթէ անհաւատ ընդ հաւատացեալ ամուսնացի և յաւժարեսցի ի հաւատսն, քահանայն փորձելով տացէ զսուրբ մկրտութիւնն և զպսակն. ապա եթէ անարգեսցէ զհաւատն ապաշխարեսցէ, որպէս զայն, որք ընդ անաւրինացն պոռնկին» (էջ 163ա)։ №№ 837, 835, 8459-ում բնագրի «Եւ ապա առցէ... զպսակն աւրհնութեան» հատվածը դրված է այսպես. «և ապա մկրտեն և պսակեն զնա»։ Այս, ինչպես և № 8459 ձեռագրերում չի պահվել հոդվածի վերջին՝ «Ապա եթէ յառաջ... ընդ անաւրինին պոռնկի» հատվածը (էջ 85բ, էջ 142բ, էջ 115աբ)։*

Հոդ. ՃՄԵ, էջ 140: *№№ 837, 835, 8459-ում չի պահվել «վկայութեամբ (№ 8459-ը* ունի) *այնոցիկ որ գիտակն են, եղիցին արժանի» հատվածը։*

Հոդ. ՃՄԶ, էջ 140—141: *Հոդվածի միտքը №№ 837, 835, 8459-ում նույնն է, բայց տարբեր է շարադասությունը. ահա այն. «Եթէ ոք շնացաւ և ծնաւղքն նորա և ընդանիքն նախատեն զնա և նա ի նախատանացն երթայ անգանի ի ջուր և կամ մահու հանդիպի՝ մեղք նորա ի գլուխ դատապարտողացն է որ ոչ զգուշացան աղջկանն։ Ապա թէ ինքն առանց գիտութեան մարդոյ վասն նախատանացն մեռաւ կամաւ, ահա կուտեաց մեղս ի վերայ մեղացն և ի դըժ-րութենէ կենաց ջնջեցաւ անուն նորա։ Քահանայն մի՛ իշխեսցէ երթալ ի դի նորա կամ թաղել զնա կամ պատարագ առնել, բայց վարդապետին է իշխանութիւն» (էջ 86աբ, էջ 142բ—143ա, էջ 116աբ)։*

Հոդ. ՃՄԷ, էջ 141: *№№ 837, 835, 8459-ում հոդվածի «մի՛ իշխեսցէ քահանայն... թէև իւր հանդիպին իրքն» հատվածի փոխարեն կարդում ենք «քահանային ոչ է պարտ գարշիլ և կամ վիսալ ի նմանէ» (էջ 86բ, էջ 143ա, էջ 116բ)։ Բնագրի «գարշել կամ նողկալ» հատվածի փոխարեն № 659-ում կարդում ենք «քահանայն չերթալ կամ ծուլանալ» (էջ 163բ)։*

Հոդ. ՃՄԸ, էջ 141: *№№ 837, 835, 8459-ում չի պահվել «ընկալցի» բառը, իսկ «ուրացեալ լիցի առաջի Հաւրն որ յերկինս է» հատվածը փոխարինված է մեկ՝ «ուրացող է» բառով (էջ 86բ, էջ 143ա, էջ 117ա)։ № 659-ում չի պահվել մի այլ հատված. «բայց վասն հաւատոց... ընդ սուրբս ընկալցի», իսկ վերջին «թէ դառնայ ի հաւատն... ուղղել զգործն» հատվածը փոխարինված է. «թէ գայ յապաշխարութիւն քահանայն որպէս կամի արասցէ» հատվածով (էջ 163բ)։*

Հոդ. ՃՄԹ, էջ 141: *№№ 837, 835, 8459-ում չի պահվել այս հոդվածը և նշված է «գրած է»։ Սակայն ՃԿԱ և ՃԿԲ համարների ներքո բերված են երկու հոդվածներ, որոնք հեռավոր նմանություն ունեն Կանոնագրքի ՃՄԹ և ՃԿ հոդվածների հետ. բերում ենք այդ հոդվածները. «ՃԿԱ. Եթէ ոք կամի երթալ ի վաստակս և ի բանս և նա տեսանէ զսուր թշնամոյն և վայլ որոգայթս ի վերայ ճանապարհին և այլք ևս ասացին նմա և նա անփոյթ (№№ 835, 8459-ում՝ անփութ) արար և գնաց անգաւ յորոգայթն՝ արիւն նորա ի գլուխ նորա է և չէ արժան թաղել զնա։ ՃԿԲ. Եթէ ոք ընթանայ յափշտակեալ զվաստակս այլոց և ըմբռնեցաւ ի սուր և կամ յայլ որոգայթ՝ արիւն նորա ի գլուխ նորա է և ոչ է արժան թաղել զնա» (էջ 86բ—87ա, էջ 143բ, էջ 117աբ)։*

*№№ 659-ում չեն պահվել ՃՄԹ հոդվածի «վասն իւր ագտի», «անպարտ է յիւր արենէն» հատվածները։ Վերևում նշված երեք ձեռագրերի պահած երկու հոդվածների տարբերակները կան նաև այստեղ. բերում ենք այդ հոդվածները. «ՃՄէ։ Ապա եթէ տեսանի որոգայթ շարժել կամ սուր կամ գետ կամ լեառն մրրկեալ, զոր այլք զգուշացուցին և նա ամբարտաւանեալ գնաց՝ արիւն նորա ի գլուխ նորա եղիցի։ ՃՄԸ. Թէ ոք ընթացաւ յաւար, թողեալ զարդար վաստակս և ըմբռնեցաւ յորոգայթ՝ արիւն նորա ի գլուխ նորա եղիցի, չէ արժան թաղել զնա» (№ 659, էջ 164ա)։*

Հոդ. ՃԿԲ, էջ 142: *№№ 837, 835, 8459-ում չի պահվել «Եւ յերկրաւոր ծախս» հատվածը, իսկ«չար ախտիւ... զհոգին կոճոպէ» հատվածի փոխարեն, պահվել է «զմարմինն պարարէ և զհոգին զրկէ» հատվածը (էջ 87ա, էջ 143բ, էջ 117բ—118ա)։*

№ 659-ում «կոճոպէ» բառի փոխարեն կարդում ենք «կողոպտէ» (էջ 164ա)։

Հոդ. ՃԿԳ, ՃԿԴ, էջ 142—143։ Այս երկու հոդվածները №№ 837, 835, 8359-ում միացված են և դրված որպես մեկ հոդված. «Մնօղք որ զիւրեանց ինչսն վասն իւրեանց հոգւոցն տան այլոց և իւրեանց (№ 8459-ում՝ զիւրեանց) զաւակսն զրկեն և անսուաղ պահեն՝ նզովեսցին (№ 8459-ում՝ նզովեալ լիցին). և տուրքն անընդունելի է, այլ տան որդւոցն բաժինս և Բ (№ 8459-ում ընդ) քորոցն Ա բաժին տացեն» (էջ 87ա, էջ 143բ—144ա, էջ 118ա)։ № 659-ում չի պահվել ՃԿԴ հոդվածի վերջին՝ «Եւ տուրք նոցա անընդունելի եղիցի» հատվածը։ Այստեղ ՃԿԴ հոդվածն այսպես է. «ՃԿԲ. Զինչս ծնաւղացն բաժանեսցեն ընդ երկուս և զմին բաժինն տացեն» (էջ 164բ)։

Հոդ. ՃԿԵ, էջ 143։ № 8459-ում բնագրի «հատուցանէ» բառի փոխարեն դրված է «կատարեն» (էջ 118ա)։ Ահա սույն հոդվածի № 659-ի տարբերակը. «ՃԿԳ. Որ զանդարձ մեռելոյ անարգէ՝ եղիցի նզովեալ» (էջ 164բ)։

Հոդ. ՃԿԶ, էջ 143։ № 8459-ում նշված է. «ՃԿէ. գրած է» բայց և բերում է միևնույն հոդվածը (էջ 118ա)։

Հոդ. ՃԿէ, էջ 143։ №№ 837, 835, 8459-ում չի պահվել այս հոդվածը և միաժամանակ նշված է «գրած է», այս նշումը չունի № 8459 ձեռագիրը։

Հոդ. ՃԿԸ, ՃԿԹ, էջ 143—144։ ՃԿԸ հոդվածը վերջից թերի է, շարունակությունը ՃԿԹ հոդվածն է։ Ավելի ճիշտ կլիներ, եթե այս երկու հոդվածները միացված լինեին, ինչպես ներքևում նշվող չորս ձեռագրերում է և ՃԿԹ հոդվածից դուրս նետվեին սկզբի «և ի դրաց» հատվածը։ Այս երկու հոդվածները №№ 659, 837, 835, 8459-ում միացված են և դրված որպես մեկ հոդված։ Քանի որ առկա են շեղումներ, կբերենք համապատասխան հոդվածները. «Քահանայ զաղտ աւրէնս մի՛ արասցէ և յեկեղեցւոյ ի դուրս աւրէնս մի՛ տացէ աշխարհականի, բայց ի հիւանդաց որ հաղորդ տան» (№№ 837, էջ 87բ, 835, էջ 144ա, 8459, էջ 118աբ)։ № 659-ում հոդվածն այսպիսին է. «ՃԿԶ. Քահանայ գաղտ աղ մի՛ աւրհնեսցէ և պսակ մի՛ դիցի եւ արտաքոյ եկեղեցւոյն աւրէնս մի՛ տացէ, բայց թէ զյետին թոշակն եւ թէ յանդգնեսցի՝ եղիցի նզովեալ» (էջ 165ա)։

Առաջին երեք ձեռագրերում ՃԿԹ հոդվածի համար ասված է «ՃՀ. գրած է»։

Հոդ. ՃՀ, էջ 144։ Էական տարբերությունն այն է, որ № 659 ձեռագրում բացակայում է. «եւ ինքեանք փափագեն յեկեղեցի եւ» հատվածը, իսկ վերջին «պղծել զտունն Աստուծոյ... ընդ խաչահանուսն եղիցի» հատվածի փոխարեն նշված է. «և քահանայն եթե յանդըգնեսցի՝ նզովեալ եղիցի» (էջ 165ա)։ «Անընկալ լիցի» հատվածի փոխարեն № 8459-ում դրված է. «ոչ է ընդունելի» (էջ 118բ)։

Հոդ. ՃՀԱ, էջ 144։ № 659-ում չի պահվել «ուխտական կամ» հատվածը, իսկ «կամ սպաս ունել կամ ճրագ լուցանել» հատվածի փոխարեն գրված է «կամ պատարագ առնել» (էջ 165ա)։

Հոդ. ՃՀԲ, ՃՀԳ, էջ 144—145։ Այս հոդվածները №№ 837, 835, 8459-ում չեն պահվել և միաժամանակ նշված է «գրած է» (էջ 88ա, էջ 144բ, էջ 119ա)։

ՃՀԲ հոդվածը № 659-ում համառոտ է և տարբեր շարադասությամբ, թեև հոդվածի միտքն արտահայտում է ճիշտ. «ՃԿԹ. Ոչ է պարտ քահանայի և դպրաց զգաստ մեռելոյ ի տունս իւրեանց առնել, այլ յեկեղեցւոյն դուրսն տանել, զաղքատսն կոչել և ուտել, և յերեկորեայ կանխել յաղաւթսն մինչև ցլոյսն. նոյնպէս և զերախայս տանել յեկեղեցին յունկնդիրս Աւետարանին և ապա անփոփել յինքեանս։ Եթե ոք անարգէ՝ եղիցի նզովեալ» (էջ 165բ)։ ՃՀԳ հոդվածի նույն ձեռագրի տարբերությունն այն է, որ այստեղ չի պահվել «պաշտաման քահանային եւ» հատվածը։

Հոդ. ՃՀԴ, էջ 145—146։ №№ 837, 835, 8459-ում մի փոքր տարբեր է հոդվածի սկզբի մասը. «Եթէ ոք ուխտական կամ դպիր որ առաջի ժողովրդեանն ի հրապարակս աղաւթէ և շնորհուկս առնու յինքն» (էջ 88ա, էջ 144բ, էջ 119ա)։

Հոդ. ՃՀԵ, էջ 146։ Երեք ձեռագրերում հոդվածն այսպես է. «Քահանայ կամ ուխտական յորժամ յօտարութիւն երթան չէ արժանի առաջի գռեհիկ ժողովրդեանն ի ճաշ կամ ի գինի մտանել և զԱստուած հայհոյել տացէ, այլ երթալ ի տուն, որ արժան է եւ անդ ճաշակել։ Եւ եթէ ոչ լսէ՝ նզովեսցի» (№№ 837, էջ 88աբ, 835, էջ 144բ, հմմտ. № 8459, էջ 119աբ)։ № 659-ում բնագրի «ի մէջ գռեհիկ ամբոխին... հայհոյել զԱստուած» հատվածն այսպես է. «ի մէջ հրապարակին ճաշակել», իսկ «ուր արժան է եւ անդ ճաշակել» հատվածը չի պահվել (էջ 165բ)։

Հոդ. ՃՀԶ, էջ 146։ Սույն հոդվածը չի պահվել №№ 837, 835, 8459 ձեռագրերում, միաժամանակ նշված է. «գրած է» (էջ 88բ, էջ 144բ, էջ 119բ)։ Բնագրի «մինչեւ գիտացէ զդիւին

*հալածումն» հատվածը № 659-ում դրված է այսպես. «մինչև զդեն հալածեսցէ և յեկեղեցի մտցէ»։ Այստեղ չի պահվել նաև հոդվածի վերջին «Ապա եթէ յանդգնի ոք... մի՛ իշխեսցէ յեկեղեցի մտանել» հատվածը (էջ 166ա)։*

Հոդ. ՃՀԷ, էջ 146—147: *№№ 837, 835, 8459-ում բնագրի «եթէ հանդիպին այսահարութեան» հատվածը փոխարինված է «որ դիւահարին» բառերով։ Այս և № 8459 ձեռագրերում «սրբին և փրկին ի դիւէն» հատվածը դրված է բնագրի «զկարգն կատարեսցեն եւ ի դիւացն հեռասցին» հատվածի փոխարեն։ Նշված երեք ձեռագրերում չի պահվել հոդվածի վերջին. «ընտանեացն եւ լնուլ... մարդասիրութեամբ» մասը (№№ 837, էջ 88բ, 835, էջ 144բ—145ա, 8459, էջ 119բ)։ № 659-ում չի պահվել բնագրի «արժան է քահանային... ի դիւացն հեռասցին» հատվածը (էջ 166ա)։*

Հոդ. ՃՀԸ, էջ 147: *№№ 837, 835, 8459-ում չի պահվել «աղ զուարակի նորա եւ մի» հատվածը, իսկ մյուսը՝ «բայց թէ դարձցին... ի քահանայից երթալ» նշված ձեռագրերում դրված է «ապա թէ քահանայն առանց դարձցի նորա երթան» ձևով (էջ 88բ—89ա, էջ 145ա, էջ 120ա)։ № 659-ում չի պահվել «երթալ առ նոսա», «խաչահանողսն Քրիստոսի» հատվածները (էջ 166ա)։*

Հոդ. ՃՀԹ. էջ 147: *№ 659-ում չի պահվել հոդվածի վերջին «զի դատաւորքն իշխանք են եւ ոչ քահանայք» մասը։*

Հոդ. ՃՂ, էջ 147—148: *№№ 837, 835, 8459-ում չի պահվել հոդվածի վերջին. «եւ եթէ ոք յանդգնի՝ եղիցի նզովեալ» մասը (էջ 89ա, էջ 145բ, էջ 120ա)։*

Հոդ. ՃՂԱ, էջ 148: *№№ 837, 835, 8459-ում չի պահվել հոդվածի «զի առ արտաքինսն իմաստութեամբ գնասջիք» հատվածը (էջ 89ա, էջ 145բ, էջ 120ա)։*

Հոդ. ՃՂԲ, էջ 148: *№№ 837, 835, 8459-ում չեն պահվել «զաղջկունսն յաստուածպաշտութիւն» բառերը, դրանց փոխարեն վերջին ձեռագրերում պահվել է «զնոսա» դերանունը։ № 659-ում էական տարբերությունն այն է, որ «գործոց» և «դէտ» բառերի փոխարեն համապատասխանաբար պահվել է «խորհրդոց» և «հայր» բառերը (էջ 167ա)։*

Հոդ. ՃՂԳ, էջ 148—149: *Այս հոդվածում անցկացվում է այն միտքը, թե գաղափարները բռնությամբ ոչ կարելի է տարածել և ոչ էլ վերացնել, այլ խաղաղ և անարյուն ճանապարհներով։*

*Հոդվածի սկզբի ընդարձակ հատվածը երեք ձեռագրերում այսպես է. «Քահանայ որ յապաշխարութիւն կոչէ զմեղաւորս՝ մի՛ խստութեամբ և դառնութեամբ դատեսցեն ըստ կանոնաց, այլ մեղմով և քաղցրութեամբ յոյս դնել, զի Աստուած մարդասէր է...» (№ 837, էջ 89բ, հմմտ. №№ 835, էջ 146ա, 8459, էջ 121ա)։ Ահա և № 659-ի ունեցածը. «ՃՂ. Քահանայն մի՛ աչառութեամբ դատեսցէ զմեղաւորն, այլ մեղմով յուղղութիւն ածել և մի՛ յուսահատել, զի Աստուած մարդասէր է և ոչ կամի զմահ մեղաւորին։ Եւ առաքեալքն հանդարտութեամբ ածին զտհեզերս յուղղութիւն։ Եթե ոք զարշի ի դառն մեղաց, ինքն յանաւրէնութեան իւրում մեռցի և արիւն նորա ի ձեռաց քահանային խնդրեսցի» (էջ 167ա)։*

Հոդ. ՃՂԴ, էջ 149: *Բնագրի «եւ եհաս վախճան... չզրկել զնոսա յետին թոշակէն» հատվածը №№ 837, 835, 8459-ում դրված է այսպես. «և մինչդեռ յապաշխարութիւն են (№ 835-ում՝ է) մահ եհաս նոցա, պարտ է տաց (№ 835-ում՝ տալ) նոցա զթոշակն» (էջ 90ա, էջ 146ա, էջ 121բ)։ № 659-ում չեն պահվել «մինչդեռ ի կարգին էին» և «եւ եթէ ոչ՝ նզովեալ լիցին» հատվածները (էջ 167ա)։*

Հոդ. ՃՂԵ, էջ 149: *Այս հոդվածը չի պահվել №№ 837, 835, 8459 ձեռագրերում, միաժամանակ նշված է «գրած է» (էջ 90ա, էջ 146ա, էջ 122ա)։ № 659-ում «զայն»-ը փոխարինված է «զմնացորդսն» բառով (էջ 167բ)։*

Հոդ. ՃՂԶ, էջ 150: *№№ 837, 835, 8459-ում չի պահվել «բայց զայն միայն որ ի սպանդանոցի վաճառի» հատվածը (էջ 90աբ, էջ 146աբ, էջ 122ա)։*

Հոդ. ՃՂԷ, էջ 150—151: *№№ 837, 835, 8459-ում բնագրի «վիճակին», «փաթեթս» բառերի փոխարեն դրված են «ժողովրդեանն» և «փայթաթս» բառերը, №№ 837, 835-ում «ի կարգ կալ»-ը՝ «ի զղջումն գան», № 8459-ում «Բ ամ»-ը՝ «Թ ամ»։ Այս երեք ձեռագրերը չունեն «եւ զհատընկէցսն», «եւ եթէ ոչ դառնան... նզովեալ լիցի» հատվածները (№№ 837, էջ 90բ, 835, էջ 146բ, 8459, էջ 122ա)։*

*№ 659-ում չեն պահվել «վիճակին» և «զլերդահմայսն» բառերը։ Այստեղ կան նաև այլ շեղումներ, բնագրի «յանդիմանել հրապարակաւ»-ը փոխարինված է «յայտնել», «Բ ամ»-ը՝ «Ժ ամ», «կնիք նոցա մի՛ տացէ եւ պսակ մի՝ դիցէ»-ն՝ «քահանայութիւն մի՛ արասցէ նոցա» բառերով և հատվածներով (էջ 167բ—168ա)։*

Հոդ. ՃՂԸ, էջ 151: №№ 837, 8459-ում չի պահվել «խողխողեն եւ» հատվածը (էջ 91ա, էջ 122ա), իսկ № 835-ում՝ «խողխողեն եւ ատելիս» (էջ 147ա)։ № 659-ում պահվել է հոդվածի միայն վերջին մասը. «ՃՉԵ. Թէ ի նոյն աղանդ դառնայ մեղաւորն՝ մահապարտ է, զրկեալ են ի կենացն, մի՛ թողցի նոցա» (էջ 168ա)։

Հոդ. ՃՂԹ, էջ 151—152: №№ 837, 835, 8459-ում չի պահվել այս հոդվածը, միաժամանակ նշված է. «գրած է» (էջ 91ա, էջ 147ա, էջ 123բ)։

№ 659-ում բնագրի «եւ ի պիղծ դեղոց... զրկեալ են ի սուրբ աւրինացն» հատվածի փոխարեն կարդում ենք. «Իսկ եթե ի թիւրակաց կամ ի պիղծ թռչնոց կամ ի սողնոց, զի եթէ մահ տիրէ նոցա» (էջ 168ա), իսկ «Գ ամ»-ը այստեղ դրված է «Բ ամ»։

Հոդ. ՃՂ, էջ 152: №№ 837, 835, 8459-ում հոդվածն այսպիսի տեսք ունի. «Եւ եթէ ոք ուտէ իւր կամաւ զզենումն անաւրինաց՝ Բ ամ ընդ ունկնդիրսն և Ա ամ առ դրանն ապաշխարեսցէ։ Նոյն կանոն է և որ զմուտառն ուտէ» (էջ 91աբ, հմմտ. №№ 835, էջ 147ա, 8459, էջ 123բ)։

№ 659-ում չի պահվել «առ դրանն ապաշխարեսցեն» հատվածը։

Հոդ. ՃՂԱ, էջ 152: Ահա №№ 835, 837, 8459-ի ունեցածը. «Եւ եթէ ոք որ զմիս (№ 8459-ում՝ չիՙ զմիս) մուտառ վաճառէ կամ զզրծեալ և զմկնուտ կերակուրէն (№ 8459-ում՝ կերակուր) նզովեսցի և Բ ամ ապաշխարէ» (էջ 147ա, էջ 91բ, էջ 123բ)։

№ 659-ում «կերեալ»՝ փոխանակ «յաղեալ»-ի։

Հոդ. ՃՂԲ, էջ 152—153: №№ 837, 835, 8459-ում «իսկ որ զենում ի ձգել զաւրն»-ի փոխարեն կարդում ենք «այն է լաւն որ ի զենելն», իսկ վերջին «Ապա եթէ յորոգայթ... հանդերձ շնչով և կերիցէ» հատվածը չի պահվել (էջ 91բ, էջ 147աբ, էջ 123բ)։

Հոդ. ՃՂԳ, էջ 153: Այս հոդվածը չի պահվել № 659-ում։

Հոդ. ՃՂԴ, էջ 153: № 835-ում «որոյ» փոխանակ «որսոց»։ №№ 837, 835, 8459-ում չեն պահվել «ըստ բանին Սահակայ... զաւթեակնն մի կերիցեն» և «իսկ եթէ թակարդիւ... եւ ապա կերիցեն» հատվածները (էջ 91բ—92ա, էջ 147բ, էջ 124ա), իսկ «եւ որ թռչուն է... զէշ կոչեսցի» հատվածի փոխարեն ունեն «և թէ մնաց մինչև ի մեկել աւուրն և թռչուն իջաւ ի վերայ՝ զէշ կոչի»։

№ 659-ում չեն պահվել «պատրաստեալ մարդկան» և «սրոյ» բառերը, վերջին «իսկ եթէ թակարդիւ... եւ ապա կերիցեն»-ի փոխարեն կարդում ենք «զոր ձեռամբ և երկաթով զենցեն՝ կերիցեն» (էջ 169ա)։

Հոդ. ՃՂԶ, էջ 153: Բնագրի «եւ յորսոց մատաղ մի՛ իշխեսցէ առնել» հատվածը № 659-ում չի պահվել (էջ 169ա)։

Հոդ.. ՃՂԷ, ՃՂԸ, էջ 154: №№ 837, 835-ում այս երկուսը միացված են մի հոդվածում. ահա ամբողջը. «Զանասուն խեղ կամ արատաւոր կամ յափշտակեալ մի՛ ոք իշխեսցէ մատաղ առնել՝ ոչ է ընդունելի. և եթէ ոք արասցէ՝ նզովեսցի։ Թէ թագաւոր ոք աշխարհի խումբ առնիցէ յերկրի թշնամեաց՝ չէ արժան զենուլ մատաղ» (էջ 92ա, էջ 147բ—148ա)։Հոդվածի բովանդակությունը № 8459-ում վերոբերյալի նման է, միայն տրված է երկու հոդվածով, երկրորդ հոդվածը սկսվում է «Թէ թագաւոր ոք» հատվածից (էջ 124բ)։

ՃՂԸ հոդվածի «ոչ»-ը չի պահվել № 659 ձեռագրում (էջ 169ա)։

Հոդ. ՃՂԹ, էջ 154: № 659-ում չեն պահվել «զնոյնն հատուսցէ տեառն» և «աղքատաց... տացէ» հատվածները, իսկ «ի ժանիս գազանի անկանի»-ի փոխարեն ունի «գազանաբեկ լինի» (էջ 169ա)։ №№ 837, 835, 8459-ում «զէրի» փոխանակ «զհասն»։ Վերջին ձեռագրերում «ապա եթէ... նզովեալ եղիցի» վերջին հատվածի փոխարեն պահվել է այսպես. «Ապա թէ գողանան կամ գազանք ուտեն, արժան է զպարտ Տեառն հատուցանել ապա (№ 835-ում՝ չիՙ ապա) թէ ոչ՝ նզովեսցի» (էջ 92աբ, էջ 148ա, էջ 125ա)։

Հոդ. Մ, էջ 154: Հոդվածի սկզբի ընդարձակ մասը №№ 837, 835, 8359-ում այսպես է. «Զմատաղն զոր առնէ, զմիսն ոչ է պարտ պահել ի տուն իւր, այլ զամէն աւրն (№ 835-ում՝ չիՙ աւրն) տայ աղքատաց» (էջ 92բ, էջ 148ա, էջ 125ա)։

№ 659-ում չի պահվել «սրտի մտաւք» հատվածը, իսկ «պահէ» բառը փոխարինված է «յափշտակէ» բառով (էջ 169բ)։

Հոդ. ՄԱ, էջ 155: №№ 837, 835, 8459-ում հոդվածը պարզեցված է. «Եթէ ոք զարատաւոր ինչս իւր խաբելով վաճառէ ընկերի իւրում և սուտ երդնու և գովելով զրկէ զընկերն իւր՝ նզովեսցի» (էջ 92բ, էջ 148ա, էջ 125ա)։ Ահա և № 659-ի ունեցածը. «Թէ ոք զարատաւորն տայ ընկերի իւրում վաճառելով՝ տուժեսցի ընդ միոյն երեքկին և Բ ամ ընդ ձեռամբ կացցէ, և որք յանդգնին՝ եղիցին նզովեալ» (էջ 169բ)։

Հոդ. ՄԲ, էջ 155: №№ 837, 835, 8459-ում փոքր չափով շեղվում է հոդվածի սկիզբը. «Եթէ ոք երթա սուտ վկայութիւն տալ և ձգէ ըընկերն յորոգայթ մահու» (էջ 92բ, էջ 148ա, էջ 125բ)։ Այս երկու ձեռագրերը չունեն «կացցէ» բառը, իսկ № 659-ում՝ «Բ ամ»-ը դրված է «ամ մի» ձևով (էջ 169բ)։

Հոդ. ՄԳ, ՄԴ, էջ 155—156: Այս երկու հոդվածները №№ 837, 835, 8459 ձեռագրերը չունեն և նշված է. «գրած է», նման նշում չունի № 8459 ձեռագիրը ՄԳ հոդվածի համար (էջ 93ա, էջ 148բ, էջ 125բ)։

Հոդ. ՄԵ, էջ 156: Բնագրի «խոստովանողք» բառը №№ 837, 835, 8459-ում փոխարինված է «ապաշխարող ոք» բառերով։ «Մինչև ղկարգն ի գլուխ տանի... եւ եղիցի նզովեալ» հատվածը №№ 837, 835, 8459-ում այսպես է. «մինչև զապաշխարութիւնն լմնէ իւր վարդապետին աւրհնութեամբ. և եթէ ոք նման սատանայի, լրբէ և ոչ լսէ՝ նզովեսցի» (էջ 93ա, հմմտ. № 835, էջ 148բ, էջ 125բ)։

№ 659-ում «վայրապար» բառը դրված է «եթէ ընդ վայր» ձևով, իսկ վերջին՝ «եթէ ոք յանդգնի... եղիցի նզովեալ» հատվածը՝ «և թէ ոք յանդըգնի եղիցի նզովեալ և այլ ապաշխարութիւն ընկալցին» (էջ 170ա)։

Հոդ. ՄԶ, էջ 156: Որոշ ձեռագրերում մի փոքր շեղվում է սկզբի շարադասությունը. «Այր կամ կին որ Կ ամաց լինին և արժան է պարապել աղօթից ի դուռն եկեղեցւոյն զցայգ և զցերեկ և խնդրել ի Տեառնէ» (№№ 837, էջ 93ա, 835, էջ 148բ, 8459 էջ 126ա)։

Այս հոդվածը № 659-ում բաժանված է երկու մասերի և դրված ՄԲ, ՄԳ համարների ներքո։ Այստեղ երկրորդ՝ ՄԳ հոդվածը սկսվում է. «Ապա եթէ ջեռցին...» հատվածից։ «Ջեռցին ի ցանկութիւն եւ կամին ամուսնանալ» հատվածը № 659-ում դրված է այսպես. «ջեռնու յամուսնութիւնն», «զի ոչ է հարսանիս... զինչ եւ կամեսցի» հատվածը՝ «զի ոչ է ամուսնութիւն, այլ պոռնկութիւն, բայց իշխան է քահանային զինչ կամի արասցէ» (էջ 170բ)։

Հոդ. ՄԷ, ՄԸ, էջ 157: Այս երկու հոդվածը չի պահվել №№ 837, 835, 8459-ում, միաժամանակ նշված է «ՄԸ, ՄԹ գրած է» (93բ, էջ 149ա, էջ 126բ)։

Հոդ. ՄԹ, էջ 157: Այսպես է հոդվածի սկիզբը. «Եթէ ոք խօսեսցի կին ձեռամբ քահանային և Բ և Գ վկայիւք հաստատեալ, այլ մի՛ իշխեսցէ» (№№ 837, էջ 93բ, 835, էջ 149ա, 8459, էջ 126բ)։

Հոդ. Մժ, էջ 157: Էական տարբերությունն այն է, որ «աղքատաց» բառը № 659-ում փոխարինված է «յեկեղեցին» բառով (էջ 171ա)։

Հոդ. ՄժԱ, էջ 157—158: Հոդվածի սկզբի մասը №№ 837, 835, 8459-ում այսպես է. «Կին որ խօսեցեալ է առն և տանին ի պսակ և դեռ ոչ է մտեալ յեկեղեցին և չար գործք աղջկանն յայտնեցաւ» (էջ 93բ—94ա, էջ 149ա, էջ 126բ—127ա)։

№ 659-ում չի պահվել «ընթացեալ յեկեղեցին» հատվածը, իսկ «այրի» և «Գ ամ»-ի փոխարեն համապատասխանաբար ունի «շուն» և «Դ ամ» (էջ 171ա)։

Հոդ. ՄժԲ, էջ 158: Այս հոդվածը չի պահվել №№ 837, 835, 8450-ում, միաժամանակ նշված է «գրած է», այս նշումը չունի № 835 ձեռագիրը։

Հոդ. ՄժԳ, էջ 158: Բնագրի «չտալ նմա պտուղ» հատվածը №№ 837, 835, 8459-ում պահվել է այսպես. «Նորա և ոչ եղև զաւակ» (էջ 94ա, էջ 149բ, էջ 127ա)։ Այստեղ չի պահվել նաև «կացցէ» բառը։

Հոդ. ՄժԴ, ՄժԵ, ՄժԶ, էջ 158—159: Այս հոդվածները չեն պահվել №№ 837, 835, 8459-ում և նշված է «ՄժԵ, ՄժԶ, ՄժԷ գրած է» (էջ 94ա, էջ 149բ, էջ 127բ)։ ՄժԵ հոդվածի վերջին «Ճ դրամ տուգանս... ում կամի առն լիցի» հատվածը № 659-ում պահվել է այսպես. «իշխան լիցի առաջնորդն մեկնել ի միմեանց փոխանակ անարգանաց պսակին Մ դրամ տուգանս տացէ և ապաշխարութիւն պոռնըկին եղիցի ի վերայ և ում կամեսցի առն լիցի» (էջ 172ա)։ Այս ձեռագրում ՄժԶ հոդվածի «զոր առեւանկն առեն» հատվածը դրված է այսպես. «որ անգեառ արասցէ»։ Այստեղ չի պահվել նույն հոդվածի «Ճ դրամ առցեն... տուգանս տացեն» հատվածը (էջ 172ա)։

Հոդ. ՄժԷ, էջ 160: №№ 837, 835, 8459-ում չի պահվել հոդվածի վերջին՝ «Ապա եթէ մինչ չեւ զարձեալ են... ոչ է արժան առնուլ յեկեղեցի» հատվածը (էջ 94ա, էջ 149բ, էջ 128ա)։

№ 659-ում «եւ զինչս նոցա աղքատաց բաշխեսցեն» հատվածն այսպես է. «և զիրսն զոր առեալ է առաջնորդին՝ աղքատաց տացէ» (էջ 172բ)։

Հոդ. ՄժԸ, էջ 160: № 659-ում չեն պահվել «շուն կոչեսցի» բառերը։

Հոդ. Մի, էջ 161: Հոդվածը №№ 837, 835, 8459-ում պարզեցված է. ահա այն. «Եթէ ոք

կին որ (№ 835-ում՝ չիք որ) նշանած է ձեռամբ քահանային և այլ առն տացեն՝ նզովեսցի. և կին այրի և պսակ աւեր է» (էջ 95ա, էջ 150ա, էջ 128բ)։

№ 659-ում չի պահվել այս հոդվածը։

Հոդ. ՄԻԲ, էջ 161: № 8459-ը չունի մեջբերումը. №№ 837, 835-ը դրա հետ մեկտեղ չունեն նաև «որպէս եւ գիրն ասէ» (էջ 129ա, էջ 95ա, էջ 150ա)։

Հոդ. ՄԻԳ, էջ 161—162: № 659-ում «ծածկէ» բառը փոխարինված է «յայտնէ» բառով, այստեղ չի պահվել նաև «մինչև ցմահ» բառերը (էջ 173բ)։

Հոդ. ՄԻԴ, ՄԻԵ, էջ 162: № 659-ում այս երկու հոդվածները միացված են և դրված որպես մեկ հոդված՝ ՄԻ համարով։ Նախ դրված է ՄԻԵ հոդվածը, ապա սրան իբրև շարունակություն ՄԻԴ-ը։ Այստեղ չի պահվել բնագրի «եւ հարկ է», «պայծառացուցանել զնա» և «աշխարհախումբ» բառերը (էջ 173բ)։

Հոդ. ՄԻԶ, էջ 162: Բնագրի «ի հաւատացելոց»-ի փոխարեն № 659-ում դրված է «ի քրիստոնէից» (էջ 173բ)։

Հոդ. ՄԻԷ, էջ 162: Բնագրի «յամենայն տունս ժողովրդեանն» հատվածը №№ 837, 835, 8459-ում դրված է «ժողովրդեանն յամենայն տունս» ձևով (էջ 95բ, էջ 150բ, էջ 129բ)։

Հոդ. ՄԻԹ, էջ 163: № 659-ում «որ ի մաւրէ մեռեալ» հատվածը կարդում ենք այսպես. «որ մաւտ ի մեռանել գայ» (էջ 174ա)։

Հոդ. ՄԼ, էջ 163: Հոդվածի սկիզբը №№ 837, 835, 8459-ում այսպես է. «Եւ տղայն որ կենդանի ծնանի և հոգաբարձոյքն անփոյթ առնեն և ոչ տանեն փահանային»։ Այս և № 8459 ձեռագրերում «Գ ամ»-ի փոխարեն նշված է. «Ե ամ»։ Համառոտ է հոդվածի վերջին հատվածը. ահա այն՝ «բայց իշխանութիւն վարդապետին կարճել» (№№ 837, էջ 96ա, 835, էջ 151ա, 8459, էջ 130ա)։ № 659-ում տարբեր է պատժաչափը՝ «Է ամ», «Գ ամ»-ի փոխարեն, «Ե ամ»՝, «Դ ամ» (էջ 174ա)։

Հոդ. ՄԼԱ, էջ 163—164: №№ 837, 835, 8459-ում «զգուշացուցանէ» բառը դրված է «յիմաց էրին (№ 835-ում՝ արին)» ձևով, սրանք չունեն նաև «կացցէ» բառը (էջ 96աբ, էջ 151ա, էջ 130բ)։

№ 659-ում «եւ նա վասն իւր... վասն այլ զբաղման» հատվածը դրված է այսպես. «եւ նա վասն ծուլութեան» (էջ 174բ)։

Հոդ. ՄԼԲ, էջ 164: №№ 837, 835, 8459-ում չեն պահվել «հանդիպի» և «զմանուկ» բառերը (էջ 96բ, էջ 151աբ, էջ 130բ—131ա)։

Հոդ. ՄԼԳ, էջ 164: № 837, 835, 8459-ում չի պահվել «Երախայ թէ եկեալ ի մկրտութիւն եւ» հատվածը (էջ 96բ, էջ 151բ, էջ 131ա)։

Հոդ. ՄԼԵ, էջ 165: № 659-ում չի պահվել «եթէ համարձակիցի ոք» հատվածը։ № № 837, 835, 8459-ում բնագրի «ճանապարհ ըստ կամաց» և «ի քաղաքակիցս իւր... զմիմեանց բեռն բարձէք» հատվածները համապատասխանաբար այսպես են. «ի հեռոյ ի հօտէն» և «յայլ քահանայ և ապա գնալ» (էջ 97ա, էջ 151բ—152ա, էջ 131բ)։

Հոդ. ՄԼԶ, էջ 165—166: №№ 837, 835, 8459-ում հոդվածի սկիզբը այսպես է. «Այր կամ կին յորժամ հիւանդանայ և անգանի ի մահիճ պարտ է յաւուր Դ հետ կոչել» (էջ 97բ, էջ 152ա, էջ 131բ)։ Այս ձեռագրերը չունեն բնագրի «եւ զերիցունսն», «զբաղեալ ի ծուփս աշխարհիս» հատվածները, իսկ «հոգաբարձուքն» բառը փոխարինված է «ընդանիք» բառով։ № 659-ում չի պահվել «ցաւոց» բառը, իսկ մի քանի դեպքում էլ կան այլընթերցումներ, օրինակ «յաւուրն երրորդի կոչել» հատվածի փոխարեն կարդում ենք «երկիցս անգամ ի հարկէ կոչել», «զերիցունսն»-ի՝ «զիւրեանց», «որ ոչ զգուշացաւ»-ի՝ «և ոչ չողաւ» (էջ 175բ)։

Հոդ. ՄԼԷ, էջ 166: Հոդվածի վերջին «Եւ այլք չյայտնեն... քահանայն ի մեղաց նոցա» հատվածը № 659-ում դրված է այսպես. «և այլք յայտնեն զգործս նորա և քահանայն տուեալ է սուրբ խորհուրդն՝ անպարտ է ի մեղաց նոցա» (էջ 176ա)։

Հոդ. ՄԼԸ, էջ 166: № 659-ում հոդվածն այսպես է սկսվում. «Երկրորդացն քահանայն առ սեղանն աւրհնեսցէ զուռն» (վերջին բառն ավելացրել են ուրիշներ, աջ լուսանցքում. էջ 176ա)։ Այնուհետև ինչպես բնագրում։ Բնագրի «պսակ առ դրանն» հատվածը №№ 837, 8459-ում փոխարինված է «զուռն առ սեղանոյն» հատվածով (էջ 97բ—98ա, էջ 152բ, էջ 132բ)։

Հոդ. ՄԽ, էջ 166—167: №№ 837, 835, 8459-ում չի պահվել «կացուսցէ» բառը, իսկ № 659-ում՝ «առ սուրբ սեղանն»։ Այս բնագրի ՄԽ և ՄԽԱ հոդվածների միջև վերևում նշված չորս ձեռագրերում պահվել է մի հոդված, որը № 837, 8459-ում ունի ՄԽԲ, № 659-ում ՄԼԶ համարը, իսկ № 835-ում համար չի նշված. ահա այդ հոդվածը. «Իսկ եթէ մինն կուսան և մինն (№№ 659, 835-ում՝ միւսն) այրի (№ 659-ում՝ երկեակ) և այլ վարքն սրբութեամբ են,

*արժան է տալ նոցա (№ 659-ում՝ չիք նոցա) զպսակն աւրհնութեան» (№№ 837, էջ 98ա, 835, էջ 152բ, 8459, 133ա)։ Այս հոդվածը № 659 ձեռագրում այնուհետև շարունակվում է. «Կուսանին և զերկեակն առ դրանն կացուցանել մինչև զկարգն ապաշխարեսցէ և արժանի լիցի աւրհնաց» (էջ 176բ)։*

*Սա Նեոկեսարիայի կանոնախմբի Ը հոդվածն է («Կանոնագիրք Հայոց», հտ. Ա, էջ 182) միայն այստեղ պատմաչափը չկա։*

Հոդ. ՄԽԱ, էջ 167։ *Բնագրի «աւուրքք Բ»-ը №№ 837, 835, 8459-ում գրված է «աւուրս Ը» (էջ 98բ, էջ 152բ, էջ 133բ)։*

Հոդ. ՄԽԲ, էջ 167։ *Այս հոդվածը չի պահվել №№ 837, 835, 8459 ձեռագրերում, միաժամանակ նշված է «գրած է» (էջ 98բ, էջ 153ա, էջ 133բ)։ № 659-ում վերջին՝ «այլ... աղքատաց» հատվածն այսպես է «բայց միով է արժան եթե ոք սիրէ, նոյն չափով յաղքատս տացէ» (էջ 176բ)։*

Հոդ. ՄԽԳ, էջ 167։ *Բնագրի «եւ ի թռչնոց ըստ Ե զգայութեան մարդոյն» հատվածը №№ 837, 835, 8459-ում այսպես է. «եւ ի թռչնոց եւ ի խաշանց ըստ Է զգայութեան մարդոյն» (էջ 98բ, էջ 153ա, էջ 133բ)։*

Հոդ. ՄԽԴ—ՄԽԸ, էջ 167—169։ *Այս հոդվածները չեն պահվել №№ 837, 835, 8459-ում, միաժամանակ նշված է. «գրած է» (էջ 98բ, էջ 253ա, էջ 134ա)։*

*ՄԽԵ հոդվածը № 659-ում այսպիսի տեսք ունի. «ՄԽԱ. Թէ տղայոց դիպիցին զպահս ծնաւղացն պարտ է կատարել և արգելուլ զնոսա յամենայն կերակրոց և սնեամբ միայն սնուցանել մինչև* (ձեռ-ում *մինչև* բառից հետո մի բառի տեղ բաց է թողնված—Վ. Հ.) *սրբութեան. և ապա աւրհնել յանուն Տեառն» (էջ 177ա)։ ՄԽԶ հոդվածի «է ժամանակս» հատվածի միջև № 659-ը ունի «ամեայ»՝ «է ամեայ ժամանակս», իսկ «ի սրտի» փոխարեն ունի «ի մտի» (էջ 177բ)։ ՄԽԷ հոդվածի «յղփութեանց» բառը № 659-ում փոխարինված է «ցանկալի» բառով, իսկ «եւ դառնալ ի բանակ իւր» հատվածը չի պահվել (էջ 177բ)։*

*Սակայն պետք է նկատել, որ այս մի քանի հոդվածները սկզբնապես մի ամբողջական գրություն են եղել։ Այն հոդվածների բաժանված է այնպես, որ նկատվում է մեկը մյուսի շարունակություն կազմելը, բացի այդ, բաժանումը կատարված է մեխանիկական այնպիսի մոտեցմամբ, որ ՄԽԴ հոդվածը այս ձևով բովանդակություն չունի։*

Հոդ. ՄԽԹ, էջ 169։ *Բնագրի «ի պահոց» և «զարհուրի հրապուրիչ» հատվածների փոխարեն № 659-ում համապատասխանաբար կարդում ենք «ի կապանաց» և «հալածի» (էջ 178ա)։*

Հոդ. ՄԾ, էջ 169—170։ *№ 659-ում չի պահվել «քահանայ» բառը, իսկ «արար» բառի փոխարեն գրված է «սիրէ» (էջ 178ա)։ №№ 837, 835 ձեռագրերը ունեն միայն վերջին նշումը։*

Հոդ. ՄԾԱ, էջ 170։ *№№ 837, 835-ում չի պահվել «քահանայութեան» բառը, «որում»-ը փոխարինված է «ում որ այս» բառերով, իսկ «է ժամանակաւ»-ը գրված է «է. ամայ ժամանակաւ» (էջ 99աբ, էջ 153)։ № 659-ում «զաւծումն քահանայութեանն և ի տուն իւր դարձցի» (էջ 178ա) հատվածը գրված է բնագրի «զաւծումն... իւրում» հատվածի փոխարեն։*

Հոդ. ՄԾԲ, էջ 170—171։ *№ 835-ում՝ արք փխ. որ (էջ 153բ), իսկ № 659-ում չի պահվել «որ» բառը։*

Հոդ. ՄԾԳ, էջ 171։ *Բնագրի «աստեղաց եղիցի» բառերի միջև №№ 659, 837, 835, 8459 ձեռագրերն ունեն «կամ յուռթունս (№ 659-ում՝ յուռթանս) և յուլունս առ ի պահպանութիւն անձանց» (էջ 179ա, էջ 100ա, էջ 154ա, էջ 135ա)։ №№ 837, 835-ում «հրեշտակաց» բառը փոխարինված է «կամարարաց»։*

Հոդ. ՄԾԴ, էջ 171։ *Բնագրի «Քրիստոսի որպէս» բառերի միջև №№ 837, 835, 8459-ն ունեն «որ աւէ այդ գործ ոչ իւիք ելանէ եթէ ոչ պահաւք և աղօթիւք» հատվածը (էջ 100ա, էջ 154ա, էջ 135բ)։ № 659-ում «ի բանէն Քրիստոսի» հատվածի փոխարեն գրված է. «և նա ինքնին ասաց այդր ազգ ոչ ելանէ եթե ոչ պահաւք և աղաւթիւք (էջ 179ա)։*

Հոդ. ՄԾԵ—ՄԿԴ, էջ 171—174։ *Այս հոդվածները №№ 837, 835, 8459-ում չեն պահվել, միաժամանակ նշված է «այս ամէն (№ 835-ում՝ չիք ամէն) գրած է (էջ 100ա, էջ 154ա, էջ 135բ)։ Այս մի քանի հոդվածները պահվել են № 659-ում, առանձին շեղումներով, այստեղ կնշենք դրանք։ ՄԾԵ և ՄԾԶ հոդվածները № 659-ում միացված են, որն ավելի ճիշտ է։ ՄԾԶ հոդվածի «եւ այս բնութեամբ ընթանայ յեկեղեցին» հատվածը № 659-ում գրված է ավելի ընդարձակ. «և այս քննութեամբ է նոցա յաւժարութեամբ ընթանան յեկեղեցին յորժամ հանդիպի նոցա» (էջ 179ա)։ ՄԾԷ հոդվածի «եւ մեկնեն... հանդիպին լուսոյն» հատվածը համառոտ է. «և հասանէ նմա լոյս» (էջ 179բ)։ ՄԾԸ հոդվածի «ծնկեալք» և «արատուէն... ի վատ բարուցն» հատվածները համապատասխանաբար գրված են այսպես. «ննկեալ» և «խրատ տու-*

*եալ յիւրեանց բարուցն» (էջ 179բ)։ ՄԾԲ հոդվածի վերջին «ընթանան առ գրարարս... ընդ սատանայի» հատվածի փոխարեն գրված է. «ընդ անարգս աղանդիւք զիւրեանս պղծեն և դատանին ի հուր և գեհեննին ընդ սատանայի» (էջ 179բ)։ ՄԿ հոդվածի «յափափայս» և «դատեն» բառերի փոխարեն ունի՝ «անփափայս» և «ծածկեն» (էջ 180ա)։*

Հոդ. ՄԿԵ, էջ 174—175: *Հոդվածը №№ 837, 835, 8459-ում մի փոքր ընդարձակ է. «Այսահարութիւն է շնութիւն, արիւն հեղութիւն, գողութիւն, և սուտ երդնուլ և սուտ (№ 835-ը չունի սուտ) խօսել և զուր վկայել և արուագիտութիւն և անասնազանցութիւն և ագահութիւն և արծաթսիրութիւն և արբեցութիւն։ Այսահարութեան (№ 835-ում՝ այսահարութիւն) հանդիպէր յաւ էր քան այսպիսի ախտից» (էջ 100աբ, էջ 154աբ, էջ 135բ—136ա)։ Այս հոդվածով վերջանում է նույն կանոնախումբը № 8459 ձեռագրում։*

Հոդ. ՄԿՁ, էջ 175: *Բնագրի «յաւելուլ» բառը № 659-ում փոխարինված է «հայել» բառով (էջ 181ա)։ №№ 837, 835, 8459-ում հոդվածն այսպես է. «Իսկ քահանայքն այսպէս արժան է՝ յորժամ հանդիպին այսահարութեան (№ 835-ում՝ այսահարութիւն), տանել ի տուն Աստուծոյ և ի դուռն եկեղեցւոյն և խ աւր անդ աւթել և է անգամ աղօթս առնել հանդերձ է խորհրդեամբ Աւետարանին և հայել և տեսանել զլրբութիւն, և յաւելուլ և կարհել ըստ ողորմութեան Աստուծոյ ի պահսն և յաղօթսն երկիւղին Աստուծոյ» (էջ 100բ, էջ 154բ, 136աբ)։*

*Սրանով էլ վերջանում է բնագիրը №№ 837, 835 ձեռագրերում։*

Հոդ. ՄԿէ, էջ 175—177: *Բնագրի «արդարոց» և «ի հաշտութիւն» բառերի փոխարեն № 659-ում համապատասխանաբար կարդում ենք. «որոց» և «ի քաւութիւն» (էջ 181բ)։ Մնացած հոդվածները՝ ՄԿԸ—ՄՀԲ, թեև պահվել են այս ձեռագրում, բայց տարբեր համարակալմամբ, այսպես, ՄԿԸ հոդվածը նշված է ՄԿԳ համարով, ՄԿԹ-ն՝ ՄԿԴ, ՄՀ-ն՝ ՄԿԵ, ՄՀԱ-ն՝ ՄԿՁ, ՄՀԲ-ն՝ ՄԿէ։*

*Վերջին՝ ՄՀԲ հոդվածին, որը № 659-ում գրված է ՄԿէ համարի տակ, հաջորդում է հետևյալ հիշատակարանը. «Կատարեցաւ կանոն սրբոյն Բարսղի հայրապետին Կեսարոյ՝ տունք ՄԿէ, և միանգամայն ամենայն գլուխքն տունքն Յժե, և այն զկնի սորին։ Եւ դարձեալ նոյն Բարսղի գտանես զկնի սորին այլ կանովնս» (էջ 184բ)։ Հիշատակարանի «և այն զկնի սորին» հատվածը մատնացույց է անում այն կանոնախումբը, որ հրատարակել ենք «Կանոնագիրք Հայոց»-ի Ա հատորում (էջ 329—362)։ Այդպես ենք կարծում, որովհետև նշված հիշատակարանին անմիջապես հաջորդում է վերջինս։ Սակայն այս կանոնախումբը № 659 ձեռագրում բաղկացած է ոչ թե 51 հոդվածից, ինչպես «Կանոնագիրք Հայոց»-ում է, այլ 43 (42+1). տե՛ս ցանկը 185աբ էջերում, հոդվածները՝ 185բ—198ա, 198ա—204ա էջերում)։*

*Հիշատակարանի վերջում կրկնված «Եւ դարձեալ նոյն Բարսղի գտանես զկնի սորին այլ կանովնս» հատվածն էլ մատնացույց է անում միևնույն ձեռագրի 208բ—214բ էջերում գտնվող՝ Բարսեղ Կեսարացու կանոնական մի այլ նամակը՝ բաղկացած 40 հոդվածներից, թեև համարակալում գրված չէ։ «Նորին սրբոյն Բարսղի եպիսկոպոսի Թուղթ առ սուրբ Գրիգոր Աստուածաբան եպիսկոպոս Նազիազու յաղագս կրօնաւորութեան» վերնագրով։ Այս բնագիրը ունի չափազանց հետաքրքիր բովանդակություն և չի մտել Կանոնագրքի որևէ խմբագրության մեջ։*

# ԳՐԻԳՈՐ ԱՍՏՎԱԾԱԲԱՆԻՆ ՎԵՐԱԳՐՎԱԾ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Վերնագիր, էջ 181: *Կանոնագրքի գիտա-քննական բնագիրը կազմելու համար օգտագործված ձեռագրերից բացի, միայն № 3276-ում է որոշ կրճատումներով պահվել սույն կանոնախումբը։ Վերնագիրն այստեղ համառոտ է. «Նրանելոյն Գրիգորի Աստուածաբանի սահմանք և կանոնք վասն ուղղափառութեան» (էջ 164բ)։*

*Մեզ արդեն ծանոթ* Okmps *ձեռագրերում այս կանոնախմբի ցանկն այսպիսին է. սկսենք* O *ձեռագրից։*

*«Ա. Վասն որք ասիցեն զորդին Աստուծոյ արարածք։*

*Բ. Վասն որք զՄաքէլի զուգահաւատս ունիցին։*

*Գ. Վասն ծնընդեան Քրիստոսի որ յունվարի Զ առնեն։*

*Դ. Վասն որ արհամարհիցէ զսուրբ մկրտութիւնն ի Հայր և յՈրդի և ի Սուրբ Հոգին։*

*Ե. Վասն որք ուրանան յետ մկրտութեան զհաւատս։*

*Զ. Վասն որք ի պոռնկութիւն անկանիցի[ն]։*

*Է. Վասն որք ի կռապաշտութիւն անկանիցի։*

*Ը. Եթէ ոք ցանկայ եպիսկոպոս լինել։*

*Թ. Վասն եպիսկոպոսաց որք անարժան գտանի[ն]։*

*Ժ. Վասն եպիսկոպոսաց որ ողորմած լինին։*

*ԺԱ. Վասն եպիսկոպոսաց որ հարկանող իցեն։*

*ԺԲ. Վասն եպիսկոպոսի որ տուգանս առնու՝ արժան է տալ աղքատաց։*

*ԺԳ. Վասն կաթուղիկոսի որ նոր օրէնս տայ եկեղեցոյ։*

*ԺԴ. Վասն եպիսկոպոսի որ դառն վարի խստութեամբ։*

*ԺԵ. Եթէ ոք ի քահանայից կամ ի մոնոզաց արհամարհեալ լինի յեպիսկոպոսէ և ընթանայ առ նախադլուխ և առնու զկարգն։*

*ԺԶ. Վասն եպիսկոպոսի որ յայլոց վիճակ ընթանայ։*

*ԺԷ. Որ այսու ագահեալ խռովութիւնս առնէ։*

*ԺԸ. Վասն եպիսկոպոսի՝ Բ և Գ վկայիւք դատէ զքահանայն։*

*ԺԹ. Վասն որք ընծայեն զանձն Աստուծոյ և պոռնկին։*

*Ի. Վասն որ պոռնկի ընդ կուսի։*

*ԻԱ. Վասն անասնազիտաց։*

*ԻԲ. Վասն քահանայի որ զնոյն կարգս գտցի։*

*ԻԳ. Եպիսկոպոս հանդերձ կնաւ մի՛ եղիցի։*

*ԻԵ.* (sic)*. Եւ քահանայ և սարկաւագ յեպիսկոպոսէ առցեն զկարգն։*

*ԻԶ. Վասն եպիսկոպոսաց որ լինին առաջնորդք։*

*ԻԷ. Վասն քահանայի որ ուսուցանէ զքարեպաշտութեան օրէնս։*

*ԻԸ. Վասն եպիսկոպոսի որ կարգեսցէ զտօն տէրունական։*

*ԻԹ. Վասն Քառասնորդաց պահոց։*

*Լ. Վասն յարութեան տեառն Փրկչին» (էջ 377բ—378ա)։*

kmps *ձեռագրերի ունեցածը բերում ենք ըստ* k-*ի.*

*«Ա. Ի բաց լինել ի հերձուածողաց։*

*Բ. Վասն համագոյ միասնական Սուրբ Երրորդութեանն։*

*Գ. Վասն որք ի հերձուածողացն գան ի ճշմարտութիւն ուղղին։*

*Դ. Վասն որք զտաւն Ծնընդեան և զՅայտնութեան փոխիցեն։*

Ե. Վասն չարհամար[հ]ելոյ զսուրբ Մկրտութիւնն որ ի Հայր և յՈրդի և ի Սուրբ Հոգին։
Զ. Վասն որ զկնի մկրտութեան ըմբռնեցաւ յուրացութիւն։
[Է. Վասն որ զկնի մկրտութեան զառաժան ի մեղս ապաշխարանք դնել։]
Ը. Վասն որ ի ձեռս կռապաշտից զոհեցին և կերան։
Թ. Վասն եպիսկոպոսաց բարեձևութեամբ կեալ։
Ժ. Որք յեպիսկոպոսաց անարժան գտան։
ԺԱ. Վասն եպիսկոպոսաց որ առնուն ի ձեռնադրելն կաշառս։
ԺԲ. Վասն եպիսկոպոսաց ոչ հարկանել զոք։
ԺԳ. Թէ ոչ է պարտ եպիսկոպոսին ի մեղաւորաց տուգանս առնել, այլ հրամայել յաղքատս։
ԺԴ. Թէ ոչ է պարտ կաթողիկոսի նոր օրէնս տալ յեկեղեցի։
ԺԵ. Թէ ոչ է պարտ եպիսկոպոսին խստութեամբ վարիլ։
ԺԶ. Վասն քահանայից շապստամբել իւրոյ եպիսկոպոսէ։
ԺԷ. Եպիսկոպոս մի՛ կալցի զայլո վիճակ վասն պատուոյ։
ԺԸ. Թէ զայնպիսիսն մեծն Աթանաս տարագրեաց։
ԺԹ. Թէ ոչ է պարտ զքահանայս լուծանել առանց Բ և Գ վկայից։
Ի. Որք կուսանալ խոստացան և պոռնկեցան։
ԻԱ. Որք պոռնկեցան ընդ կուսան։
ԻԲ. Որք պղծեցան յանասունսն։
ԻԳ. Քահանայ ի նոյն չարիս գտեալ։
ԻԴ. Եպիսկոպոս հանդերձ կնաւ մի՛ եղիցի։
ԻԵ. Եպիսկոպոս ընկալցի զաւծումն յերից եպիսկոպոսաց։
ԻԶ. Թէ քահանայք և սարկաւագունք ի մի՛ եպիսկոպոսէ։
ԻԷ. Վասն եպիսկոպոսաց որ չիցեն կարող հերքել զհերձուածս՝ լռեսցին։
ԻԸ. Եթէ զուսումնասէրս ձեռնադրել քահանայ։
ԻԹ. Վասն տանից ոէկրոնականաց։
Լ. Վասն Քառասնորդաց պահոց և սրբոյ Զատկին, Համբարձմանն և Պենտակոստէին»
(էջ 73ա, հմմտ. m, էջ 83աբ, p, էջ 80բ—81ա, s, էջ 92բ—93բ)։

Քանի որ կանոնախմբի առաջաբանը որոշ ձեռագրերում գրված է որպես առաջին հոդված, իսկ Լ հոդվածն էլ միացված է ԻԹ հոդվածին, այդ պատճառով այստեղ ցանկի վերնագրերի համապատասխանությունը հոդվածներից շեղվում է մեկով։

Առաջաբան, էջ 181—182: *№ 3276 ձեռագրում չի պահվել առաջաբանը։*

*Ինչպես նշեցինք վերևում, որոշ ձեռագրերում, ինչպես և մեր հրատարակության հիմք հանդիսացող A ձեռագրում, առաջաբանը գրված է որպես առաջին հոդված։ Մենք այդ ուղղեցինք՝ համարակալումը վերցնելով կլոր փակագծերում։ Հոդվածների համարակալումների հետ վարվեցինք դարձյալ այդ ձևով, ձախում նշելով յուրաքանչյուրի թե՛ ընդհանուր և թե՛ մասնավոր հերթական ճիշտ համարները։*

Հոդ. Ա—Ը, էջ 182—188: *Այս հոդվածները չեն պահվել № 3276 ձեռագրում։*

Հոդ. Թ, էջ 188—190: *Բնագրի «այսինքն կաթողիկոսն, ի նմին կարթեսցի» հատվածը (էջ 188, տող 13) № 3276-ում գրված է «այսինքն ի նմին կրթեսցի կաթողիկոսն», «միայն լոկ»-ը՝ «լոկ միայն», (էջ 164բ), իսկ «Նաղիանձու»-ն՝ «Ակիաղու» ձևերով (էջ 165ա)։ Բնագրի «զի սրբոց հարցն» հատվածից (էջ 189, տող 6) մինչև հոդվածի վերջը չի պահվել նշված ձեռագրում։*

Հոդ. Ժ—ԺԱ, էջ 190—191: *Այս երկու հոդվածները ևս չեն պահվել № 3276-ում։*

Հոդ. ԺԲ, էջ 191: *Բնագրի «եպիսկոպոսի» և «հաւատոյ» բառերը № 3276-ում համապատասխանաբար պահվել են «եպիսկոպոսին» և հաւատոց» (էջ 165ա)։*

Հոդ. ԺԳ, էջ 191—192: *Բնագրի «լուծեալք» բառը № 3276-ում նշված է «լուծեալ» (էջ 165ա)։*

Հոդ. ԺԴ, էջ 192: *Այս հոդվածը չի պահվել № 3276-ում։*

Հոդ. ԺԵ, էջ 192—193: *Բնագրի «խզեալ», «ամբաստանեալ» և «ելեալ» բառերը № 3276-ում համապատասխանաբար գրված են «խզել», «ապստամբել» և «եղեալ» ձևերով (էջ 165ա)։*

Հոդ. ԺԶ, էջ 193—174: *Հոդվածի վերջին հատվածի «ձեռամբ քահանայագործէ» բառերը № 3276-ում գրված են այսպես. «ձեռօք քահանայագործել» (էջ 165ա)։*

Հոդ. ԺԷ, էջ 194: *Բնագրի «եւ մեզ աւանդեաց» հատվածը № 3276-ում այսպես է. «աւանդեաց և մեզ» (էջ 165ա)։*

Հոդ. ԺԸ, էջ 194—195: *Նշված ձեռագիրը չունի բնագրի միայն առաջին «ոչ»-ը (էջ 165բ)։*

Հոդ. ԺԹ, էջ 195: *Բնագրի «մնասցեն» և «լսողսն» բառերը № 3276-ում համապատասխանաբար փոխարինված են «կացցեն» և «ապաշխարողսն» բառերով (էջ 165բ)։*

Հոդ. Ի, էջ 195: *Բնագրի «ապաշխարեսցէ» և «աւրինաց» բառերը № 3276-ում գրված են «որոշեսցի» և «յօրինացն» (էջ 165բ)։*

Հոդ. ԻԱ, էջ 195—196: *№ 3276-ը չունի բնագրի «են» (ոգիքն) օժանդակ բայը, իսկ բնագրի «և յետին», «միմեանց» (արուամոլքն) բառերը գրված են այսպես «և ի յետին», «ի միմեանց» (էջ 165բ)։*

Հոդ. ԻԴ, էջ 197: *Բնագրի «պատուով սահմանեցան» հատվածը № 3276-ում այսպես է. «պատիւ ունին և սահմանեցան» (էջ 165բ)։*

Հոդ. ԻԵ, էջ 197: *Այս հոդվածը նախորդի շարունակությունն է և թերևս սխալմամբ է գրըված առանձին հոդված։*

Հոդ. ԻԶ, էջ 197: *№ 3276-ում բնագրի «հերքել» բառը փոխարինված է «հալածել» բառով, իսկ «դադարեսցէ» բառն այստեղ չի պահվել (էջ 165բ)։*

Հոդ. ԻԷ, էջ 197: *Նշված ձեռագրում բնագրի «ուսցին զբարեպաշտութեան» բառերի միջև գտնում ենք «նախ» բառը (էջ 165բ)։*

Հոդ. ԻԸ—Լ, էջ 198—199: *Այս երեք հոդվածները չեն պահվել № 3276 ձեռագրում։*

## ԴՎԻՆԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

**Վերնագիր և առաջաբան, էջ 200:** *Կանոնագրքի համահավաք բնագրի համար օգտագործված ձեռագրերից բացի սույն կանոնախումբը մասամբ պահվել է № 3276 ձեռագրում։ Այստեղ չեն պահվել առաջաբանի «կայսեր», «ուղիղ կարգի... եւ ժառանգաւորաց» և «երանելւոյ» հատվածները, իսկ «կանոնացդ» բառն էլ պահվել է «կանոնիդ» ձևով (էջ 181ա)։*

**Ցանկ.** *էջ 200—201։ Հմմտ. Օձնեցուց հետո Կանոնագրքում մուծված կանոնախմբերը որպես կանոն հոդվածների բովանդակության ցանկեր չունեն։ Այս առումով բացառություն են կազմում այս և Կարնոյ ժողովի կանոնախմբերը։ Քանի որ վերջին երկու կանոնախմբերի* Okmps *ձեռագրերի ունեցած ցանկերը տրված են վերևում՝ 200—201 էջերի տողատակի այլընթերցումներում, դրանք այստեղ չենք բերի։*

*Ցանկը չի պահվել № 3276 ձեռագրում։*

**Հոդ. Ա, էջ 202:** *№ 3276-ում սույն հոդվածը չի պահվել։ Ինչպես նշում է Աբել Մխիթարյանցը այս և մի շարք այլ կանոնախմբեր ինքը վերցրել է Չամչյանի համառոտումից (Պատմութիւն ժողովոց Հայաստանեայց եկեղեցւոյ, Վաղարշապատ, 1874, նախադրություն, էջ ժե. հմմտ. նույն տեղում, էջ 86—90) հմմտ. նաև № 4488 ձեռագիրը, էջ 15բ—16բ)։*

**Հոդ. Բ, էջ 202:** *№ 3276-ում միակ տարբերությունը այն է, որ բնագրի սկզբի «վիճակի» բառն այստեղ գտնում ենք «վիճակէ» ձևով (էջ 181ա)։*

**Հոդ. Գ, էջ 203:** *Այս և մնացած հոդվածները չեն պահվել № 3276 ձեռագրում։*

## ՄԱԿԱՐ Ա-Ի ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

**Վերնագիր, էջ 216։** *№№ 648, 3562 ձեռագրերում վերնագիրը գրեթե նույնն է. նկատվող շեղումն այն է, որ այստեղ չի պահվել «կարգաց» բառը, իսկ «անցանել» բառի փոխարեն ունեն «ել» բառը (№№ 648, էջ 160բ, 3562, էջ 257ա)։ Ինչպես ճիշտ նկատել է Ն. Ակինյանը՝ սույն կանոնախումբը որպես նամակ «Գիրք թղթոց»-ում մուծվել է Կանոնագրքից (Թուղթ Մակարայ Բ Երուսաղէմի Հայրապետի առ Վրթանէս եպիսկոպոսապետ Սիւնեաց յաղագս կարգաց եկեղեցւոյ, էջ 10)։ Ուստի վերնագրում շեղումներ չկան, միակ տարբերությունն այն է, որ «Հրաման»-ի փոխարեն կարդում ենք «կարգ» («Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 407)։*

*№№ 648, 3562 ձեռագրերի և «Գիրք թղթոց»-ի տարբերակներում առաջարկվող բնագիրը պահվել է գրեթե նույնությամբ, էական տարբերություններ չկան։ Այս ցույց է տալիս, որ Կանոնագրքից այն անցել է սույն ձեռագրերին և «Գիրք Թղթոց»-ին։ Այդ պատճառով էլ այս բնագրերից մեջբերումներ չենք կատարի (տե՛ս № 648, էջ 160բ—164բ, № 3562, էջ 257ա—261ա, 266ա. վերջին ձեռագրում մի քանի էջեր կազմված են խառնաշփությամբ, դրա համար էլ կանոնական մի շարք մանր բնագրերի հետ այս կանոնախմբի վերջին հոդվածն իր տեղից ընկել է մի քանի էջ հեռու. «Գիրք թղթոց» էջ 407—412)։ № 3276-ում սույն կանոնախումբը չի պահվել. այդ մասին գրիչը գրում է. «Զի կանոնք սրբոյն Մակարայ Երուսաղէմի Հայրապետին ոչ գրեցաք ի տփի աստ» (էջ 164բ)։*

kmps *ձեռագրերում վերնագրից հետո դրված է կանոնների ցանկը, վերջինս բերում ենք ըստ* k *ձեռագրի.*

*«Ա. Ոչ է պարտ ծուլանալ ի մկրտելոյ։*

*Բ. Ոչ է արժան սարկաւագի մկրտութիւն առնել։*

*Գ. Թէ պարտ է յեկեղեցիս աւազան առնել և մկրտել։*

*Դ. Թէ պարտ է զկարգ եկեղեցւոյ տեսուչք հաստատ պահել։*

*Ե. Թէ զիւղ սրբութեան եպիսկոպոսապետն աւրհնել։*

*Զ. Թէ մի՛ երկմտութեամբ և թերահաւատութեամբ և աղտեղի գործով մերձենալ ի սեղան։*

*Է. Թէ պարտ է զխորհուրդ պատարագին որոյն կատարել ի հերձուածողաց, զի մի՛ անուն Աստուծոյ հայհոյեսցի։*

*Ը. Զհաց պատարագին ջերմ հանել ի սեղանն։*

*Թ. Սուրբ սեղանն ընդ վարագուրաւ և աւազանն արտաքոյ ի նմին տան։*

*Ժ. Ժառանգաւորք իւրաքանչիւր ըստ աստիճանի կալցեն զգործս» (էջ 68ա. համտ.* m, *էջ 78բ,* p, *էջ 74բ—75ա,* s, *էջ 86աբ)։*

*Ահա և* O *ձեռագրի ցանկը.*

*«Ա. Թէ արժան է սարկաւագաց մկրտութիւն առնել։*

*Բ. Վասն աւազանի որ սրբեալ ոչ ունին և որպէս ամանի մկրտեն։*

*Գ. Վասն կարգի եկեղեցւոյ սրբոյ յօրինեն։*

*Դ. Վասն միաբանութեան եպիսկոպոսաց և ժառանգաւորաց։*

*Ե. Թէ որպէս մերձեսցուք առ սուրբ սեղանն սուրբ և կենարար խորհուրդն։*

*Զ. Վասն փրկական խորհրդին կատարելոյ։*

*Է. Վասն ջերմ հացին որ ի բեմն հանեն։*

*Ը. Վասն ի ձև սեղանոյն և խորհրդոյն և վարագուրին։*

*Թ. Վասն աւանդման պատուիրանին հաւատոյ» (էջ 390ա)։*

## ԿԱՐԻՆԻ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

**Վերնագիր, էջ 244:** Կանոնագրքի համահավաք բնագրի կազմման համար օգտագործված ձեռագրերից զատ, այս կանոնախումբը գտնվում է նաև XIX դարում ընդօրինակված № 5182 ձեռագրի 123բ—132բ էջերում։ Ձեռագիրը պարունակում է հիմնականում Խոսրովիկ Թարգմանչի մի գրվածքը. «Առ այնոսիկ որ ասեն բնութեամբ անձև, անսկիզբն ընկալեալ զմարդկութիւն Աստուած բան ի կուսէն» խորագրով (էջ 5ա—107բ) և մի քանի կանոնախմբեր՝ Ներսես Բ Բագրևանդացու և Ներշապուհ Մամիկոնեից եպիսկոպոսի (էջ 109ա—118ա), Հովհան Մանդակունու (էջ 118բ—119ա, հմմտ. Կանոնագիրք Հայոց, հտ. Ա, էջ 492—500), Կարինի ժողովի (էջ 123բ—132բ), և Անտիոքի ժողովի խոստովանություն (էջ 133ա—136բ)։

Այս ձեռագրի՝ Կարինի ժողովի կանոնագրության բնագիրը չունի վերնագրի միայն «ժողովեցան» բառը, մնացածը նույնն է (էջ 123բ)։

**Առաջաբան, էջ 244—245:** № 5182 ձեռագրի բնագիրը էական տարբերություն չունի առաջարկվող բնագրից։ Վերջինիս միայն «հաստատել» և «նզովել» բառերը ($244_{11}$, $245_{1}$) դրված են անցյալ դերբայով՝ «հաստատեալ» և «նզովեալ» (էջ 124ա), իսկ նախքան «եկեղեցւոյ» ($245_{6}$) բառը դրված է «սուրբ» (էջ 124բ)։

**Ցանկ, էջ 245—246:** Գիտա-քննական բնագրի համար օգտագործված 50 ձեռագրերում, ինչպես նշել ենք, 645 թ. Դվինի ժողովի կանոնախմբի նման այստեղ ևս գտնում ենք ցանկ։ Այս մասին տես Ներածությունում մեր բացատրությունը (էջ CXVIII—CXIX)։ Okmps ձեռագրերի ունեցած ցանկը տես վերևում՝ 245—246 էջերի տողատակի տարընթերցումներում։

Այստեղ կնշենք № 5182 ձեռագրի համապատասխան կանոնների ոչ մեծ տարբերությունները։

**Հոդ. Ա, էջ 246—247:** Բնագրի «կատարել» բառի փոխարեն (էջ 246, տող 13) նշված ձեռագրում կարդում ենք «նկատել» (էջ 125ա)։

**Հոդ. Գ, էջ 248—249:** Բնագրի «յառաջնմէն» բառը (էջ 248, տող 12) նշված է «յառաջագոյն» ձևով (էջ 126բ), իսկ «յաւրհնութեան» և «մարդոց» բառերը (էջ 249, տող 1 և 2) համապատասխանաբար՝ «յաւրհնութենէ» և «մարդոյ» ձևերով (էջ 126բ)։

**Հոդ. Դ, էջ 249—250:** Բնագրի «խորհիցի» և «ունել» բառերը (էջ 249, տող 10 և 13) համապատասխանաբար նշված են «խորհեսցի» և «ունելով» ձևերով (էջ 127ա)։

**Հոդ. Ե, էջ 250—251:** Բնագրի «դրութեան» (էջ 251, տող 8), «է» (տող 10) և «բնակեսցէ» (տող 12) բառերը համապատասխանաբար նշված են «դրութեանցն», «իցէ» և «կացցէ» ձևերով (էջ 128ա)։ ։

**Հոդ. Թ, էջ 255—257:** Բնագրի «կամաս»-ի (էջ 255, տող 15) փոխարեն ունի «կամար», իսկ «լիցին» բառը (էջ 257, տող 1) այստեղ չի պահվել (էջ 131ա)։

## ՆԵՐՍԵՍ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ ՎԵՐԱԳՐՎԱԾ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

**Վերնագիր, էջ 258:** *Որոշ ձեռագրերում վերնագիրը մի փոքր համառոտ է, «Կանոնք (№ 651-ում՝ կանո[ն]քնն) սրբոյն Ներսէսի հայրապետին գլուխք ԼԳ (№№ 649, 651-ում՝* չիՐ *գլուխք ԼԳ)» (№№ 648, էջ 51ա, 649, էջ 79ա, 650, էջ 87ա, 651, էջ 66ա, 2964, էջ 112բ. 3562, էջ 331ա)։*

*Վերնագրում նշված «Գլուխք ԼԳ» հատվածը ցույց է տալիս, որ այս կանոնախմբի հոդվածները լրիվ բերված չեն։ Եվ իսկապես, այս ձեռագրերում չեն բերված՝ ԺԴ, ԻԱ, ԻԴ—ԻԸ, Լ, ԽԱ, ԽԳ հոդվածները, թվով 10։*

kmps *ձեռագրերում հոդվածների ցանկը ունի այս պատկերը.*

*«Ա. Վասն զղջացելոց՝ յետին թոշակին մի՛ զրկեսցին։*

*Բ. Վասն որ շնան և զմանկունսն սպանանեն։*

*Գ. Վասն իգացելոց։*

*Դ. Վասն որ խաւսեալ ղաղջիկն թողուն և զքոյրն առնու և նա խեղդ արկեալ մեռանի։*

*Ե. Վասն որ մին կուսան և մի[ն] երկեակ ղուգին։*

*Զ. Վասն երրորդաց։*

*Է. Վասն որ զպոռնիկ կանայս թողուն։*

*Ը. Վասն կնաթողաց։*

*Թ. Վասն որ երկու քեռց պոռնկին։*

*Ժ. Վասն քահանայից որ պոռնըկին։*

*ԺԱ. Վասն որք շնան և կամին սպանանել։*

*ԺԲ. Վասն որք ընդ հեթանոսի շնան։*

*ԺԳ. Վասն որք ընդ հեթանոսի շնան կերակրով։*

*ԺԴ. Վասն որ ընդ հեթանոսի ղուգի։*

*ԺԵ. Վասն որ ղայգի հարկանէ։*

*ԺԶ. Վասն որ ղարջառ հարկանէ։*

*ԺԷ. Վասն որ զտուն այրէ ընչիւք։*

*ԺԸ. Վասն կանանց որ ապարահ իցեն և անխտիր կան։*

*ԺԹ. Վասն մանկան որ անկնունք մեռանի ծուլութենէ։*

*Ի. Վասն գողոց և աւազակաց և մարդասպանաց և հրկէզ առնողաց։*

*ԻԱ. Վասն որ դրամ գողանան։*

*ԻԲ. Վասն որ ընդ ազգականս ամուսնանան։*

*ԻԳ. Վասն որ ընդ հօր կնոջ ննջէ։*

*ԻԴ. Վասն որ ընդ եղբաւր կնոջն ամուսնան[ան]։*

*ԻԵ. Վասն բռնադատեալ կնոջ և ի պղծելն հաւանեացի։*

*ԻԶ. Վասն չարապաշտից և որ հմայից հաւատայ։*

*ԻԸ* (sic)*. Վասն մանկանց, որ ապոռնայիցէ կամ ձգէ և կամ ածէ։*

*ԻԹ. Վասն որ ընդ հեթանոսի մեղանչէ։*

*ԻԹ* (sic)*. Վասն որ այլոց զմահ խորհին։*

*Լ. Վասն կնոջ որ յղի է և անգէտս հարկանի յումեքէ։*

*ԼԱ. Որ մկնակ գինի ըմպէ։*

*ԼԲ. Վասն որ յաւձից խայթի։*

*ԼԳ. Վասն ակամայ սպանողաց։*

*ԼԴ. Վասն արուագիտաց և որ ընդ անասունս պղծի։*

*ԼԵ. Վասն շնացողաց։*

*ԼԶ. Վասն որ յառաջ քան զհարսանիսն շնայ և կին առնէ։*

*ԼԷ. Վասն որ մինն կուսան և միւն երկեակ ամուսնանան։*

*ԼԸ. Վասն որ հացի դէզ այրի։*

*ԼԹ. Վասն որ ընդ զոքանչի ննջէ։*

*Խ. Վասն երկրավարացն։*

*ԽԱ. Վասն որ զպահք լուծանեն ի պատճառս հիւանդութեան։*

*ԽԲ. Վասն որ զմեղս ծածկէ և ոչ խոստովանի։*

*ԽԳ. Վասն ողորմութեան»* (k, *էջ 227ա—228ա. հմմտ.* m, *էջ 229ա—230ա,* p, *էջ 247բ—248ա,* s, *էջ 286ա—287ա)։*

*Այս ցանկում կան որոշ խախտումներ, նախ համարակալման մեջ բաց է թողնված ԻԷ համարը, իսկ ԻԹ-ն կրկնված է։ Երկրորդ՝ ԻԹ հոդվածի վերնագիրը ցանկում դրված է ԼԸ համարի տակ, որովհետև այս և Բ խմբի մի շարք ձեռագրերում այդ հոդվածը դրված է ԼԸ և ԼԹ համարների միջև (տե՛ս վերևում, էջ 261, տող 15-րդ, տողատակ), Խ հոդվածը ցանկում համապատասխան վերնագիր չունի, իսկ ԽԳ հոդվածի համար ցանկում նշված է երկու՝ ԽԲ, ԽԳ վերնագիր։*

*Հոդ. Ա, էջ 258։ Հոդվածի վերջին երկու բառը №№ 651, 2964-ում այսպես է. «կանոնի հրամանաց» (էջ 66ա, 112բ)։*

Հոդ. Գ, էջ 258: *Ներքոհիշյալ ձեռագրերում տարբեր է միայն պատժաչափը՝ «Գ» փոխանակ «Դ» (№№ 648, էջ 51բ, 649, էջ 79ա, 650, էջ 87ա, 651, էջ 66ա, 2964, էջ 112բ, 3562, էջ 331ա)։*

Հոդ. Դ, էջ 258: *Բնագրի «զքոյրն» բառը №№ 650, 651-ում դարձել է «զքոյն» (էջ 87ա, էջ 66ա), հավանաբար «ր»-ն մոռացվել է։ Հոդվածի վերջին բառին հետևյալ ձեռագրերում հաջորդում է «ապաշխարեսցեն»՝ №№ 648, էջ 51բ, 649, էջ 79ա, 650, էջ 87ա, 651, էջ 66ա, 2964, էջ 112բ, 3562, էջ 331ա։*

Հոդ. Ե, էջ 259: *Նշվելիք ձեռագրերում տարբեր է պատժաչափը՝ «Դ» փոխանակ «Գ»-ի, ինչպես նաև բացակայում է «ապաշխարեսցեն» բառը (№№ 648, էջ 51բ, 649, էջ 79ա, 650, էջ 87ա, 651, էջ 66ա, 2964, էջ 112բ, 3562, էջ 331ա)։ Հոդվածում գործածված «զուգին» բառը հասկացվել է «ամուսնանան» իմաստով (Ն. Մելիք—Թանգյան, Ա. Ղլտճյան) և այս հոդվածը համեմատելով ԼԸ հոդվածի հետ նկատել են «տարօրինակ հակադիպություններ», երբ «միևնույն նյութի վրայ կանոն է գրում տարբեր սահմաններով» (Ն. Մելիք-Թանգյան, «Հայոց եկեղեցական իրաւունքը», էջ 369)։ Այս հոդվածի իմաստը բացատրելու համար անհրաժեշտ է նկատի ունենալ նաև մի այլ պարագա։ Մեր լեզվում «զուգութիւն», «զուգել» բառերը այլ իմաստների հետ նշանակում են ոչ միայն «ամուսնութիւն», «ամուսնանալ», այլև «կենակցութիւն», «կենակցել» (սեռական իմաստով)։ Չի՞ կարելի արդյոք «զուգին» բառը այստեղ հասկանալ այդ իմաստով, այսինքն «եթե մեկը կույս է և մյուսը երկեակ և կենակցում են...»։ Այս դեպքում ոչ միայն չենք նկատի Ն. Մելիք-Թանգյանի «տարօրինակ հակադիպությունները», այլև կազատվենք ԼԸ հոդվածի՝ Ա. Ղլտճյանի վերակազմությունից։ Ի դեպ, այս հոդվածի համար որպես աղբյուր Ա. Ղլտճյանն առաջարկում է Նեոկեսարիայի Գ, Բարսեղի Դ, Լուսավորչի Ե և Ներսեսի ու Ներշապուհի ԻԵ հոդվածները (ՀԱ, 1908 թ. V, էջ 134)։ Նշված հոդվածներից այս նյութը չեն շոշափում Նեոկեսարիայի Գ և Բարսեղի Դ հոդվածները։ Մեր կարծիքով ճիշտ կլինի նշել Լուսավորչի Ե և Նեոկեսարիայի Ը հոդվածները, ուր պարզ չի նշված՝ խոսքը ամուսնությա՞ն թե կենակցության մասին է։*

Հոդ. Է, էջ 259: *Բնագրի «արասցեն»-ը №№ 651, 2964-ում փոխարինված է «առնուցուն» բառով (էջ 66բ, էջ 113ա), իսկ «առն»-ը՝ «այլում» բառով (№№ 648, էջ 51բ, 649, էջ 79ա, 650, էջ 87ա, 651, էջ 66բ, 2964, էջ 113ա, 3562, էջ 331ա)։*

Հոդ. Ը, էջ 259: *Վերոհիշյալ վեց ձեռագրում տարբեր է պատժաչափը՝ «Է» փոխանակ «Ե»։*

Հոդ. Թ, էջ 259: *Բնագրի «պոռնկին» բառը №№ 648, 3562-ում փոխարինված է «պղծի» բառով, իսկ «ապա»-ն չունեն (էջ 51բ, էջ 331ա)։*

Հոդ. Ժ, էջ 259: *Վերևում նշված վեց ձեռագրերում հոդվածի վերջին «կացցեն» բառին հաջորդում է «յետոյ» բառը։*

Հոդ. ԺԴ, էջ 259—260: *Այս հոդվածը չի պահվել №№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերում։*

Հոդ. ԺԵ, էջ 260: *№№ 648, 3562-ում տարբեր է պատժաչափը՝ «Դ» փոխանակ «Գ»։*

Հոդ. ԺԶ, էջ 260: №№ 648, 3562-ում բացակայում են բնագրի «հարկանէ», «եւ» բառերը։ Իսկ մյուս ձեռագրերում հոդվածն ունի այսպիսի շարահարություն. «Վասն որ զարջառ սպանանէ և կամ զայլ անասուն՝ Գ ամ ապաշխարեսցեն» (№ 651, էջ 66բ. հմմտ. №№ 650, էջ 87բ, 649, էջ 79բ, 2964, էջ 113ա)։ Այս ձեռագրերի «վասն որ... զայլ անասուն» ընթերցումն էլ Ա. Ղլտճյանը դրել է իր համահավաք բնագրում (տես ՀԱ, 1908, VIII, էջ 229)։

Հոդ. ԺԷ, էջ 260: Տարբեր է պատժաչափը՝ «Գ»-ի փոխարեն №№ 648 և 3562-ը ունեն «Դ» (էջ 52ա, 331բ), իսկ №№ 651 (էջ 66բ), 650 (էջ 87բ), 649 (էջ 80ա), 2964 (էջ 113բ) ձեռագրերը՝ «Ժ»։ Հոդվածի սկիզբը Ա. Ղլտճյանի մոտ այսպես է. «Վասն կանանց որ ապարահ իցեն»։ Հրատարակիչը նշում է նաև որ այդ հատվածը ինքը վերցրել է գլխոց ցանկից (ՀԱ, 1908, VIII, էջ 229), բայց այդպես պետք չէ վարվել, որովհետև գլխոց ցանկը կազմվել է XVII դարում (տես վերևում, էջ 384) և բնագրի վիճակը սկզբնապես այդպիսին չէր։

Հոդ. ԻԱ, էջ 260: Այս հոդվածը չի պահվել վերևում նշված վեց ձեռագրերում։

Հոդ. ԻԴ—ԻԸ, էջ 261: Այս հինգ հոդվածները չեն պահվել վերևում նշված վեց ձեռագրերում։ Ա. Ղլտճյանի մոտ ԻԴ հոդվածի վերջին մասն այսպես է. «բայց եթէ մեկնեսցին և զմահապարտին ապաշխարութիւն կրեսցեն և սոոյգ ապաշխարեսցեն» (ՀԱ, 1908, VII, էջ 229)։ Այս վերցված է Բ խմբին պատկանող ձեռագրերից (տես վերևում, էջ 261, տողատակ 5—6)։

Հոդ. ԻԹ, էջ 261: Այս հոդվածի սկիզբը Ա. Ղլտճյանի կազմած բնագրում այսպես է. «Վասն որ մանուկ ապոռնայ է» (ՀԱ, 1908, VIII, էջ 230)։

Հոդ. Լ, էջ 261: Միտքը անհասկանալի է. եթե ուրիշին մահ նյութելը իրեն է հանդիպում, մահանալուց հետո էլ ինչպե՞ս 10 տարի ապաշխարի։ Խոսքը թերևս գնում է մահափորձի մասին, որ եթե մեկը մահափորձ է խորհում ուրիշի վերաբերյալ և իրեն է հանդիպում, ապա 10 տարի պետք է ապաշխարի։ Այս հոդվածը չի պահվել վերևում նշված վեց ձեռագրերում։

Հոդ. ԼԱ, էջ 262: Ա. Ղլտճյանի կազմած բնագրում այս հոդվածի մի ընդարձակ մասն այլ շարադասություն ունի, այսպես. «յումեքէ հարկանի յանգէտս և անցուցանէ զմանուկն» (ՀԱ, 1908, VIII, էջ 230)։

Հոդ. ԼԲ, էջ 262: Հոդվածի վերջին «ապաշխարեսցէ» բառը №№ 651 (էջ 67ա), 650 (էջ 88ա), 2964 (էջ 113բ) ձեռագրերում փոխարինված է «պահեսցէ» բառով։ Իսկ № 649-ում այս և հաջորդ՝ ԼԳ հոդվածները կրճատումներով միացրել են միմյանց. ստացվել է անիմաստ բան. այսպես, «Վասն որ մկնհարաց ի յամին յայն զկաթն մի՛ կերիցեն և մի՛ զմիսսն յերիս ամս» (էջ 80ա)։

Հոդ. ԼԳ, էջ 262: Բնագրի «Վասն աւձահարաց» բառերի միջև №№ 651, 650, 2964-ում «անասնոց» բառը, այսպես. «Վասն անասնոց աւձահարաց» (էջ 67ա, էջ 88ա, էջ 113բ)։ Հենց այս և նման ձեռագրերի ընթերցմանն է հետևել Ա. Ղլտճյանը այս կանոնախմբի իր կազմած բնագրում (տես ՀԱ, 1908, VIII, էջ 230)։

Հոդ. ԼԵ, էջ 262: Մի փոքր տարբեր է հոդվածի վերջին հատվածը մեզ ծանոթ ձեռագրերում. այսպես. «և եթէ յամեալ իցէ ի մեղսն, յաւելցին ամք ապաշխարութեանն» (№№ 651, էջ 67ա, 650, էջ 88ա, 649, էջ 80ա, 2964, էջ 114ա)։

Հոդ. ԼԸ, էջ 262: Այս հոդվածի սկիզբը հիշեցնում է Նեոկեսարիայի կանոնախմբի Ը և Գրիգոր Լուսավորչի Ե հոդվածները (տե՛ս նաև սույն բնագրի Ե հոդվածը), իսկ վերջը՝ Նեոկեսարիայի Թ հոդվածի վերջին հատվածը, ըստ որում այստեղ խոսքը գնում է երրորդ անգամ ամուսնացողների մասին (Կանոնագիրք Հայոց, հտ. Ա, էջ 182), մինչդեռ սույն հոդվածում՝ երկրորդ։ Հետաքրքիր է, որ բնագրի «երկեակ» բառը №№ 651 (էջ 67ա), 650 (էջ 88ա), 649 (էջ 86ա), 2964(էջ 114ա) ձեռագրերում դրված է «գ-կին», այսինքն «երեքկին»՝ «երեք կամ երրորդ անգամ»), ինչպես նշված է Նեոկեսարիայի կանոնախմբի Թ հոդվածում։

Ն. Մելիք-Թանգյանի կարծիքով այս և Ե հոդվածը կառուցված են միևնույն նյութից, միայն տարբեր սահմանումներով, և դա համարում է «բոլորովին տարօրինակ հակադիպություններ» (Հայոց եկեղեցական իրավունքը, գիրք Ա, էջ 369)։ Ա. Ղլտճյանը քննադատելով այս կարծիքը, գրում է, որ ոչ մի «հակադիպություններ» չկան։ Բնագրի «երկեակ» բառի վերևում նշված մի քանի ձեռագրերի տված «Գ. կին» (=երեքկին) ընթերցումով նա վերակազմում է հոդվածի բնագիրը ու նշում, որ Ե հոդվածում խոսվում է երկրորդ անգամ ամուսնացողների մասին, իսկ այս՝ երրորդ անգամ ամուսնացողների (ՀԱ, 1908, V էջ 135)։ Ա. Ղլտճյանի ասածը ճիշտ է՝ եթե մահանա կույսը. բայց եթե պատահի հակառակը՝ «երկեակ»-ը մահանա, իսկ կույսը մնա, ապա դարձյալ կստանանք «երկեակ»։ Եթե ընդունվի Ե հոդվածին տրված մեր բացատրությունը (տես վերևում էջ 385), ապա կնշանակի՝ այս երկու հոդվածներում միևնույն նյութը օգտագործված է տարբեր տեսանկյուններով և Ա. Ղլտճյանի առաջարկած սրբագրությունը անի-

*մասն է։ Մի այլ պարագա. եթե իսկապես Ծ և այս հոդվածները վերաբերում են մի դեպքում կույսի և «երկեակի», մյուս դեպքում կույսի և «երեքկին» ամուսնանալուն, թերևս իրավացիորեն հարցնեինք՝ ապա ինչո՞ւ դրանք հաջորդաբար չեն դրված, որպես միանման գործողության տարբեր օղակներ, ինչպես, ասենք Նեոկեսարիայի Ը, Թ և Ժ (Կանոնագիրք Հայոց, հտ. Ա, էջ 182—183) հոդվածներն են։ Մինչդեռ մեր բացատրության համաձայն խոսքը միևնույն անձնակազմի տարբեր գործողությունների մասին է, մի դեպքում՝ կույսը և «երկեակ»-ը կենակցում են (Ծ հոդված), մյուս դեպքում՝ ամուսնանում (ԼԸ հոդված), դրա համար էլ դրանք միմյանցից անջատ են դրված։ Հենց այդպես է դրված Բարսեղ Կեսարացուն վերագրված կանոնախմբի ՄԸ հոդվածում, որը և անցել է Գոշին (տե՛ս Դատաստանագիրք, մասն Ա, ՁՁ, էջ 187)։ Հետևապես ճիշտ չէ Ղլտճյանը, երբ սույն կանոնախմբի ԼԸ հոդվածի որպես աղբյուրագիտական հիմք նշում է Գոշին (Ա մաս, ՁՁ հոդված). ավելի հավանական է Բարսեղին վերագրված կանոնախմբի ՄԸ հոդվածը։*

*№№ 651, 650, 649, 2964 ձեռագրերը երկրորդ «և»-ի փոխարեն ունեն «ապա»։*

Հոդ. ԽԱ, էջ 263: *№№ 648, 649, 650, 651, 2964, 3562 ձեռագրերը չունեն այս հոդվածը։*

Հոդ. ԽԲ, էջ 263: *Բնագրի «հիւանդութեան» բառը №№, 649, 650, 651, 2964 ձեռագրերում փոխարինված է «վտանգին» բառով։*

Հոդ. ԽԳ, էջ 263: *Այս հոդվածը չի պահվել վերևում նշված վեց ձեռագրերում։*

## ԵՓԻՊԱՆ ԿԻՊՐԱՑՈՒՆ ՎԵՐԱԳՐՎԱԾ ՄԻ ԱՅԼ ԿԱՆՈՆԱԽՈՒՄԲ

Վերնագիր, էջ 268: *Հետևյալ մի քանի ձեռագրերում վերնագրի «Կանոնք»-ի փոխարեն գտնում ենք «Գիր կանոնի» (№№ 649, էջ 73ա, 650, էջ 80բ, 651, էջ 61ա, 2964, էջ 104բ)։*

*Այս ձեռագրերում գտնում ենք նաև հոդվածների բովանդակության համառոտ ցանկ. ահա այն.*

*«Վասն քահանայից և սարկաւագաց զգուշութիւն ի կանանց յորժամ ի սպասաւորութիւն սրբոյ խորհրդոյն մատչին։*

*Աւրէնսդրութիւն ոչ մերձենալ ի կինն իւր ապարախ։*

*Վասն երիցանց և սարկաւագաց» (№№ 649, էջ 73ա, 650, էջ 80բ, 651, էջ 61աբ, 2964, էջ 104բ)։ Նման ցանկ տե՛ս նաև O ձեռագրում. «Ա. Վասն որք անարժան ի սպասաւորութիւն առնեն կամ պատարագին կամ հաղորդին։*

*Բ. Վասն կնոջ որ ի յապարահս իցէ։*

*Գ. Վասն Քառասնորդաց պահոց» (էջ 410բ)։*

kmps *ձեռագրերում Ա և Բ հոդվածների ցանկն առանձին է դրված, Գ հոդվածին առանձին, որովհետև վերջինս Կանոնագրքի Բ խմբի ձեռագրերի մի մասում՝* acdkmprsv *տարբեր տեղ է դրված, որպես ուրույն և միմյանց հետ կապ չունեցող բնագրեր։ Եվ վերնագրից էլ կարելի է եզրակացնել, որ այն առանձին բնագիր է և Ա, Բ հոդվածներին Ա խմբի ձեռագրերում միացված է մեխանիկորեն։ Ահա այդ ցանկն ըստ* k *ձեռագրի։*

*«Ա. Վասն քահանայից և սպասաւորաց սրբոյ խորհրդեանն ի բաց կալ ի մարմնասիրութենէ և ի հեշտութեանց աշխարհի ևս առաւել ի յանկողնոյ։*

*[Բ]. Վասն ապարահից և սաղմնառուաց ի բաց կալ ի մերձաւորութեան» (էջ 233 բ,* m, *էջ 325,* p, *էջ 254ա,* s, *էջ 293բ)։*

*[Գ.] «Վասն Քառասնորդաց պահոց և այլոց»* (k, *էջ 247ա,* m, *էջ 252ա,* p, *էջ 268բ,* s, *էջ 311ա)։*

Հոդ. Ա—Բ, էջ 268—277: *№№ 649, 650, 651, 2964 ձեռագրերի հոդվածներում էական տարբերություն չենք գտնում, եթե նկատի չունենանք առանձին բառերի ետևառաջությունը կամ պարզեցումը, օրինակ, «սուրբ» թե «մաքուր» և այլն։*

Հոդ. Գ, էջ 277—280: *Նշված չորս ձեռագրերում այս հոդվածը բոլորովին տարբեր բան է։ Այն բերում ենք № 649 ձեռագրի համաձայն. «Երիցունք և սարկաւագունք որ շրթամբք իւրեանց պղծին և եկեալ խոստովանիցեն զյանցանսն՝ ընդունելի են ընդ այլ սարկաւագունս և երիցունս. և եթէ սովին յանցանօք անկեալ գտցին կամ թէ ևս առաւել ինչ և ոչ խոստովանիցին զյանցանսն առ ի երկիւղի մարդկան, այնպիսիքն ի բաց ջնջեալ եղիցին» (էջ 77աբ. հմմտ. նաև №№ 650, էջ 85ա, 651, էջ 64բ, 2964, էջ 110ա)։*

*Ներածությունում նշեցինք № 941 Ճառընտիրի մասին (էջ CX), ուր պահվում է սույն «հոդվածի» ընդարձակ տարբերակը։ Այստեղ բերում ենք նշված ձեռագրի ունեցածն ամբողջությամբ.*

*«Հարցումն Թէոդոսի քահանային ընդ երանելին Եպիփան վասն քառասնորդաց պահոց. եթէ Մովսէս քառասուն աւր պահեաց եւ Եղիայ եւ Տէրն մեր, պահս ո՞չ այնպէս թւի, մինչ զշաբաթ եւ զկիւրակէ լուծանեմք։*

*Պատասխանի ետ երանելին Եպիփան եւ ասէ. Այս պահս քառասուն եւ ութ աւուրբ բովանդակի, ըստ քառասուն եւ ութ քաղաքացն ապաստանից, զոր զատոյց Յեսու վասն սպանողաց, որք փախուցեալ ի քաղաքն անկանէին ապաստանից եւ կայր մինչեւ մեռանէր ըստ փափկութեան մարմնոյ. եւ այն լինէր քառասուն եւ ութ յօր, ըստ քաղաքացն ապաստանից եւ ըստ*

Մովսէսի աւրինադրութեան որ զմահապարտսն ժողովէր մինչեւ ի վախճան քահանայապետին. եւ ապայ արձակեալ լինէր ի մահուանէ։ Սոյնպէս եւ այս քառասնօրեայ պահս մինչեւ ցմահ քահանայապետին Քրիստոսի քաւութեան աւուր մեղուցելոցն փրկական պատարագաւքն հաւատացելոցն լինէր, եւ ստոյգ խոստովանողացն եւ ապաշխարողացն, զի թէպէտ եւ սուրբ հարքն յաղագս յիշատակի սրբոցն եւ սուրբ պատարագին եւ յարութեան Քրիստոսի զշաբաթ եւ զկիրակէ լուծանել հրամային ի կերակուրս, բայց ոչ յաւելորդս՝ ի գինի եւ ի ձէթ զմեզ թողացուցին, այլ ի պարկեշտութիւնս. զի լաւ է շնորհաւք հաստատել զսիրտ եւ ոչ կերակրօք, զի ոչինչ օգտեցան որ այնպէս գնացին։ Վասն որոյ եւ Նզովս ստորագրեցին առ այնոսիկ որ յղփութեան աւրէնս վարկանին, զի առաջին սուրբ հարքն ոչ սահմանեցին։ Արդ՝ այսպէս կարգեցաւ ի սուրբ առաքելոցն եւ ի սուրբ հարցն. մի՛ ինչ աւելի ճաշակել ի սուրբ քառասներորդն յաւուր շաբաթու կամ ի կիրակէի, բայց միայն զայլ աւուրցն կերակուրսն։ Տես զճշմարտութիւնն, զի որպէս յաւուրցն Պենտակոստէիցն, ոչ պահեն զչորեքշաբաթի կամ զուրբաթն։ Սոյնպէս եւ աստ ոչ է պարտ ի շաբաթու կամ կիւրակէի փափկանալ կերակրովք, այլ վասն սուրբ Յարութեանն եւ սուրբ պատարագին յերրորդ ժամու հրամայեցին յանպաճոյճ կերակուրսն, զոր յայլ աւուրսն ճաշակեմք. այլ զչորեքշաբթի եւ զուրբաթն եւ զուխտի պահսն եւ զՎարդէվառի եւ զԱստուածածնի եւ զխաչի եւ զսուրբ Յայտնութեանն եւ զԱռաջաւոր պահսնն ընդ սուրբ քառասներորդսն համարեցան։ Արդ՝ որ յայսմ կանոնի միաբան լինի՝ խաղաղութիւն ի վերայ նորա ասէ աստուածային առաքեալն եւ առաւել ի վերայ այնոցիկ, որք երեք յիսնակս կատարեն յանուն Սուրբ Երրորդութեանն. զՊասէքին եւ զՎարդէվառին եւ զսուրբ Յայտնութեանն զփրկութիւն Տեառն առցեն զաւետիս։ Եւ որք լուծցեն ի պասեքի պահոցն կամ զառաջաւորն կամ զուրբաթ կամ զչորեքշաբթի կամ զՎարդէվառի կամ զԱստուած[ած]նի կամ զսուրբ խաչին կամ զԱստուածայայտնութեանն։ Եթէ յակամայ ոք լուծցէ՝ Ծ աւր պահեսցէ եւ եթէ կամաւ՝ Գ ամ արտաքոյ կացցէ եւ ապայ հաղորդեսցի աւրինացն։

Այսպէս կարգեաց սուրբ այրն Աստուծոյ Եպիփան վասն սրբութեանն պահոցն ոչինչ արտաքոյ պատուիրանաց, այլ հաստատութեամբ Հին եւ Նոր Կտակարանաց։ Տես զիմաստութիւն եւ զհանճար հոգոյն սրբոյ որ բխմամբ ի սուրբ առաքեալսն եւ ի վարդապետսն ճշմարիտ կարգեցին զսկիզբն պահոցն է շաբաթ կարգելով Արարչին առ մի մի աւուր Ռ ամ, որ լինի դարս էՌ։ Արդ՝ ամենայն դար բովանդակեցին զկարգաւորութիւն պահոց է շաբաթս ոչ երբէք որոշեալ ի միմեանց եւ ոչ պակասեցուցեալ. վասն զի ի կատարել եւթնից հազարաց հասցուք միւսանգամ գալստեանն նորոգման եւ յարութեան զարդարեալ եւթեակ շնորհաւք, զոր եւ Կիւրեղ յայտնապէս ցուցանէ զմուտ պասեքին զքառասնորդաց երկշաբաթին աւր անուանէ ընթերցուածք ի գիր անկելոյ վարդապետութեանն ի սուրբ քառասնորդացն եւ առ հանդերձեալսն կնիք առնելոյ, զի դարձին յապաշխարութիւն եւ վարդապետք իմաստունք ասեն յորովայն մաւրն ի քառասուն աւուր առնուլ զկենդանութիւն։ Սոյն օրինակ յայս քառասներորդս իբր յորովայնի սաղմ առեալ կացցուք ոչ մերձենալ ի փափուք կերակուրսն։ Տես զհոգէխառն իմաստութիւն ընթերցուածոցն Կիւրղի եւ Յակոբայ դրութեանն նայելով ի ստեղծուած առաջին մարդոյն, զի ի վեցերորդ աւուրն ստեղծ տէր Աստուած զմարդն. նոյնպէս եւ Կենարարն մեր ի վեցերորդ դարում մարմնացաւ ի Սրբոյ Կուսէն, նորոգելով զհնութիւն մեռելութեան մերոյ։ Եւ ի վեցերորդ նուագին, յորում եկն ի կամաւոր չարչարանս մահու խաչին. նախ ի վեցերորդ շաբաթուն եկն ի Բեթանիայ, ուր էր Ղազար մեռեալն, զոր յարոյցն ի մեռելոց, զչորս անկիւնս երկրի կենդանացոյց որ օրինակի հինգ զգայարանք մարդոյն բռնութեանն. իսկ Մարիամ եւ Մարթայ որ օրինակին ի վեց Ռ դարս անցելոցն՝ Մարթայ զբազում իւիք զբաղեալ, իսկ Մարիամ ընտրելով զփրկութիւն ի Տեառնէ զերծանելով ի բռնութենէ սատանայի, զոր սուրբ վարդապետացն կարգեալ են չորս մասամբք զբոլոր մարդն սրբեալ ճշմարիտ ետես զիրս ընթերցուածին վասն սրբութեան պահոցն ոչ կատարել ի նոսայ տաւնս. վասն զի ոչ ունի օրինակ ըստ հնումն եւ ոչ ի նորումս մինչեւ ի կատարեալ վեցերորդում շաբաթուն։ Սոյնպէս եւ ոչ ուրբաթացուցանել, զի մի՛ խափանեսցի յարութեան պաշտաւն. եւ յարութիւն ոչ եթէ պաճուճեալ կերակրովք յաւրինի, այլ պաշտմամբք եւ աղօթիւք, զի որպէս ոչ է մարթ ի Բարէկենդանէն մինչեւ ցԶատիկն գառն զենուլ, նոյնպէս եւ անմարթ է ի փափուկ կերակուրս վայելել յաւուրս քառասնորդացն, զապաշխարողսն արտաքոյ եկեղեցւոյն ունելով մինչեւ ի պասէքն տէրունական, զի ասէ առաքեալն. «Զատիկ՝ վասն մեր զենաւ Քրիստոս». եւ մեք փափաքելով <ով> մարմնոյ եւ արեանն Տեառն ճաշակելով յայսմ աւուր մեծի զենմանն։ Եւ արդ՝ պարտ է սրբութեամբ մաքրել զանձինս պահաւք եւ աղաւթիւք աւուրս քառասուն եւ ութ. եւ ի կատարմանն լցցուք ցնծութեամբ ճաշակեսցուք ի մարմնոյ եւ յարենէ Տեառն մերոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի։ Այսպէս՝ կարգեաց սուրբն Գրիգոր Հայոց հայրապետն ոչ աղարտելով զաւ-

րէնս կամ զմարգարէս ըստ բանի Կենարարին որ ասէ. «Ոչ եկի լուծանել զաւրէնս կամ զմարգարէս, այլ լնուլ»։ Եւ սայ զնոյն աւրինակ բերելով յորժամ մոլեգնեալ դիւօք զաւրքն եւ թագաւորն, եւ նորա զմտաւ ածեալ զնաբուգոդոնոսորայ զբժշկութիւն, զնոյն ինքն կատարէր ի բովս փրկութեան արկանէր զժողովուրդն աւուրս վաթսուն եւ վեց, եւ ապայ բժշկէին յայսոց չարեաց։ Արդ՝ սուրբ վարդապետացն ի մեր տկարութիւնս հայելով զնոյն աւուրսն կարգելով ի վերայ վասն բժշկութեան ոգոց ի սատանայական խորհրդոց։ Այլ ըստ ձեռնադրութեանն վաթսուն եւ վեց աւուրցն, զոր ոչ ոք ի սրբոյն Գրիգորի հաւատոցն խափանեալ սկիզբն ամենից է և Ժ երրեակս կատարին, որ է սկիզբն Առաջաւոր պահոցն, բայց դու միտ դիր, զի ըստ մերում տրկարութեանս կարգեցին զտասս ամենից բաժանմունս՝ որ լինի Խ եւ Ը աւուր. ոչ է արժան հաւատացելոց վայելել ի փափուք կերակուր, այլ սրբութեամբ կալ մնալ մեծի յարութեան Փրկչին մերոյ. վասն զի ի միւսանգամ գալստեանն յորժամ փող հարկանի եւ սթափեալքն արթնութեամբ յառաջանան ընդառաջ Փրկչին, նորոգեսցուք եւ մեք ի բաց դնելով զծանութիւն հողանիւթ բնութեանս, ակն կալցուք յուսոյն մեծի եւ անճառ խոստմանցն, թէ «Ուր եսն եմ՝ անդ եւ պաշտաւնեայն իմ եղեցի»։ Ի Քրիստոս Յիսուս, ի Տէր մեր, որում փառք եւ պատիւ այժմ եւ միշտ. ամէն» (էջ 224ա—225բ)։

Վերևում՝ էջ 268 նշել ենք, որ befgq ձեռ-երի ունեցած սույն բնագիրը՝ առաջին մասում ունի զգալի տարընթերցումներ Կանոնագրքում եղածից, իսկ երկրորդ մասում բոլորովին տարբեր բան է։ Այդ ցույց տալու համար նշված հինգ ձեռ-երի ունեցածը կբերենք ամբողջությամբ ըստ e ձեռագրի։

«Գիր կանոնական սրբոյն Եպիփանու

ՌՄԾԵ Ա. Ի վերայ բազում նշանաց և մարգարէութեան էր և այս շնորհեալ երանելոյն Եպիփանու եպիսկոպոսի, զի յորժամ կամէր զպատարագն մատուցանել յառաջին աղօթսն իւր, զոր վասն արժանաւոր լինելոյ անձին իւրոյ աղօթէր, վասն իջանելո[յ] Սուրբ Հոգւոյն խորհուրդն որ ի վերայ սրբոյ սեղանոյն. և տեսանէր յայտնապէս զշնորհս Սուրբ Հոգւոյն ի վերայ սեղանոյն. և յամենայն ի կեանս իւրում ոչ երբէք կատարէր զխորհուրդ սուրբ պատարագին, եթէ ոչ իջեալ տեսանէր զշնորհս Սուրբ Հոգւոյն ի պատարագն։ Եւ եղև աւր մի կալ նմա առաջի սրբոյն և յասելն նորա զբանս աղօթից ըստ սովորութեան աղաչանաց իւրոց պաշտել առաջի Աստուծոյ, զի իջցէ Սուրբ Հոգին և կատարեսցէ զխորհուրդ սուրբ պատարագին, եւ ոչ եղև երևումն Սուրբ Հոգւոյն ըստ սովորութեանն որպէս երէկն և եռանդն։ Եւ զարհուրեալ դողութեամբ յուժգին արտասուօք և հառաչանօք երիցս անգամ կրկնեաց զբանս աղօթիցն և ամէնևին ինչ ոչ յայտնեցաւ երևումն շնորհաց Սուրբ Հոգւոյն։ Իսկ երանելին կայր զարհուրեալ, և ողբալով աղաչէր զԱստուած վասն յայտնելո[յ] ըզպատճառ չլինելոյ ընդունելի աղօթից նորա՝ վասն իջից Սուրբ Հոգւոյն։ Եւ հայեցեալ նորա ի ձախակողմն կոյս, սարկաւագն որ զքշոց պատարագին ունէր, և տեսանանէր զճակատ նորա լի բորոտութեամբ որ յառաջ մաքուր էր ի բորոտութենէ։ Իսկ երանելին Եպիփան ձգեաց զձեռն իւր փութապէս և զքշոցն եբարձ ի նմանէ և ասաց ցնայ հեզութեամբ. «Երթ, որդեակ, գնայ ի տուն քո և մի՛ ճաշակեր այսօր յաստուածային խորհրդոյս»։ Եւ իջեալ սարկաւագն ել արտաքս և գնաց ի տուն իւր։ Եւ հրամայեաց երանելին այլում սարկաւագի զքշոցն վերացուցանել և սպասաւորել սուրբ խորհրդոյն։ Եւ նայ սկիզբն արարեալ աստուածային բանիցն սուրբ պատարագին ուժգին արտասուօք։ Եւ նոյն ժամայն ետես զտեսիլն նշանի Հոգւոյն ի սուրբ սեղանն աստուածային ահեղ խորհրդոյն։ Եւ զկնի արձակելոյն եկեղեցոյն կոչեաց զսարկաւագն և ասէ. «Կամիմ ուսանել զպատճառն իրացս որ եղև քեզ»։ Եւ նորա պատասխանի տուեալ ասէ ցերանելին. «Ի գիշերիս այսմիկ մերձեցայ ի կինն և յանդգնեալ ի սպասաւորութիւն սրբոյ սեղանոյն, զայս կրեցի այժմ»։ Եւ հրամայեաց երանելին Եպիփան և կոչեաց զամենայն սարկաւագունս և զերիցունս եկեղեցուն և ասէ ցնոսա. «Որդեակք, որ արժանի եղաք սուրբ խորհրդոյն սպասաւորութեան՝ ի բաց արարէք զամենայն մարմնական սիրելութիւն յանձանց ձերոց, զի մի՛ անցանիցէք նոքաւք և արհամարհիցէք զհրամանս քարոզին որ աղաղակէ և ասէ. «Որ ունիցի կանայս, այսպէս կալցին, որպէս թէ չունիցին». և ցմեծ մարգարէն ասէ, թէ՝ «Սպասաւորութիւն կոչեցար, լոյծ և ի բաց ընկեայ զհողաթափս ոտից քոց». զի սպասաւորութիւն յոր կոչեցար՝ երկիր սուրբ է. և այսմ հետէ ոչ մարմնաւորապէս. Մովսէս, այլաբանիւ սպասաւորութեամբ։ Այլ և ի հնումն որք կամէին ի սպասաւորութիւն խորանին մերձենալ երիս աւուրս ի կանայց զգուշանային, որչափ ի նորումս։ Նոյնպէս և յորժամ կամիս հաղորդել, տես զմեղսաքաւիչ խորհուրդն, զի թէպէտ սուրբ է ի կարևորէ կերակուր քան զանկողնոցն ցանկութիւնս։ Սակայն զգիշերն ընդ մէջ անցուցանեմք, այլ և սուրբ կերակուրն և ըմպելին, որք յանդգնաբար մերձենան, մինչև անառակ արբենան, մեղս ևս համարիմք նոցա. ոչ եթէ զգինին, այլ անառակ և զ[յ]անդուգն ցանկութիւն։ Նայև վասն հա-

*ցին առաջաւորութեան ասէր քահանայից Դաւիթ, եթէ՝ «Զգուշացեա՞լ են մանկունքն քո ի կանանց՝ կերիցեն»։ Պատասխանի ետ Դաւիթ և ասէ. «Սուրբ են ի կանանց յեր[ե]կէ և եռանդէ և յորմէ հետէ ելաք ի ճանապարհ» և ապա հրամայեաց։ Ապա և որ ինչ բնութեան սուրբ է, յանդգնութիւն պիղ[ծ] առնէ և ոչ եթէ զբնութիւնն, այլ զ[յ]անդուգն և զանժամանակն ասեմ։ Արդ՝ որք արժանաւորեցայք սպասաւորութեան սրբոյ խորհրդոյն, մեծաւ երկիւղիւ զգուշացարուք բազում սրբութեամբ զանձինս արժանաւորեցուցանել կալ առաջի սուրբ սեղանոյն և հաղորդել կենդանարար և ի մեղսաքաւիչ խորհրդոյն։ Եւ յայնմ հետէ ոչ ևս ձեռնադրեաց ի սպասաւորութիւն խորհրդոյն որ առնէին կանայս վասն [յ]անդգնելոյ առ նոսա յաւուր սպասաւորութեան սուրբ խորհրդոյն, այլ արս կուսանս և պարկեշտս երկիւղածս, զորոց զազնըւական վարս անարատութեան յանձինս ցուցեալ էր և զամուսնութիւն, զորոց բազումք վկայեցին զայսպիսի վարուց։ Եւ էր այնուհետև զարդարեալ սուրբ եկեղեցին և պայծառացեալ սուրբ կարգօք քահանայիցն ի հաճութիւն Աստուծոյ և ի շինութիւն լսողաց։*

*ԽՄԶ. Բ. Վասն է՞ր աւրէնսդիրն չհրամայեաց մերձենալ յապահարսն՝ լուր քաջ, հաս ի վերայ և իմանաս զչարաչար վնաս ապահարին անկողնոցն։ Գիտեայ, զի որք առեալ զսերմանս ի լիճս և ի ծովակս* (ձեռ-ում *ի ծովակս*) *սերմանեսցեն և ոչ երկիր մաքուր, մոլէգնոտս զնոսա համարիմք։ Նոյնպէս* (ձեռ-ում *նոյնապէս*) *լինին ախտք կանանց ըստ ամսոց, զի կենդանի երկիր մանկանն յօրինեսցի, և զառեալն ի զուգակցէն մաքուր պահեսցէ։*

*Արդ՝ ոչ այլ ինչ պատճառ ունի, բայց միայն վասն մանկանն կենդանութեանն յինն ամսեան ժամանակի յորովայնի մօրն։ Վասն որոյ ոչ ի մատաղ հասակ մօրն լինի ապահարին, զի չէ ժամանակ արգանդին մանկաբեր լինել և ոչ [յ]որժամ դադարէ ի ծնընդոց ի ժամանակի տնկեալ է Արարիչն զլինել ապահարին ի բնութիւն կանանց, զի մանուկն կենդանի պահեսցէ. ուստի և յառաջագոյն մինչև մանուկստեղծեալ իցէ, յապարահին յառաւելութենէ կերակրոցն անկեալ յարգանդն ըստ ամսոց և ոչ գտեալ ի նմա զմանուկն, ճեպով արտաքս ելանիցէ։ Եւ յորժամ մանուկն ստեղծանի, ոչ. ևս դիմէ արտաքս, վասն մանկանն պիտոյից, որով զկենդանութիւն ունի։ Վասն որոյ պարտ է զարմանալ և փառաւորել զքանչելագործն Աստուած, որոյ վասն մեր զարմանալոյ նոյն կարմրութիւն արեան ի սպիտակութիւն դարձուցանել մինչև մանուկն զարգասցի և ապա անդրէն ի նոյն գոյ[ն] դառնալ։ Բայց բնութիւն միևնոյն է և պղծութիւն ի նմա ոչ գոյ, զի եթէ պիղծ էր ծնունդն, ապայ և հարսանիս ոչ հրամայէր. պիղծ է պոռընկութիւն, լի չարահոտութեամբ անկողինք նոցա. սուրբ է ամուսնութիւն. և որ վասն ապահարին մի՛ յոգիս մեր մեղիցուք և մի՛ զմարմինս մեր ապականեսցուք զծնընդոցն, զի զայն Մովսէս և մարգարէքն պատուիրեցին. «Ի կին ապահար մի՛ մերձենալ», այլ [և] յանկողինս նոցա մի՛ ելանել, զի մի՛ կենդանի ծնունդքն ապականեսցին ժանտիւքն որ ի նմանէ աճեցեալ, զի յորժամ յիւրմէ զուգակցէն ընկալցի զմարմնաւորութիւն ամպողջ և անարատ պտուղ յորովայնի ծնընդոց յաշխարհ։ Ապա եթէ արք կամ կանայք առանց իմաստութեան յանդգնաբար մերձեսցին զանարժանս գործել, նոքա ոչ որդէծնութեան են անցեալ, այլ պիղծ և անառակ ցանկութեանց, այլ և որք իմանալն կարեն, ոչ լինին աւուրքն այն որդէծնութեան, զի զաղտեղութիւն յոլով ունիցին յինքեանս և ոչ տայ պատկերին ստեղծանել և յօդիլ ի միմեանս։ Ապա թէ սակաւ ունիցին զհիւթն ի ներս յանկարծ զստեղծանելն, ստեղծանի մանուկ, բայց աղտեղութիւնք ընդ ստեղծուածն խառնեալ ծնանին խեյք թիւրք, մարմնահարք, հիւանդք, անդամալոյծք, չարախորհութիւնք և յայլ աղտեղութենէ ի մասունս մարմնոյ տնկեալ և բուսեալ, նեղխեալ և վիրաւորեալ և գտեալ ապականեալ զմարմինն և որ ի տղայութեան և որ յերիտասարդութեան և յոր ևս յառաջ ժամանակի չար ախտ յայտնի ազգ։*

*Վասն որոյ հոգելից մարգարէին ծանուցեալ պատուիրէ և ասէ, եթէ՝ «Ի կին ապահար՝ մի՛ մերձեսցիս», որպէս զի մի՛ ծնունդն կենդանի կարիցէ աղտեղութեամբ անդէն ախտիւք։ Եւ արդ՝ թէ Մովսէս և Եզեկիէլ հոգելից մարգարէքն պատուիրեցին չմերձենալ յանկողինս ապահարին։ Եւ հմուտք բժիշկաց վասն գիտելով զանցանս յանկողնացն զգուշացուցանեն զմարդ։ Եւ քնեշտակարկատքն* (միայն Ե-ում *քննել տա կարկատք.* առաջինն անճասկանալի է, իսկ երկրորդը՝ սխալ—Վ. Հ.) *հեթանոսաց ի բժշկական արուեստն տեղեկացեալ զնոյն զանազան ախտիցն յոլովութիւն որ ընդ մարմին ծնընդոցն փաղփաղեալ ապականիցէ, որք այնմ ժամանակի ի տաղտկալի անկողինս մերձենայցեն իբրև օրէնս իմն հաստատեցին ոչ միայն անկողնոց հեռանալ, այլ և տանց և արանց հալածել իբրև թէ զբնութիւն, զոր արար Աստուած պիղծ համարել, այլ մեք ոչ եթէ զոր արար Աստուած ատեաց ի բնութիւն կանանց խոտեմք պիղծ համարելով, այլ որպէս մարգարէքն պատուիրեցին չմերձենալ յանկողինս նոցա, վասն մանկատոր լինելոյ, որ ոչ սայ ստեղծանիլ աղտեղութեան և յոլովութիւն։ Եւ եթէ յանկարծ ինչ ստեղծանիլ և ախտիւք և ապականութեամբ ստեղծանի։ Վասն այսորիկ և մեք պատուիրեմք ըստ*

մարգարէին «Մի՛ մերձենար յանկողինս նոցա». զի մի՛ ծնունդն կորիցէ և մի՛ ծնողքն յոգիս իւրեանց մեղիցեն աներկեղութեամբ և [յ]անդգնութեամբ, զի մեղք այն են, զոր կամաւ և [յ]անդգնութեամբ ոք գործէ և ոչ յակամայ և ցօվք։

Իսկ ոմանք ի սրբութիւնս պատկառեն, յաւուրս աղտեղութեան բարիոք առնեն, վասն պատժի սրբութեան, զի և մեք յորժամ ձեռաց խոստովանիմք կամ հանդերձս զեռաթաթախս պատկառեմք յառաջի սրբութեանն մտանել և աղօթել, այլ լուանամք և մաքրիմք և անխիղճս կատարեմք զաղօթսն, որ է օրինակ, թէև ոգովք սրբեցելովք պարտ է մտանել առաջի Աստուծոյ։ ՌՄԾԷ Գ. Աղանդք բազում են աշխարհի, զորոց ոչ է արժան զբանս նոցա ընդ բերան ածել, բայց նաւատիանոսք՝ զապաշխարութիւն ոչ ընդունին, զի ասեն. «Մինչ մեռանին մարդիք, պատարագ, որ վասն նոցա մատուցանեն անընդունելի են»։ Երանելին Աթանաս եպիսկոպոսն ասէ Ափրիա թուխպն ընդդէմ աղանդոյն եկեղեցացոց. «Ես այսպէս կարծեմ, թէ աղանդն եկեղեցացւոցն ի վաղընջուց շիջաւ և խափանեցաւ, իսկ ահաւադիկ արմատ դառնութեան ի վեր երևեալ զբազումս ջանայ ապականել, ուստի և քում իսկ աստուածսիրութեանդ յոյժ մեղադիր եղաք, լսելով զայդպիսի չարահոտ աղանդոյդ որ համարձակեցան ասել. թէ՝ «Յետ հրաժարելոյն մարդոյն աշխարհէ, չկարէ պատարագք և ողորմութիւնք օգնել և սրբել զգնացեալսն և շնորհել նոցա զթողութիւն»։ Արդ՝ այսպիսի բան հայհոյութեան հեթանոսաց վայել է, որք անյոյսք են ի Քրիստոսէ և ոչ ակն ունին տեսանել զլոյսն յօիտենից ըստ բարոյական հեշտագնաց կորըստեան ընդունիցին տեղիս, իսկ հաւատացելոցն ոչ։ Զի եթէ զայր թագաւոր զոք ածէ ի հաւան, և լուծանել հրամայէ զկապանս կալանաւորացն, և որք ի քրէական մետաղսն են մեծամեղքն աքսորեալ, զորոց և յիշեցուցանել ոք անգամ ոչ իշխէ զնոցանէ վայրապար առ թագաւորն։ Իսկ ապա եթէ ոք համարձակութիւն ունի, որ զորդի թագաւորին բարեխօս ունիցի և աղաչիցէ վասն նորա որ ի տանջանս և ի խոշտանկսն իցէ, ո՞չ ապաքէն զամենայն շնորհէ թագաւորն և արձակէ յայնպիսի չարաչար և դառն տանջանացն։ Ապա ուրեմն որչափ ևս առաւել Հայրն երկնաւոր որ շնորհեսցէ զյանցանս, յորժամ զենմանն Քրիստոսի Որդոյն Աստուծոյ առաջի անկանիմք, ներէ և թողու գնացելոցն, միայն եթէ մեք ջերմութեամբ մատչիմք վասն նոցա առ նայ, շնորհ[է] թողութիւն, և առնէ հանգիստ հոգւոց նոցա» (էջ 191ա—194բ. տե՛ս նաև b, էջ 251բ—255բ, f, էջ 288բ—293ա, g, էջ 161բ—165բ, q, 153բ—156ա)։ Ներկայացվող բնագիրը efg և մասամբ q ձեռ-երում գրեթե նույնն է, իսկ b-ում աղավաղումները և բացթողումները շատ են։

Սույն բնագրի Գ հոդվածն այլ բան չէ քան Աթանաս Աղեքսանդրացու թուղթը «Առ Յուստինէ յԱփրկէ» (տե՛ս Ս. Աթանասի Աղեքսանդրիոյ հայրապետի ճառք, թուղթք և ընդդիմացութիւնք, Վենետիկ, 1899, էջ 345—346)։ Ինչպես նշում է հրատարակիչն Աթանաս Աղեքսանդրացու այս թուղթը նա վերցրել է ճաշընտիր ձեռագրերից (նույն տեղում, էջ ժե)։

## ՀՈՎՀԱՆ ՄԱՆԴԱԿՈՒՆՈՒՆ ՎԵՐԱԳՐՎԱԾ ԿԱՆՈՆԱԽՄԲԵՐ
## ԽԱ, ԽԴ, ԾԷ

*Կանոնագրքի միայն XI դարի խմբագրության մեջ հանդիպում ենք Հովհ. Մանդակունու անունով երեք կանոնախմբերի, որոնք դրված են ԽԱ, ԽԴ, ԾԷ համարների տակ։*

O *ձեռագրում պահվել է միայն ԽԴ կանոնախմբի ցանկը. ահա այն.*

*«Ա. Վասն քահանայի որ Կ-ամեան է՝ լռեցի ի պատարագէն։*

*Բ. Վասն քահանայի որ ի միում աւուր Բ պատարագ առնէ։*

*Գ. Վասն եկեղեցւոյ Բ պատարագի ի միում աւուր մատուցեալ է։*

*Դ. Եթէ ի քահանայից ի գնել և ի վաճառել երթիցեն։*

*Ե. Վասն քահանայի որ արիւն հեղու։*

*Զ. Վասն որք զբերանս իւրեանց պղծեալ են դատարկ բանիւք։*

*Է. Որք խոստովանին և ի նոյն մեղս դառնան» (էջ 409ա)։*

kmps *ձեռագրերում վերևում նշված կանոնախմբերի համար դրված են ցանկեր, որոնք կբերենք ըստ* k *ձեռագրի։*

***ԽԱ** կանոնախմբի համար.*

*«Ա. Վասն զգուշութեան առաջնորդաց զանարժանս և զոգետս ձեռնադրելոյ» (էջ 191ա. հմմտ.* m *էջ 195ա,* p, *էջ 210,* s, *էջ 240ա)։*

***ԽԴ** կանոնախմբի համար.*

*«Ա. Քահանայ Կ-ամեա ի պատարագէն լռեսցի։*

*Բ. Վասն քահանայի որ ի միում աւուր Բ պատարագ մատուցանէ։*

*Գ. Վասն քահանայի որ մատոյց պատարագ և եղբայրն անգիտացեալ կրկին մատոյց։*

*Դ. Վասն քահանայի որ ի գին և ի վաճառ յաւժարեսցի և իշխանութեամբ վարեսցի հարկապահանչից լինելով։*

*Ե. Վասն քահանայի որ անասուն զենէ։*

*Զ. Վասն որք դատարկախօս լինին և յիշոցնատուք։*

*Է. Վասն որք խոստովանին և կրկին դառնան ի մեղս» (էջ 230ա, հմմտ.* m, *էջ 231բ—232ա,* p, *էջ 250ա,* s, *էջ 209ա)։*

***ԾԷ** կանոնախմբի համար.*

*Ա. Վասն մեղուցելոյ որ դառնան ի մեղաց։*

*Ա. Վասն յանցանաց քահանայի և խոստովանութեան» (էջ 231ա, 233բ, հմմտ.* m, *էջ 233ա, 234բ,* p, *էջ 251ա, 253ա,* s, *էջ 290ա, 292ա)։*

*Ինչպես այս երեք, այնպես էլ «Կանոնագիրք Հայոց»-ի Ա հատորում գտնված (էջ 491—500) կանոնախմբերը թեև Հովհան Մանդակունուն են վերագրված, սակայն պնդել, թե դրանք նրա գրչի տակից են դուրս եկել, ճիշտ չի լինի։*

*Ըստ Տաշյանի «անշուշտ ստութեամբ» են ընծայված Հովհան Մանդակունուն Կանոնագրքում նրա անունով հայտնի մի քանի կանոնները (Վարդապետութիւն առաքելոց, էջ 238)։ Այս չորս կանոնախմբերից միայն մեկը՝ ԽԱ համարը կրողը հրատարակվել է Հովհ. Մանդակունու ճառերի շարքում (Վենետիկ, 1836, էջ 202—203), և որը վերաբերում է ոգետներին քահանա ձեռնադրելուն։ Կարապետ եպիսկոպոսը «Շողակաթ» ժողովածուում (Վաղարշապատ, 1913) լույս տեսած «Հովհան Մանդակունի և Հովհան Մայրագոմեցի» (էջ 84—136) իր հոդվածում նկատել էր, որ Հովհ. Մանդակունու «Ճառք»-ում հրապարակված «Կանոնք»-ը գտնում ենք նաև «Տեառն*

*Յովհաննու Մանդակունոյ Հայոց կաթողիկոսի ասացեալ յաղագս պահոցն քառասներորդացն» ճառի վերջին մասում (էջ 100), որը մի փոքր ընդարձակ է (էջ 129—130. հմմտ. Գ. Տեր-Մկրտչյանի հրատարակածը, Արարատ, 1903, էջ 663—665)։ Բանասեր Բարսեղ Սարգիսյանը «Քննադատութիւն Յովհան Մանդակունւոյ և իւր երկասիրութեանց վրայ» (Վենետիկ, 1895) աշխատության մեջ ԽԴ համարը կրող և յոթ հոդվածներից բաղկացած կանոնախումբը համարում է Հովհ. Մանդակունունը, որովհետև այս կանոնները «հարազատութեան բնորոշ յատկութիւն ունին» (էջ 175, տողատակ)։ Եվ իսկապես «տեսուչ», վերակացու», «գործակալ», «հրամանատար» բառերի իմաստն արտահայտված է V դարում գործածված «ոստիկան» բառով (հմմտ. Սահակ Պարթևի Ժ, Շահապիվանի Ի կանոններում, տե՛ս Կանոնագիրք Հայոց, հտ. Ա, էջ 373, 465, Աստվածաշնչում՝ Թիւք, Դ, 16, ԼԱ, 14, Դ Թագ, ԺԱ, 18, Բուզանդ, Եղիշե և այլն)։ Ի դեպ, ինչպես նշել ենք վերևում, այս կանոնախմբի առանձին հոդվածներ անցել են Բարսեղ Կեսարացուն վերագրված կանոնախմբի համապատասխան հոդվածներին, օրինակ՝ Դ հոդվածն անցել է ՃԼԷ հոդվածին, Զ-ն՝ ՃԽԴ-ին, Ե-ն կարծես նման է հնչում ՃԼԸ-ին։*

*Կանոնագրքի ԾԷ՝ «Կոչումն ապաշխարութեան» բնագրի վերջին՝ «Խոստովանութիւն քահանայի» մասը, համաձայն Բ. Սարգիսյանի, վերցված է հայ եկեղեցում գործածվող Մաշտոցից (էջ 174), իսկ «Բազում գաղտածիգ նետիւք վիրաւորէ զմեզ սատանայ» հատվածից մինչև վերջ՝ «Վասն պտղոց և պատարագաց և ողորմութեան» ճառից (հմմտ. «Ճառք»-ի 1836, էջ 45-ից)։ Այս կանոնախմբի միայն սկզբի մասն ըստ Կարապետ եպիսկոպոսի «կարող են Մանդակունու գործերից առնված լինել» (Շողակաթ, էջ 101)։ Ն. Մելիք-Թանգյանը մի շարք օրինակներով ցույց է տալիս, որ սրա աղբյուրը հանդիսանում է Գրիգոր Լուսավորչի կանոնախումբը (Հայոց եկեղեցական իրաւունքը, գիրք Ա, էջ 489)։ Թերևս հավանական լինի ասել, որ Մանդակունու անունով վերևում նշված երեք կանոնախմբերը դուրս են եկել ոչ թե Մանդակունու գրչից անմիջապես, այլ մեկ ուրիշը վերջինիս ճառերից քաղել է խիստ համառոտ և խմբագրելով, դրանք նոր տեսքով ներկայացրել է նրա անունով։ Այս աշխատանքների ժամանակ բացառված չէ նաև այլ աղբյուրներից, տվյալ դեպքում Գր. Լուսավորչի կանոնախմբից, օգտվելու հնարավորությունը։ Հիշեցնենք նաև, որ այս կանոնախմբերը չեն մտել Կանոնագրքի VIII և X դարերի խմբագրությունների մեջ և հանդես են գալիս միայն XI դարի խմբագրությունում։ Դա ինքնին ուշագրավ է։*

# ԿԱՆՈՆԱԳՐՔԻ ՀՆԱԳՈՒՅՆ ԲԵԿՈՐՆԵՐ

*Ա. № 168 ձեռագրի պահպանակ[1]. 4 թերթ. երկուսը ձեռագրի սկզբում, երկուսը՝ վերջում. 4 թերթն էլ մագաղաթ։ Թերթերի այժմյան մեծությունը՝ 23,5×16,5 իսկ նախնականը՝ 31,5×21,5. առաջին թերթը 31,2×21,5։ Պահպանակի թերթերը ձեռագրի չափսին դարձնելու նպատակով երկարությունից 8,3 սմ և լայնությունից 5 սմ կտրված է։ Գիրը՝ բոլորգիր, մասամբ երկաթագիր միջին մեսրոպյան. երկսյուն։ Գրի նախնական սյունակների չափսը 22×7,3, այժմյան առաջին երկու թերթերը՝ 18,5×7,5 և 18,5×4,5—4,9, իսկ վերջին երկու թերթեր՝ 21,6×7,5 և 21,6×4,5—4,7։ Առաջին երկու թերթերում 19 տող, երրորդում՝ 21, չորրորդում՝ 20, կտրված պետք է լինի 4—6 տող։ Յուրաքանչյուր լրիվ տող ունի 15—17 տառ։ Պահպանակի թերթերը համարակալված են վերջերս՝ ա-ը։ Հոդվածների հաջորդականությունը նկատի ունենալով, թերթերը պետք է դասավորել ե, գ, դ, գ, բ, ա, է, ը հերթականությամբ։ Ժամանակ՝ XI—XII դարեր։ Պահպանակը բովանդակում է Անկյուրիայի կանոնախմբի Ե—Ի հոդվածները, սկզբի, միջին և վերջին մասերից թերի։ Պահվել են առանձին հոդվածների մասնավոր համարները։ Ամենավերջում պահվել է Անկյուրիայի կանոնախմբին հաջորդող Կեսարիայի կանոնախմբի վերնագիրը, առաջաբանի վերնագիրը և սկզբի երկու բառը։ Սյունակներից մեկի երկարությամբ, բոլոր թերթերում, ինչպես նշեցինք վերևում կտրված է 5 սմ., կտրված մասում բառերը ուղղանկյուն փակագծերում վերականգնել ենք համաձայն Կանոնագրքի համապատասխան կանոնախմբի բնագրի, նկատի ունենալով տեղի հնարավոր տարողությունը։*

*Բ. № 3534 ձեռագրի պահպանակ[2]. 2 թերթ, վերջին պահպանակ։ Մագաղաթ։ Մեծություն՝ 17,7×13։ Այս երկու թերթը հանդիսանում է նախկին ձեռագրի մեկ թերթը՝ 25,8×17,7 մեծությամբ։ Այն մեջտեղից ծալել են և դարձրել տվյալ ձեռագրի չափով. մնացել է անվնաս։ Նախկին էջն ունեցել է 20 տող. լրիվ տողերն ունեն 30—34 տառ. գրության մակերեսը՝ 23,5×14,5։ Միասյուն, գիրը միջին մեսրոպյան երկաթագիր։ Ժամանակ՝ IX—X դարեր։ Պահպանակը բովանդակում է Բարսեղ Կեսարացուն վերագրված «Վասն պէսպէս և բիւրապատիկ ախտից» կանոնախմբի ներկա հրատարակության ՄԹ—ՄԺՁ հոդվածները՝ թվով ութ, ընդ որում ՄԹ հոդվածը սկզբից, իսկ ՄԺՁ հոդվածը վերջից թերի են։ Այս երկու հոդվածների կորած մասերը գտնվել են նախորդ և հաջորդ էջերում։ Չի պահվել հոդվածների ոչ մի կարգահամար, բացառությամբ բերված բնագրի երկրորդ հոդվածի կարգահամարի միավոր թիվը՝ Ա, հավանաբար ներկա հրատարակության ՄԺ հոդվածը, որը պատառիկում ունեցել է ՄԺԱ համարը և այժմ մնացել է վերջին՝ Ա տառը։*

*Հոդվածների հաջորդականությունը նկատի ունենալով պատառիկի էջերը պետք է դասավորել 1, 4, 2, 3 հերթականությամբ։*

*Գ. № 967 ձեռագրի պահպանակ[3]. 3 թերթ մագաղաթ. որից մեկ թերթը ձեռագրի սկզբում կպցրած է կազմի ներսի կողին, իսկ երկուսը՝ վերջում. դրանցից երկրորդը դարձյալ կպցրած է կազմի ներսի կողին։ Մեզ հետաքրքրում է ձեռագրի վերջում դրված առաջին պահպանակի առաջին էջը. մեծություն՝ 24,5×16. երկսյուն. գիր՝ բոլորագիր երկաթագիր, բայց երբեմն պատահում են գլխագիր տառեր, օրինակ՝ Պ, Շ, Մ, Զ, Ջ. տողեր՝ 19։ Այս թերթի աջ եզրը ներքևից վնասված լինելու պատճառով երկրորդ սյունակի վերջին տողը չքացել է ձեռագրի կազմվելու ժամանակ։ Պահպանակը լայնքի աջ եզրից մոտավորապես 4 սմ. կտրված է, դրա հե-*

---

[1] *Ձեռագիրը 1371 թ. ընդօրինակություն է (էջ 152բ)։*

[2] *Ձեռագիրը 1497 թ. ընդօրինակություն է (էջ 349բ)։*

[3] *Ձեռագիրը ԺԴ դարի ընդօրինակություն պետք է լինի։*

*տեանքն եղել է այն, որ երկրորդ սյունակի բոլոր տողերի վերջին մասից մոտ 2 սմ. և լուսանցքը նույնպես կտրված է։ Ժամանակ IX—X դդ.։*

*Նշված պահպանակը Ճաշոցի մաս է։ Պահպանակի առաջին էջը բովանդակում է Հովհան Մանդակունու «Կոչումն ապաշխարութեան» գրվածքի, որ Կանոնագրքի ներկա հատորում մտել է ԾԷ համարի տակ, մի փոքր մասը, որը զգալի չափով տարբերվում է Կանոնագրքում եղածից։ Եթե այս բնագիրն իրոք Հովհ. Մանդակունունն է, ապա, ինչպես ցույց է տալիս պահպանակի և Կանոնագրքի համապատասխան մասերի համեմատությունը, վերջինիս մեջ պահված բավականին հեռացել է սկզբնական բնագրից։*

# Ա.

Ե սիրութեամբ ինչ հայ
ել կամ բազում ինչ յաւ
ելով զժամանակս ապ
աշխարութեան. քան
զի ամենայն ինչ որ ան
ցեալ վարքն իցեն եւ յոր
ում վարիցին ամենայն
իրաւք հարց եւ փորձ լի
նին ըստ նմին իրի մար
դասիրութիւն չափեցի:
Զ. Վասն այնոցիկ որ լոկ ի
սաստելոյն եւ կամ տան
ջանաւք, կամ տնառ
ութեամբ, կամ վասն ի
տեղեացն աւտարացա
նելոյ հնազանդեցան
եւ զոհս արարին մինչ
եւ ցայս ժամանակս ոչ
դարձան եւ ապաշաւե
ցին եւ այժմ եւ յառաջ
քան զժամանակս ժող
///

կին ընդ ունկն[դիրս]
կայցեն: Եւ յետ [մեծի]
աւուրն այսինք[ն զատ]
կին ընդ կարգ[աւք լի]
ցին Գ ամս: Ե[ւ յետ Բ]
ից ամացն հա[ւասար]
եսցին առանց [աւրի]
նաց. եւ այսպ[էս եկես]
ցեն ի կատար[եալն զի]
ամենայն իրա[ւք Զ ամն]
կատարեսցեն [ապա ե]
թե ոք յառաջ ք[ան զժո]
ղովն ընկալա[ւ ապաշ]
խարութիւն յ[այնմ ժամ]
անակէ թուես[ցին նոցին]
սկիզբն զվեց [ամն կա]
տարելոյ: Ապ[ա եթե]
մինչ վիշտք ե[ւ ակնկա]
լութիւնք ի հի[ւանդու]
թենէ, կամ ա[յլ ինչ]
[պա]տճառան[աց պատահ]
///

